ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՀԳ.

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ
# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

ՀԱՏՈՐ Ե

ԳՐԵՑ
Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1953

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հատորս նկատողութեան առած է յատկապէս այնպիսի մատենագիրներ, որոնք Հայոց Գրականութեան մէջ պարզ յիշատակութեան միայն արժանացած էին, այսպէս Տիմոթէոս Վարդապետ, Գէորգ Մեղրիկ, Կիրակոս Վարդապետ, Գրիգոր Ականերցի եւ այլն:

Շօշափուած են հոն նաեւ ինչ ինչ պատմական հարցեր, ինչպէս Արտաշիր Բաբականի վէպը, Գրիգոր Լուսաւորչի տօնակատարութիւնը, Հեթում Ա.ի մահուան տարին, Ականց վանքը, Յովհ. Նաւրեղինեան արքեպիսկոպոս, Կ. Պոլսոյ պատրիարքութեան սկզբնաւորութիւնը, ի վերջոյ լեզուական, քերականական խնդիր մը՝ Մականունակերտ մասնիկներ:

Կարեւոր տեսայ առաջին տեղիք շնորհել Ագաթանգեղոսի, նկատի առնելով միայն Գրիգոր Լուսաւորչի վարքին զանազան խմբագրութիւնները օտարալեզու ժողովուրդներու քով:

Բոլոր բաժինները լոյս տեսած են նախնաբար «Հանդէս Ամսօրեայ» ուսումնաթերթին մէջ (տես Բովանդակութեան ցանկը): Անոնք արտատպութեան մէջ կրած են մանր

բարեփոփոխութիւններ, տեղ տեղ նաեւ յաւելուածներ. dies diem docet.

Կը հրաւիրեմ ընթերցողներուս ուշադրութիւնը էջ 192 յիշուած Կոստանդին երէցի վրայ, որ Անդրուն գիւղին մէջ թարգմանած է 1332ին յունարէնէ «Կանոն վերադարձի յուրացութենէ»: Նոյն տարւոյն, «մերձ յամրոցն որ կոչի Անդրունին, կ'օրինակէ Գրիգոր երէց, որդի Վահրամի, Յոհ. Ոսկեբերանի Մեկնութիւնն Յովհաննու, եւ կը խնդրէ յիշել ի մէջ այլոց «զմիւս եղբայրն (իմ) զպատուելի քահանայն զՍտեփանոս եւ *զՍիմէոն երէց զքեռի իմ եւ զորդի իւր զԿոստանդին քահանայ եւ զմանկունս իւր*, եւ զՄիխայլն եւ զորդիսն իւր» (տե՛ս էջ 188): Այս Կոստանդին քահանայ նոյն է անտարակոյս Կոստանդին երէց թարգմանչին հետ:

Վիեննա 10 յունուար 1953

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Էջ

ԻԳ.

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՀԱՅՈՑ ԴԱՐՁԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ.
## (ՄԱՏԵՆԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ)

---

## ԻԳ.

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՀԱՅՈՑ ԴԱՐՁԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ
## (ՄԱՏԵՆԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ)

GERARD GARITTE, Documents pour l'étude du livre d'Agathange. Città del Vaticano, Biblioteca Apostolica Vaticana, 1946, 8°, XVII + 447 [Studi e testi, 127]. *«Պատճէններ Ագաթանգեղոսի մատեանին ուսումնասիրութեան համար». այս համեստ խորագրին տակ լոյս ընծայեց Ժերարդ Գարիտտ հոյակապ աշխատասիրութիւն մը, բազմակողմանի հմտութեամբ: Այս տեղ երեւան կու գայ հեղինակը նաեւ հայրէնագէտ, զոր կ'ողջունենք սիրով:*

*Աշխատասիրութեանս գլխաւոր նպատակն է հրատարակել Ագաթանգեղոսի Պատմութեան նորագիւտ յունարէն թարգմանութիւն մը, որ եղած է հին արաբերէն թարգմանութեան, Ս. Գրիգոր Լուսաւորչի այն Վարքին, զոր Ն. Մառ երեւան բերած էր Սինայի լեռան Ս. Կատարինէ վանքին մէջ 1904ին: Շահագործելով առիթս նա նկատի առած է նաեւ Ագաթանգեղոսի մատեանին*

այն բոլոր հին օտարալեզու թարգմանութիւնները, որոնք կը գտնուին ձեռագիր եւ տպագիր արեւմտեան եւ արեւելեան գրականութեան մէջ: Հեղինակը հանդէս կը բերէ այստեղ ոչ միայն անհուն հմտութիւն բազմազան լեզուներու, այլ եւ շրջահայեաց ծանօթութիւն նիւթին հայոց գրականութեան: Նա գիտցած է տիրապետել նիւթին եւ ուսումնասիրութեան տալ սքանչելի յօրինուածք, որոնք կը խլեն մեր հիացմունքը:

Դժուարին պիտի ըլլայ ինձ մատենախօսականիս ծիրի մէջ ամփոփել լայնածաւալ աշխատասիրութեան բովանդակութիւնն եւ հեղինակին տեսութիւնները: Կը բաւականանամ յաջորդովս:

Ա. Յունր թարգմանութեան: P. Jean Stiltingh Բոլլանդեան առաջինն եղաւ, որ երեւան հանեց Փլորենտիայի Լաւրենտեան մատենադարանի յունարէն Laurentianus VII, 25 ձեռագրին մէջ, ԺԲ. դարէ, Ագաթանգեղոսի յունարէն թարգմանութիւնը Πρόλογος Ἀγαθαγγέλου, ἐν οἷς καὶ τὸ μαρτύριον τοῦ ἁγίου Γρηγορίου խորագրի տակ, զոր եւ հրատարակեց հանդերձ լատին թարգմանութեամբ Acta Sanctorum Septembris VIII (Անվերս 1762), 320—400: Ասկէ քաղուածաբար՝ V. Langlois: Collection des historiens anciens et modernes de l'Arménie 1 (Paris 1867) 109—193 (հրատարակուած նաեւ ի չարս C. Müller, Frag-

menta hist. gr. V. 2)։ Հրատարակութիւն միւսանգամ համեմատելով ձեռագրին հետ մատենանշեց տարբերակներ E. Teza, Ἀγαθάγγελος: Rivista di filologia ed istruzione classica 10 (1882) 405—407 Աւելի խնամով հրատարակութիւն մը հոգաց, ձեռագրին հետ ուշադիր բաղդատութեամբ Paul de Lagarde, Agathangelos und die Akten Gregors von Armenien: Abhandlungen der königl. Gesellschaft der Wissenschaften zu Göttingen 35 (1887) 3—164 (լոյս տեսած 1888ին)։ Այս բնագրին հայոց կրկնագիր հատակոտորներ գտաւ Բրիւքսելի Թագ. մատենադարանի cod. II. 2407ի մէջ J. Bidez, Descripton d'un manuscrit grec palimpseste ... V. Vie de Grégoire d'Arménie: Académie Royale de Belgique. Bulletin de la classe des Lettres, 1900, էջ 608—614 (հմմտ. Արարատ 34, 1900, 621—622)։ Նոր կրկնագիր հատակոտորներ երեւան եկած են նաեւ Vaticanus gr. 1853 (Ժ. դարէ) եւ Vat. gr. 2302 ձեռագիրներու մէջ. G. Garitte, Fragments palimpsestes de l'„Agathange" grec: Le Muséon 56 (1943) 35—53 եւ Documents, էջ 272—273 եւ 358—388: Յայտնուած են նաեւ նոր ձեռագիրներ նոյն բնագրին. G. Garitte, La traduction manuscrite de l'„Aganthange" grec: Revue d'Histoire écclesiastique 37 (1941) 190—209. տեսնեք եւ codex Ottobonianus gr. 373 (Թ. դարէն), հմմտ.

Documents էջ 388—401), Parisinus gr. 1485 (Ժ. դարէն), Parisinus gr. 1506 (Ժ. դարէն), Vaticanus gr. 544 (ԺԱ. դարէն), Cantabr. Add. 3574 (ԺԱ.—ԺԲ. դարէ)։ Այս թարգմանութենէն կը յիշուին՝ Նիկեփորոս պատրիարք (806—815) Antirrhetica contra Eusebium, Հե. հրտ. J. B. Pitra, Spicilegium Solesmense, I (Paris 1852) 499—502 եւ Ս. Նիկետաս († 824) cod. Vatic. gr. 511 (Հմմտ. Documents, էջ 403, ծ. 1)։

Վրացերէն հատակտոր մը, մագաղաթեայ իբր կէս թուղթ, զոր երեւան բերաւ R. Blake, Catalogue of the Georgian Manuscripts in the Cambridge University Library: Harvard Theological Review 25 (1932) 207—224, յատկապէս էջ 220—221, նոյն Մատենադարանի add. 1890, 3 ձեռագրի մէջ. Ժ. Գարիտ կը նոյնացնէ Ag. $77^{96}$–$78^{5}$ եւ $78^{6-13}$ (Հայ Ագաթ. $100^{9}$—$101^{3}$) տողերուն հետ եւ կը համարի թէ ուղղակի յոյներէնէ թարգմանուած ըլլայ (էջ 14—15)։

Արաբերէն «Դաւանութիւն Ս. Հարց» հաւաքումի մէջ (cod. Vatic. arab. 101) կը գտնուին հատուածներ Ս. Գրիգորի Վարդապետութենէն, զորոնք հրատարակած է G. Garitte, Fragments de l'„Agathange“ grec en traduction arabe: Le Muséon 49 (1946) 413—420 = Documents, էջ 403—406. ասոնք հաւանօրէն յունարէնէ նախ ղպտերէնի թարգմանուած եւ ապա արաբերէնի վերածուած են։

Եթովպերէն Ս. Գրիգորի Վարքը, որ հրատարակեց Բեռլինի Or.fol.171 (ԺԵ. դար) եւ Բրիտանական թանգարանի Or. 687—688 (ԺԸ. դար) ձեռագիրներէ F. M. Esteves Pereira, Vida de S. Gregorio patriarcha da Armenia. Conversâo dos Armenios ao Christianismo. Versâo ethiopica: Boletim da Sociedade de Geographia de Lisboa 19 (1901) 851—892. Կը յիշուի նաեւ Հռիփ-սիմեանց (Ars'mā) եթովպական վկայաբանութիւնն՝ E. Cerulli, Annali del R. Istituto Superiore Orientale di Napoli, նոր շարք 2 (1942), 7: Կ՚արժէր յիշել այս տեղ նաեւ եթովպական Տրդատի զրոյցը, որ հրատարակած է René Basset, Les apokrypthes éthiopiens, trad. en français. IV. Les légendes de saint Tërtag et de saint Sousnyos. Paris 1894, 8° p. 42. Հայերէն թարգմ. Բազմավէպ 53 (1895), 71—76:

Այս խումբի ձեռագրէ մը համառօտուած է Յունական Յայսմաւուրքի մէջ Ս. Գրիգորի Վարքը. հրտ. Synaxarium Ecclesiae Constantinopolitanae, Bruxelles 1902, էջ 89—94: Նոյնը նկատի ունի նաեւ Vita S. Gregorii Armeniensis episcopi et martyris, պահուած cod. Barberini lat. 583 (ԺԳ. դար), ասկէ հրտ. Acta Sanctorum Sept. VIII, 402—413 եւ P. de Lagarde, Onomastica sacra Բ. տպ. Göttingen 1887, էջ 1 24:

Այս բնագրի վրայէն կազմած է Սիմէոն Մետափրաստէս իր վկայաբանութիւնն Ս.

*Գրիգորի. Հրտ.* Migne, P. G. 115 (Paris 1865) 944—966 *եւ* de Lagarde, Agathangelos, *էջ* 90—118: *Անկէ թարգմանուած է Ս. Գրիգորի* Վրացերէն *վարքը, զոր հրատարակեց* Leo Melikset-Bek, Vita S. Gregorii Parthiensis: Monumenta Georgica I. Scriptores ecclesiastici Nr. 2. Tpilisi 1920, 8° *էջ* 51. *Հմմտ.* Л. Меликсетъ-Бековъ, Грузинская версія Агафангелія и ея значеніе для грузинской исторіографіи: Христіанскій Востокъ 4 (1915) 155—170 (*տս. այս* Doc. 10—16): *Տարբեր թարգմանութիւն կ'երեւայ Իվիրիոնի Թ.* 20 *ձեռագրին Գրիգորի վրական վարքը, զոր կը յիշէ* R P. Blake: Revue de l'Orient Chrétien 29 (1933/4) 118—130, *զոնէ դատելով սկզբնաւորութենէն:*

*Բ. Խումբ կը կազմէ Ս. Գրիգորի այն նորագիւտ Վարքը, որ պահուած է Մատրիդ,* Codex Scorialensis gr. X. III. 6 (*թղ.* 241*բ*—262*ա*), *յամէ* 1107: *Ձեռագրին մէջ թուղթ մ'ինկած է, զոր կարելի է լրացնել արաբերէն թարգմանութենէն: Նախորդ,* de Lagarde*ի հրատարակած բնագիրը թարգմանուած է յունագէտ հայու մը ձեռքով: Այս բնագիրը, ինչպէս նկատած է Ժ. Գարիտտ, թարգմանիչ ունի հայագէտ յոյն մը: Ամբողջութեամբ կը հրատարակուի բնագիրս, որուն սկզբնաւորութիւնն է.*

*«Գործք եւ վկայութիւն սրբոյն եւ փառաւոր վկային Գրիգորի Հայոց Մեծաց: Ընդ*

ժամանակին ընդ այնուիկ, յորժամ թագաւորեաց յաշխարհին Հայոց Մեծաց Տրդատ, էր հալածումն մեծ քրիստոնէից: Եւ յառաջ մատեաւ սուրբն Գրիգորիոս. ասէ ցնա թագաւորն. Փութա, Գրիգորիէ, զոհել աստուածոց. եւ եղիցիս մեզ սիրելի, որպէս ի սկզբանէ: Իսկ սուրբն Գրիգոր ցթագաւորն ասէ. Ոչ առնում յանձն առնել զայդ, արքայ, մատուցանել զոհս կռոց, այլ անիծանեմ զմեռելոտիդ: Եւ թագաւորն ասէ...»:

Բնագիրը գրուած է մատենիս 23—116 էջերը. կը յաջորդեն՝ ծանօթութիւններ ի մասին յոյն բնագրին (էջ 117—140), ձեռագրին նկարագրութիւնը (էջ 150—160), Բնագրին լեզուն (էջ 162—192), Յատուկ անուններու լուսաբանութիւնը (էջ 193—245). Յունաբանութիւնք բնագրին (Բառարան, էջ 427—438):

Թարգմանութիւնը կատարուած է հայ բնագրէ, իսկ թարգմանիչը յոյն է, որ թէպէտ ծանօթ եղած է հայ լեզուին, բայց թափանցած չէ լեզուին նկարագրական յատկութիւններու, ուստի ստիպուած է թարգմանել բառական (օրինակներ՝ էջ 246—260): Առաջին դէպքն է, որ հայ բնագիր մը կը թարգմանուի յունարէնի հայագէտ յոյնէ մը:

Յունարէն այս թարգմանութիւնը հիմ ծառայած է արաբերէն Վարքին, զոր Ն. Մառ երեւան հանեց Ս. Կատարինէ Վանքին Թ. 460 ձեռագրին մէջ, գրուած Թ. դարուն, եւ հրատարակեց հանդերձ ռուսերէն թարգմա-

նութեամբ. Н. Марръ, Крещеніе Армянъ, Грузинъ и Алановъ святымъ Григоріемъ: Записки Восточного Отдѣленія Импер. руск. Археолог. Общества, 16 (1905) 63—211. Նոյնը Հայերէնի թարգմանած Յուսիկ աբեղ.՝ Մկրտութիւն Հայոց Վրաց, Աբխազաց եւ Ալանաց ի Ս. Գրիգորէ. ի ռուս հրատարակութենէ կատարելոյ ըստ արաբերէն օրինակի յաւելուածով Ն. Մառէ. Վաղարշապատ 1911 (տպարան. Արարատ)։

Այս արաբերէն միակ ծանօթ ձեռագիրը պակասաւոր է սկիզբէն, չունի յունին 1—23 հատուածները։ Ժ. Գարիտ նպատակայարմար համարած է կցել զայն յունարէն բնագրին լատիներէն նոր թարգմանութեամբ (էջ 27—116)։ Մէն մի հատուածի տակը նշանակած է յունարէն Ագաթանգեղոսի եւ հայերէն սկզբնագրի համապատասխան տեղիքները։ Արաբ բնագրի մասին կարեւոր ծանօթութիւնները՝ էջ 16—18 եւ 141—149. յոյն բնագրին հետքերը արաբերէնի մէջ՝ էջ 261—268։

Կարեւոր գլուխ մըն է հրատարակութեանս մէջ գլուխ է. «Յունարէն Վարքի կազմութիւնը համեմատած միւս խմբագրութեանց հետ» (էջ 269—335), յատկապէս Հայերէնի, յոյն Ագաթանգեղոսի եւ արաբ թարգմանութեան հետ։ Նորագիւտ Վարքը զգալի շեղումներ ցոյց կու տայ հայ բնագրէն եւ յունարէն Ագաթանգեղոսէն,

նաեւ տարբերէն թարգմանութիւնէն։ Կան հոն հատուածներ որոնք կը պակսին միւս խմբագրութիւններուն. ունին անոնք իրենց կարգին հատուածներ, որոնք գոյութիւն չունին հոս։ Աչքի կը զարնեն մանաւորապէս յոյն եւ արաբ Վարքերու իրարմէ շեղումները, թէեւ երկուքն ալ մէկ հասարակաց բնագիր կ'ենթադրեն։ Յոյն վարքին միայն յատուկ է, օրինակի համար, Ս. Գրիգորի կնոջ վրայ խօսող հատուածը (§ 93—97)։ Երբ Գրիգոր հարցաքննուելէ վերջը Վիրապ կը նետուի, իր կինը, որ իր երկու զաւակներով (Արիստակէս եւ Վրթանէս) Վաղարշապատ կը գտնուէր, զգալով ինք զինքը վտանգուած՝ կ'առնէ զաւակներն եւ կը փախչի Կեսարիա Գրիգորի ծնողաց քով (§ 93)։ Հոն հոգ կը տանի, որ տղաք դաստիարակուին քրիստոնէաբար։ Գրիգորի պարագաները, որոնք զգածուած էին հաւատքի համար խոստովանողի հերոսական կեցուածքէն, ամէն կերպ կը նպաստեն անոր կնոջ (§ 94)։ Երբ կը լսէ Տիկինը, թէ Հայաստանի ներքին կացութիւնը կրած է յեղաշրջում, կը թողու իր զաւակները շարունակել իրենց ուսմանց ընթացքը եւ ինքը, առած հետը աղախին մը եւ երկու սպասաւորներ, կ'երթայ Վաղարշապատ։ Կը գտնէ իր ամուսինը, կը հաղորդէ իրեն զաւակներու մասին տեղեկութիւններ (§ 95)։ Գրիգոր պատշաճ չի տեսներ իր քով առնել ընտանիքը, մանաւանդ որ զաւակները

իրենց մօր քով չէին։ Թագաւորը, Թագուհին եւ Թագաւորին քոյրը երբ կ'իմանան Տիկնոջ գալուստը, կը փութան ողջունել զայն (§ 96)։ Գրիգոր կը յայտնէ անոնց, որ ինքը այլ եւս պիտի չապրի իր կնոջ հետ. եւ կ'առաջարկէ, որ ան ըլլայ Ս. Կուսանաց եկեղեցիներու սպասարկու. ան քրիստոնեայ է, կ'ըսէ, անոր սպասաւորներն ալ մկրտուած են եւ գիտեն կենդանի Աստուծոյ օրհներգութիւնները. ուստի կարող են անոնք կատարել այս պաշտօնը մինչեւ որ գայ քահանայ մը եւ ստանձնէ եկեղեցիներու հոգն եւ մկրտէ նորադարձները։ Թագաւորը, իր կինն եւ քոյրը կ'ընդունին այս առաջարկը եւ պատուով կը վերաբերուին Լուսաւորչի սուրբ կնոջ հետ, որուն անունն է Յուլիտտա (§ 97)։ Արաբական Վարքը չունի այս միջադէպը։ Ագաթանգեղոս, որ յանուանէ կը յիշէ Գրիգորի որդիները, խօսք չ'ըներ անոնց մօր մասին. Մ. Խորենացի (Բ. 80) զայն կ'անուանէ Մարիամ։ Որչափ ալ սրտառուչ երեւայ դրուագս, բայց հոն աւելի խմբագրին երեւակայութիւնը, քան պատմական իրողութիւն մը նկատելու է։ Եթէ ունէր Գրիգոր զաւակներ, ապա ունէ'ր նաեւ կին։ Բայց խնդրական են եւ մին եւ միւսը։

Գեղեցիկ է Վարքիս մէջ նաեւ Գրիգորի դէպի Կեսարիա ուղեւորութեան եւ վերադարձի նկարագրութիւնը, որ այս ձեւով կը պակսի Ագաթանգեղոսի մէջ (§ 123—147)։ Խմբագիրը իր երեւակայութեան մէջ ենթա—

գրած է Հայաստան, Կապպադովկիա եւ Կո-
ղոփենէ քրիստոնեայ աշխարհներ, ինչպէս էին
իր դարուն: Չեմ ուզեր աւելի մանրամա-
նութեանց մէջ մտնել:

Ուշագրաւ է կէտ մը: Յունարէն Ագա-
թանգեղոսի Լաւրենտեան VII 25 ձեռագիրը
ունի ընդարձակ հատուած մը (de Lagarde,
§ 2—9ա) «Ապստամբութիւն Արտաշրի ընդ-
դէմ Արտաւանայ», որ կը պակսի միւս հինգ
աւելի հնագոյն ձեռագիրներուն, ինչպէս եւ
հայ Ագաթանգեղոսին: Արդէն Գուտշմիդ հա-
մարած էր զայն օտարոտի: Այժմ Ժ. Գա-
րիտս ուշադիր կ'ընէ, որ այս հատուածին
յունարէնը այն յունարէնը չէ, որով գրուած
է յոյն Ագաթանգեղոսը. բայց կարի քաջ հա-
մապատասխան է այն յունարէնին, որ երեւան
կու գայ յոյն Վարքին մէջ: Միւս կողմէ,
ինչպէս նկատած է Նէօլդեկէ, այս հատուա-
ծին աղբիւր ծառայած է պահլաւերէն Կար-
նամակ–ի Արտաշիր–ի Պապական վէպը, հայ
միջնորդութեամբ: Իսկ վէպս հրապարակ
եկած է Սասանեան պետութեան վերջին եւ
արաբական տիրապետութեան առաջին շըր-
ջանին: Եթէ գրուածքս ըստ լեզուին՝ Վարքի
թարգմանչին կը վերաբերի, ի՞նչպէս եկած
կցուած է յոյն Ագաթանգեղոսին: Ժ. Գա-
րիտս չի համարձակիր դրական պատասխան
մը տալ այս հարցին (էջ 272—279):

Յոյն Վարքի մէջ փառագոյրը կը բացուի
եւ առաջին արարուածը կը սկսի. «Եւ յառաջ

մատեան սուրբն Գրիգորիոս. եւ ասէ ցնա թագաւորն...»: Երիգա, Անահտական մեհեանի հանդէսներէն կը սկսի Վարքը, ուղղակի Գրիգորի խոստովանողական հարցաքննութիւններէ, առանց յիշելու նախասոր դէպքերը, զորոնք կ՚ենթադրէ սակայն պատմութեան ընթացքը: Պէտք է ըսել, թէ պարափար-օրինակին մէջ գոյութիւն ունէր այս նախընթաց մասը: Եւ այս պարաբերէն բնագիրը չի կրնար վկայ կանչուիլ, քանի որ ենկած է անկէ սկզբնաւորութիւնը: Միւս կողմէ տարակոյս չկայ, թէ յոյն Վարքին այժմեան նախաբանը՝ «Ընդ ժամանական ընդ այնոսիկ — էր հալածումն մեծ քրիստոնէից» վկայաբանութիւններու շատ սովորական սկսուածք մը, փոխ առնուած է որ եւ է ուշ ժամանակի վկայաբանութենէ մը (էջ 279—286): Վարքս իր ամբողջութեան մէջ Հայ Ագաթանգեղոսի համառօտ խմբագրութիւն մը կը ներկայանայ: Այս համառօտութիւնը թարգմանչէ՞ն կատարուած է, թէ նա ունէր իր առջեւ օրինակ մը: Դժուար է ըսել: Աւելի մտացի պիտի ըլլայ այս Համառօտութիւնը յոյն խմբագրի մը վերագրել. այս խմբագիրը կարող է ըլլալ ինքնին թարգմանիչն եւ կամ ուրիշ մը, որ ձեռք խաղցուցած է արդէն թարգմանուած բնագրի վրայ: Երկրորդ ենթադրութիւնը աւելի հաւանական կ՚երեւայ, այնու որ արարականը կ՚ընծայէ բազմաթիւ էջեր, որոնք կը պակսին յոյնին եւ կրնան

նկատուիլ համառօտագին գործը (էջ 387—388)։ Այս դէպքին պէտք է ենթադրել, թէ նաեւ արաբ բնագրին վրայ նոյն խաղը խաղացուած է, քանի որ հոս ալ կը պակսին հատուածներ, որոնք գոյութիւն ունին յոյնին մէջ։ Աւելի խելացի է համարիլ թէ եղած է Ագաթանգեղոսի հայերէն համառօտ եւ արձակ խմբագրութիւն մը, որուն վրայէն թարգմանուած է յունարէնը. իսկ սա ալ ենթարկուած է համառօտութեան, իր կարգին նաեւ արաբերէնը կրած է կրճատումներ։

Թարգմանիչը, ինչպէս տեսանք, յոյն մըն է, տկար հայերէնագիտութեան մէջ։ Տեղ տեղ չէ կրցած լուծել հայերէն ինչ ինչ ասութիւններ. ուրիշ տեղեր հայերէնի յատուկ ոճաբանութիւններ թարգմանուած են բառական. իբրեւ օտար՝ անծանօթ եղած են իրեն հայ գաւառանուններ, որոնց տառադարձութիւնը կատարուած է անհասկացողութեամբ, այսպէս Մոկաց Μοχασῶν, Տայոց Ταιόσων եւ այլն (հմմտ. էջ 336—337)։

Որովհետեւ արաբերէն թարգմանութիւնը իր Զ—է դարէն կը կարծուի, հարկ է անոր յոյն գաղափար-օրինակը առ անագան է. դարու սկիզբը ենթադրել (էջ 336)։ Այս տեղ քննութեան կ՚առնէ Ն. Մառի (էջ 336—350) եւ Ն. Ադոնցի (էջ 351—353) տեսութիւնները նկատմամբ արաբերէն Վարքի թարգմանութեան ժամանակի. կը հերքէ զանոնք փաստացի։

Հայ Ագաթանգեղոսէն կոչումներ կը գտնուին Կնիք հաւատոյ հաւաքման մէջ. Երբեմն հնագոյն կոչումներ նկատի կ'առնէ եւ կը մատնանշէ անոնց տեղիքները Ագաթանգեղոսի մէջ (էջ 354—356):

Առանձին գլուխ մը (Թ. գլուխ, էջ 357—402) յատկացուցած է Լազարի հրատարակած բնագրին, որուն հիմն էր Laurent. VII 25: Այս բնագիրը կարօտ է սրբագրութեան համեմատութեամբ նոր յայտնուած աւելի հին օրինակներու: Ժ. Գարիտտ կը հրատարակէ հոս Vat. gr. 2302 եւ 1853 կրկնագիր հատակոտորները (էջ 358—388) եւ cod. Ottobr. gr. 373ի տարբերակները (էջ 388—402):

Ի վերջոյ նկատի կ'առնէ Գէորգ Արաբացւոց եպիսկոպոսի ասորերէն թուղթը եւ յառաջ կը բերէ թուղթէս այն հատուածները, ասորի բնագրով եւ լատիներէն թարգմանութեամբ, որոնք կը հային Ս. Գրիգոր Լուսաւորչի վարքին (հայերէն թարգմանութիւնը՝ Հ. Յ. Տաշեան, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց, Վիեննա 1891, էջ 4—10): Կան հոն տեղիքներ, որոնք կը համաձայնին մասամբ յոյն եւ մասամբ արաբ վարքին, կէտ մը մէջ նաեւ Եթովպականին (էջ 407—426):

Բառացանկ մը յուն. Վարքին եւ Անուանացանկ մը անուանց եւ կարեւոր նիւթոց

կը փակեն ծիրը այս գեղեցիկ աշխատասիրութեան:

Առանձին յօդուածի մը կը վերապահեմ քանի մը դիտողութիւններ ի մասին այստեղ չօշափուած հարցերու:

Սրտագին շնորհակալութիւն հայերէնագէտ եւ մեծարգոյ Տ. Ժ. Գարիտտի, որ իր անդրանիկ երկասիրութիւնը նուիրած է հայ սրտին այնքան մօտիկ Ագաթանգեղոսի Պատմութեան, նոր երկասիրութեան հետ ընծայելով մեզի նաեւ նորագիւտ բնագիր մը Հայոց Լուսաւորչի Վարքին:

### ՅԱՒԵԼՈՒԱԾ ՅԷՋՆ 6. ՏՈՂ 10

Յունարէն բնագրիս արաբերէն թարգմանութիւնը երեւան բերաւ Սինայի լեռան 1328/9ին գրուած Թ. 395 ձեռագրին մէջ G. Garitte, Une version arabe de l'«Agathange» grec dans le Sin. ar. 395: Muséon 63 (1950) 231–247, յատկապէս էջ 242—247. Ուշագրութեան արժանի է, որ այս տեղ կը պակսի de Lagardeի հրատարակութեան նախերգանքը, այսինքն Արտաշիր Բաբականի վէպը, ինչպէս չունէին զայն նաեւ յունարէն միւս ձեռագիրները:



## ԻԴ.

# Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ՏՕՆԵՐԸ ՆԵԱՊՈԼԻՍԻ ՄԱՐՄԱՐԵԱՅ ՏՕՆԱՑՈՅՑԻՆ ՎՐԱՅ

---

## ԻԴ.

# Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ՏՕՆԵՐԸ ՆԷԱՊՈԼԻՍԻ ՄԱՐՄԱՐԵԱՅ ՏՕՆԱՑՈՅՑԻՆ ՎՐԱՅ

Ի Նէապոլիս 1742ին, երբ կը նորոգուէր տեղւոյն San Giovani Maggiore եկեղեցին, երեւան եկած էին երկու մեծ մարմարեայ տախտակներ, իւրաքանչիւրն 5 հմ. 50 մեծութեամբ, բաժնուած 6 խորաններու, անջատուած սիւնակներով, որոնց վրայ փորագրուած էր տարւոյն 12 ամիսներու Տօնացոյցը: Այս Ցիշատակարանը ապա փոխադրուած է քաղաքին արքեպիսկոպոսարանի մատուռը եւ ագուցուած երկու կողմնակի պատերու վրայ: Տախտակներուն վերին լուսանցքները զարդարուած էին քանդակազարդերով[1]:

Շատեր զբաղած են այս արձանագրութեամբ: Ես ունիմ աչքի առջեւ H. Delehayeի[2] հրատարակութիւնը, որ տուած է խնամով Տօնացոյցի ամբողջական բնագիրը: Արձանագրութիւնս քանդակուած ըլլալու է

[1] E. Bertaux, L'art dans l'Italie méridionale, t. I (Paris 1904). p. 76 - 79.

[2] H. Delehaye, Hagiographie Napolitaine, I, Le calendrier de marbre: Analecta Bollandiana 57 (1939) 5—64.

821էն ոչ շատ ուշ․ վասն զի հոն յիշուած Նէապոլիսի վերջին եպիսկոպոսն է Պաւղոս Գ․ † 821ին (անդ, էջ 59)։ Այս տեղ կը կարդանք մեզի համար հետաքրքրական հետեւեալ չորս տեղիքները․

ԱՄԻՍ ՍԵՊՏԵՄԲԵՐԻ

XXVIII PAssio S. RIPSIMI GAINI.
XXX S. IERONimi ET S. GREGORii EPIscopi DE ARMENIa

ԱՄԻՍ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ

II Passio S GREGORII EPIscopi
III Passio GREGORII DE ARMEnia

H. Delehaye իր ծանօթութիւններու մէջ (էջ 35) կը գրէ թէ Ս․ Հռիփսիմէի, Գայիանէի եւ Ս․ Գրիգորի այս տօները ծանօթ են արդէն Յունաց Յայսմաւուրքէն, ուր Սեպտեմբեր 30ին կը նշանակուի․ Γρηγορίου Γαϊανῆς καὶ Ῥιψιμίας եւ տօնելի են նաեւ այսօր։ Բայց քննութեան կարօտ կը մնան Դեկտ․ 2ին եւ 3ին նշանակուած տօնակատարութիւնները․ առաջինը հաւանօրէն նախատօնակ նկատելու է (էջ 42)։

Այս կէտին լուսաբանութեան նուիրած է P. Peeters առանձին յօդուած մը[3]․ կը յանգի այն եզրակացութեան, թէ Դեկտ․ 2—3ին նկատի առնուած է Տօնն Ծողակաթի, որ կը տօնուէր Հայոց քով Քաղոց ամսոյն 10 կամ

[3] P. Peeters, S. Grégoire l'Illuminateur dans le calendrier lapidaire de Naples: Ann. Boll. 60 (1942) 81–130.

11ին. այս օրերը շարժական տոմարի 496—500 (կամ 500—504) տարիներուն կը համընդիպէին յուլեան տոմարի Դեկտ. 3 (կամ 2)ին (էջ 117—118)։ Բայց ապացոյցի կարօտ կը մնայ, թէ այդ տարւոյն Ցողակաթի տօնը տօնելի՞ էր Հայոց քով, եւ այն իբրեւ տօն Ս. Գրիգորի. եւ եթէ այո՛, կարո՞ղ էր այն այդ տարւոյն մուտ գտած ըլլալ Նէապոլիս։

Հարցին աւելի նպաստաւոր լուծում տալու համար հարկաւոր է նկատի առնել նախ, թէ մինչեւ Զ. դար գոյութիւն ունէ՞ր Հայոց քով Ս. Գրիգոր Լուսաւորչի ի պատիւ տօնախմբութիւն. երկրորդ Զ.—Թ. դարերուն ի՞նչ էր Հայոց ըմբռնումը Ս. Գրիգոր Լուսաւորչի մասին, եւ ի՞նչ նոր տօներ հրապարակ եկան այս շրջանին. եւ երրորդ՝ ընդունուա՞ծ էր Ս. Գրիգորի պաշտօնը Հայաստանէն դուրս։

«Հանդէս Ամսօրեայ» 1947, էջ 401—432 մատնանիշ ըրած էի, թէ քրիստոնէութեան մուտքն ի Հայս տեղի ունեցած էր 218/219ին քարոզութեամբ Հռիփսիմէի, իսկ Գրիգոր Լուսաւորչի առաքելական գործունէութիւնը սկսած 219/220ին։ Ճշդիւ չենք կրնար նշել, թէ ո՞ր տարւոյն վախճանած են Ս. Հռիփսիմէ եւ Ս. Գայիանէ. յամենայն դէպս պէտք է ենթադրել թէ Ս. Հռիփսիմէի մահը պատահած ըլլալու է 250էն յառաջ, Հոռի 26ին[4]։

---

[4] Ագաթ. 112. «Արդ ի ԻԶ. ամսոյն հոռի կատարեցաւ սուրբն Հռիփսիմէ... եւ ի ԻԷ. ամսոյն հոռի՝ սուրբն Գայանէ... եւ առին զպսակն յաղթութեան»։

Իսկ Ս. Գրիգոր պէտք է վախճանած ըլլայ 249/250ին: Տրդատ Թագաւոր 252/253ին, երբ Շապուհ Ա. մտաւ Հայաստան, փնտռեց ապաստան Հռոմայեցւոց քով եւ վախճանեցաւ լոկ ամենայն հաւանականութեան օտարութեան մէջ: Չորս դէմքեր, որոնք երախտաւոր եղած էին ի նպաստ քրիստոնէութեան, երախտագէտ ունեցան քրիստոնեայ Հայաստանը, որ անմահացուց իրենց յիշատակը հաստատելով տօներ եւ կանգնելով եկեղեցիներ:

Փաւստոս Գ. 14 խօսելով Տարօնի ուխտատեղիներու մասին կը գրէ ի մէջ այլոց. «Արդ այս տեղիք վասն յառաջակարգութեան կանոնաւ ի հայրապետացն եւ ի թագաւորացն պատուեալք լինէին. որպէս ի Դարանաղեաց գաւառին [յ]եկեղեցին Թորդանու պատուէ[ն] վասն գերեզմանացն հայրապետին Գրիգորի եւ Արիստակէսի: Սոյնպէս եւ գյիշատակս (!) թագաւորին Տրդատայ թէ կամօք թէ ակամայ, որ արժանի լեալ էր նախածանօթ[5] ի Քրիստոսն հաւատոց. վասն այսորիկ կամ եղեւ աշխարհին գնախնեաց ժամանակին հարանց եպիսկոպոսաց զայս տեղիս պատուել, որ ոսկր եղեալն էին. զի սիրելի էր աշխարհին պատուել զյառաջընծայն Քրիստոսի զթագաւորն իւրեանց Տրդատ. նոյնպէս եւ զյառաջ-

[5] Հմմտ. Ա. Թագ. Գ. 7. «Եւ Սամուէլ նախածանօթ էր Աստուծոյ» եւ Ագաթ. Վարդ. 362. «Սինհարիոտկան հրամանաւ տաքեալցն՝ նախածանօթ մատուցելոցն հեթանոսաց զթեթեւայգնոն ուանդեալ»:

եպիսկոպոսն, զնախամատակն Գրիգորի(ո)ս. նոյնպէս եւ ի գաւառ(ի)ն Այրարատեան զնախավկայն Քրիստոսի ուր Գայիանէն եւ Հռիփսիմէն կային իւրեանց գործակցօքն հանդերձ. նոյնպէս տօնել եւ զնախնեկեղեցին»:

Այս յայտնապէս ու ժամանակի խմբագրութեանց ենթարկուած հատուածէն սկըզբնականին մնացորդ կը համարիմ միայն տեղիքս. «Սիրելի էր աշխարհին պատուել յԱյրարատեան գաւառին զյառաջընծայն Քրիստոսի զթագաւորն Տրդատ, նոյնպէս եւ զյառաջեպիսկոպոսն Գրիգորի(ո)ս եւ զնախավկայն Հռիփսիմէ եւ Գայիանէ»: Հին էր Հռիփսիմէի Եկեղեցին. ըստ վկայութեան Կոմիտաս կաթողիկոսի, 618ին երբ բացուեցաւ անոր շիրիմը, գտնուեցան հոն Ս. Գրիգորի եւ Ս. Սահակի կնիքները[6]: Նոյնպէս հին էր Գայիանէի եկեղեցին, որ 630ին Եզրի կողմէ կը նորոգուի[7]:

Ս. Գրիգորի նշխարները հանգուցուած էին Բագաւանի եկեղեցւոյն մէջ: Այս մասին հաւաստի վկայութիւն ունինք Ղ. Փարպեցւոյ քով, որ կը գրէր 500ի սկիզբը, երբ անծանօթ էր իրեն տակաւին Ագաթանգեղոսը: Ղ. Փարպեցի կը գրէ. Ներսէհ Կամսարական, որ իր եղբօր Հրահատի Պարսիկներէ գերի բռնուած ըլլալու վրայ վշտահար էր,

[6] Սեբէոս, էջ 88—89:
[7] Յովհ. Դրասխանակերտցի, էջ 80 (հրտ. Ղուկ.):

կը հետեւէր Պարսից գնդին, յուսով, թէ պատեհու մը կարող է ազատել իր եղբայրը. «Եւ մերձեալք որպէս թէ օթեւանս միով ի սուրբ տեղի տան նահատակին Գրիգորի ի գեօղն որ անուանեալ կոչի Բագաւան եւ տեսեալ Կամսարականին Ներսեհի զտեղին նահատակին Գրիգորի եւ յիշելով զորոմակցութիւն սրբոց ընդ վշտացեալս եւ զհամարձակութիւն սրբոյ առն Գրիգորի առ Աստուած, ձայն սաստիկ բարբառոյ հանդերձ արտասուօք արձակեալ առ այրն Աստուծոյ՝ աղաղակեաց ասելով. Տէր Գրիգոր, որ զսաստիկ մէգ ամբարշտութեանն մեղաց մերոց մերժեալ փարատեցեր յաշխարհէս Հայոց, փարատեա եւ զիմ սաստիկ մէգս տրտմութեանս ի սրտէս եւ շնորհեա ինձ զանձկալի զեղբայրն իմ տեսանել առողջ առ իս. քանզի հնարաւոր է Աստուծոյ ամենայն, եւ դու խնդիր քաջ ախորժելով կամի լսել եւ կատարէ: Եւ այսպէս մեծաձայն բարբառով եւ ողբալով աղաղակեաց Կամսարականն Ներսեհ առ այրն Աստուծոյ Գրիգորիոս. ոչ թէ բերանով բարբառէր, այլ սրտին աղաղակէր: Եւ նորա լուեալ՝ վաղվաղակի ասաց ցՔրիստոս. եւ Փրկչին Աստուծոյ անդ եւ անդ հանեալ զկապեալն Հրահատ ի շրջափակ զգուշութենէ պահապանացն՝ արձակէ խաղաղութեամբ առ սիրելի եղբայրն իւր եւ յաշխարհ» (Փարպ., էջ 139 տպ. Մալխասեան):

Նոյն պատերազմի ընթացքին կը նահատակուի Սիւնի Յազդ սեպուհը «մերձ ի տեղի

սուրբ մատրանն առաքելանման նահատակին սրբոյն Գրիգորի, ի գեօղն որ կոչի Բագաւան, ի նահանգին Բագրեւանդայ, ի յանջակողման լերինն որ անուանի Նպատ, մօտ ի սուրբ տեղի մատրանն որպէս երկու քարընկեցօք: Եւ կատարեալ սրբոյ Սիւնի սեպհին Յազդայ զընթացս նահատակութեան իւրոյ յամսեանն հոռի, որ օր ԺԶ. էր ամսոյն, եւ ամփոփեալ նշխարք նորա եդան ի սուրբ մատրանն Գրիգորի» (էջ 140—141):

Ս. Գրիգորի նշխարները մասնաւոր յարգութեան առարկայ էին, պահուած շարժական արկղիկի մը մէջ: Նոյն պատմագիրը կը պատմէ, թէ 450ին երբ հայ նախարարները Տիզբոնէն գալով Հայաստան հասան, զանոնք զիմաւորեցին «զսուրբ պաշտօնէիցն Քրիստոսի բերելով ընդ իւրեանս զնշան կենսատու խաչին եւ զնշխարս սրբոյ առաքելանման նահատակին Գրիգորի» (էջ 55). եւ դարձեալ 485ին երբ Վահան Մամիկոնեան իբրեւ սպարապետ Հայոց եւ մարզպան կը վերադառնար Տիզբոնէն, իրեն ընդ առաջ եկաւ Հայոց Յովհաննէս Ա. կաթողիկոս «պատուական նշանաւ Խաչին եւ սուրբ Նշխարօքն ճգնազգեաց նահատակին Գրիգորի»:

Բագաւան Եփրատի վրայ շինուած էր. եւ գիտենք Փաւստոսէն, թէ հոն «ուստի բղխեալ հոսեն ակունք Եփրատ գետոյն», «յառաջու կայանքն էին մեծին Գրիգորի առաջնոյ, որում տեղեացն Ոսկիք կոչեն», Ծաղկոտն գաւառի մէջ (Փաւստ. Զ. 16):

Ուստի զարմանալի չէ, որ յետ մահուան նշխարքները ամփոփուած ըլլային Բագաւան:

Դ. Փարպեցւոյ վերոյիշեալ վկայութիւնը ոչ միայն կը հաստատէ, թէ Ե. դարուն կար յանուն Գրիգորի մատուռ մը ի Բագաւան, այլ եւ թէ կար հայ սրտին մէջ Գրիգորի պաշտամունք: Դժբախտաբար չունինք որ եւ է կռուան, հաստատելու թէ տարւոյն ո՛ր օրը սահմանուած էր Լուսաւորչի յիշատակին. սակայն այն աներկբայելի է, թէ սուրբ մը, որ ունէր իր անուան նուիրուած եկեղեցի, պէտք է ունենար իր յիշատակին ձօնուած օր մ՚ալ: Հաւանօրէն այդ օրը կ՚իյնար Նաւասարդեան տօներուն. ի Բագաւան աշխարհովին կը հաւաքուէին Նաւասարդի առաջին օրերուն տօնախմբելու Յովհաննու Մկրտչին յիշատակը. անշուշտ այս առիթով կը տօնուէր նաեւ Հայոց Լուսաւորչի յիշատակը:

Բացի Բագաւանէ կար յանուն Գրիգորի եկեղեցի նաեւ Դուին. որ, ինչպէս կ՚ըսուի, կ՚այրի փայտաշէն ըլլալուն 572ին հայ–պարսկական կռիւներու ժամանակ[8] եւ 608ին կը շինուի վերստին[9]: Նոյն Է. դարու կէսին կը կառուցանէ Ներսէս Շինող Ս. Գրիգորի ուրիշ եկեղեցի մը «յանուն երկնաւոր Զուարթնոցն, որոց երեւեալ ի տեսլեան Ս. Գրիգորի[10]».

---

[8] Սեբէոս, 26, 53. Գիրք Թղթոց, 93:
[9] Սեբէոս, 64, 78. Գիրք Թղթոց, 190/91:
[10] Սեբէոս, էջ 119. 151:

այս առթիւ հաւանօրէն կարգուած է տօնն Ծողակաթին։ Ագուանից Պատմութիւնը կը յիշէ 557—570 տարիներուն, Յովհաննէս Բ. կաթողիկոսի օրով, Ս. Գրիգորի նշխարներէն մասի մը փոխադրութիւնն Ագուանք[11], որ խօսքն առանց տարակուսի Բագաւանի մատրան մէջ պահուած նշխարներու մասին է։

Հակառակ այս տեղեկութիւններու, որոնք այսպէս ըսուած «Պարսկահայաստանէն» կը բղխեն, նոր ձայներ կը լսուին, Ե. դարու վերջաւորին «Հռոմէական Հայաստանէն»։ Գառնիկ անուն ճգնաւորի մը ի տեսլեան կը յայտնուի, կ'ըսեն, թէ Ս. Գրիգորի Նշխարները կը գտնուին Դարանաղեաց Մանեայ այրք լեռան վրայ։ Գրիգոր Լուսաւորիչ, որ ըստ Ագաթանգեղեայ առանձնացած էր նոյն լեռան վրայ, հոն ալ վախճանած էր իբրեւ անծանօթ եւ թաղուած հովիւներու ձեռքով։ Գառնիկ կը փութայ բարձրանալ իրեն մատնանշուած վայրը, կը յայտնաբերէ Ս. Նշխարներն եւ կը բերէ, կը հանգուցանէ Թորդան աւանի մէջ, ուր ապա եկեղեցի կը շինուի։ Այս նորագիւտ Նշխարներէն մաս մը կը ստանայ նաեւ Զենոն կայսր։

Թէ այս համբաւը ի՞նչ ընդունելութիւն գտաւ Դունայ կաթողիկոսարանը, յայտնի չէ։ Բայց գիտենք թէ մեծ ազդեցութիւն գործեց ան յաջորդ դարերու վրայ։ Փաւստոսի

---

11 Մովսէս Դասխուրանցի («Կաղանկատուացի»), Ա. 20. էջ 50 (հրտ. Էմինի)։

խմբագրին[12] ծանօթ եղած է Նշխարաց գոյութիւնն Թորդան, անոր գիւղը արձանագրած է Մ. Խորենացի իր Պատմութեան մէջ[13]:

Հին սովորութիւն էր Նշխարաց Գիւտի առթիւ գրել նաեւ Սուրբին Պատմութիւնը: Հապճեպ խմբագրութեամբ մը հրապարակ հանուեցաւ նաեւ Ս. Գրիգորի Պատմութիւնը «Ագաթանգեղոսի» անուան տակ: Չեմ տարակուսիր, թէ այս խմբագրութիւնը լոյս տեսաւ Թորդան եւ անոր խմբագիրն էր նոյն ինքն Գառնիկ: Հոռմէական Հայաստան իր 100 ամեայ տարեդարձին (385—485) պէտք է հրաւիրէր իր վրայ ուշադրութիւն, թէ ինքն ալ երբեմն մասն կը կազմէր Մեծ Հայաստանին, իր ալ հայրն էր Գրիգոր Լուսաւորիչ, որ ոչ միայն իր առաքելական գործունէութիւնն Հոռմէական Հայաստանէն սկսած էր, այլ եւ իր կեանքի վերջին տարիները հոն անցուցած եւ հոն ալ վախճանած էր: Այս ձգտումը Ագաթանգեղոսի մատեանին մէջ կարմիր գծով կ'ընթանայ: Գրիգոր, որ կ'ընկերանար Տրդատի Հոռմէն սկսեալ, կը հասնի Եկեղեաց Երէզն աւանն եւ հոն կ'ենթարկուի, իր քրիստոնեայ ըլլալուն պատճառաւ, հարցաքննութեան: Վիրապէն ելլելէն ետքը երբ կը ձեռնարկէ մեհեանները քակել, Արտա—

12 Փաւստոս Գ. 14. ինչպէս տեսանք. «Եկեղեցին Թորդանու պատուի վասն գերեզմանացն Գրիգորի հայրապետին եւ Արիստակէսի». ուստի կ'ենթադրէ թէ հոն զետեղուած են նորագիւտ նշխարք:

13 Մ. Խոր. 91:

չատի Անահտական բագինը կործանելէ ետքն «երթայր հասանէր ի Դարանաղեաց գաւառն, որ էր ի գեօղն Թորդան», ուր կը քակէ Բարշամինայ դից մեհեանը, «ապա երթեալ հասանէր յամուր տեղին անուանեալ Անի», ուր կը կործանէ Արամազդի մեհեանը, անկէ «ի սահմանակից գաւառն Եկեղեաց եկանէր» եւ կը բանայ Երէզն աւանի Անահիտի մեհեանը, անկէ կ'անցնի Թիլ աւան եւ կը կործանէ Նանէական մեհեանը. «ապա փութացեալ հասանէր ի գաւառն Դերջան», քանդելու Միհրական մեհեանը Բագայառիճ գիւղի մէջ: Անկէ կը վերադառնայ Վաղարշապատ (Ագ. 407—412): Գրիգոր երբ Կեսարիա կ'ուղարկուի եպիսկոպոսական ձեռնադրութեան համար (413—420), վերադարձը կ'ընէ Սեբաստիայի վրայէն եւ կը մտնէ Տարօն (420/421): Գրիգոր Հայաստանի մէջ աւարտելով իր քարոզութեան ընթացքն անձնատուր կ'ըլլայ մենակեցական կեանքի: Իր որդիք Կեսարիայէն կը բերուին: Թագաւորն «նոքօք հանդերձ ի խնդիր եկանէր սրբոյն Գրիգորի՝ ուր եւ գտցէ: Եւ եկեալ գտանէին ի Դարանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մանեայ այրք, յանապատին» (452): Գրիգոր առաջնորդական իշխանութիւնը կը փոխանցէ Արիստակէսի: Թէպէտ թագաւորին հետ կ'ուղեկցի դէպ ի Հռոմ յայցելութիւն Կոստանդիանոսի, բայց վերադարձին դարձեալ կը քաշուի իր միանձնարանը. «մինչեւ ի վախճան կատարածին գայս առնէր ամ յամէ,

եւ թաղեալ ի սէրն Քրիստոսի լուսաւորէր» (468)։ Այս տեղ կը վերջացնէ Ագաթանգեղոս իր Պատմութիւնը, առանց խօսք ընելու Գրիգորի մահուան մասին։

Ագաթանգեղոսի մատեանն ուրիշ նպատակ չէ հետապնդած, բայց եթէ հող պատրաստել Գանիկի Տեսիլքին համար, Գրիգորի Նշխարաց գիւտը արժանահաւատ ընծայելու համար։ Խմբագիրը պատմական կռուաններու համար դիմած է Փաւստոսի, իսկ Գրիգորի առաքելական գործունէութիւնն եւ ներքին կեանքն ուրուագծելու համար կաղապար առած է Մաշտոցի Վարքը, զոր գրած էր Կորիւն, արտորանքին մէջ զայն նոյն իսկ բառ առ բառ օրինակած է, սակայն փոփոխութիւններով պատշաճեցնելով Գրիգորի կեանքի հանգամանքներուն։

Ինձ կը թուի, թէ Ագաթանգեղոսի այս մատեանը դար մը բովանդակ մնացած է ընդ գրուանաւ, զոնէ դուրս չէ ելած Հռոմէական Հայաստանի սահմաններէն, չէ հասած Հայաստանի պարսկական բաժինը։ Առաջին անգամ կը տեսնեմ զայն Տարօնի Մամիկոնեանց Կոմիտաս եպիսկոպոսին ձեռքը։ Տարօն 591ին կցուած էր Հռոմէական Հայաստանին. իսկ 604ին բովանդակ Հռոմէական Հայաստան նուաճուած էր Խոսրով Բ.էն եւ միացուած Պարսկահայաստանին։ 614ին, երբ Կոմիտաս ընտրուեցաւ կաթողիկոս, իր թեւարկութեան տակ առաւ Մեծ Հայաստանը 385ի սահմաններու մէջ։ Այս այն շրջանն է հայ մշակոյթի

պատմութեան մէջ, երբ երկու կողման ալ մտաւոր ստեղծագործութիւնները մատչելի եղան ընդհանուրին, իսկ Ագաթանգեղոսի մատեանը նկատուեցաւ անշուշտ նոր յայտնութիւն եւ գտաւ գրկաբաց ընդունելութիւն։ Տեղւոյս չէ այս մասին աւելի ծանրանալ։ Յունարէն Ագաթանգեղոսը լոյս տեսած էր հաւանօրէն աւելի կանուխ, թարգմանուած Հռոմէական Հայաստանի մէջ։

Ագաթանգեղոս միանգամ Դունոյ կաթողիկոսարանին կողմէ իբրեւ արժանահաւատ գնահատուած՝ եղաւ այնուհետեւ կանոն առնելեաց։ Յեցած այս Պատմութեան վրայ մտցուց Հայոց եկեղեցին յաջորդ դարերուն եկեղեցական տարւոյ մէջ նոր տօներ։ Տօներու կարգադրութեան համար վաստակաւոր եղաւ իբր 740ին Սողոմոն Մաքենոցաց հայրը, որուն համար կ՚ըսուի թէ յօրինած է Տօն(ն)ամակ մը, որ հաւանօրէն նոյն է այն Ճառընտիրին հետ, որ ժամանակ մը կը պահուէր Տարօնի Առաքելոց վանքին մէջ եւ այժմ կը գտնուի Երեւան Պետ. Մատենադարանի մէջ (Նախկին Պետ. Թանգարանի Թ. 78, գրուած 1202ին)։ Դժբախտաբար այժմ չունիմ այդ հոյակապ ձեռագրին ցուցակագրութիւնս, զոր կազմած էին 1925ին Երեւան, ճշդելու համար թէ հոն Գրիգոր Լուսաւորչի յիշատակին ի՞նչ տօներ արձանագրուած են։ Ուրիշ Տօնական մը, Ատոմագիր անունով, կը վերագրուի Ատոմայ Վանքին Գագիկ հօր (իբր 873ին)։

*Այս տեղ պիտի յիշեմ Երուսաղեմեան ճաշոցի, Գրիգոր Վկայասէրի ճաշոցին եւ ԺԳ. դարէ երկու Տօնացոյցներու Գրիգոր Լուսաւորչին հայող տօները:*

1. *Ճաշոց Երուսաղէմի Թ.* 121 *յամէ* 1192:

ա. *Սահմի Ժ. Գրիգորի Լուսաւորչի Ելն ի Վիրապէն ի վեցերորդում շաբաթին (Աղուհացիցն Ե. Կիւրակէին):*

2. *Ճաշոց. Թ.* 1 *Լեւոնեան վարժարանին ի Հռոմ* (*յամէ* 1302):

ա. *Զ. շաբաթուն Շր. աւուրն (Ե. Կիր. Շաբաթուն Աղուհացից) Ս. Գրիգորի Գիւտ Նշխարացն:*

3. *Ճաշոց Գր. Վկայասիրին. Թ.* 2 *Լեւոնեան Վարժարանին ի Հռոմ, յամէ* 1230:

ա. *...Գրիգոր Լուսաւորչի Մուտն ի Վիրապն (Ե. Կիւրակէ Աղուհացիցն, Շաբաթ)*[14]:

բ. *Հոռի ԻԶ. Վկայութիւն Հռիփսիմեանց Կուսանացն (Ա. Բշ. զկնի Պենտակոստէից):*

գ. *Հոռի Իէ. Վկայութիւն Գայիանեանցն (Ա. Գշ. զկնի Պենտակոստէից):*

դ. *Սահմի Ժ. Գրիգոր Լուսաւորչի Ելն ի Վիրապէն (Ա. Շր. զկնի Պենտակոստէից):*

ե. *Տրէ Ժ. Գիւտ Նշխարաց Ս. Գրիգորի Լուս. (Գ. Շր. զկնի Պենտակոստէից):*

զ. *Տրէ ԻԱ. Տրդատայ Թագաւորի, Աշխէնի տիկնոջ եւ Խոսրովիդխտոյ:*

է. *Քաղոց Ժ. Դեկտ. ԺԹ. Տեսիլ Ս. Գրիգորի (Տօն Շողակաթին) (Ե. Շր. զկնի Վարդավառին):*

---

[14] *Ձեռագիրը սկզբէն պակասաւոր է: Երկրորդ բաժնին մէջ (Թղ. 74ա, տօնք «Հոռոմ ամսոյն») կը նշանակուի «Զ. Շր. (այն է Ե. Կիր. Շր. Աղուհացիցն) Ս. Գրիգորի (Մուտն ի Վիրապն), գտանես ի Տրէ Ժ.ի Հայ ամիսն գրած է», այսինքն կանոնն Ելն ի Վիրապէն:*

ը· Սեպտ. Լ· Գիւտ Նշխարաց Ս· Գրիգորիսի Աղաւնից (sic) կաթողիկոսի, թոռին Ս· Գրիգորի· եւ յիշատակ Ս· հաւրն Թաթլոյ...։

4· Տօնացոյց (Ձեռագիրք Մ· Գաբրիէլեանի, Թ· 6· Բէյրութ· ԺԴ· դարէն)։

Ե· Տր. Աղուհացից, Ս· Գրիգորի մերոյ Լուսաւորչին՝ Մուտն ի Վիրապն[15]։

ա· Ա· Կիր· զկնի Պենտ. Բչ· Հռիփսիմեանց· եւ է ի Հոռի ԻԶ։

բ· Ա· Կիր· զկնի Պենտ. Գչ· Գայիանեանց, եւ է ի Հոռի Իէ։

գ· Ա. Կիր· զկնի Պենտ· Տր· Ս· Գրիգորի Ելն ի Վիրապէն· եւ է Սահմի Ժ։

դ· Գ· Կիր· զկնի Պենտ. Տր· Գիւտ Նշխարաց Ս· Գրիգորի Լուս· եւ է Տրէ Ժ։

ե· Դ· Կիր· զկնի Վարդավառին· Տր· Շողակաթին Տեսլեան Ս· Գր· Լուս·։

զ· Հոռի ԻԱ. Սեպտ· Լ· Գիւտ Նշխարաց Ս· Գրիգորիսի Աղուանից Կաթ·ի։

5· Տօնացոյց Հայոց եւ Հոռոմոց ամսովք· Ձեռ· Մ· Գաբրիէլեանի· Թ· 6 (ըստ Յովհ. Սարկաւագի)։

ա· Հոռի ԻԱ· Սեպտ· Լ· Ննջումն Գրիգորի Հայոց Լուսաւորչի։ Յայսմ աւուր Գրիգորի Աղուանից կաթողիկոսի։

բ· Սահմի Դ. Հոկտ· ԺԳ· Կարպոսի...։ Գրիգոր Լուս· Ելն ի Վիրապէն։

գ· Սահմի ԻԲ· Հոկտ· ԼԱ· Եպիմաքոսի. եւ Գրիգորի Լուս· Ա· Գիւտ Նշխարաց։

դ· Տրէ ԻԹ· Դեկտ· Է. Ամբրոսոսի եպ·։ Նահատակութիւն Գրիգորի Լուս·։

Յետոյ աւելցուած՝

ե· Հոռի ԻԶ· Փետր· Ե· Հռիփսիմեանց։

զ· Հոռի Իէ. Փետր· Գ· Գայիանեա եւ Ընկերաց նորա։

---

[15] Ձեռագրին մէջ սկիզբը կը պակսի· առ Վիեննայի Թ· 632 ձեռագրէ (յամէ 1640)։

6· Վատիկանեան Թ· 3 Տօնք սրբոց վկայից Քրիստոսի ըստ Հռոմի ամսոյ· որ կատարի ի փառս Քրիստոսի:

Սեպտ· Լ· Գիւտ Նշխարաց Գրիգորիսի Աղուանից կաթողիկոսի:

Ինչպէս կը տեսնուի այս տօնացուցակէն, Գրիգորիս Վկայասէրի Ճաշոցն եւ Տօնացոյցը կը համընթանան հաւասար քայլերով: Չենք կրնար ըսել, թէ Գրիգորիս Վկայասէր առաջինն եղաւ, որ այս կարգադրութիւնն ըրաւ ազատ կամքով, այլ ան պէտք է հետեւած ըլլայ սովորութեան մը, որ գոյութիւն ունէր իրմէ յառաջ· անոր հնութիւնը ի վիճակի չենք ժամանակով սահմանել: Նէապոլսոյ Տօնացոյցը կը թելադրէ ժամանակն առ անագան Ը· դարու վերջերը ենթադրել· թէպէտ Ս· Գրիգորի Նշխարաց Բ· Գիւտի Պատմութեան մէջ կ'ըսուի, թէ այն տեղի ունեցած է Կ·Պոլիս Ս· Երրորդութիւն եկեղեցւոյ մէջ Միքայէլ Կայսեր (842—867) օրով եւ հաղորդուած է Հայոց 876 տարւոյն· եւ կ'աւելցուի վերջաւորութեան թէ «իրագործեցան ասացեալքս ի քառասներորդն մեծի պասեքին, ի հինգերորդումն շաբաթուն, ի ժամանակս տեառն Գէորգայ Հայոց կաթողիկոսի եւ Աշոտոյ բարեպաշտի կարգեցաւ տօն Ս· Գրիգորի» (Հայապատում, էջ 265): Այսպէս նշանակած էր վերը Լեւոնեան Վարժարանի Թ· 1 Ճաշոցը:

Այս տօներէն նկատի պիտի առնեմ հոս միայն առաջին հինգը· որոնց ժամանակա-

գրութեան հիմ ծառայած է, ինչպէս ինձ կը թուի, Ս. Հռիփսիմէի Վկայութեան օրը, զոր Ագաթանգեղոս, հաւանօրէն հին աղբիւրէ մ՚առնելով, նշանակած է «Հոռի ԻԶ»: Հռիփսիմէ եւ Ընկերք նահատակուած էին Գրիգորի Վիրապէն ելլելէն 9 օր յառաջ[16]. այս պատճառով ալ Ելն ի Վիրապէն տօնելի օր հրատարակուած է նոյն շաբաթուան շաբաթ օրը:

Հոռի ԻԶ հայկական շարժական տօմարի համաձայն կը համապատասխանէր Յունիս 1ին 936—939 տարիներուն: Իսկ Եկեղեցական տարւոյ մէջ Հոռի կը զուգակշռուէր Յունիս—Յուլիս ամիսներու հետ[17]:

Գրիգոր Վիրապի մէջ անցուցած էր 15 տարի, այս ինքն 14 ամբողջ, իսկ 15րդին ելած էր: Նկատի առնելով այս տուեալը Տօնացոյցի կարգաւորողը՝ ընթացած է դէպի ետ 14 ամիս, այն է տարի մը եւ 2 ամիս նշանակելու համար Մուտն ի Վիրապն: Բայց տօները պէտք է դասաւորուէին հայկական շարժական տօմարին մէջ ոչ թէ ամսական օրերու, այլ Զատկական տարւոյն շաբաթական օրերու համաձայն. ուր սակայն նկատի առնուած 61րդ օրը կը զուգադիպէր Զատկի շաբթուն. իսկ վաղնջուց ընդունուած սովորութիւնը կը պահանջէր, որ մարտիրոսաց տօները տօնուէին միայն Աղուհացից շաբաթ օրերը. վերջին Զ եւ Է շաբաթները ծիսական

[16] Ագաթ. § 223, էջ 117:
[17] Հմմտ. Հանդ. Ամս. 1947, էջ 74:

գրաւուած օրեր էին (Ղազարու եւ Թաղման շաբաթներ), ուստի հարկաւորաբար կարող էր Մուտն ի Վիրապն միայն Ագուհացից Ե․ շաբաթ օրը զետեղուիլ։ Այսպէս ալ եղած է։ Ուստի՝

Ե․ Շբ․ Ագուհացից՝ Ս․ Գրիգորի Մուտն ի Վիրապն․

Ա․ Բշ․ զկնի Պենտ․ Հռիփսիմեանց
Ա․ Գշ․ զկնի Պենտ․ Գայիանեանց
Ա․ Շբ․ զկնի Պենտ․ Ելն ի Վիրապէն
Գ․ Շբ․ զկնի Պենտ․ Գիւտ Նշխարաց

Այս գրութեան ծանօթ եղած կ'երեւայ Նէապոլսոյ Տօնացոյցին կազմողը, որ նոյնպէս իր հաշուին հիմ առած է Հոռի 26, զոր Ագաթանգեղոսի եւ Գրիգորի Վարքին թարգմանիչները Ասորամակեդոնական տոմարական հաշուով զուգակշռած են Սեպտեմբեր 26ին[18]․ այն տարբերութեամբ որ նախ Գրիգոր Լուսաւորչի Մուտն ի Վիրապն դրած են եւ ապա Ելն ի Վիրապէն եւ Գիւտն Նշխարաց․ այսպէս․

Սեպտ․ 26 Հռիփսիմէ
Սեպտ․ 27 Գայիանէ
Սեպտ․ 30 Մուտն ի Վիրապն
Դեկտ․ 2 Ելն ի Վիրապէն
Դեկտ․ 3 Գիւտ Նշխարաց։

Տեսանք վերագոյն, թէ Յունական Յայսմաւուրքը Սեպտեմբեր 30ին կը տօնէր «Գրի-

---

18 Հմմտ․ անդ, էջ 69—73 եւ ծան․ 13։

գորի, Գայիանեայ եւ Հռիփսիմեայ» տօները: Բիւզանդական Մենոլոգիոնի նախատիպին, այսպէս Պարիսի Թ. 1485 եւ 1506 ձեռագիրներու մէջ, երկուքն ալ Մետափրաստէսէն յառաջ, կը գտնուի Գրիգորի վարքը, ծանօթութեամբ մը, թէ տօնելի է Սեպտ. 30ին, բայց բնագրի մէջ առ այս որ եւ է ակնարկութիւն չկայ: «Այն կը պատկանի բացարձակապէս ժողովածոյքին հաւաքողին, որ ջանք տարած է համաձայնեցնել Քաղոց 11 (կամ 10)ին, 752—750 շրջանին. եւ այս Մենոլոգիոնի լուսանցագրութենէն ալ անցած է ան Մետափրաստէսի խմբագրութեան. եւ անկէ ալ Բիւզանդական Յայսմաւուրքին. անկէ մուտ գտած է նոյնը նաեւ Հայոց Յայսմաւուրքի մէջ»: Այսպէս Peeters (էջ 130): Առանց տարակուսի այս կարգաւորութեան հիմն է յոյն Ագաթանգեղոս (նոյնպէս Գրիգորի վարքը), ուր Հռիփսիմէի Նահատակութեան օրը կը նշանակուէր Հոռի 26=Սեպտ. 26. իսկ Գայիանէինը՝ Հոռի 27=27 Սեպտ.: Գրիգորի յիշատակը քիչ մը հեռացնելու համար այս երկուքէն՝ նշանակուած է նոյն ամսոյն 30ին: Իսկ Հոռի ամսոյն զուգակշռութիւնն Սեպտեմբերի հետ պարզապէս Ասորամակեդոնական տոմարի հետեւողութենէն է, նոյն օրը Արաբա-դամասկեան տոմարի հետեւելով Արաբական թարգմանութիւնը զուգակշռած է Հոկտեմբերի հետ: Գրիգորի տօնը Սեպտ. 30ին տօնել (Ս. Յերոնիմոսի տօնին հետ), կ՚երեւայ թէ կարգադրուած էր աւելի

հին ժամանակ մը, այնու որ այն մուտ գտած է նաեւ Նէապոլսոյ Տօնացոյցին մէջ, ուստի Թ. դարուն արդէն։ Յատկապէս ի՞նչ յիշատակ նկատի ունէին Յոյնք, կարելի չէ ճշդիւ ըսել։ Բայց որովհետեւ Բիւզանդացիք մէկ տօն միայն ունին Ս. Գրիգորի յիշատակին, ուստի անոր վարուց ամբողջութիւնը նկատի ունէին, այն է Թէ Մուտն եւ Ելն եւ Թէ Գիւտն Նշխարաց։

Առ այս պէտք է նկատի առնել, որ արդէն Յուստինիանոսի Ա. օրով (527—565) ընդունուած էր Ս. Սոփիայի մէջ տօնել Գրիգորի յիշատակը, ինչպէս կարելի է հետեւցնել զայս այն իրողութենէն, որ Ս. Սոփիայի խճաքար որմնանկարներու մէջ կը գտնուէր նաեւ «Ս. Գրիգոր Հայոց», որ երեւան եկաւ վերջերս[19] ΓΡΗΓΟΡΙΟΣ ΑΡΜΕΝΙΑΣ վերտառութեամբ։

Յունական Եկեղեցւոյ սովորութիւնը պէտք է ազդած ըլլայ Նէապոլսոյ Տօնացոյցի վրայ. այս ինքն այն ըմբռնումով որ տեղւոյն հայ Գաղութը, որ Բիւզանդահայերէ կը բաղկանար ըստ մեծի մասին, հաւատարիմ մնացած է այդ տօնին եւ շարունակած է տօնել զայն իբրեւ Մուտն ի Վիրապն։ Բայց Նէապոլսոյ մէջ յատկապէս տօնական օր ճանչցուած են Դեկտ. 2 եւ 3. սոյնցմէ առաջինը յետոյ աւելի ճշտուած կ՚երեւայ. վասն զի «Նէապոլսական բոլոր Տօնացոյց-

---

19 Տե՛ս Հանդ. Ամս. 46 (1932), 369—370։

ները, որոնք գրուած են քարեղէն Տօնացոյցէս եօթը, մինչեւ ԺԶ. դար, յիշած են միայն Դեկտ. 2ի տօնը, ուստի ոչ Սեպտ. 30ի» եւ ոչ ալ Դեկտ. 3ի տօները (Peeters, էջ 129):

Բացատրելու համար այս երեք տօներու գոյութիւնը Նէապոլիս, հարկ է ենթադրել, թէ Ը.—Թ. դարերուն պէտք է եղած ըլլայ Նէապոլիս քաղաքի մէջ հայ գաղթականութիւն մը եւ այն բիւզանդական ազդեցութեան տակ երկար ժամանակ ապրած հայ գաղթականութենէ մաս մը: Յառաջ կը բերեմ այս տեղ այս մասին P. Peetersի տողերը քաղուածաբար:

1574էն ի վեր ունի Նէապոլիս Հայոց Ս. Գրիգորի անունով գեղեցիկ եկեղեցի մը: Ան կառուցուած է Բենեդիկտեան կուսանաց վանքին մօտ. որ 930ին արդէն կը գտնուէր Ս. Սեբաստիանոսի եւ Ս. Գրիգորի պաշտպանութեան տակ: Թէպէտ վերջին բառս շատ եղանակաւորումներ կրեց, բայց ի վերջոյ 1021ին միւսանգամ նկատուեցաւ Sancti Gregorii Maioris եկեղեցի: Grigorius անունը թէեւ տեղական հնչմամբ վերածուեցաւ Legoriusի եւ ռամիկ ժողովուրդին բերնին մէջ եղաւ Liguoro[20], բայց ասով յարգուած Սուրբին նոյնութիւնն որ եւ է կասկածի չենթարկուեցաւ: Այս Ս. Լեգորիուսի եկեղեցին կը պարծի, թէ ունի Ս. Գրիգորի գլուխն

[20] D. Mollardo, Il calendario Lotteriano del sec. XIII, Napoli 1940, էջ 198—199:

եւ այլ Նշխարները, որոնց փոխադրութիւնը կը տօնուի յունիս 13ին[21]: Բարոնիոս եւ ուրիշ լուրջ հեղինակներ, որոնց անուններն յիշած է Ստիլտինգ[22] եւ կարծիքներն համադրած, կը յանգին այն համոզման, թէ ոսկրոտիք բերուած են Կ. Պոլսէն, այն կայսերու ձեռքով, որոնք հալածանքի մը պատճառաւ, Թերեւս Կոստանդին Կոպրոնիմոսէ յարուցուած, դիմած են փախստեայ արեւմուտք: Բայց այս տեսութեան համամիտ չէ Ստիլտինգ[23]: Նաեւ Իտալիոյ ուրիշ եկեղեցիներ կը պարծին թէ ունին այս Նշխարներէն մասունքներ, այսպէս Ապուլիայի Նարդոյ քաղաքին մայր եկեղեցին այն հաւատքին մէջ է, թէ ունի Ս. Գրիգորի բազուկը, ծանօթ երրորդը: Ի հարկէ այս բարի հաւատքին զուարթամիտ հաւատացեալներու հանդէպ ունի իրաւունք քննադատութիւնը արդար զայրոյթի բռնելու: Զարմանալին այն է, որ հայ գիտնականներէն ոմանք, ինչպէս Հ. Մ. Չամչեան[24] եւ Հ. Մ. Աւգերեան[25], չեն ահարեկած այս պատմուածքներու ծայրէ ծայր անհաւանականութեան առաջ:

Այս թէ անհնարին եւ թէ երկրին աւանդութեան հետ որեւէ առնչութիւն չունեցող պատմութիւնը չէր կրնար հոն արմատ

[21] Acta Sanctorum, Junii t. II, էջ 666 եւ յաջ.:
[22] Անդ, Sept., t. VIII, 299—301:
[23] Անդ, էջ 300:
[24] Պատմութիւն Հայոց Ա., էջ 659—660:
[25] Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւն սրբոց, հատ. Գ, էջ 366—370, 383—374:

գտնել, եթէ կանխաւ հոն պատրաստուած հող չենթադրենք։ Ուրեմն ունէր Ս. Գրիգորի հուշակը Նէապոլսոյ մէջ հիացողներ. անոնց գոյութիւնը հոն ի վաղնջուց հետէ պէտք է սկսած ըլլայ։ Անշուշտ կարելի չէ մտածել, թէ այնքան ընդունելութիւն գտած պաշտօն մը սկսած ըլլայ ծաղկիլ քարեղէն Տօնացոյցի հրապարակ գալէ ի վեր։

Մինչեւ Ը. դարու վերջին քառորդը չկայ տօնելի վկաներու ցուցակ մը, ոչ յոյն, ոչ լատին եւ ոչ իսկ հայ, ուր յիշատակուած ըլլայ Ս. Գրիգորի անունը։ Եթէ Նէապոլսոյ եկեղեցւոյ կղերը գաղափարն ունեցած է իր տօնելի սուրբերու ցանկին մէջ մուծել սուրբի մը անունը, որպէս գի հաւատացեալները որոշ օր մը անոր բարեխօսութիւնը հայցեն, հարկ է որ այդ սուրբը, կաթողիկէ աշխարհին հաղիւ ծանօթ, նոյն եկեղեցւոյ հաւատացեալներու թուին մէջ ունեցած ըլլար ջերմեռանդներ։ Ուշադրութեան արժանի է, որ հոս երկիցս յիշուած է Passio S. GREGORII EPI եւ Passio GREGORII DE ARMENIA. Ան, որ թելադրած կամ ներշնչած է փորագրել տեղիքներս, պէտք է որ կարգացած ըլլար Ագաթանգեղոսը։ Այս կէտը, ինչպէս կը թուի մեզ, պէտք է նկատողութեան առնեն այն գիտնականներն, որոնք պիտի շարունակեն զբաղիլ այս քարեղէն Տօնացոյցով։

Այժմ ապացուցուած կարելի է համարիլ արդէն, թէ Տօնացոյցս չունի որ եւ է պաշ-

*տօնական հանգամանք. չէ առնուած ծխական գործածութեան։ Զայն կազմողը չէ հարցուցած որեւէ պաշտօնական անձի խորհուրդը։ Դրուած էր ան եկեղեցւոյ մէջ, որպէս զի տօնասէր ժողովուրդը հետեւի օրուան տօներուն. կոչուած էր ան ծառայելու տեղական եւ օտարերկրեայ հաւատացեալներու։*

*Ըստ ամենայն հաւանականութեան կար Նէապոլիս ուշագրաւ հայ գաղթականութիւն մը։ Չմոռնանք որ նախորդ դարուն վերջը, երբ սպանուեցաւ ի Սիրակուսա Կոստանդին Դ. կայսրը, բանակը հակարքայ մը հրատարակեց յանձին Միզեզիոսի, որ է իսկական անուամբ Մժեժ, որ թէեւ ակամայ՝ ստիպուեցաւ հագնիլ կայսերական ծիրանին։ Այսպիսի ընտրութիւն մը սովորաբար կը կատարուի կուսակցութենէ մը, որ ոյժ կը ներկայացնէ։ Առանց տարակուսի ըմբոստներու թուին մէջ կը գտնուէր Մժեժի հայրենակիցներէն մեծ թիւ մը, որ յընթացս իր կայսրութեան 7 ամիսներուն իր գլխաւոր թիկունքը կազմեց։ Եւ շատ հաւանական է, որ այս սերմնահատիկը շարունակեց պահել իր կենդանութիւնն Է. դարու վերջին քառորդին եւ յաջորդ դարուն, անոնք, որոնք տեսան թէ հայ մ՚իսկ բազմած էր թագաւորական գահին վրայ։*

*Կարելի է անյողդողդ քայլ մ՚աւելի առնել։ Այն օրերը, որոնց տակ արձանագրուած էին Ս. Գրիգոր Լուսաւորչի տօները Նէապոլսի Տօնացոյցին մէջ, անշուշտ տօներ էին,*

որոնք տարուէ տարի կը տօնուէին այդ Հայ գաղթականութենէն: Ահա այդ օտարականներուն բաւականութիւն տալու համար է, որ յանձն առած է Տօնացոյցին խմբագիրը անոնց ազգային Սուրբն արձանագրելու հոն: Ան միայն անոնցմէ կարող էր գիտնալ Սուրբին տարեկան տօնակատարութեանց օրերը, ինչպէս ցոյց կու տայ զայն վերջին յայտյանդիմանութեամբ Ս. Գրիգորի պաշտամունքի բովանդակ պատմութիւնը: Կրնա՞յ ընաւ մտածուիլ, թէ խմբագիրը անոնց սովորութեան հակառակ բան մը նշանակել ուզած ըլլայ, կամ առանց մասնաւոր ուշադրութեան՝ պարզ մտացրումով այդ գործած: Ուստի պէտք է ընդունինք թէ Տօնացոյցին մէջ Գրիգորի յատկացուած օրերը արձանագրուած են գիտակցութեամբ[26]:

Յիշեմ այս տեղ, որ Նէապոլսէն ոչ շատ հեռու Գաէտա փոքր բայց ոչ աննշան քաղաքին մէջ 906ին կը յիշուի «տուն Արտաւազդ» անուն մէկուն, որ նշանաւոր մէկը եղած ըլլալու է. իսկ Բենեւենտ քաղաքը նուաճած է 891ին Սմբատիկ պրոտոսպաթար եւ չորս տարի իշխած հոն. իր յաջորդներն եղած են Գէորգ եւ Վարշակ. ի Նէապոլիս ԺԴ.—ԺԵ. դարերուն կը յիշուի նաեւ Ս. Հոգի եկեղեցին Հայոց[27]:

---

26 P. Peeters, անդ, էջ 127—128:
27 Հ. Ղ. Ալիշան, Սիսական, էջ 455.

## ԻԵ.

## ԱՐՏԱՇԻՐ ԲԱԲԱԿԱՆԻ ՎԷՊԸ ՅՈՒՆԱՐԷՆ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՄԷՋ ԵՒ Ս. ԳՐԻԳՈՐԻ ՆՈՐԱԳԻՒՏ ՅՈՒՆԱՐԷՆ ՎԱՐՔԸ

---

## ԻԵ.

# ԱՐՏԱՇԻՐ ԲԱԲԱԿԱՆԻ ՎԷՊԸ ՅՈՒՆԱՐԷՆ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՄԷՋ ԵՒ Ս. ԳՐԻԳՈՐԻ ՆՈՐԱԳԻՒՏ ՅՈՒՆԱՐԷՆ ՎԱՐՔԸ

1. *Ինչպէս մատնանիշ ըրինք վերագոյն* (*էջ* 7—8), *Ս. Գրիգորի Վարքին այն արաբերէն օրինակը, զոր հրատարակած էր Ն. Մառ* 1905*ին, թարգմանութիւն մըն էր յունարէն բնագրի մը: Այս բնագիրը* G. Garitte *երեւան բերաւ* Codex Scorialensis gr. X, III. 6 *ձեռագրին մէջ, գրուած* 1107*ին եւ տուաւ անոր խնամեալ հրատարակութիւնը իր* Documents pour l'étude du livre d'Agathange *գործին մէջ*[1]*: Արաբերէն միակ ծանօթ օրինակը պակասաւոր էր սկիզբէն. նոյնպէս յունարէն միակ օրինակը ցոյց կու տար թղթերու անկումներ: Այժմ յոյն եւ արաբ բնագիրները փոփոխակի կը լրացնեն զիրար: Բայց ունի յոյնը հատուածներ, որոնք կը պակսին արաբականին, կան նաեւ հոս տեղիքներ, որոնք կը բացակային յոյնէն: Այս պարագան ցոյց կու տայ, որ երկու բնագիրներն ալ կրած են ապա փոփոխութիւններ եւ*

---

[1] *Տես մեր գրախօսականը Հանդ. Ամս.*, 1947, *էջ* 477 484:

յապաւումներ: Ի տես այս հանգամանքին ակամայ կասկած կը ծնանի մեր մտքի մէջ, թէ արդեօք յոյն բնագիրը յապաւում չէ՞ կրած նաեւ Վարքին սկիզբը. վասն զի այժմեան սկզբնաւորութիւնը յայտնապէս զգալ կու տայ մեզի, թէ այն չի կրնար սկզբնականն եղած ըլլալ: Արդէն նկատեցինք, թէ Վարքին առաջին տողերը յետսամուտ են, ուրիշ նման սկսուածք ունեցող վկայաբանութիւններէ մին նմանութեան առնուած է: Ուստի այս նախաբանականը իբրեւ եկամուտ արտաքսելէ ետքը Վարքին հարազատ կը մնան տողերս. «Եւ յառաջ մատեաւ սուրբն Գրիգորիոս. առէ ցնա Թագաւորն. Փութա, Գրիգորէ, զոհել աստուածոց...»: Լռուած է տեղը, ուր առեանն եղած է Սուրբին հարցաքննութեան. չեն ներկայացուած տակաւին ընթերցողներուն եւ ունկնդիրներուն Գրիգորի եւ Տրդատի անձնաւորութիւնները: Թէ արաբերէ՞նն ալ այսպիսի սկսուածք ունէր, կարելի չէ հաստատել կամ մերժել, որովհետեւ ինկած են այդ բնագրի առաջին թուղթերը: Այս պակասը կը նկատուի նաեւ Վարքի այն ասորերէն օրինակին մէջ, որմէ օգտուած է Գէորգ ասորի, այնու որ նաեւ ինքը չի գիտեր, թէ Գրիգոր պահլաւական ծագումէ էր: Նկատի առնելով, սակայն, թէ Վարքս սկսեալ Երիզայի հարցաքննութենէն քայլ առ քայլ կ՚ընթանայ Հայ Ագաթանգեղոսի, հազուադէպ հանդրուաններով, կու գանք այն համոզման, թէ Վարքագիրը պէտք

է որ նախընթաց բաժնի մը մէջ համառօտած ըլլայ նաեւ Գրիգորի Վարքն այն յատակագծի վրայ, զոր տուած էր նոյն աղբիւրը՝ Ագաթանգեղոս, այսինքն Պարթեւական պետութեան բարձումը, Սասանեանին սկզբնաւորութիւնը, Խոսրով Ա. Հայոց թագաւորի ընդհարումները Արտաշիրի հետ, Անակի առաքումը, Խոսրովի սպանութիւնը, Գրիգորի եւ Տրդատի փախցուիլը Հռոմէական երկիր, անոնց դաստիարակութիւնը, Գրիգորի ամուսնութիւնը, Տրդատի քաջութիւնները եւ յաղթական դարձը Գրիգորի հետ: Այս բաժինը չկայ այժմ վարքին մէջ, բայց Վարքը կ՚ենթադրէ զայն: Այս հանգամանքի առջեւ ստիպուած ենք ըսել, թէ գոյութիւն ունէր այն նախնաբար Վարքի թէ հայ Սկզբնագրի եւ թէ յունական (եւ արաբական) թարգմանութեան մէջ, բայց յետոյ էակուրեալի ձեռագրին կամ անոր գաղափար օրինակին դրչէն իբրեւ սրբախօսական գրուածքի մը համար անկարեւոր մանրամանութիւն՝ դուրս ձգուած է:

2. Յունարէն Վարքը, ինչպէս փաստացի ապացուցած էր G. Garitte, թարգմանուած է հայ Սկզբնագրէ հայագէտ յոյնէ մը: Այս հայերէն խմբագրութիւնը այժմեան հայերէն Ագաթանգեղոսէն մկրատուած հանուած կտորներու առընթերագրութիւն մը չէր, այլ Ագաթանգեղոսի տուեալներու հետեւողութեամբ գրուած ազատ շարադրութիւն մը, ուր դրած էր շարադրողը իր հան-

ճարը, իր ոճը, իր հոգիէն բաժին մը։ Դժբախտաբար մինչեւ այսօր չէ յայտնուած Գրիգորի Վարքին հայերէն այս սկզբնագիրը, որ եւ ոչ հետք անգամ ձգած է հայ գրականութեան մէջ։

3. Յունարէն Ագաթանգեղոսը, զոր Լաւրենտեան VIII, 25 ձեռագրէն (ԺԲ. դարէ) հրատարակեցին Stiltingh եւ de Lagarde, թարգմանուած է յունագէտ հայէ մը, ըստ Գուտշմիդի[2] ընդ մէջ 555—591 (622) տարիներուն, աւելի հաւատարիմ գտնուած է հայ Ագաթանգեղոսի։ Այս տեղ Ագաթանգեղոսի Յառաջաբանութեան համառօտութեան կը յաջորդէ ընդարձակ հատուած մը, նուիրուած Արտաւան Պարթեւաց թագաւորի եւ Արտաշիր Սասանեանի[3]։ Այս հատուածի բովանդակութիւնը առնուած է Արտաշիր Բաբականի վէպէն, որ ծանօթ է Արտաշիր-ի Բաբական-ի Կարնամակ խորագրով, պահուած պահլաւերէն բնագրի մէջ անթերի։ Արդէն Գուտշմիդ անդրադարձած էր, որ այս հատուածը, որ կը պակսի հայ Ագաթանգեղոսի մէջ, եկամուտ է, ուրիշ ձեռքէ յոյն բնագրի մէջ մուծուած։ Այժմ G. Garitte[4]

---

[2] Gutschmid, Agathangelos: Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft. 31 (1877) 1—60 = Kleine Schriften 3 (1892) 339—420.

[3] P. de Lagarde, Aganthangelos, էջ 4 տ. 14—18, տ. 39.

[4] G. Garitt, Documents, էջ 272—279։

մօտադիր կ'ընէ, որ յունարէն Ագաթանգեղոսի վերջերս յայտնուած հինգ ընտրելագոյն եւ հնագոյն ձեռագիրներու մէջ գոյութիւն չունի այս հատուածը. այն յատուկ է միայն Լաւրենտեան վերոյիշեալ ձեռագրին եւ հիներէն ծանօթ է անոր միայն Մետափրաստէս: Բաց աստի անհարազատ է այն նաեւ ըստ լեզուին Յունարէն Ագաթանգեղոսի, գրուած ըլլալով աւելի կոկիկ յունարէնով եւ իրեն յատուկ ոճաբանութեամբ: Այս յունարէնը մեծ նմանութիւններ ցոյց կու տայ այն լեզուին հետ, որով գրուած է յունարէն Վարքը: Թէպէտ կը զգուշանայ G. Garitte իր քննութիւններու այս արդիւնքէն դրական եզրակացութեան մը յանգիլ[5], բայց կը թուի ինձ, թէ կարելի է այժմ հողը բաւական հաստատուն համարիլ կառուցանելու համար անոր վրայ շէնք մը:

Կը թարգմանեմ այսպէս.

ա. Այն ձեռքը, որ հանած է այս հատուածը յունարէն գրուածքէ մը եւ ագուցած է յունարէն Ագաթանգեղոսի մէջ, պէտք է լաւ գիտցած ըլլայ, թէ ան կապակցութիւն մ'ունէր այդ գրուածքին հետ. եւ այն ոչ

---

[5] Անդ, էջ 279· «La parenté linguistique entre le récit adventice du *Laurentianus* et la nouvelle recension grecque Vg est un fait que je me limite à constater; je ne chercherai pas à fournir une explication sûre de ce phénomène intrigant, car les données du problème ne sont pas suffisantes pour qu'on puisse en tirer autre chose que des réponses hypothétiques, dont il est inutile d'encombrer la recherche.»

պարզապէս անոր համար, որ կը յիշուէին նաեւ հոն Արտաւան եւ Արտաշիր։

բ· Որովհետեւ գրութեան ոճը նման է շօշափելի կէտերով յոյն Վարքին հետ, պէտք է այդ անծանօթ ձեռքը գտած ըլլայ զայն յոյն Վարքին մէջ։ Հոս պատմուածքս յառաջ բերուած էր անշուշտ Գրիգորի Վարքին հետ կապակցութեամբ։ Ինչպէս հոս իր պատշաճ տեղն ունէր այն, նոյնպէս պատշաճապէս կարող էր զետեղուիլ յոյն Ագաթանգեղոսի մէջ։ Երկուքն ալ նոյն նիւթը կը շօշափէին։

գ· Յունարէն Վարքը կ՚ենթադրէր Երիդա հարցաքննուող Գրիգորի եւ զայն հարցաքննութեան առնող Տրդատ թագաւորի նախաւոր պատմութիւնը։ Երկուքն ալ գլխաւոր դէմքերն էին Վարքին։ Վարքին աղբիւրը հայ Ագաթանգեղոս երկուքին ծագումն ալ մանրապատում պատմած էր, սկիզբն ընելով Արտաւանէն եւ Արտաշիրէն։

դ· Վարքին թարգմանութիւնը կատարուած է հայ բնագրէ· իսկ հայ Վարքին հեղինակը թէպէտ զԱգաթանգեղոս ունի իրեն առաջնորդ, բայց հեղինակած է ձերբազատ ինքնուրոյն ճաշակով։ Ան չէր կրնար լռութեամբ անցնիլ Հայոց դրացի աշխարհին քաղաքական յեղափոխութեան վրայէն, անյիշատակ թողուլ Խոսրով Ա·ի դէմքը, Անակի դաւաճանութիւնը եւ այլն։ Անշուշտ ինչպէս յաջորդ դէպքերը ծաղկեալ ոճով նկարագրած էր, նոյնպէս ցուցուցած պիտի ըլլար իր արուեստը առաջին մասին մէջ։

ե. Nöldeke[6] *այս հատուածի մէջ Արտաշիրի վէպին հայ գունաւորումը կը տեսնէ:* Gutschmid[7] *եւ* Garitte[8] *հայ լեզուի նշմարները կը մատնանշեն հատուածիս յունարէնի մէջ: Թարգմանութիւն է այն հայերէնէ:*

զ. *Քիչ յետոյ նշմարել պիտի տամ հոն տեղիքներ, որոնք կ'ենթադրեն հայ աւանդութիւն, հայ գրաւոր աղբիւրներ:*

է. *Այս հատուածին հեղինակը ոչ այլ ոք է, բայց եթէ Գրիգորի Վարքին հայ խմբագիրը, որուն անունը եւ ժամանակը տակաւին կը մնայ անծանօթ: Հաւանօրէն կ'իյնայ Է. դարու առաջին տասնեակին:*

ը. *Ուստի հայ Վարքը յունարէնի թարգմանուած էր ամբողջութեամբ: Այս թարգմանութեան մաս կը կազմէր նաեւ հատուածս:*

թ. *Յոյն Վարքի թարգմանութեան ժամանակը չէ ստուգուած: Այս թարգմանութիւնը, որ կը բովանդակէր իր մէջ Արտաշիրի վէպը, հաւանօրէն կատարուած էր Է. դարու առաջին քառորդին, իբր 615ին:*

Ժ. *Հատուածիս ուշագրաւ մասերէն մէկն է առաջին հատածը, ուր ընդհանուր տեղեկութիւն կու տայ Պարթեւաց պետութեան*

---

[6] Th. Nöldeke, Geschichte des Artachšir-i Pâpakân, aus dem Pehlevi übersetzt, mit Erläuterungen und einer Einleitung versehen: Beiträge zur Kunde der indogermanischen Sprachen 4 (1879), 22—69.

[7] *Անդ:*

[8] *Անդ:*

*տարածութեան եւ ազգախառնութեամբ իրեն հետ կապուած աշխարհներու վրայ: Նոր թարգմանութեամբ կը ներկայացնեմ ամբողջութեամբ:*

Բ. «Պարթեւաց, որք ի մեծի յաջողութեան վայելէին եւ ընդ ձեռամբ նուաճեալ ունէին զթագաւորութիւնն Պարսից եւ զՀայոց եւ զՀնդկաց՝ դրացեաց արեւելեան Պարսից, եւ զխուժադուժ Մասքթաց, այս կարգ էր նոցա:

Քանզի Առաջինն յազգէն Պարթեւաց, ապա ուրեմն Արշակունիք կոչեցելոց, որ տիովք զերիցութիւնն ունէր եւ էր քաջութեամբ զարդարեալ, եղեւ տէր թագաւորութեանն Պարսից:

Երկրորդն ըստ ամացն կարգի առ ժառանգեաց զթագաւորութիւնն Հայոց.

Եւ որ զերրորդն բարձ ունէր՝ թագաւորեաց ի վերայ Հնդկաց որ առ երի են Պարսից.

եւ չորրորդին անկանէր թագաւորութիւնն Մասքթաց:

Այս կարգ էր ազգին Պարթեւաց, որք ընդ բազում ժամանակս վայելեցին ի բարութեան»:

*Պարթեւ թագաւորութեան այս չորս ճիւղերու բաժանումը կ'ենթադրէ հայկական աղբիւր. վասն զի Հայոց յատուկ է այս չորսի ազգակցական կապի տեսութիւնը: Սեբէոս*[9],

---

[9] *Պատմութիւն ի Հերակլն, Պետերբուրգ* 1879, *էջ* 9:

հաւանօրէն Փաւստոսի Պատմութեանց Ա. Գրքէն օգտուելով՝ նոյն պատկերը կը գծէ, թէպէտ խառնակ գոյներով: Խօսելով Արշակ Մեծ Պարթեւաց թագաւորի վրայ կը գրէ.

«Որդիք չորք ասեն լեալ Արշակայ Պարթեւաց.
զԱռաջինն, ասեն, թագաւորեցոյց Թետալացւոց աշխարհին.
զԵրկրորդն ի վերայ Կիլիկեցւոց.
զԵրրորդն՝ ի վերայ Պարթեւաց.
զՉորրորդն ի Հայաստան աշխարհին»:

Սեբէոսի «Թետալացւոցը» իմանալու է «Պարթեւաց», ինչպէս նոյն էջին վրայ ճշդագոյն ըսուած է, թէ Արշակ Մեծ թագաւորեց «ի վերայ Պարթեւաց ի Բահլ շահաստանի [յերկիրն Քուշանաց»]: Այս կերպով կը գոյանայ համաձայնութիւն յոյնին հետ. եւ որովհետեւ «զառաջինն» թագաւորեցնող չկար, այս պատճառաւ ալ «թագաւորեցոյց» լաւագոյն է կարդալ «Առաջինն թագաւորեաց ի վերայ Պարթեւաց աշխարհին»:

Սեբէոսի «զԴ.՝ ի Հայաստան աշխարհի» կ'երեւայ թէ արդիւնքն է այն ըմբռնման, թէ «Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ (Մեծ) զորդի իւր զԱրշակ Փոքր կոչեցեալ՝ ի վերայ աշխարհին Հայոց ի Մծբին քաղաքի» (Սեբ. էջ 9): Այս «փոքր»ը իմացուած է «կրտսեր» իմաստով, այս պատճառաւ ալ անոր չորրորդ տեղը չնորհուած է: Բայց կը վկայէ Ագաթանգեղոս համաձայն յոյնին, թէ

Խոսրով Ա· Հայոց թագաւորը «էր երկրորդ տէրութեանն Պարսից (իմացիր՝ Պարթեւաց)· զի որ Հայոց թագաւոր էր՝ նա էր երկրորդ Պարսից տէրութեանն» (էջ 13)։ Նոյն իմաստով ալ կը գրէ Փաւստոս (Գ· 20) իբրեւ Տիրան Ա·ի բերնէն· «Ասէ թէ (թագաւորութիւն Պարսից ազգին Սասանայ) մեր լեալ է եւ հարցն մերոց այն տէրութիւնն... զնախնի թագաւորութիւնն (Պարթեւաց) այսրէն առ որդի (Խոսրով Բ·) եւ առ զաւակ նորա[10]՝ յազգս իմ եւ ի տունս իմ եւ յանձն իմ դարձուցանեմ»։

Սեբէոսի «զերկրորդն ի վերայ Կիլիկեցւոց» հարկ է կարդալ «զԳ· ի վերայ Հնդկաց» (Հնդեցւո՞ց), այսինքն այն աշխարհամասին վրայ, որ կը տարածուի Ինդոս գետի յայս կոյս։

Կը մնայ նոյն կարգով Սեբէոսի «զԳ· ի վերայ Պարթեւաց» ուղղել համաձայն յոյնին՝ «զԴ· ի վերայ Մասքթաց»։ Երբ Սանեսան Մասքթաց թագաւորը ապստամբութեամբ հասաւ Հայաստան, Փաւստոս զանիկա Հայոց Խոսրով Բ· թագաւորի «ազգակից»ը կը ճանչնար, իսկ ինքը թագաւորը ի տես սպանելոյն ողբաց գոչելով· «եղբայր իմ էր ազգաւ արշակունի» (Գ· 7)։ Կ'ըսուի նաեւ Գրիգորիսի համար թէ «եհաս նա մինչեւ ի

[10] Տպ· նորա։ Իմացիր այսպէս· Արտաւան = Տրդատ Բ· եղբայրներ· Խոսրով Բ· «որդի» Տրդատայ = Արտաւանայ· Տիրան Ա· «զաւակ» Խոսրով Բ·ի (թոռն Տրդատ = Արտաւանի)։

ճամբար բանակին Արշակունեաց արքային Մաղքթաց, որոյ անուն իւր Սանէսան կոչէր. քանզի եւ նոցա եւ Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան» (Գ. 6):

Պատմական իրողութիւնն է ըստ Գուտշմիդի հետեւեալը. երբ մեռաւ Ոնոն Բ. Պարթեւներու թագաւորը, իր յաջորդն եղաւ որդին Վաղարշ Ա. (51—61) հաւանութեամբ եղբայրներու: Որպէս զի իր եղբայրներն ալ գոհ ձգէ, Վաղարշ բուն Պարթեւաստանէն դուրս նոր աշխարհներ ձեռք բերաւ եւ կարգեց անոնց վրայ իր եղբայրները. Բակուր առաւ Ատրպատականի Մարաց արքայութիւնը. եւ Տրդատի որոշուեցաւ Հայոց աշխարհը. անոնք պիտի ըլլային բուն արքայից արքայէն ետքը երկրորդ եւ երրորդ արշակունի գահեր (Տակիտոս, Տարեգրութիւն, ԺԵ. 2): Կ'երեւայ թէ Երկրորդը կամ Մարականը յետոյ միացած է բուն պարթեւական տան հետ: Չորրորդ արշակունի գահ մը կար արդէն Երանի արեւելակողմը եւ Ինդոսի վրայ. եւ հինգերորդ մը Մասքթաց երկիրը՝ Կաւկասի լեռներու հիւսիսակողմը, որոնց Արշակունի մը արքայ էր 19ին յետ Քրիստոսի (Տակիտոս, Բ. 68): Ըստ այսմ, կ'ըսէ Գուտշմիդ[11], շատ ուղիղ է, երբ հայ պատմիչները արշա—

[11] A. von Gutschmid, Geschichte Irans und seiner Nachbarländer. Tübingen 1888, էջ 129—130. Հ. Ց. Տաշեան, Արշակունի դրամներ: Վիեննա 1917, էջ 107—108:

*կունի չորս ճիւղ եւ նոյն թուով գահ կը ճանչնան:*

5. *Արտաշիր Բաբականի վէպը կ'ընդգրկէ* de Lagarde*ի հրատարակութեան Գ—Թա հատուածները*[12], *որուն ընդարձակուած խմբագրութիւնը կու տայ Կարնամակը, այն է Գործք Արտաշիր Բաբականի, ըսա Նէօլդեկէի գրուած Սասանեան Պետութեան վերջին եւ Պարսկաստանի արաբական նուաճումի առաջին տարիներուն: Վէպը, որ հոս մարմին եւ արիւն ստացած է, ունեցած է իր զարգացման շրջանը, որ Խոսրով Բ. Ապրուեզի* (590—628) *տարիներուն կ'իյնայ: Կարնամակի հայերէն յաջող մէկ թարգմանութիւնը կը պարտինք Դկտ. Յ. Թիրեաքեանի*[13]: *Ես այս տեղ նոր թարգմանութեամբ պիտի ներկայացնեմ յունարէն բնագրի Գ—Եա հատուածները, առընթեր տալով պահլաւ բնագրին համապատասխան տեղիքը, Թիրեաքեանի թարգմանութենէն:*

*Գ. «Սկսանիմ անդուստ, ուստի զսկիզբնն կործանման եցոյց Պարթեւն: Արտաւան որդի*

---

[12] Paul de Lagarde, Agathangelos und die Akten Gregors von Armenien, Göttingen 1887, *էջ* 4, *տ.* 14—18, *տ.* 40: *Առաջին* 10 *տողերու թարգմանութիւնը տուի վերագոյն: Հայերէն թարգմանութիւնը՝ Զարբհանալեան, Պատմութիւն հայկ. հին դպրութեան, Ա. Վենետիկ* 1865, *էջ* 103—110 *եւ Գ. տպ.* 1897, *էջ* 207—212: *Թարգմանուած է Ստիլտինգի լատին թարգմանութենէն:*

[13] *Արտաշիր Բաբական Կարնամակ. պահլաւ բնագրէն թարգմանեց հանդերձ ծանօթութեամբք Տօքթ. Յ. Թիրեաքեան, Փարիզ* 1906:

Վաղարշու ի Պարթեւաց իջեալ՝ Քաղդէացւոց ուսմամբ վարժեալ քաջ ի բաց, խելամուտ չափելոյ զընթացսն աստեղաց եւ զհոլովմունսն եւ հմուտ գիտելոյ զբաշխսն լեալ. նստէր ընդ կնոջ իւրում ընդ խորանաւ եւ զաստեղսն, որ երեւէին, նկատէր. եւ հասեալ ի վերայ իրիք՝ ասէ ցԹագուհին. Քննեալ տեսի արդ զընթացսն աստեղ. Թուի ինձ, եթէ ումն վտարանջեալ ի տեառնէ՝ արասցէ կռիւ ընդ նմա, ի ժամանակիս, որ առաջիկայ, յաղթութեամբ, մատնեալ զԹագաւորն ի պարտութիւն: Զայս ասէր եւ տայր զանձն քնոյ: Եւ էր այս սովորութիւն, զի մին ի նաժշտաց Թագուհւոյն ննջիցէ ի նմին խորանի ի սպասաւորութիւն իրաց իրաց ինչ պիտոյից հրամայելոց ի նմանէ: Եւ էր սա դուստր ուրումն ի գլխաւոր պաշտօնէից եւ էր մտերմացեալ ընդ ումեմն ի մեծամեծաց, որում Արտաշիր անուն էր, ի գաւառէն Ասորեստանեայց, եւ սիրով ի նա յառեալ: Սա իբրեւ լուաւ զբանս Թագաւորին՝ զանխուլ յարքայէ եւ ի Թագուհւոյ ընթացաւ առ Արտաշիր որդի Սասանայ, յորմէ եւ Սասանեանն կոչեցան Թագաւորք Պարսից, որք ըստ նմանէն սերեցան:

Դ. Արդ եմուտ նա ի խորանն — քանզի եւ չկարէին իսկ ծառայքն արգելուլ զնա, զի չէին իսկ անգէտ սիրոյն, զոր սիրէին նոքա երկոքին զմիմեանս: Ասէ այսպէս. Սիրելիդ իմ Արտաշիր, ի բաց լիցի յարտեւանանց քոց քուն. փութա արդ ի խորհուրդն, զոր կալար

երբեմն· քաջ լեր եւ հայեաց ի գուշակութիւնն թագաւորին. այժմ ժամ է ի զէն եւ ի զարդ վառել, այժմ խորհրդոյ արանց իմաստնոց պէտք են· այժմ ի դէպ եւ ըմբռն է զզօրսն ի հանդիսի անցուցանել, ի մարտ պատերազմի գումարել· քանզի հայեցեալ արքայի յաստեղացն գնացս ասէ· Այժմիկ ծառայ Նշկահեալ զՏէր՝ յաղթեսցէ ի ժամանակիս որ առաջի կայ: Օն անդր, փութա ձեպեա ի խորհուրդ· իսկ ինձ մատո զաջ քո, երդմամբ հաստատեսջիր զմիտս իմ· եթէ յաջողեսցի քեզ թագաւորութիւնն Պարսից, ոչ կացուսցես զիս արտաքոյ ի քոց անկողնոց, յայտ արարեալ զիս բարեկամ այսր աջոյ· զի զգոյն իսկ ասէիր ինձ ցանկ եւ խոստանայիր յորմէ հետէ եղեալ էիր զխորհուրդս զայս ի մտի: Զայսոսիկ Արտաշուխտ: Իսկ Արտաշիր շնորհ կալեալ յոյժ եւ ամբարձեալ զձեռս կնոջն հանդերձ աջովն իւրով ի վեր յերկինս՝ ասէ զայն ձեւ· Տեսցէ աստուածեղէն զօրութիւն, արեւ եւ հուր, օդ եւ հող, զի յայսմ եւ ի մին աւուր իսկ արարեալ խորհուրդ ընդ աւագս Պարսից եւ Նշկահեալ զարքայ՝ տաց քեզ վաղվաղակի տիրել ի տան իմում:

Ե· Եւ իբրեւ լուաւ զայսոսիկ Արտաշուխտ, ասէ· Դարձայց միւսանգամ ի խորան անդր թագաւորին, տանել զալաս պաշտաման զանցելոց աւուրց· զի եւ պարտ եւ պատշաճ իսկ է հարկանել զպաշտաւորութիւն ի պիտոյս արքունեաց մինչեւ հաճեսցին երկինք յաջողել մեզ զբախտ եւ զազատութիւն

օգնականութեամբ աւագանւոյն: Զայս ասացեալ երթայր ի խորան անդր թագաւորին եւ յանզգայս մտեալ ի մահիճան ընկողմանէր»:

6. Կարնամակի համապատասխան տեղին է (Թիրեաքեան, էջ 8—9). «Արտաւան գեղանի հարճ մ'ունէր, որ ուրիշներէն աւելի յարգի էր նմա եւ Արտաւանին ամէն տեսակ գործերը (նա) կը կատարէր: Օր մը Արտաշիր ախոռատունը նստած նուագարան կ'ածէր, կ'երգէր եւ կը զուարճանար. աղջիկը դիտեց զայն եւ սիրտը կապուեցաւ անոր հետ այնուհետեւ...: Օր մը Արտաւան Դրան դէտերը եւ ախտարհամարները առջեւը բերել տուաւ եւ հարցուց թէ ի՞նչ կը տեսնէք եօթնից եւ երկոտասանից հանգամանքէն եւ աստեղաց դիրքէն եւ ընթացքէն. եւ քաղաքաց քաղաքաց տէրերու ժամանակի մասին եւ աշխարհի մարդոց եւ իմ իսկ եւ որդւոցս եւ մարդոցս համար ի՞նչ կը գուշակէք:

Ախտարհամարաց սարդարն (պետ) ի պատասխանի ըսաւ. Երկոտասանք ինկած են (ի վայր խոնարհեալ). եւ Որմզդի աստղը դարձեալ բարձր է եւ Վահրամ եւ Անահիտ դէպի Եօթնարջն կոյս եւ յԱռիւծ կը դիմեն եւ Որմզդի օգնութեան փութալ կը թուին: Մեկնութիւնն այսպէս կը ցուցնէ որ նոր տէր եւ թագաւոր մը պիտի երեւնայ եւ շատ տիրապետներ պիտի մեռցնէ եւ աշխարհ վերստին մէկ միահեծան պետի մը ձեռք պիտի անցնի:

Անոնց մէջէն ուրիշ գլխաւոր մը յառաջ եկաւ ու ըսաւ. Այսպէս կ'երեւի որ ծառայ մարդ մը եթէ սա երեք օրուան մէջ իւր տիրոջմէն ապստամբելով փախչի, փրկութեան եւ իշխանութեան կը հասնի. եւ իր տիրոջը վրայ իշխան եւ յաղթական կը լինի:

Աղջիկը այս խօսքը, ինչպէս որ Արտաւանին ըսած էին, երբ գիշերը Արտաշրին քովը եկաւ, անոր հաղորդեց: Արտաշէս այս լուրը իմացածին պէս, միտքը դրաւ փախչիլ անկէ: Եւ աղջկան ըսաւ. Եթէ քո սիրտն ուղիղ եւ անկեղծ է, եկ, սա երեք օրը չանցուցած, քանի որ ախտարաց գլխաւորը իւր տիրոջմէն վտարանջողին մեծութիւն եւ թագաւորութիւն գուշակեց, փախչինք այս տեղաց եւ երթանք մինչեւ աշխարհի տիրենք: Եւ եթէ Աստուած եւ Արեաց աշխարհին բախտը զօրաւիգն լինին մեզ որ ազատինք եւ բարձր դիրքի մը հասնինք, այնպէս ըրեմ որ աշխարհիս մէջ քենէ աւելի բարեբաստիկ մէկը չգտնուի: Համաձայնեցաւ աղջիկը եւ ըսաւ. Ազատէ զիս եւ ինչ որ հրամայես՝ կը կատարեմ:

Լուսաբացին մօտ աղջիկը վերստին իւր տեղը՝ Արտաւանի քով դարձաւ...»:

7. Նէօլդեկէ, որ իր քննութեան մէջ նկատի առած է նաեւ յոյն Ագաթանգեղոսի այս տեղիքը, հոս հայ խմբագիր մը կը տեսնէ, որ անկախ Կարնամակէն կը հիւսէ վէպս այնպէս ինչպէս իր ականջին հնչուած

է։ Դժուարաւ կրնանք հաւատալ, թէ իրանական հնչուած է։ Դժուարաւ կրնանք հաւատալ, թէ իրանական վէպս մինչեւ Հայաստան ճանապարհած ըլլայ։ Անոր սկզբնաւորութեան եւ զարգացման միջավայրը Իրան միայն կրնայ եղած ըլլալ։ Հոս միայն կարող էր հայ խմբագիրը ծանօթացած ըլլալ վէպին անգիր կամ գրաւոր աւանդութենէ։ Այն մանրամասնութիւնները Արտաւանի եւ Արտաշիրի, Արտադուխտի եւ ապստամբական շարժման մասին նման միջավայր մը մատնանիշ կ՚ընեն։ Հայ աղբիւրներուն անծանօթ են ասոնք։ Մովսէս Խորենացի, որ հետաքրքրուած է առ հասարակ հին, յատկապէս իրանական զրոյցներով, կ՚երեւայ թէ լսած է ինչ ինչ նաեւ Արտաշիրի վէպէն, աւելի ճոխացած խմբագրութեամբ։ Կը գրէ. «Քանզի անտեղի է մեզ այժմ երկրորդել զառասպելսն յաղագս երազոյն Փափագայ եւ արտաղատութեան հրոյն մանուածոյ՝ որ ի Սասանայ, եւ պատուումն զհօտին, եւ լուսնակն եւ ախտարմողացն յառաջասացումն՝ որ են քաղդեայք՝ եւ որ ինչ զկնի այսորիկ. եւ պոռնկական խորհուրդն Արտաշրի հանդերձ սպանութեամբքն, եւ անմիտ հանճարարանութիւն մոգին զատեր վասն նոխազին, եւ որ ինչ այլն ամենայն։ Նաեւ այծին զինեցումն մանկանն ընդ հովանեաւ արծւոյն, եւ զուշակումն ագռաւուն, եւ զերապանծին պահպանութիւն առիւծուն հանդերձ արբանեկութեամբ գայլուն. եւ միայնամարտութեանն առաքինու-

թիւն, եւ որ ինչ այլաբանութեանն բերէ կարգ (Բ․ 70)։

Առանց մանրազնին քննութեանց միջամուխ ըլլալու նկատի կ՚առնեմ հոս երեք անուն միայն, որոնք կը յիշուին վէպին մէջ։ Նաժիշտը, որ կը գտնուէր Արտաւանի արքունիքին մէջ, կը կոչուէր Արտադուխտ․ Կարնամակի մէջ չի յիշուիր այս անունը․ իսկ Ֆիրդուսի կ՚անուանէ զանիկա Գուլնար։ Justi[14] ստուգաբանելով յորջորջումս կը տեսնէ հոս Արտա–դուխտ, իսկ Արտա– կը համարի Արտաւան անուան կրճատումը․ ուստի եւ, կ՚ըսէ, Արտադուխտ ոչ թէ նաժիշտ մ՚էր, այլ Արտաւանի դուստրը․ այս գաղափարի եկած է անշուշտ անկէ, որ ըստ Կարնամակի Արտաշիր ամուսնացած էր Արտաւանի դստեր հետ (Թիրեաքեան, էջ 22—23)։ Այս տեղ վիպական հատուած մ՚ունինք մեր առջեւ, աւելորդ է անուններու պատմական մերձեցմամբ զբաղիլ։ Մեզի համար հետաքրքրական է անուան կազմութիւնը․ Արտա–դուխտ հոս ա զօդիչ մը կը ներկայացնէ, որուն համար երկրորդ օրինակ մ՚ալ կ՚ընծայէ յունական կնքաքար մը, Վարազ–ա–դուխտ[15] (Փաւստոս, Գ․ 15 «Վարազդուխտ»), որոնց հետ կրնայ համեմատուիլ «Խոսրով–ի–դուխտ»։ Այլուր նման բարդութիւններ առանց զօդիչի են (օրինակներ Justi,

---

[14] F. Justi, Iranisches Namenbuch. Marburg 1895, էջ 33։

[15] Հմմտ․ Հանդ․ Ամս․, 1947, էջ 415, ծ․ 47։

էջ 492—493)։ Կը համարիմ, թէ այս –ա–գօղիչը զուտ հայկական է։

Հատուածիս Զ հատածին մէջ կ'ըսուի թէ Արտաշիրի կուսակիցները Արտաւանի բանագնացներ կ'ուղարկեն Զիկն եւ Կարէնը[16]։ Զուգադիպութեամբ այս երկու համանուն իշխաններու կը պատահինք նաեւ Փաւստոսի քով (Դ. 55 եւ Ե. 1), որոնք 368ին Շապուհէն Հայաստան կ'ուղարկուին։ Զիկ, որ նաեւ առանձին կը յիշատակուի (Փաւստ. Դ. 35, 36, Զ. 1) անձնանունէ աւելի բարձր պետական պաշտօնի յորջորջանքն է. արդեամբք ալ Ամմիանոս (Իէ. 12) բուն անունով կը կոչէ Կիւղակէս։ Ուստի հոս եւ Փաւստոսի քով իբրեւ անձնանուն գործածութիւնը ենթադրել կու տայ թէ հեղինակը ծանօթ էր Փաւստոսի Դ. եւ Ե. դպրութիւններու։

8. Սեբէոսի Պատմութեան մէջ ունինք եկամուտ ընդարձակ նամակ մը, որուն համար կ'ըսուի, թէ Ներսէս Գ. Շինող կաթողիկոս գրած ըլլայ Յունաց Կոստանդին թագաւորին։ Այս տեղ ի մէջ այլոց յառաջ կը բերուի, ասորական աղբիւրէ մը հաւանօրէն[17], իբր 613ին Տիզբոն գումարուած «Պարսից ժողովի» պատմութիւն մը, ուր կ'ըսուի.

---

[16] de Lagarde, անդ, էջ 6. «դեսպանս արձակեցին նախ առ արքայ Արտաւան զԶիկ եւ զԿարէն» (Ζηκὰν καὶ Καρινά.)

[17] Հմմտ. Հ. Ն. Ակինեան, Կոմիտաս կաթողիկոս, կեանքն եւ շինարարական գործունէութիւնը։ Աւետիք 13 (1944), 26—31։

«Դիպեցան անդ արք երկու՝ եպիսկոպոս(ք) յաշխարհէն Հայոց, արք հաւատարիմք, զոր վասն բանութեան աշխարհին արձակեալ, զի ծանուցեն թագաւորին, Կոմիտաս Մամիկոնէից եպիսկոպոս եւ Մատթէոս Ամատունեաց· ունէին (նոքա) պատրաստական անդ ընդ ինքեանս զԳիր սրբոյն Գրիգորի» (էջ 121):

Այս «Գիր սրբոյն Գրիգորի» անկասկած Ագաթանգեղոսն էր Փաւստոսի հետ միասին: Կոմիտաս ընտրեալ կաթողիկոսն էր Հայոց· նա գացած էր Տիզբոն յատկապէս արքայէն արքայի հաստատականը առնելու: Այս շրջանին նոր էր գրաւուած Երուսաղէմը պարսկական բանակէն. Պարսկաստան ուղարկուած գերիներու թուին մէջ կը գտնուէր նաեւ Զաքարիա հայրապետ: Հոն հաւաքուած էին հայ նախարարներէն շատերը· այն տեղ էր նաեւ Սմբատ Բագրատունի Վրկանի երբեմնի մարզպանը: Այս առթիւ Կոմիտաս կաթողիկոս խնդրանքով Միհրնեայ Ասորիներու գրեց իր «Հաւատոյ գիրը», ուր բազմաթիւ բանաքաղութիւններ կը տեսնուին Ագաթանգեղոսէն. ասոնք անշուշտ բերանացի յիշողութենէ գրի առնուած չէին, այլ հանուած էին այն «Սրբոյն Գրիգորի Գրէն» զոր ունէր իր քով Կոմիտաս «պատրաստական»:

Ուրիշ հայ պատմագիր մը՝ Մովսէս Դասխուրանցի իր Աղուանից Պատմութեան մէջ կը զետեղէ զրուցախառն պատմուածք մը,

ուր կ'ըսուի թէ հայ իշխանները, որոնք կը գտնուէին Բարձրագոյն Դուռը, «մատուցին» արքայից արքային (Շապուհ Բ. 305—378) «զԱգաթանգեղայ Պատմութիւնն ցանկալի. եւ հրամայեաց ընթեռնուլ եւ թարգմանել ի պարսիկ գիր եւ ի լեզու. եւ իմացեալ եթէ զսկիզբն յԱրտաշրէ առնէ ի նախնոյն իւրմէ, առաւել զուարճացեալ եւ ներբողումն գրոցն առնելով՝ դնէր ի վերայ աչաց իւրոց խանդաղատելով[18]»: Այս գրոյցը անգիր եղած է, ինչպէս կանխած յայտարարած էր հաւաքողը. «Գտանին գրոյցք արեւելից կողմանց, որք ոչ են անկեալ ի գիրս հնագիր պատմագրաց, զորս պատշաճ վարկաք մակագրել ի տառս տողաչափութեան մերում» (էջ 81): Այսպիսի գրոյցի մէջ որչափ ալ ժամանակագրութեան ճշդութիւնը երկբայական համարինք եւ ամբողջ պատմուածքը գրուցախառն, բայց եւ այնպէս եւ այն ստոյգ է, թէ չկայ արձագանգ առանց ձայնի: Թէպէտ ոչ Շապուհ Բ.ի օրով, բայց գոյութիւն ունէր Ագաթանգեղոս առ կանուխ Զ. դարու սկիզբը: Թէ այդ մատեանը տեսնուած է Տիզբոն 615ին, հաւաստուեցաւ վերագոյն: Յիշեցինք հոն նաեւ, թէ այս թուին Բարձրագոյն դուռ հաւաքուած էին հայ իշխաններ: Կոմիտաս Կաթողիկոս ի՞նչ խորհրդով հետն առած էր այդ ծանրաբեռն հատորը, Ագաթանգեղոսի

---

[18] Մովսէս Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, ի լոյս ընծայեաց Մ. Էմին: Մոսկուա 1860, էջ 82:

մատեանը, գրուած անշուշտ երկաթագրով, երկայնաձիգ ճանապարհին վրայ։ Զգիտենք։ Բայց կը հետապնդէր ապահովապէս նպատակ մը։ Զուգադիպութեամբ այս միջոցին Պարսից արքունիքի մերձ կը գտնուէր նաեւ Վիրոյ Աղուանից կաթողիկոս, աքսորական։ Ասոր համար կ՚ըսուի, թէ էր «այր հանճարեղ եւ իմաստուն, զօրաւոր ի բանս իմաստութեան եւ լեզու նորա իբրեւ գրիչ երագագրի ի պատմութիւնս խօսից խորհրդականաց եւ ի մտաւոր խօսս թագաւորաց եւ մեծամեծաց... որ երկայնէր զխօսս իւր համեմատեալ ընդ ճառս իմաստնոց եւ ընդ առակս նոցա։ Շարէր յօրինէր զառակս բերանոյ իւրոյ, զոր օրինակ զմարգարիտ յոսկի յեռուցու՝ մանաւանդ ի թարգմանութեան լեզուին Պարսից վարժեալ զամս Ի՛Ե (604—628) ի դիպահւոջ առ դրան Խոսրովու[19]»։

Ինձ կը թուի թէ Կոմիտաս երբ ներկայացաւ թագաւորին իր հաստատականը ստանալու, այս անգամ իբրեւ Կաթողիկոս Հայոց մեծաց, վասն զի այս թուին թէ՛ Պարսկական եւ թէ՛ Հռոմէական Հայաստան միացած էին Պարսից դրօշին տակ, հարկադրուած էր պատմութենէ ապացուցանել իր կաթողիկոսական իշխանութեան սահմանները։ Ագաթանգեղոսի մատեանը ոչ միայն կը թուէր այդ սահմանները, այլ եւ հայ կաթողիկոսութեան սկզբնադիրն պարթեւազն

[19] Անդ, Բ· 14, էջ 117—118։

Գրիգորը մատնացոյց կ'ընէր։ Աննշանակ չէ, որ զՍ. Գրիգոր պատմութեան մէջ «Պարթեւ» տիտղոսով առաջին անգամ Կոմիտաս կաթողիկոս կը հռչակէ իր վերոյիշեալ Հաւատոյ Գիրքին մէջ։ Այս տեսութիւնը կը ստիպէ զմեզ ենթադրելու, թէ Կոմիտաս Թագաւորին առջեւ եղած ատեն ունէր թեւին տակ Ագաթանգեղոսի մատեանը. եւ այս առթիւ յիշատակութիւն ըրած պիտի ըլլայ թէ Արտաշիրի եւ թէ Անակի մասին, որոնց մասին խօսք ըրած է Ագաթանգեղոս։ Ասկէ կարելի է այնուհետեւ մեկնել այն հետաքրքրութիւնը, զոր ունեցած է Թագաւորը ի մասին Ագաթանգեղոսի մատեանին, որուն թարգմանութիւնը պահանջած է։ Աննպատակ էր ի հարկէ ամբողջական մատեանը թարգմանաբար դնել Թագաւորին առջեւ. կը բաւէր Թագաւորին հետաքրքրութեան համար պատմական մասին հակիրճ եւ համառօտ ամփոփումը, վայելուչ եւ ճաշակաւոր խմբագրութեամբ, ինչպէս կը վայելէր ըլլալ արքայից արքայի ընծայուած ձօնուած մատեանի մը, միաժամանակ ուշ դարձուած հայ դատին նպաստաւոր ելքին։ Կարելի չէր անշուշտ Արտաւանի սպանութիւնը, Խոսրովի քինախնդրութիւնն եւ Արտաշրի պարտութիւնը այնպէս ներկայացնել յաղթական Խոսրովի, ինչպէս Ագաթանգեղոս վիպասանած էր։ Այս պարագան ինքնին կարող է խօսուն վկայ ծառայել հաստատելու համար,

թէ Արտաշիրի ապստամբութեան վէպը պէտք է իրաց այսպիսի կացութեան մէջ ագուցուած ըլլայ Գրիգորի Վարքին մէջ, որուն գրութեան շարժառիթն ալ նոյն նպատակը կը հետապնդէր:

Յոյն Վարքը կ՚ենթադրէր հայ բնագիր. գրողը խօսք կ՚ընէ պարսիկ թարգմանութեան մասին անշուշտ դարձեալ հայ բնագրի վրայէն: Ուստի հարկ է որ Վարքին սկզբնագիրը հայերէն գրուած ընդունինք, եւ անկէ յիշեալ կրկին թարգմանութիւնները:

Միակ մարդը, որ կարող էր ատակ ըլլալ այսպիսի ձեռնարկութեան, կը ցուցի մեր առջեւ Վիրոյ կաթողիկոս. հմուտ հայերէնի, քաջավարժ պահլաւերէնի եւ յորդաբան գրիչ: Երանեանց հերոսավէպերուն ակնաղբիւրէն ծանօթ, նա միայն կրնար հիւսել Արտաշիրի ապստամբութեան վէպը հայ աւանդութեամբ զանգուած:

Գրիգորի Վարքը պէտք է ծնունդ առած ըլլայ Տիզբոն. նոյն տեղ «պարսկերէն»—պահլաւերէնի թարգմանուած Վիրոյ կաթողիկոսէն, եւ յունարէնի վերածուած Երուսաղէմէն գերի բերուած հայերէնագէտ յոյնէ մը (կամ քաջ յունագէտ հայ կրօնաւորէ մը). նոյն միջոցին թարգմանուեցաւ թերեւս նաեւ ասորերէնի, որմէ օգտուած է Գէորգ Ասորի եպիսկոպոս:

Զրոյցը կը պատմէր, թէ թագաւորը «իմացեալ եթէ (Ագաթանգեղոսի մատեանը)

զակիզբն յԱրտաշրէ առնէ ի նախնոյն իւրմէ, *տուեալ զուարձանայր... դնէր ի վերայ աչաց իւրոց խանդաղատելով»*: Ընդգծուած տողս չի՞ յիշեցներ Յոյն Ագաթանգեղոսի «Սկսանիմ անդուստ, ուստի զակիզբն կործանման եղոյց Պարթեւն»:

Զրոյցին մէջ Տապուհի բերանը կը դրուին նաեւ խօսքերս ուղղուած հայ իշխաններու. «ԶՊարսից եւ զՊարթեւաց... զնախադրութիւնս քաջ գիտեմ. իսկ զԱրմենու զազատտոհմն[20] եւ զնոցին նախապատուութիւնն ոչ կարացաք գիտել...: Եւ արդ մի յերկուց առաջի կայ ձեզ նախարարացդ Հայոց՝ ցուցանել զնախնական գիր իւրաքանչիւր ազանց պատուհան եւ զպատիւ...: Նոյնժամայն խորհուրդ բերեալ իշխանացն Հայոց Մեծաց՝ մատուցին առաջի թագաւորին զԱգաթանգեղոյ Պատմութիւն ցանկալի... եւ գտեալ ի նմա գիր ժէ. բարձի» (էջ 81—82): Ագաթանգեղոսի մէջ նման «գիր բարձի» գոյութիւն չունի: Կա՞ր արդեօք այսպիսի «Գահնամակ» մը Վարքին մէջ: Յունական թարգմանութեան անծանօթ է:

---

[20] Տպ. զազատոհմն:

## ԻԶ.

# ՏԻՄՈԹԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ԻՐ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՐԱՐԱԾՈՑ ԳՐՈՑ

### (ԺԱ. ԴԱՐ)

Անունով միայն ծանօթ էր մեզի Տիմոթէոս, որ կը ներկայացուէր «լուսաւոր վարդապետ» յորջորջումով, հեղինակ «Արարածոց Մեկնութեան» մը։ Կը յիշէ զինքը Վարդան Վ. Արեւելցի իր Հնգամատենին խմբագիր Մեկնութեան Նախաբանին մէջ. «Սկսաք առաջնորդ ունելով զամոյն հաւատոյ՝ զԵղիշէ եւ զԵփրեմ եւ զՄեծն Ոսկերերան եւ զայլսն, որք փառաւորէին ի գիրս յայս ի տեղիս տեղիս. եւ յորոց հաւաքեալ էր լուսաւոր վարդապետն Տիմոթէոս» (Հմմտ. Հ. Գ. Զարբանալեան, Պատմ. հայկ. հին դպրութեան, Դ. տպ., էջ 789)։ Անոր ժամանակը Զարբանալեան նախ կը նշանակէր. «Ժ. դարուս մէջ է նաեւ Տիմոթէոս անունով վարդապետ մի՝ որուն կ՚ընծայի Արարածոց մեկնութիւն մը» (անդ, էջ 550). իսկ յետոյ, նոյն մատենին «Մանր մատենագիրք» բաժնին մէջ (էջ 793) կը գրէ. «Ազգային յիշատակագիր

մ՚ալ կ՚ըսէ ի ՆԾ. Թուականի. «Տիմոթ վարդապետ արար զՄեկնութիւն Արարածոցն»: Այդ «յիշատակագիր»ի մասին աւելի մանրամասնութիւն չէ հաղորդուած. բայց այն ըլլալու է Մխիթար Այրիվանեցւոյ Ժամանակագրութիւնը, ուր յամին 1001—1010 արձանագրուած է. «Տիմոթ(էոս) վարդապետն արար զՄեկնութիւն Արարածոց» (էջ 72, Պատկանեան):

Մ. Այրիվանեցւոյ այս ցուցմունքը թոյլ կու տայ ինձ նոյնացնելու այս Տիմոթէոսը համանուն վարդապետին հետ, զոր կը յիշէ Մատթէոս Ուռհայեցի յամի 1060 ի թիւս այն «լուսաւոր» վարդապետներու, որոնք ժամանակակից էին Գագիկ Բ. Թագաւորին. «Տիրան Կապանեցին... Անանէ Հաղբատացին... Տիմոթէոս, Յովհաննէս որ անուանեցաւ Կոզեռն, Պօղոս (Տարօնեցի)» եւ այլն (Վաղարշապատ 1898, էջ 179):

Տիմոթէոս վարդապետի այս Արարածոց Մեկնութիւնը տակաւին չէ յայտնուած որ եւ է ձեռագրի մէջ, ինչպէս նաեւ ցայսօր կորսուած կը համարուին իր նախորդներուն՝ Ստեփանոս Սիւնեցւոյ եւ Եղիշէ Կողբացւոյ նոյն մատենին Մեկնութիւնները:

1939/40ին, երբ աչքէ կ՚անցնէի Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի ձեռագիրներու Ցուցակը, զոր կազմած էր Տ. Սաւալանեանց, ուշադրութիւնս գրաւած էր Թ. 373 ձեռագրին ԽԲ. հատուածը, որ խորագիր կը կրէր «Յառաջաբան Արարածոց Մեկ-

*նութեան Տիմոթէի լուսաւոր վարդապետի»։ Պարագաները չէին ներած, որ անձամբ քննութեան առնէի ձեռագիրը։* 1941*ին խնդրած էի Սիւրմէեան Արտաւազդ Սրբազանէն, երբ ան Երուսաղէմ կը գտնուէր, որ հաճէր օրինակութիւն մը հոգալ ինձ համար այդ ԽԲ. հատուածէն։ Սրբազանը բարի գտնուած էր անձամբ օրինակել զայն* 19 *մայիս* 1941*։ Օգտուելով առիթէս ցուցակագրած է նաեւ ձեռագիրը, որ ապա լոյս տեսաւ Երուսաղէմի ձեռագրաց իր Ցուցակին մէջ* (*Վենետիկ* 1948, *էջ* 310—314, *դժբախտաբար առանց մատնանիշ ընելու ձեռագրին Ա—Ծէ ճառերու իջահամարները*)։

*Ձեռագիրը գրուած է Գրիգոր աբեղայէ* 1348*ին Ղրիմի Ս. Յովհաննէս վանքին մէջ. եւ է բովանդակութեամբ «Տօնապատճառք, զոր արարեալ է Վարդան վարդապետի»։ Այս Վարդան առանց տարակուսի համանուն Արեւելցի կոչուած վարդապետն է, հեղինակը Հնգամատենին Մեկնութեան եւ Պատմութեան. վասն զի Տօնապատճառին բովանդակութիւնը ունի իր մէջ ԺԳ. դարէն ճառս.* ԼԹ. «Վանական վարդապետի խոստովանութիւն հաւատոյ»։ *Վանական վախճանած է* 1251*ին։*

*Վարդան, որ նպատակ ունեցած է «Տօնապատճառ» մը կազմել, առած է անոր մէջ այլ եւ այլ քաղուածքներ, որքան անոնք կը պատշաճէին իր նպատակին։ Այսպէս նաեւ ԽԲ. հատուածը, կը ներկայանայ հոն քա-*

գուածք մը Տիմոթէոսի Մեկնութենէն, այսպիսի խորագրի տակ. «Յառաջաբանութիւն. Արարածոց Մեկնութիւն Տիմոթէի լուսաւոր վարդապետի» (էջ 312), որ նոյն կը հնչէ Վարդանի Արարածոց խմբագիր Մեկնութեան մէջ յիշուած տեղիքին հետ՝ «լուսաւոր վարդապետն Տիմոթէոս»:

Վարդան «Յառաջաբանութիւն» կոչած է իր յառաջբերութիւնը, վասն զի Տօնապատճառին մէջ զետեղած է Արարածոց Մեկնութեան Նախաբանն եւ սկզբնաւորութենէն մաս մը միայն, այն է Արարչութեան առաջին օրուան Մեկնութիւնը (Ծննդոց գրքի Ա. 1—6 համարները): Անշուշտ Մեկնութեան ամբողջութիւնն ունէր Վարդան իր ձեռքի տակ: Դժբախտաբար առ այս չունիմ հաստատուն կռուան: Թէպէտ սա օգտուած է Տիմոթէոսի Մեկնութենէն իր խմբագիր Մեկնութեան մէջ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, բայց չէ յիշած զայն յանուանէ իր Մեկնութեան լուսանցքներու վրայ, ուր սովոր էր նշանակել աղբիւրները համառօտագրութեամբ, ինչպէս Եղիշէ, Եփրեմ, Բարսեղ եւ այլն. ան բաւականացած է Տիմոթէոսէն քաղուածքները, իբրեւ երկրորդական աղբիւր, անանուն, այսինքն «այլ» անորոշով մատնանշել: Թէ բոլոր «այլ»երը Տիմոթէո՞սը կ՚ակնարկեն, չեմ կրնար ապացուցանել:

Պէտք է սակայն շնորհակալ ըլլալ Վարդան վարդապետի, որ իբր 900 տարի յառաջ ծաղկած Հայ Մեկնիչ Տիմոթէոսի այժմ մեզի

համար կորսուած Արարածոց Մեկնութենէն գոնէ չափաւոր ընդարձակութեամբ հատուած մը պահպանած է իր Տօնապատճառին մէջ:

Այս Հատուածը կը հրատարակեմ ստորեւ ամբողջութեամբ իբրեւ ճաշակ ԺԱ. դարու առաջին կէսին ծաղկած հայ Մեկնիչին ոճին եւ մեկնողական արուեստին:

Ձեռագրին մէջ Հատուածիս կցուած է Յաւելուած մը, որ հաւանօրէն Վարդանի գրչէն է: Այս տեղ կը խօսուի.

ա. «Թէ ընդէ՞ր Մովսէս ոչ յիշէ զանուն իւր ի վերագիր գրոցս: — Պարտ եւ պատշաճ է իմանալ վասն տուրիցս այսոցիկ, թէ է՞ր աղագաւ ոչ յիշատակեաց Մովսէս զանուն իւր ի սմա, յորժամ կամեցաւ բացայայտել զգիրս հինգ, զոր գրեաց վասն Արարածոց յինելութեան. վասն զի ամենայն ուսանք ի վերնագրէ անտի ճանաչի, թէ վասն որո՞յ կամ ո՞յր են ասացեալք...:

բ. «Յառաջ քան զՋրհեղեղն ոչ էր կռապաշտութիւն...»: Այս մասերը քաղուածաբար կը գտնուին Վարդանի Մեկնութեան մէջ (Վիեննա, Թ. 229, թղ. 8բ, 9ա, 8ա եւ այլն): Լուսանցքի վրայ նշանակուած «Այս յաւելուած է»՝ հաւանօրէն այս Յաւելուածին կը հայի:

Մեկնողական գրականութիւնը, որ Դ. եւ Ե. դարերուն մեծ թափով եւ բեղմնաւոր արդիւնքով մշակուած էր յոյն եւ ասորի Հայրերէ, սկսեալ Է. յատկապէս Ը. դարէ կորանցուցած էր իր թափն եւ արժէքը: Նոր

Մեկնիչները, որոնք անհմուտ եբրայեցերէնի, միայն Եօթանասնից թարգմանութիւնն իրենց բնագիր ունէին, պարզապէս հետեւող հանդիսացան Ս. Հայրերու Մեկնութիւններու, եւ ջանք տարին անոնց տեսութիւնները կամ իւրացնելու եւ կամ զանոնք շղթայօրէն առընթերադրելու, ուրիշ խօսքով կազմելու խմբագիր Մեկնութիւններ Ս. Գրոց այլ եւ այլ գիրքերու: Այս խմբագիր Մեկնութիւնները կ'ըլլային առ հասարակ խառնուրդ մը բառական եւ այլաբանական տեսութեանց: Ինքնակացութիւն դուն ուրեք երեւան կը բերէին: Անոնց շաւիղով ընթացան ԺԱ.—ԺԴ. դարերուն նաեւ Հայ Մեկնիչները Հայաստան: Խմբագիր Մեկնութիւնները յաճախեցան, երբ թարգմանաբար Հայոց ծանօթացան Ղեւտացւոց Գրքին եւ Կաթողիկեայ Թղթերու խմբագիր Մեկնութիւնները: Անանիա Հաղբատացի, Սարգիս Կունդ, Վարդան Արեւելցի, Գէորգ Լամբրոնացի այս ուղղութեան հետեւեցան: Ուրիշներ մնացին պարզապէս հետեւողներ սուրբ Հարց տեսութեանց, իւրացնելով զանոնք, յաճախ բառական փոխառութեամբ առանց աղբիւրը մատնանշելու: Ասոնց թուին մէջ է Տիմոթէոս վարդապետ: Ինքնակաց էին Գրիգոր Նարեկացի, Իգնատիոս, Սարգիս Շնորհալի, Բարսեղ Մաշկեւորցի, որոնք Նոր Կտակարանը նկատի ունէին, նոյնպէս Հին Կտակարանի Մեկնիչները Մխիթար Գոշ, առաւել չափով Ներսէս Լամբրոնացի իր բոլոր Մեկնութիւններու մէջ: Ամէնն ալ, սակայն,

իրենց աղբիւր ունէին Ս. Հայրերու գրուածքներու Հայերէն Թարգմանութիւնը, որովհետեւ Թէ յոյն եւ Թէ ասորի, ինչպէս նաեւ լատին լեզուները եւ այդ լեզուներով գրուած մատենագրութիւնը անմատչելի էին իրենց, բացառութիւն կազմելով Ներսէս Լամբրոնացի: Հայ Մեկնիչները Ս. Գրքի միայն Հայերէն Թարգմանութիւնը աչքի առաջ ունէին: Ասորի Թարգմանութենէն հատուածներ կ'ընծայէր իրենց Ս. Եփրեմ: Իսկ Եօթանասնից յունարէն այլ եւ այլ Թարգմանութիւններու ընթերցուածները, նոյնպէս եբրայական բնագրէն տեղիքներ կա՛մ Հայերէն Թարգմանութեան աստեղանիչ լուսանցագրութիւններէն ծանօթ էին իրենց եւ կամ Ս. Հարց Մեկնութիւններէն: Այդ Լուսանցագրութիւնք, որոնք անոնց տակաւին ԺԳ. դարուն մատչելի եղած կ'երեւան, դժբախտաբար յաջորդ շրջանի Աստուածաշունչներէն կամ դուրս վտարուած են եւ կամ բնագրին մէջ մուծուած:

ԺԱ. դարուն, երբ կը գրէր Տիմոթէոս իր Մեկնութիւնը, Հայ գրականութեան մէջ գոյութիւն ունէին ինքնագիր երկու Արարածոց Մեկնութիւններ, Եղիշէ Կողբացւոյ (Է. դարու առաջին կէսին) եւ Ստեփանոս Սիւնեցւոյ. երկուքն ալ տակաւին չեն յայտնուած: Իսկ Թարգմանաբար մատչելի էին Եփրեմ Ասորւոյ, Բարսեղ Կեսարացւոյ, Յովհ. Ոսկեբերանի, Կիւրեղ Աղեքսանդրացւոյ (ամէնն ալ Ե. դարէն), Փիլոն Եբրայեցւոյ (Զ. դարու Բ. կէսէն), Պիսիղէսի (Ը. դարէ),

*Եպիփան Կիպրացւոյ (Թ. դարէ՞) մեկնողական գրութիւնք եւ ճառք:*

*Տիմոթէոս Վարդապետ աչքի առաջ ունեցած է այս գրութիւններէն, զոնէ մեզի հասած Հատուածին մէջ, Եփրեմի Արարածոց Մեկնութիւնը, Բարսղի Վեցօրեայքը, Փիլոնի Լուծմունքը: Ան կարդացած է Գրիգոր Նազիանզացւոյ ճառերը, անշուշտ նաեւ այլ Ս. Հարց գործեր՝ Կիւրեղ Երուսաղեմացւոյ Կոչումն Ընծայութեան, Նեմեսիոս եւ այլն:*

## ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

### ԱՐԱՐԱԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏԻՄՈԹԷԻ ԼՈՒՍԱՒՈՐ ՎԱՐԴԱՊԵՏԻ

1. *Ի սկիզբն լինելութեան գոյացութեանց արարածոց նախ եւ առաջին հաւատք ի մեզ հաստատեսցի յարարիչն Աստուած, թէ գոյակ է իսկական, անսկիզբն եւ անբաւ ի բովանդակութեանց: Հայր բարեգործակ եւ բնաւից արարչագործ, գերագոյակ գոլով գոյից, վասն իսկապէս եւ ի հարկէ գոյականութեան յանսահման եւ անպարագոյ տեւանէ. եւ սահմանիչ զօր բովանդակէ: Իսկ ինքն միայն սահմանեալ[1] յՈրդւոյ հայրականոն յատկութեամբ եւ ի Հոգւոյ բխողաբար առանձնութեամբ, իսկ միութիւն յառաջառաքող հոգեպէս. որպէս զի երիցն թուոց[2] պահեսցի ի մեզ առանձնութիւն եւ միոյ աստուածութեան*

---

[1] *սահմանիլ:*

[2] *թուոց:*

առանձնութիւն: Եւ գոյացելոց ձայնս հաւատով ծանիցուք. որպէս զի պատեհարար յարմարիցին իմաստքն եւ մի՛ գարտուղի ելցուք ի ճշմարիտ իմանալւոյն[3]:

2. Իսկ զի՞նչ են հաւատքն: Ըստ ինքեան իրք են առանց շօշափելոյ, անըմբռնելի, անտեսանելի, անքննելի, անճառելի, յուսթեամբ պատուեալ եւ մօտք միայն երկրպագեալ[4]: Քանզի հաւատ ի Հայրէ սկսանի եւ յՈրդի հասանի եւ ի սուրբ Հոգին վերաբերի: Հաւատոյ արմատ կենդանութեան՝ Հայր, եւ ոստ անթառամելի ի նմին արմատոյ Որդի. իսկ պտուղ անմահութեան՝ դարձեալ եւս ի նմանէ՝ Հոգին սուրբ: Երրորդութիւն պարզ եւ առանց շարադրութեան:

3. Անորիչ ըստ միական բնութեան. այսինքն աստուածութիւն, տէրութիւն, զաւրութիւն եւ (սուրբ) գործոյ արարչութեան, յաւիտեան կատարեալ յառանձնութեան, եւ միացեալ ըստ հաւասարութեան, որ նախ քան զյաւիտեանս եւ երիցագոյն քան զժամանակս եւ մնայ իսկ ի նոյնութեան անծերանալի, անարատ եւ անմահ: Ոչ աճէ, քանզի աննուազ է, եւ ոչ լնու, քանզի անթերի է: Երրորդութիւն համազօր, ոչ այժմ եւեթ գտեալ երկրպագութիւն[5], այլ յաւիտենից յերկինս ի հրեշտակաց երկրպագեալ եւ ի հարց սրբոց ի վերայ երկրի փառաւորեալ,

---

3 իմանալո՛յն:
4 երկրպագել:
5 յերկրպագութիւն:

ի մարգարէիցն պատուեալ եւ յառաքելոցն
քարոզեալ եւ յեկեղեցիս արդարոց մեծացեալ:

4. Վասն որոյ երիս առաքինութիւնս
Պաւղոս եկեղեցւոյ աւանդէ. զհաւատ, զյոյս,
զսէր. հաւատ ի Հայր, յարմատն եւ ի պատ–
ճառ. եւ յոյս յՈրդի, «Քանզի յուսամ եթէ
տակաւին փրկեսցէ զմեզ[6]». իսկ սէր ի Հոգին
սուրբ, քանզի պտուղ Հոգւոյն սէր է[7]: Այսո–
քիկ առաքինութեան հաւատք: Իսկ յաղագս
ամենասուրբ Երրորդութեան վկայեսցեն եւ
աստուածաշունչ պատգամքն. որպէս զխո–
րոց գործն մի է յաւիտեան իրաւք բնութեան
նոյնութիւն դաւանելի է. քանզի արար զեր–
կինս Հայր, այլ ոչ առանց Որդւոյ եւ Հոգւոյ,
որպէս գրեալ է. «Ողորմութեամբ Տեառն լի
եղեւ երկիր եւ բանիւ Տեառն երկինք հաս–
տատեցան եւ հոգւով բերանոյ յաւիտեան
զաւրութիւնք նոցա[8]»: Զաշխարհս յաւի–
տեան ելից Հայր, այլ ոչ առանց Որդւոյ՝ ըստ
գրեցելումս. «Զերկինս եւ զերկիր ես լնում
ասէ Տէր[9]»: Ելից եւ որդի. «Զի ամենայն
ինչ նովաւ եղեւ[10]»: Իսկ յաղագս Հոգւոյն
գրեալ է. «Հոգի Տեառն ելից զտիեզերս[11]»:

5. Իսկ զլուխ զգալի արարածոց մարդն
ոչ միայն ի Հաւրէ ստեղծանի, այլ եւ յՈրդ–
ւոյ եւ ի Հոգւոյն. եւ վկայեսցէ ինքն. «Արա–

---

[6] Բ. Կոր. Ա. 11:
[7] Հմմտ. Գաղատ. Ե. 22:
[8] Սաղմ. ԼԲ. 5—6:
[9] Երեմ. ԻԳ. 24:
[10] Յովհ. Ա. 3:
[11] Իմաստ. Ա. 7.

ցուք մարդ ըստ պատկերի մերում[12]». «արասցուք»ն զուգապատիւ ցուցանէ զկարգն, զի հասարակ են կամքն եւ գործքն. Դաւիթ վկայէ. «Ձեռք քո արարին եւ ստեղծին զիս[13]»: Որպէս եւ վասն երկնայնոցն զաւրաց Յովսէփ ասէ. «Որոյ ձեռք արարին զզաւրս երկնից[14]»: Իսկ «ըստ պատկերին» ասելն զմիակամութիւն բացայայտէ. վասն որոյ եւ ի վերստին մեր նորոգման նովին կոչմամբ կերպարանիմք. ո՛չ յանուն Հաւր միայն եթէ ոչ յանուն Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն. «Գնացէք, ասէ, մկրտեցէք զնոսա յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ»[15]: Պաւղոս ասէ. «Որ ներգործեաց զայս ի մեզ Աստուած է, որ եւ ած զմեզ եւ կնքեաց[16]». կնիք է եւ Հոգին սուրբ. «Մի տրտմեցուցանէք զՀոգին սուրբ Աստուծոյ, որով կնքեցարուք յաւուրն փրկութեան[17]». որով կերպարանակից արար զմեզ Որդւոյն Աստուծոյ եւ պատկերի[18] Աստուծոյ Հաւր[19]: Ըստ որում «ոչ պարտի ծածկել զգլուխն» յաղաւթականութեան, «զի պատկեր եւ փառք Աստուծոյ են[20]»:

6. Մեծ է Հայր, մեծ է Որդի, անբովանդակելի է Հոգին սուրբ ըստ հոգէնուագին որ

[12] Ծն. Ա. 26:
[13] Սղմ. ՃԺԸ. 73:
[14] Ովս. Ժ. 4:
[15] Մատթ. ԻԸ. 19:
[16] Հմմտ. Բ. Կորն. Ա. 22:
[17] Եփես. Դ. 30:
[18] պատկեր:
[19] Հմմտ. Հռոմ. Ը. 29:
[20] Ա. Կորն. ԺԱ. 7:

ասէ. «Մեծ է Տէր մեր եւ մեծ է զաւրութիւն նորա[21]»։ «Քրիստոս Աստուծոյ զաւրութիւն[22]». եւ «Իմաստութեան նորա ոչ գոյ թիւ[23]». այսինքն Հոգւոյն սրբոյ։ Խաղաղութիւն է Հայր. յոր դէմս ասէ. «Իբրեւ զգետ զխաղաղութիւնս իմ[24]»։ Խաղաղութիւն է Որդի ըստ Պաւղոսի, թէ «Նա է խաղաղութիւն մեր[25]». եւ արար խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ։ Խաղաղութիւն է եւ Հոգին սուրբ. «Պտուղ Հոգւոյն սէր, խնդութիւն, խաղաղութիւն[26]»։ Աղբիւր է Հայր, «Զի ի նմանէ է աղբիւր կենաց[27]»։ Աղբիւր եւ Որդի, որ ասաց մարգարէին. «Զիս թողին զաղբիւրս ջրոյ կենդանւոյ[28]»։ Աղբիւր է եւ Հոգին. «Քանզի մեք ամենեքեան զնոյն Հոգի արբաք[29]»։ Լոյս է Հայր, վասն զի «Աստուած լոյս[30]» ասի։ Լոյս է եւ Որդի, վասն զի «Ես եմ լոյս աշխարհի[31]»։ Լոյս է եւ Հոգին սուրբ. ասէ Պաւղոս. «Զհոգին մի շիջուցանէք[32]»։ Եւ բազում այսպիսի վկայութիւնս[33] գտանեմք տարածեալս ի սուրբ աստուածաշունչս Հին եւ Նոր Կտակարանաց։

[21] Սաղմ. ՃԽԶ. 5։
[22] Ա. Կորն. Ա. 24։
[23] Սաղմ. ՃԽԶ. 5։
[24] Ես. ԿԶ. 12։
[25] Եփես. Բ. 14։
[26] Գաղատ. Ե. 12։
[27] Սաղմ. ԼԵ. 10։
[28] Երեմ. ԺԷ. 13։
[29] Ա. Կորն. ԺԲ. 14։
[30] Ա. Յովհ. Ա. 5։
[31] Յովհ. Ը. 12։
[32] Ա. Թեսաղ. Ե. 19։
[33] այսպիսիս վկայութիւն։

7. Յաղագս համագոյական եւ նոյնագործարար արարչութեան եւ զուգապատիւ Երրորդութեան՝ այնմիկ որոյ կամացն անկարկութիւն յորժամ եւ կամեցաւ սկիզբն գոյացութեան արար, որպէս եւ բազում աւրինակք[34] սկզբանց տարացոյց զտանին ի մեզ, աւրինակք եւ աւրէնադրութիւն. աւրինակք որպէս հիմն արկանել տան. եւ ողնափայտ սկիզբն նաւի կազմութեան. եւ կամ որպէս վկայութեան[35] խորանին արարուածք ի սկամանէ ումեքէ կատարել[36]»: Իսկ աւրէնադրութիւնք, որպէս. «Սկիզբն ճանապարհին կենաց արդարութիւն է[38]». եւ «Սկիզբն իմաստութեան երկիւղ Տեառն[37]». եւ այլք սոցին համագաւրք[39]: Իսկ այսմ սկաման Մովսէս է պատմիչ, այն որ կենդանւոյն զԱստուած տեսանել արժանացաւ. որում

---

34 օրինակ:

35 վկայութիւն:

36 կատ իր:

37 Հմմտ. Առակք. ԺԶ. 5. «Սկիզբն ճանապարհի բարւոյ՝ գործելն զարդարութիւն»:

38 Առակք, Ա. 7:

39 Հմմտ. Բարսեղ, Վեցօրեայք, 10. «Ասի դարձեալ սկիզբն սկսուածի իրաց ինչ, որ առնուցուն սկիզբն լինել. որպէս ասիցէ ոք, թէ սկիզբն բարւոք ճանապարհին արդարութիւն, որ հասուցանէ ի հանգիստ երանելեաց աշխարհին: Ասի սկիզբն եւ այնմ, զոր ինչ խորհիցիմք մեք գործել. կամ արկանել հիմն տան, կամ հարկանել բուռն զգործոյ տախտակամած յատակաց նաւի, որ է սկիզբն սկսուածոյ կազմութեան նաւին. կամ որպէս գրեալն է. Սկիզբն իմաստութեան է երկիւղ տեառն...: Ասի դարձեալ սկիզբն եւ այլոց արուեստից ճարտարութեանն ըստ իմաստութեանն Բեսելիէլի, որ եղեւ զարդ խորանին վկայութեան եւ կազմածի (ալ. կազմած ի) վրանի ժամուն»: — Ասկէ քաղուածաբար Վարդան (թղ. 9ա—բ):

ոչ տեսլեամբ երազոց, այլ դէմ յանդիման խաւսեցաւ։ Վասն որոյ եւ ի պատգամաց բանիցն, զոր ընկալաւ յԱստուծոյ, խաւսեցաւ ընդ մեզ․ եւ ասէ․

8․ «Ի սկզբանէ արար Աստուած զերկինս եւ զերկիր»։ Նախ զսկիզբն ցուցանէ եղելոցս, զի մի կարծեսցուք թէ անսկիզբն է[40]․ եւ ապա զայն, թէ Աստուած է արարիչ սոցա եւ չեն ինքնակայք ըստ կարծեաց իմաստնոցն Յունաց[41]։ «Ի սկզբանէ արար Աստուած»․ զոր աւրինակ ճարտար ոք ի պատրաստել զտեղի շինուածին երկուս անկիւնավէմս դնիցէ, այսպէս արարիչն զերկինս եւ զերկիր[42]։ Եւ զոր աւրինակ ոչ սկիզբն տանն տունն է, եւ ոչ սկիզբն ժամանակին ժամանակն․ եւ ոչ մասն մի փոքրիկ է ժամու, յորում արկաւ հիմն յեղանակացս[43]։ Ոմանք աւրինա(կա)գիրք այսպէս գրեն․ «Սկիզբն[44], ասեն, արար Աստուած զերկիր»․ եւ այլք թէ «ի սկսմանէ[45] արար Աստուած զերկինս»․ եւ այսինքն է՝

---

40 Հմմտ. Բարսեղ, 5․ «Նախ սկիզբն եդաւ լինելոյ արարածոցն․ զի մի կարծիցէ ոք, եթէ առանց սկզբան իցէ աշխարհս»։

41 Վարդան, 9ա. «Նախ սկիզբն ուսուցանէ զոլ եղելոցն, զի մի կարծեսցուք թէ անսկիզբն իցեն․ եւ ապա զայն թէ Աստուած է արարիչ եւ չեն ինքնակայք ըստ կարծեացն Յունաց»։

42 Վարդան, 9ա․ «Զոր օրինակ շինողք յընդարձակ բակի յերկուս եզերսն գծեն եւ անկիւնավէմս կառուցանեն, եւ ապա զմիջոցն լնուն շինուածով, նոյն օրինակ արարիչն զերկին ի վեր եւ զերկիր ի խոնարհ կառուցանէ»։

43 Հմմտ․ Բարսեղ, 12․ տ․ 1—4։

44 Թերեւս՝ «ի սկզբան»։

45 ի սկսման։

*յակա՛ն թաւթափելն միայն* [46]: *Կամ թէ այսպէս իմացուք զբանս. «իսկ»՝ Հայր, «բան»՝ Որդի, «է»՝ ամենասուրբ Հոգին* [47]:

9. *«Աստուած արար զերկինս եւ զերկիր»: «Ի սկզբանէ արար Աստուած». ոչ թէ այս չափուն էր զաւրութիւն առնել: Զի եթէ բրուտն իւրով աղքատիմաց ճարտարութեամբն յառնելն անաւթս բազումս ոչ սպառէ զարուեստն. քանի՞ ինչ զմտաւ ածցուք յաղագս անբաւազաւրին Աստուծոյ. թէ այլ եւս բիւր այսքան կարող էր միայն ակնարկելով յանդիման կացուցանել, թէ պէտք էին* [48]:

10. *«Ի սկզբանէ արար Աստուած». Երիցագոյն* [49] *պատմութեամբն զերկինս. ե՛դ առ նմին զերկիր առ ի պատիւ բնութեան երկնի: Եւ այն զի՞նչ իցէ, զի Դաւիթ մարգարէն նախադասէ. «Դու, Տէր, ի սկզբանէ զերկիր հաստատեցեր եւ գործք ձեռաց քոց երկինք են* [50]*»: Երկինք երկուս են. նա զառաջինն ասէ, զ÷րեղէնն. եւ սա զհաստատութիւնն,*

---

46 *Բարսեղ*, 11. *տ.* 15—19. *«Բայց այլ օրինակա[ւ] զիրք եւս մեծապէս (ա՞յսպէս) աւանդեցին մեզ ի մեկնել զմիտս բանին Աստուծոյ. ի սկզբանէ (ի սկսմանէ՞), ասեն, արար Աստուած զերկինս եւ զերկիր. այս ինքն յանկարծակի, յական թօթափել, ի միում սակաւ ինչ վայրկենի»: Հմմտ. Եփրեմ, Ա.* 1:

47 *Այս բառախաղը «իսկ — զբան — է» առաջին անգամ կը տեսնուի Ստեփաննոս Սիւնեցւոյ Յովհաննու Մեկնութեան սկիզբը. ուսկից փոխ առած են նաեւ ուրիշներ:*

48 *Բարսեղ*, 5. *տ.* 13—21: — *Վարդան*, 10*ա հետեւելով Տիմոթէի:*

49 *Զ. իրիցագոյն:*

50 *Սաղմ. ՃԱ.* 26:

զի յետ երկնի եղեւ[51]: Զերկին կատարեալ կազմեաց, զի ընդ նմա եղեն բնակիչք նորա հրեշտակաց էութիւնքն: Զի ի կատարմանէն երկնից զմտաւ ածցուք զանրաւ զաւրութիւն Աստուծոյ: Իսկ զերկիր առ սակաւ սակաւ-ած ի կատարումն վասն մեր աւգտի, զի ու-սանել մարթասցուք եւ մի ամբոխեսցուք. զի գիտասցուք զխնամս դայեկութեան առ մեզ: Զկերպարանս երկնից մեծն Եսայի ասէ. «Խո-րանարդ զմբեթաձեւ[52]». ի ժամանակին յո-րում տայր փառս արարչին: «Զերկին», զի թեթեւ բնութիւն է եւ պարզ եւ ոչ ի թան-ձրուց տարերց աստի, զվերին վայրն ետ նմա: «Եւ զերկիր», զի թանձր է եւ վայրաբեր, զներքին վայրս վիճակեցոյց նմա. զի տեղի կենդանեաց եւ նոցայն պիտոյից[53] եւ տեղի խրատու եւ հանճարոյ: Եւ յաւիտեան թեթեւ վերանայ ասուստ, եթէ գտանի առ մեզ. եւ ամենայն ծանր որ գտանի առ վերին վայրն, աստ առ մեզ իջանէ[54]:

11. «Ի սկզբանէ արար Աստուած զամե-նայն»: Ոչ գոյր այլ բարբառ վեհագոյն քան զայս՝ ցուցանել զլինելոցս քան զոր բարձր

---

[51] Վարդան, 10ա, փոխառութեամբ:

[52] Եսայի չունի այսպիսի տեղիք: Հմմտ. Բար-սեղ. «Եւ զկերպարանս եւս երկնից կամեցաւ ուսու-ցանել մեզ ինքն իսկ նոյն Եսայի՝ ի ժամանակի իբրեւ տայր փառս արարչին զարմանալով. եւ ասէր, թէ ՚Ո ձգեաց զերկինս իբրեւ զկոնք զմբեթարդ եւ հաս-տատեաց կանգնեաց զնա իբրեւ զխորան ի բնակութիւն»:

[53] Զ. ցպիտոյից:

[54] Բարսեղ, 15, ա. 24—25. 16, ա. 23. 14. ա. 34—36:

բարբառու (՞) ասէ · «ի սկզբանէ»: Նոյն արարիչ ի Կարմիր Ծովուն զայսուիկ զբարձրագէգ կոյտս ջրոյն իբրեւ զերկին եւ զնոր երեւել զատակ ծովուն երկիր ցամաք[55]:

12. «Ի սկզբանէ»· որ էրն ի սկզբանէ[56] միածին Որդին[57] արար ի վերայ երկրի զեկեղեցի բնակութիւն ինքեան եւ երկիր կենդանեաց եւ սրբութիւնք սրբոց: «Ի սկզբանէ արար Աստուած զերկին»· զհոգին բանական եւ երկնային, «եւ երկիր», զհողեղէն մարմինս, զի մի անբաժ իցէ հոգս այս ի յաբնութենէ անտի:

13. «Ի սկզբանէ արար Աստուած» երկին շրջապայ եւ երկիր հաստատուն· երկին՝ անփոփոխ բնութիւն եւ երկիր՝ յեղափոխուկ: Արդ զի մի՛ երկին վասն անփոփոխ բնութեան աստուած կարծիցի, եղ ի նմա շարժականութիւն, [զի շարժականութիւն], զի շարժականն աստուած ոչ է: Եւ զերկիր յեղլի, զի մի՛ վասն կայականութեան աստուած թուեսցի, վասն զի փոփոխի երեւաւք: Եւ արդ է յաւիտեան ինչ շարժման եւ կայանի ծնունդ արարածական, իսկ արարիչ հաստատութեան է անփոփոխ:

14. «Եւ երկիր էր աներեւոյթ եւ անպատրաստ»· «թոհ եւ բոհ» ասէ Ասորին[58].

---

55 Վարդան, 10ա, 10բ:

56 Ա. Յովհ. 1:

57 Յովհ. Ա. 18:

58 Լուսանցքի վրայ «Եփրեմ»· հմմտ. Եփրեմ, Ա., էջ 2—3: Վարդան, 8ա «զոր թոհ եւ բոհ ասացին, այս ինքն խոր եւ խաւար»: Տես եւ Բարսեղ, 28, տ. 24—27:

այսինքն խոր եւ խաւար: Զայս զի ասաց, ի բազում իրաց լռեաց. ի հրոյ, ի յաւդոյ, ի ջրոյ. այլ յայտ է զի եւ սոքա ընդ երկնի եւ ընդ երկրի եղեն. Նախ երկիր եղեւ եւ ապա ջուրն եւ ծածկեաց զնա: Եւ զի ոչ ասաց՝ «արար զջուրն», այլ ասաց «աներեւոյթ էր», զի մեք յանձն առցուք զպատճառն: Զի թէ աւդով ծածկէր, աւդ լրթալոյս բնութեամբ եւ մաւտաւորացն դէմք երեւէին միմեանց աւդով[59]: Եւ ասել թէ հրով ծածկէր, ուր երեւի հուր՝ լոյս ծագէ: Արդ բայց ի հրոյ, յաւդոյ եւ ի հողոյ այլ ոչ ինչ գոյր, բայց ջուր. զի յայտ է եթէ ջրով ծածկեալ էր զնայն: Այլ ջուր յորժամ յստակ լինի, երեւին ի նմա դէմք եւ ձկունք լուսով. բայց անդ լոյս ոչ գոյր. վասն որոյ «աներեւոյթ էր». եւ Յուդիթ ասէ դարձեալ. «Որ արարիչդ ես ջրոյ[60]»: Իսկ անպատրաստութեան երկրի դարձեալ ջուր էր: Զի պատրաստութիւն երկրի բոյսն է, որով զարդարի նա, բազմատոհմ բողբոջք անկոց եւ խոտոց. յորժամ լինին դաշտք կանաչագեղք եւ մարգք ծաղկազարդք, լերինք անտառախիտք, բլուրք պրակաղեղք, անդք բուսարձակք եւ վիճակք պտղալից, ծառք վարսաւորք եւ տունկք հովանաւորք: Այս ամենայն զարդ երկրի չեւ եւս էր եղեալ, ի խափանուածէ ջրոյն, մանաւանդ զի չէր ա-

---

[59] Բարսեղ, 29, ա. 3. «Զի օդոյ անօսր եւ լրթագոյնս բնութիւն է... զի երեւեացին ի մօտոյ միմեանց երեսք տեսողացն նուազագոյն լուսով նորա»:

[60] Յուդիթ, Թ. 17: Բարսեղ, 29, ա. 1—17:

ռեալ հրաման երկիր բղխել զբոյս եւ զտունկս[61]:

15. Իսկ խաւարեալ իմաստունքն Յունաց ասեն. «զհիւղէ[62] լոյս առնէ զպատրաստութիւն»: Իսկ մեք մի դիցուք միտ բարբաջմանց նոցա: Դարձեալ ասեմք, եթէ չեւ եւս էր եղեալ մարդ տեսող նորա զարդուցն. վասն այնորիկ «աներեւոյթ էր երկիր եւ խաւար ի վերայ անդնդոց»: Ամբարշտեն դարձեալ զբանս զայս Մանիքեցիքն եւ Ծայղանացիքն եւ խոտեալ աղանդն նոցա. ասեն. «զչարէն լոյս առնէ. իսկ չարն, ասեն, գոյութիւն ունի եւ անձն կենդանի եւ ինքնեղ եւ ոչ յԱստուծոյ. հակառակ է բարւոյ եւ թշնամի կենաց. եթէ Աստուած լոյս է, որ նմա հակառակ է՝ խաւար է»: Եւ բազում ինչ տողեն[63] աստուստ: Եւ մեք մի՛ անկցուք յառասպելս նոցա[64]:

16. Այնպէս ասեմք զխաւարն որպէս եւ էն. վասն զի խաւար է աւդ անլոյս եւ ստուեր տեղեաց ինչ. որպէս իրք են երեւեցուցիչ խաւարի: Յորժամ լոյս չլինի եւ տարեր իրիք արգելու զլոյսն[65]. եւ վայրք առանց լուսոյ:

---

[61] Բարսեղ, 29, տ. 18—27:

[62] Զ. զհեղէ: Բարսեղ, 25, տ. 16 «Այս բանք, ասեն, զհիւղէ լոյս առնեն, որ էր աներեւոյթ եւ անպատրաստ»:

[63] Զ. տաւեն:

[64] Քաղուածք Բարսեղէն, էջ 30, տ. 1—12: — Ասկէ Վարդան, 10ր:

[65] Քաղուածք Բարսեղէն, 29, տ. 35—37. իմացիր. «եւ ստուեր տեղեաց՝ յորոց արգելու լոյս ի պատճառս տարերց ինչ որ կացցեն ի դիմաց»:

Քանզի մեծ շրջանն երկնից արգելեալ փակեաց զամենայն տարերս ընդ ինքեամբ. եւ զամենայն փակելով արտաքուստ երեւեցաւ մեծ ծոց գործեալ վայրքն, որ առ երկրաւ գտաւ առանց լուսոյ: Յայտ է, զի աւդ առանց լուսոյ՝ այդ է խաւար[66]:

17. Իսկ «անդունդք» անրաւութիւն ասի: Զբազմութիւն ջրոյն, որ ի լոյգ ունէր զամենայն երկիր, ալիք զալիս բախելով կոծէին, վերանային՝ կուտակեալք ի մխեանց վերայ՝ բռնանային ունել զտեղի աւդոյ. զայն կոչէ անդունդք[67]: Զի չեւ եւս էր առեալ ջրոյն զփորձ գնալոյ. վասն զի ոչ իսկ ուսեալ էր ի հրամանէ հաստչին գնալ ի տեղին, որ պատրաստեալ էր նմա յարարչէն իւրմէ: Եւ զի արարած Աստուծոյ է անդունդք՝ Յոբ ասէ. «Որ արար զանդունդս[68]». եւ զհրեշտակաց որ ընդ երկնի եղեն, Դաւիթ ասէ. «Որ արար զհրեշտակս իւր հոգիս[69]». եւ զհրոյ եւ զաւդոյ դարձեալ. «Զփայլատակունս իւր յանձրեւս արար[70]». զի յաւդոյ լինին այսք:

18. Դարձեալ «Երկիր աներեւոյթ եւ անպատրաստ». եկեղեցւոյ խորհուրդն կայր ի կամս Աստուծոյ ծածկեալ այլ չերեւէր. զի Որդին Աստուծոյ մարդեղութեամբ չեւ էր պատրաստեալ զնա. եւ խաւարն անգիտու–

---

[66] Հմմտ. Բարսեղ, էջ 34, տ. 18—20: — Վարդան, 10բ:

[67] Անդ, 52, տ. 11:

[68] Յոբի գրոց մէջ չեմ գտներ տեղիքս:

[69] Սաղմ. ՃԳ. 4:

[70] Սաղմ. ՃԼԴ. 7:

թեան խորոց գրոց, այս է անդունդք խորոց, զոր Առաքեալ անուանէ. «Ո՜ խորք[71]» ասելով:

19. «Եւ հողմ Աստուծոյ շրջէր ի վերայ ջուրց»: Զայս եթէ զհողմոյ իմացիս, ընկա՛լ. զի պատմեցաւ քեզ վասն հողմոյ, զի նա մասն մի է յայնցանէ որ եղեւ ընդ աւդոյ եւ ընդ ջրոյ: Բայց խնդիր եղեւ ի մէջ առաջնոցն վասն սորա. եւ ասեն, թէ զՀոգին սուրբ պարտ է իմանալ[72]: Իսկ եթէ զինչ իցէ պատճառք Հոգւոյն երթեւեկի. զի ի կազմութենէ թերի էին, սուրբ Հոգին տայր շարժութիւն ջրոյ եւ աւդոյ եւ կենդանական զաւրութիւն: Զի որ ի ջուր եւ որ ի ցամաքի, ամենեցուն շունչ՝ կենաց պատճառ բաշխեսցէ. զի ամենեցուն կեանք կախեալ կայր զնմանէ[73]: Եւ կամ որպէս հաւ թխելով զձուն՝ խլրտումն առնէ ի ներքս, այսպէս եւ Հոգին սուրբ առ զրգիչ զթոյն շրջէր եւ արկանէր կենդանական զաւրութիւն ի ջուրն եւ յերկիրն, որ ներքոյ նորա: Զի յորժամ հրամայիցէ, (զի) յառաջ ածցեն զբոյսս եւ զլողակ եւ զթռչուն բնութիւն. եւ ժամապահ եղեն մուծանել զմիանձնութիւն Հոգւոյն, զի կատարումն փառաւոր Երրորդութիւն ցուցցի[74]: Արար Աստուած Հայր զերկին եւ զերկիր. և ասա զՀոգին յիշէ եւ ապա զՈրդի՝ յառնել զլոյսն.

---

[71] Հռոմ. ԺԱ. 35:
[72] Բարսեղ, էջ 35, տ. 1—32:
[73] Եփրեմ, էջ 3: Շարունակութիւնը Բարսեղէն է:
[74] Անկէ Վարդան, 11ա:

նկարէ զՋուր աւազանին, որ Հոգւովն սրբի[75]: Իսկ այլք ի լեզուաց[76] ասեն թէ «Հաղա շրջէր». եւ կէսք եթէ «Հատկութա Աստուծոյ շրջէր». եւ յոյն «Հողմ» եւ մերս Թարգման եթէ «Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջուրցն[77]»:

20· «Եւ ասաց Աստուած· Եղիցի լոյս»: Այս առաջին[78] բան յաղագս լուսոյ ասացեալ· վայել էր իսկ մեծի արարչութեան լուսոյ ի լոյս սկիզբն առնել[79], զմեզ ուսուցանելոյ աղագաւ: Այնպէս ցուցանէ, եթէ խաւսի Աստուած· այլ չեն պէտք Աստուծոյ· եւ ոչ գոյ նմա ձայնարան գործիք եւ յաւղապատ բանք[80], այլ ակնարկելով գործն կատարէր: «Եւ ասաց Աստուած· Եղիցի լոյս»· զկնի եկն բանիցն գործն եւ եղեւ լոյսն ցան եւ ցիր անմարմին եւ անարեգակ[81]: Զայլոցն զնիւթն

---

[75] Եփրեմ, էջ 3:

[76] Զ· զլեզուաց:

[77] Ինձ անծանօթ է, թէ ինչ աղբիւրէ օգտուած է հոս Տիմոթէոս: Այս տեղիքը ունի նաեւ Վարդան այլ խմբագրութեամբ (11ա[1]):

[78] Զ· առաջի: Հմմտ· Բարսեղ, էջ 35, տ· 36:

[79] Վարդան, 11բ· տեղիքս յառաջ կը բերէ յանուն Աստուածաբանին· «Եւ վայելէր իսկ մեծի լուսոյ արարչութեան ի լուսոյ առնել սկիզբն· զայլոցն զնիւթն յառաջագոյն գոյացուցեալ՝ զտեսակն արար յետոյ· իսկ սորա զտեսակն յառաջ գոյացոյց եւ զնիւթ ամանոյն յետոյ· զի տեսակ արեգականն լոյսն է»:

[80] Բարսեղ, էջ 46· «Աղէ զի՞նչ պիտոյ էին յօդապատ կերպարանք պիտոյից բանին առ այն զօրութիւն... որ յօդապատ եւ մարմնապատ բանիւք պատմեցան»: «Ձայնարան» փոխառութիւն է Նազիանզացիէն· Աւ որս է (ՆՀԲ):

[81] «Անմարմին եւ անարեգակն» փոխառութիւն է Գր· Աստուածաբանի ի Նոր Կիւրակէն ճառէն:

յառաջագոյն գոյացուցեալ՝ զանասակն արար յետոյ. իսկ աստ տեսակն յառաջ. զի տեսակ արեգական է լոյս. զնիւթն, յետոյ արար զամանն[79]: «Ասաց Աստուած. Եղիցի լոյս». եւ առժամայն խաւարն հալածեցաւ եւ ելից լոյսն զամենայն լայնութիւն եւ զերկայնութիւն երկրի եւ ծովու եւ ամբարձաւ մինչեւ յարփին եւ ի հաստատութիւն. եւ յանկարծահաս եւ վաղահաս ծագմամբն փակել ի ներքս իւր զչորս կողմանս աշխարհիս: Եւ եղեւ աւդն ուրախարար եւ ջուրն հաճոյ աչաց: Եւ երեւեցան մասունք երկրի պէսպէս կերպարանաւք:

21. «Եւ ետես Աստուած զլոյսն զի բարի է»: Զի՞նչ ոք կարէ զովութիւն ասել՝ յորժամ արարիչն վկայէ թէ «բարի է»: Ո՞չ որպէս մեր գործիք են աչք եւ նովաւ ընտրեմք զհաճոյն տեսանելոյ. զի ոչ այսպէս տեսանէ Աստուած, այլ իւրաբար զհանդիսան եւ զպիտանացուն գիտելով վկայեաց եթէ բարի է: Բարի եւ գեղեցիկ երեւի մեզ ոսկի. բարի եւ գեղեցիկ աստղն առաւաւտու, որ մերթ երեկուն ելանէ, գեղեցիկ երեւի եւ մեզ մարմին չափակցեալ անձամբ. ո՞չ նովաւ յառնեն մարդիկ ի գործս անսղալ եւ գազանք պատառողք որջանան եւ գողք եւ աւազակք սուզանին եւ դէմք թշնամեաց եւ սիրելեաց երեւին: Լուսով ուղղին պէսպէս արուեստք կենցաղոյս. լուսով ընտրին ակունք եւ մարգարիտք ի յաւաղոյ եւ ի խճոյ. լուսով ցնծայ ա-

մենայն կենդանի· լուսով տեսանելին[82] ամենայն արարածք ի փառս արարչին Աստուծոյ։ Կրէ լոյս եւ զայլ այլում լուսաւորիչ գործել, որպէս նախ զաւդ եւ ապա զոսկի եւ զարծաթ եւ զակն եւ զապակի, որ նշոյլ արձակեն յոլովս ի խնդութիւն տեսանողացն։ Եւ եթէ այս արարածական լոյսս այսքան բարի եւ գեղեցիկ է, քանի՞ եւս[83] առաւել արարիչն սոցա, որ ասաց· «Ես եմ լոյս աշխարհի[84]», որ զիմանալի աշխարհն եւ զմիտս լուսաւորէ։ Անուանեաց եւ զաշակերտսն «լոյս» տիեզերաց[85]· լոյս է եւ պատուիրան նորա ի մէջ եկեղեցւոյ սրբոյ։ Եւ որպէս այս խաւար փախչի ի լուսոյ, զգալի եւ իմանալի խաւարն, սատանայ եւ մեղք եւ անգիտութիւն յիմանալի եւ յաստուածային լուսոյն[86]։

22· «Եւ կոչեաց Աստուած զլոյսն տիւ եւ զխաւարն կոչեաց գիշեր»։ Որ զգեցաւ զլոյսն եւ յորժամ արեգակն զվերին կիսագունդն անցանէ, զայն կոչեաց, զոր սովոր եմք աւր անուանել, որչափ տեւէ լոյսն յաւդ այդր։ Նախ կոչեաց զանուն աւուրն ի պատիւ նմա· ապա երկրորդ գլխաւորին, զոր ասացաք աւդ անլոյս եւ ստուեր տեղւոյ։ Զգլխաւոր արարածոց անուանս ինքն կոչեաց եւ զմանաւորն Ադամայ հրամայեաց, հաղորդ կազմելով առ-

82 Զ· տեսանի։
83 Զ· եւ։
84 Յովհ· Ը· 12։
85 Մատթ· Ե· 14։
86 Բարսեղ, էջ 37—38։

նել խր[87]: Գիշեր, զի գոյն գէշ զգենու[88] աւդ եւ այլք բազումք:

23. «Եւ մեկնեաց Աստուած ի մէջ լուսոյն եւ ի մէջ խաւարին»: Անջրպետեաց ի մէջ երկուցն՝ տուընջեան եւ գիշերոյ. զերեկոյն եւ զառաւաւտն. այս է մեկնելն. սահման եւ միջոց, զի զկարգս իւրեանց պահեսցեն եւ պաշտեսցեն զկամս արարչին:

24. «Եւ ետես Աստուած զի բարի է»: Յառաջ քան զլինելն գիտէր, զի բարի է. այլ ըստ մարդական մտաց զիջանէ:

25. «Եւ եղեւ երեկոյ». սպառուած[89] աւուրն. «եւ եղեւ վաղորդայն». աւարտ գիշերոյն: Ընդ տիւն եւ ընդ գիշերն աւր մի: Ոչ որպէս Եբրայեցիքն եւ Ասորիք, որ զերեկոյն դնեն սկիզբն աւուրն, այլ ըստ արարչութեան. ի ծագել լուսոյ առաւաւտուն մինչեւ ի նոյն ժամն՝ աւր մի. զի մարթի լուսոյն լինել սկիզբն աւուրն եւ ոչ խաւարն. որպէս ասէր Յոբ. «Յորժամ լինի առաւաւտ, ասիցեմ. Ե՞րբ իցէ երեկոյ. եւ յորժամ երեկոյ՝ ասիցեմ. Ե՞րբ իցէ առաւաւտ[90]»: Զի քսան եւ չորս ժամն կատարեն օր մի: Ոչ ասաց մի աւր եւ մի գիշեր, այլ ի մի պարունակեաց զերկուս: Եւ այս սովորութիւն պահեցաւ մինչեւ ցայժմ. զաւրն միայն թուել եւ ոչ զգիշերն. ասէ Դաւիթ. «Աւուրք իմ որպէս

---

87 Բարսեղ, էջ 39: — Վարդան, 11բ:

88 «Գիշեր, զի գոյն գէշ զգենու». բառախաղ նկատելու է:

89 Զ. սպառաւ տատուած:

90 Հմմտ. Յոբ, է. 4:

հովանի անցին[91]»․ Եւ Յակոբ առաջի Փարաւոնի[92]:

26․ Եւ ընդէ՞ր ոչ ասաց առաջին, զի այս ի դէպ էր անկանել այլոցն աւուրցն, թէ աւր երկրորդ եւ երրորդ, այլ ասաց «աւր մի»․ նախ զայն է ասելի․ միտք բանիս զի մի է բնութիւն աւուրց․ զի իւրաքանչիւր աւր զմի եւ զնոյն արեգակն ունի գոյացուցիչ․ եւ կամ զի յայտ արասցէ, թէ անցաւոր են ամենայն աստէն իրքս․ որպէս մի աւր պատի զինքեամբ, թէպէտ եւթն անուանի․ այլ [զ]նոյն աւր է որ առնէ զշաբաթն: Եւ այս ցուցանէ, թէ հաստատ ոչ մի ինչ է յայսց իրաց, այլ ամենայն փոփոխական: Դարձեալ՝ զատ, մեկնեաց զնա յայլ աւուրց․ զի նա է վերջին աւր անփոխանորդ եւ աներեկ, աւր առաջին զուգակից լուսոյն որ եղեւ ի նմա․ աւրն սուրբ միաշաբաթու, որ է պատուիչ յարութեան Քրիստոսի ի կեանս մարդկան, որ ի նմա յառնեն ամենայն ծնունդք Ադամայ յատեանն ահաւոր, եւ առնուն զիւրաքանչիւր զարժանն․ զի աւր մեծ է նա մեծի ծագմանն Աստուծոյ: Աւր մի ի միումն աշխարհի․ զի որպէս անցաւոր կեանք մարդկան միայն են ընդ աշխարհս, սոյնգունակ կեանքն հանդերձեալ հայորդ են անսպառ յաւիտենին: Վասն զի թէ մեք յայլ տեսակ[93] փոխելոց եմք,

---

91 Սաղմ. ՃԽԳ. 4:

92 Կ՚ակնարկէ Ծն. ԽԷ. 9. «Աւուրք կենաց իմոց զորս պանդխտեցայ ճլ ամ է»:

93 Զ. տեսակի:

յայտէ թէ և արարածքս փոփոխելոց են յայլ տեսակ փառաց, որ ունիցի հաղորդութիւն ընդ անեղծ կեանս մեր: Այն աշխարհ մի և աւր մի և անուն նորա մի[94]:

---

[94] Բարսեղ, էջ 39—41. քաղուածաբար: — Վարդան, 12ա—բ:

ԻԷ.

# ԳԷՈՐԳ Վ. ՄԵՂՐԻԿ ԵՒ ԻՐ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

(1044—1115)

## ԻԷ.

# ԳԷՈՐԳ Վ. ՄԵՂՐԻԿ ԵՒ ԻՐ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**(1044–1115)**

*Գէորգ վարդապետ մեծ հռչակ վայելած է իր դարուն իբրեւ ճգնազգեաց, սրբակրօն, քաղցրաբարոյ, մեղրախօս եւ քաղցրուսոյց վանական, իսկ յաջորդ դարերը յարգանքով յիշած են անոր հեղինակաւոր անունը, յաճախ պարզապէս Մեղր կամ Մեղրիկ վարդապետ յորջորջանքով:*

*Իր մասին խօսած են Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Գ., էջ* 16 *եւ* 34. *Գերապ. Սուքիաս Սոմալեան,* Quadro della storia letteraria di Armenia, *Վենետիկ* 1829, *էջ* 77 *եւ Հ. Գ. Զարբհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ* 1897, *էջ* 604. *երեքն ալ կը լռեն անոր գրական գործերու մասին, Սոմալեան նոյն իսկ կը գրէ թէ իրմէ* non esiste più alcuna opera, *իսկ Զարբհանալեան յիշած է մէկ քանի Աղօթքներ Ներածական Բաժնին մէջ (էջ ԽԲ) միայն:*

*Մեր նպատակն է այստեղ ծանօթացնել անոր անձը, թուել անոր գրութիւններն եւ հրատարակել անոնցմէ մին:*

## ԿԵԱՆՔԸ

Գէորգ վախճանած է 70ամեայ հասակին 1114/5 տարւոյն. ուստի ծնած է 1044/5ին։ Ծննդավայրն է Վասպուրականի Անալիւր գիւղը. վայր մը, որ անծանօթ է այլուստ։ 20ամեայ հասակին մտած է Սեւանի վանքը (1064) հետեւելու ճգնաւորական կեանքի, այս պատճառով ալ կոչուած է Սեւանեցի։ Ժամանակակիցները յորջորջած են զինքը փաղաքշական անուամբ Գ. Մեղր, որ ապա վերածուած է Մեղրիկի։ Յետ ժամանակի, հաւանօրէն Գրիգոր վկայասէր կաթողիկոսի Անի այցելելէն ետքը, անցած է Սեւ լեռ. գտնուած է Պառլահոյ եւ Կարմիր վանքերը։ Այս տեղ ապրած է կաթողիկոսին հովանաւորութեան տակ, իբրեւ երէց ընկերակից Կիրակոս գիտնական վարդապետին։ Կիրակոս կ'անուանէ զանիկա «զերէց աւուրբք եւ խոհականութեամբ, զեղբայրն մեր եւ զանդրանիկ մերոյն կրթավարժ եւ հրահանգայեղց աշակերտութեան՝ զխաչակիրն (եւ զքրիստոսազգեացն) Գէորգ մականուն Մեղր կոչեցեալ»։ Իսկ Յովհաննէս գրիչ 1098ին ի Պառլահոյ վանս խօսելով Գրիգոր վկայասէրի մասին, կը գրէ, թէ «էին սորա ուսումնակից(ք) եւ վարժակիցք վարդապետք սուրբք եւ առաքինազարդք՝ Գէորգ Մեղրն կոչեցեալ եւ Կիրակոս, արք վարժք յաստուածայինսն ուշ ունելով մարգարէական երանութեանցն՝ յօրէնս Տեառն խորհելով

*ի տուէ եւ ի գիշերի, փոյթք յառնել եւ յուսուցանել եւ ճշմարտագէտ դեղովք ապաշխարութեան զբազումս արժանացուցին շնորհին: Ի սոցա վարժարանէ էր այր ոմն հեզամիտ եւ բարեշնորհ, ներհուն եղեալ մակացութեան արհեստի, Գրիգոր անուն»*, *որուն խնդրանքով օրինակած է Յովհաննէս գրիչ Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի Թ.* 131 *Կանոնագիրքը, զոր սկսած էր Պալահոյ վանքին մէջ եւ աւարտած Արմէնի լերան Յովհաննայ անապատին մէջ*[1]:

*Կ՚երեւայ թէ Գէորգ ապա, կաթողիկոսի մահէն ետքը, փոխադրուեցաւ Կիլիկիա, ուր կ՚իշխէր Մեծն Թորոս* (1100—1129), *ուր կազմակերպեց Խորին անապատն եւ Դրազարկի վանքը: Վախճանեցաւ Հայոց ՇԿԳ* (1114 *փետր.* 21—1115 *փետր.* 20) *թուականին, հաւանօրէն հրոտից ամսոյն* 24*ին* (9 *փետր.* 1115) *եւ թաղուեցաւ նոյն վանքին մէջ:*

*Գէորգ Մեղրիկ եղած էր քարոզիչ ապաշխարութեան:*

### ԱՂԲԻՒՐՆԵՐ ԻՐ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

1. *Մատթէոս Ուռհայեցի* (*Ժամանակագրութիւն, էջ* 418) *կը գրէ յամի ՇԿԳ.*

*«Յայսմ ամի մեռաւ սուրբ վարդապետն Հայոց Գէորգ, որ անուանեալ կոչեցաւ Մեղ-*

---

[1] *Յիշատակարանիս ամբողջական բնագիրը տես Ակինեան, Թուղթ Մակարայ, էջ* 97—98:

րիկ, որ էր այր սքանչելի եւ հրաշալի ճգնաւոր, եւ զառաջին (այլք՝ զամենայն) ժամանակս կենաց իւրոց անցուցեալ էր միայնակեցութեան կարգօք զամս յիսուն. եւ վախճանեցաւ ամաց եօթանասնից ամենայն ժուժկալ եւ ճգնաւորական հանդիսիւք. եւ չորաճաշակ գոլով յամենայն կեանս իւրում՝ հաւաստարեալ էր ամենայն կարգօք եւ կրօնիւք առաջին սրբոյն: Եւ զամենայն ժամանակս կենաց իւրոց զկիրակէքն յոտնաւոր տքնութեան (տպ. արթնութեամբ) անցուցանէր:

Եւ էր ինքն ի Հայոց աշխարհէն, ի Վասպուրական գաւառէ, ի գեղջէն որ Անալիւր կոչի գեղն եւ է մեծ: Սա ի տղայութեան կրօնաւորեալ լինէր ամենայն հռչակաւոր անուամբ եւ վարս սքանչելի ստացեալ եւ օրինակ բազմաց եղեալ. եւ հայր խոստովանութեան լինէր ամենայն Հայաստանեայցս, եւ դարձուցանէր զամենեսեան ի ճանապարհս լուսոյ եւ ի ձեռն ապաշխարութեան յորդեգրութիւն Հօրն երկնաւորի ընծայեցուցանէր զամենեսեան: Սա մեռանէր բարի խոստովանութեամբ ի Քրիստոս. եւ թաղեցաւ ի գաւառ(ի)ն Անաւարզայ, ի մեծ անապատն որ Դրազարկ կոչի, զոր նորոգեաց մեծ իշխանն Հայոց Թորոս» (էջ 334): Եւ յամի ՇՀԶ (1127/8). «Մեռանէր սուրբ վարդապետն Հայոց որ ասի Կիւրոս (իմացիր՝ Կիւրակոս)..  ընկերակից Գէորգայ վարդապետին, որ ասի Մեղրիկ: Սա մեռաւ եւ թաղեցաւ ի վանքն

որ կոչի Դրազարկ, եւ կոչեցաւ վանքն այն Գերեզմանատունք սուրբ վարդապետացն, վասն զի անդ թաղեցաւ սուրբ վարդապետն Հայոց որ ասի Մեղրիկ, որ ժողովեաց անդ զամենայն դասս ճգնաւորացն Քրիստոսի եւ հաստատեաց անդ կարգ եւ կրօնք զառաջին սրբոց հարցն» (Վաղարշապատ 1898, էջ 366):

2. Այս Կիրակոս վարդապետը օգնական եղած է Գրիգոր վկայասէրի. աս սրբագրած է 1100/13ին Ոսկեբերանի Մեկնութիւնն Գործք Առաքելոցի, որուն յիշատակարանին մէջ կը խնդրէ յիշել, ինչպէս տեսանք վերը, «զեղբայրն մեր... զխաչակիրն Գէորգ մականուն Մեղր կոչեցեալն, վասն զի յորդորիչ եղեւ մեզ ի սկզբանն եւ թելադիր կատարմանս սորա» (Էջմ. Թ. 1315, թղ. 452բ. հմմտ. Ակինեան, Թուղթ Մակարայ, էջ 97, ծ. 23): Իսկ Ոսկեբերանի Յովհաննու Մեկնութեան Յիշատակարանին մէջ կ՚արձանագրէ 1111ին Կիրակոս վարդապետ նոյն տողերը այսպիսի վերջաւորութեամբ՝ «զքրիստոսազգեացն զԳէորգ մականուն Մեղր կոչեցեալ յիշեսջիք ի Քրիստոս» (Հայապատում, էջ 354):

3. Սարգիս Շնորհալւոյ Կաթողիկեայց Մեկնութեան նախադրութեան մէջ Կարապետ կը պատմէ թէ Քեսնոյ Կարմիր վանքի մէջ երբ հռչակ կը հանէ «մանուկն» Ստեփանոս, եւ նախանձողները կը չարախօսեն անոր մասին Բարսեղ կաթողիկոսի քով, «կաթողի-

*կոսն առնու ընդ իւր վարդապետս եւ եպիսկոպոսունս եւ այլ եւս յընտիր իշխանացն... եւ գայ յողջոյն իշխանաց իշխանին (Գող) Վասլին (տեառն Քեսնոյ). եւ զգլխաւոր վարդապետն զՄեղրիկ Սեւանեցին, որ զԴրազարկին սահմանն է կարգաւորեալ, եւ զԿիրակոս, եւ գայ եւս Նոքօք ի մեծ ուխտն սուրբ՝ ի Կարմիր վանքն, եւ բնակիչք ընկալան զնոսա բազում պատուով»* (*Հրտ. Տաշեան, Ցուցակ Մխիթ. Մատենադարանի, էջ* 751, *բստ Թ.* 315 *ձեռագրին*)։ *Բարսեղ կաթողիկոս վախճանեցաւ* 1113*ին, ուստի այս պատահած ըլլալու է ընդ մէջ* 1106—1112 *տարիներուն*։

4. *Գրիգոր Տուտէորդի, Թուղթ առ Գրիգոր Տղայ կաթողիկոս. «Ո՛չ գիր վկայութեան զմեծի եւ զաստուածաբանական սրբարանի յօրինելոյն (տպ.—ոցն) երկուց լուսաւորչացն (տպ.—աւն) Մեղրկայ եւ Կիրակոսի՝ Դրազարկ կոչեցելոյ, եւ ոչ Ներկեալ արեամբ Որդւոյն Աստուծոյ՝ որ Կարմիրն կոչի վանս, ոչ ի Շափիրայ եղ եւ ոչ յԱրեգակնէդ (Արեգնի՞) կամ ի Պիոյէ (՞) եւ յայլ առանձնացեալ միանձանց...»* (*Արարատ* 1893, *էջ* 333)։

5. *Մխիթար Այրիվանեցի իր Ժամանակագրութեան մէջ կ՚արձանագրէ ընդ մէջ* 1111—1120 *տարիները. «Գէորգ վարդապետն Մեղրիկ, որ զԴրազարկին կարգն*

սահմանեաց» (էջ 61). (Թուի § 3ի ազդեցութեան տակ):

6. Սամուէլ Անեցի. «Ի ՇԿԲ. յորում վախճանեցաւ Բասիլիոս կաթողիկոսն, փոխի մահուամբ առ Տէր եւ Գէորգ վարդապետն երանելի, անուանեալն Մեղրիկ» (էջ 123):

7. Վարդան Պատմիչ. «Ի նմին (ՇԾԳ. կարդա՛ ՇԿԳ) ամի մեռաւ Գէորգ վարդապետն, մականուն Մեղրիկ կոչեցեալ սակս քաղցրուսոյց վարդապետութեանն, նորոգող սուրբ ուխտին Դրազարկուն. որ էր ի Վասպուրական գաւառէն ի յԱնալիւր կոչեցեալ գեղջէ, սուրբ եւ սքանչելի եւ մեծ ճգնաւոր» (էջ 117):

8. Կիրակոս Գանձակեցի. «Ի ՇԿԲ թուականին, յորում վախճանեցաւ Բարսեղ (կաթողիկոսն), փոխեցաւ առ Քրիստոս եւ հրաշակաւոր վարդապետն Գէորգ, որ ըստ քաղցրութեան բարուցն իսկ Մեղրիկ կոչէին։ Սա կարգաւորէ զհռչակաւոր ուխտն որ կոչի Դրազարկ. անդանդար լինէր ի պաշտօնն զցայգ եւ զցերեկ. եւ հանապազ պահօք կատարել. եւ առանձին ումեք ոչինչ լինել բայց ի հասարակաց տանէն» (էջ 62—63):

9. Ժամանակագիրն Կիլիկիոյ կը յիշէ՝ զՄեղրիկն Գէորգ. «Ի սուրբ ճգնաւորանոցն եւ ի Խորին անապատն յաշխարհիս Կիլիկեցւոց ի Սիս, զոր նորոգեաց Թորոս իշխանն որդին Կոստանդեայ» (Սիսուան 534):

10․ Գրիգոր Տէրենց Խլաթեցւոյ Յայսմաւուրքի մէջ Հրոտից ԻԴ․ Յուլիս 30 կ՚րսուի․ «Յայսմ աւուր փոխեցաւ ի Քրիստոս սուրբ վարդապետն Գէորգ Մեղրիկն Սեւանեցին, այր սուրբ եւ առաքինի, կացեալ մեծաւ առաքինութեամբ ամս․ Ծ․ որ զամենայն գիշերսն Կիրակէից յոտնկաց տքնութեամբ անցուցանէր․ եւ զնոյն կարգ հաստատեաց ի Թրագարկն եւ ի Խորին անապատն Սայ, ի սուրբ ճգնաւորանոցն» (Վիեննա, Մխիթ․ Թ․ 10, թղ․ 531ա․ Ցուցակ, էջ 92բ)։ Տարբեր է Փէշտիմալճեանի հրատարակած Յայսմաւուրքին մէջ, Բ․ էջ 49․ «․․․Մեղրիկ կոչեցեալ։ Էր սա ծննդեամբ ի Վասպուրական աշխարհէ յԱնալիւր գեղջէ․ այր բարեբարոյ քաղցրաբան եւ իմաստուն․ այլ կրօնաւորեալ ի Սեւան կղզի զամս յիսուն (!) Սեւանցի կոչեցաւ․․․»․ Համտ․ Patrologia orientalis, 21, էջ 800)։ Գ․ Տէրենց, բայց յատկապէս Գ․ Փէշտիմալճեան գտնուած են Մ․ Ուրհայեցւոյ ազդեցութեան տակ։

Գէորգ Մեղրիկի մահուան տարին է Հայոց ՇԿԳ, որ կը սկսի 21 փետրուար 1114 եւ կ՚աւարտի 20 փետր․ 1115։ Մ․ Ուրհայեցի ամիսն եւ օրը չի յիշեր։ Բայց Խլաթեցւոյ Յայսմաւուրքին մէջ Գ․ Մեղրիկի յիշատակը նշանակուած է հրոտից ԻԴ․ եւ յուլիս 30։ Այս զուգակշռութիւնը Սարկաւագ վարդապետի անշարժ տոմարի համաձայն է։ Թէ ի՞նչ հիմամբ այդ յիշատակը հրոտից 24ին դրուած

*է, չվիճեմ. կարելի է սակայն ենթադրել, թէ Գրիգոր Ծերենց հոս աւանդութեան մը հետեւած ըլլայ: Մաղաքիա արքեպ. Օրմանեան այս «Հրոտից ԻԴ.» կը համարի շարժական տոմարով աւանդուած, որով կը ստանայ ամիսն եւ օրը ըստ յուլեան տոմարի 9 փետրուար* 1115 (*Ազգապատում, Ա. էջ* 1348): *Զոր կը գտնեմ ուղիղ:*

ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Երգ օրհնութեանց ոգւոց արթնոց եւ մաղթանք մաքուր մտաց առ Աստուած. ասացեալ սուրբ վարդապետին Գէորգայ Մեղրիկ կոչեցելոյ:

*Օրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն յամենայն երկնաւորաց եւ յերկրաւորաց...:*

*Միւնխէն*, 3, 53*ա*—66*ա* (1283. *անանուն* [2]): *Բրիտանական Թանգարան*, 99, 231*ա*—35 (*ԺԴ.* [3]): *Թաւրիզ, Զ.* 12, 14*բ*—21*ա* (1669 [4]): *Էջմիածին*, 44, 95*ա*—98*բ* (*ԺԸ*): *Լազարեան ճեմարան*, 149, 80*բ* (*այժմ* 2 *տող միայն պահուած*):

2. Աղօթք Մեղրիկ վարդապետի ասացեալ ի Հայր երկնաւոր:

[2] *Հ. Գ. Գալէմքեարեան, Ցուցակ հայ. ձեռագրաց արքունի Մատենադարանին ի Միւնխէն, Վիեննա* 1892, *էջ* 10:

[3] F. C. Conybeare, A Catalogue of the armenian Manuscripts in the British Museum, London 1913, p. 244.

[4] *Հ. Աճառեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա* 1910, *էջ* 85:

*Հայր երկնաւոր Աստուած ճշմարիտ...*

*Երեւան*, 985, *էջ* 179—87 (1371)։ *Էջմ.* 42, 21*բ* (1677)։

3. Յաղագս աղօթից եւ զղջման մեղաց. Մեղրիկ վարդապետին ասացեալ։

*Տէր, Տէր, պարգեւող ողորմութեան, տուր ինձ զղջումն ջերմեռանդ արտասուաց...։*

*Լազար. ճեմ.* 149, 78*ա* (1645)։ *Թաւրիզ*, *Զ.* 12, 9*ա*—14*բ* (1669 [4])։

4. Խոստովանութիւն հաւատացելոց ուղղափառաց, զոր ասացեալ է Մեղրկայ վարդապետի (*ոմանք կը խորագրեն.* Բանք խոստովանութեան յանցանաց...)։

*Քրիստոս, Որդի Աստուծոյ, արարիչ եւ տէր, դատաւոր կենդանեաց եւ մեռելոց...։*

*Միւնխէն*, 3, 83*բ*—104*բ* (1283. *անանուն* [2])։ *Էջմիածին*, 640, 71*բ*—73*բ* (1297)։ 2607, 396*ա* (1300)։ *Լազար. ճեմ.* 149, 18*բ*—21*ա* (1645)։ *Վիեննա*, 144, 201*ա*—204*ա* (*ԺԷ* [5] 4)։ 324, 158*բ*—59 (1305, *Ցուց.* 770)։ *Թաւրիզ*, *Զ.* 12, 119*ա*—29*ա* (1669 [4])։ *Զմմառ*, *Անտոնեանց*, 78, 280*ա*—285*ա* (1339)։

5. Աղօթք նորին։

*Դու Տէր սրտագէտ, որ քննես զերիկամունս...։*

*Էջմիածին*, 640, 73*բ*—77*ա* (1297)։

---

[5] *Հ. Յ. Տաշեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Մխիթ. Մատենադարանին ի Վիեննա* 1895, *էջ* 446։

*Վիեննա*, 324, 159*ա* (*անխորագիր կից նախորդին «Դ» կարմրագրով*)։

6. Մատեան պաղատանաց սուրբ վարդապետին Մեղրկայ զկնի ելից իւրոց յաշխարհէ։

*Կամօք եւ ողորմութեամբ...։ Այս իմ գիր ողջունի եւ պաղատանաց է...։*

*Կիպրոս, Նիկոսիա*, 40, 175*ա*—181*ա* (*ԺԴ*), *բնագիրը տես վարը*։

7. Համառօտ պատմութիւն նշխարաց սուրբ առաքելոյն Պետրոսի. սակաւ հանեալ ի բազմաց Մեղր վարդապետի, զոր արարեալ էր Պանդալէոն երիցու։

*Քահանայ ոմն արժանաւոր եւ զարդարեալ ամենայն առաքինութեամբ յԱպահունեաց գաւառէն, որ կոչի Կոգովիտ, ի գեղն որ Բծրայրի զոմն անուանի։ Էր ի նմա բնակեալ այր մի պատուական ի տանուտրական տանէ...*

*վ. «որ ոչ սակաւ բժշկութիւնք լինէր նովաւ ի Հայաստան աշխարհին»* (*Թղ*. 134*բ*—137*ա*)։

*Գրուածքս կը շարունակուի պատմական բաժինով մը*, *Թղ*. 137*ա*[2]—138*բ*. *«Եւ ընդ նուազել Թագաւորութեանն յազգէ Բագրատունեաց եւ ցան եւ ցիր լինելոյ ազգին մերոյ ընդ սարկութեամբ ծառայութեան այլասեռ ազգաց...»*, *ուր կը պատմուի թէ ինչպէս անցաւ Լամբրոն բերդն Օշինեանց եւ ինչպէս Տարսոնի տէրն Ապլղարիպ գետեղեց Պետրոս*

առաքելոյն նշխարքը Լամբրոնի մէջ․ ապա Օշին Լամբրոնի սրբատեղին կը յանձնէ իր որդւոյն Ներսէսի (Լամբրոնեցւոյ), որուն հրամանաւ գրուած է «Պատմութեան գիրքս»։ Ներսէս քահանայացաւ 1168ին եւ եպիսկոպոսացաւ 1175ին։ Այս գրուածքի մասին ակնարկութիւն մ՚ունի Սամուէլ Սկեւռացի Ներսէսի Սաղմոսաց Մեկնութեան Յիշատակարանին մէջ (Տաշեան, Ցուցակ, էջ 332բ)։

Երուսաղէմ, 1, 648բ (1419), 97, 134բ—138բ (1328 [6])։

Գրուածքիս Ա․ Մասն ունինք ճիշդ այսպէս նաեւ Վենետիկի Մխիթարեանց Թ․ 217, 282ա—285ա (ԺԴ․ դար, Ցուց․ Բ․ 268—69) եւ 223, 392ա—294բ (ԺԵ․ Ցուց․ Բ․ 376)։ Թէ մէկին եւ թէ միւսին մէջ կը պակսի Բ․ յաւելուած մասը։ Պահուած է նաեւ Պանդալէոնի գրած (կամ թարգմանած) ընդարձակ ընագիրը, որ կը սկսի «Պատմութիւն յաղագս Մատին սուրբ առաքելոյն Պետրոսի եւ բերման ի Հայք։ — Յամս Նիկեփորայ տիեզերակալի կայսեր Յունաց...», որ կ՚աւարտի յիշատակարանով․ «Որք ընթեռնոյք, յիշեցէք զտառապեալ Պանդալէոն, զի բազում աշխատութեամբ հանի զդա յարկեղաց սրբոյն Սոփիայ, եւ թարգմանեցի ի յունականէն ի հայ լեզու ձեռամբ օրհնելոյն Յուսե-

[6] Հմմտ․ Արտաւազդ Արքեպ․ Սիւրմէեան, Ցուցակ հայ․ ձեռագրաց Երուսաղէմի, Ա․ (Վենետիկ) 1948, էջ 41բ, 233։

*փայ ի փառս Աստուծոյ»։ Պարիս 117, 58ա—60ա (1307)։ 178, 517ա—20ա (ԺԲ)։ Վենետիկ 303, 10բ—20բ (1220. Ցուց. Բ. 1130)։ Հրատ. Հայապատում, Բ., էջ 295—299)։*

*Կը տեսնուի անկէ, թէ Համառօտ խմբագրութիւնը կատարուած է ի ձեռն Գէորգ Մեղր վարդապետի, Երուսաղէմի Թ. 97ի վկայութեամբ։*

8. Կանոնք Դրազարկի վանաց։

*Պատմիչն Կիլիկիոյ կը գրէ, թէ Գէորգ Մեղրիկ «եդ զսահմանս կանոնինոցա (Միանձանց Դրազարկի) գրաւորական հաստատութեամբ, որ կայ մինչեւ ցայսօր» (Սիսուան, էջ 231)։ Զայս կ՚ակնարկէ անշուշտ Մ. Ուռհայեցւոյ տեղիքը, թէ Գէորգ «հաստատեաց անդ (ի Դրազարկ) կարգ եւ կրօնք զառաջին սրբոց հարցն». իսկ Կիրակոս յառաջ կը բերէ այդ կանոններէն հատուածներ. «Անդադար լինել ի պաշտօնն զցայգ եւ զցերեկ. եւ հանապազ պահօք կատարել. եւ առանձինն ումեք ոչ ինչ լինել, բայց ի հասարակաց տանէն»։ Առ այս կը հայի նաեւ Մխիթար Այրիվանեցւոյ ակնարկութիւնը, թէ «զԴրազարկին կարգն սահմանեաց»։ Դժբախտաբար մինչեւ ցայժմ չեն յայտնուած այս կանոնները։ Սամ. Անեցի «Կանոնագիր Դրազարկու» կ՚անուանէ Կիրակոս վարդապետը († 1127), թերեւս Գէորգին գործակցած ըլլալուն համար։*

9. Կարգաւորութիւն ճաշոց գրոց: Հ. Ղ. Ալիշան կը գրէ, թէ Գէորգ Մեղրիկ «գործ մի կարեւոր յեկեղեցւոջ մերում թողեալ զկարգաւորութիւն ճաշոց գրոց. յաւելմամբ տօնից եւ պատշաճ ընթերցուածոց, հրամանաւ եւ հաճութեամբ Գրիգորի վկայասէրի» (Սիսուան 231): Թաւրիզի Թ. 48 ճաշոցի գրիչն 1421ին կը յայտնէ Յիշատակարանին մէջ, թէ «վասն տօնից կարգելոց մի ոք յերկուսացի, զի կարգեալ է զսա սրբոց հարանցն եւ սուրբ վարդապետին Գեւորգեայ ի սուրբ ուխտն որ կոչի Դրազարկ» (Աճառեան, Ցուցակ, էջ 113բ. Հմմտ. նաեւ Վիեննայի Թ. 32, 14ա, Ցուց. 181): Այս իմաստով ալ գրած է Տօնացոյցի մը գրիչը 1287ին Սրբոց տօներու յառաջաբանական ցանկին մէջ, թէ «զայս կարգ ընկալեալ է Հայաստանեայց եկեղեցի՝ ընտրութեամբ սուրբ վարդապետացն նախագրական տանն սուրբ ուխտին Դրազարկու» (Սիսուան, էջ 231բ): Զարմանալի է, որ Կիրակոս վարդապետ, որ լրացուցած է Գրիգոր վկայասէրի ձեռնարկած ճաշոց գիրքը, ամենեւին յիշատակութիւն ըրած չէ իր ընկերակցին Գէորգ Վ. Մեղրիկի գործակցութեան մասին [7]:

---

[7] Ճաշոց Գրքի կարգաւորութիւնը գործն է Գրիգորիս Վկայասէր կաթողիկոսի, Գրիգորիս եւ Գիտնական Կիրակոս Վարդապետներու, ինչպէս պիտի տեսնենք յետոյ Լ. բաժնին մէջ: Ուստի թէ Հ. Ղ. Ալիշան եւ թէ ճաշոցի յիշատակագիրները շփոթ տեղեկութեան մը վրայ յեցած են: Գէորգ Մեղրիկ եղած է Դրազարկի կանոնագիրը, ո՛չ ճաշոցի կարգագիրը:

Հ. Գ. Զարբհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ 1897, էջ ԽԲ. կը յիշէ. «Գէորգ վարդապետի Մեղրիկ կոչեցելոյ Զափարերականք եւ խոստովանութիւնք. չարադրեալ ի Թուին Հայոց ՇՂԲ. (ի Լազարեան դպրոցի ի Մոսկուայ)»:

Լազարեան ճեմարանի ձեռագիրները աչքէ անցուցած եմ 1924ին: Հոն Գէորգ Մեղրիկի Աղօթքներէն տեսած եմ Թ. 149ի մէջ երեք հատ միայն (Թ. 1, 3, 4): Չեմ հանդիպած Զափարերականաց եւ նմանեաց: Թուականը ՇՂԲ կու տայ փրկչական 1144 տարին, երբ Մեղրիկ արդէն 30 տարի յառաջ հանգուցեալ էր: «Ի Թուին Հայոց ՇՂԲ» կը թելադրէ ենթադրել թէ խօսքը Թ. 149 ձեռագրի մասին է. այս տեղ կայ Թղ. 21ա—46բ «Սկիզբն խոստովանութեան եւ յայտնութեան գաղտնեաց... Գրիգորի Յեւուանց Մարաչոյ» եւ Թղ. 46բ—71բ «Վայք ողբոց... ասացեալ առաջի Աստուծոյ Գրիգորի միայնաւոր ճգնաւորի Յեւուացւոյ... որ էր ի Թուին ՇՂԲ»: Զարբհանալեան սխալ տեղեկութեան մը զոհ գացած է:

## ԳԷՈՐԳ ԳՐԻՉ Ի ԴՐԱԶԱՐԿ, 1113

Կիրակոս վարդապետ, որ Գրիգոր Վկայասէրի յանձնարարութեամբ թարգմանութիւններ ըրած է յունարէնէ, եւ եղած է կրսեր աշակերտակից Գէորգ Մեղրիկի, կը գրէր 1103ին Գործ Առաքելոցի Մեկնութեան Յի–

չատակարանին մէջ, թէ Գէորգ Մեղր «յորգորիչ եղեւ մեզ (ի թարգմանութիւն) ի սկըզբանն եւ թելադիր կատարման սորա»: Գէորգ հաւանօրէն եղած էր նաեւ այդ թարգմանութիւններու օրինակող, թէեւ այս մասին յիշատակութիւն չէ ըրած Կիրակոս: 1113ին, ուստի Գէորգի մահուընէ տարի մը յառաջ, կը յիշուի ի Դրազարկ Գէորգ գրիչ մը, որ օրինակած է Կիրակոսի համար Աւետարան մը: Այս Աւետարանը Գարեգին Վ. Յովսէփեան (այժմ Կաթողիկոս Կիլիկիոյ յԱնթիլիաս[8]) գտած է Խաչիկ Վ. Դադեանի ձեռագիրներու մէջ եւ տուած է Յիշատակարանէն 11 տող նմանահանութեամբ (Տախտակ ՂԲ. պատկեր 146) եւ մաս մ'ալ յառաջբերութեամբ (էջ 48), զանց ընելով ինչ ինչ տողեր սկիզբէն եւ վերջէն: Միտ չէ դրած Յովսէփեան, թէ Յիշատակարանս հրատարակուած է 1907ին Ֆ. Ն. Ֆինկէ եւ Լ. Գանջեցեանէ իբրեւ մասն Տիւբինգենի Համալսարանի հայերէն ձեռագիրներու Թ. 1 Աւետարանին: Այս Յիշատակարանը գտած է Էնֆիաճեան ուսուցիչ Յակոբ Կարենեանցի գրական ժառանգորդներու մէջ, անոր իսկ արտագրութեամբ: Որովհետեւ այդ Թ. 1 Աւետարանը, որուն Յիշատակարանը կը պակսէր, նախնաբար գտնուած էր Կարենեանցի քով, համարած է Էնֆիաճեան, թէ Յիշատակարանի այդ արտագրու-

---

[8] Քարտէզ հայ հնագրութեան, Վաղարշապատ 1913:

*թիւնը կատարած է Կարէնեանց ա՛յս Աւետարանէն, երբ տակաւին չէր հեռացուած անկէ Յիշատակարան-թուղթը*[9]*: Ուստի վերագրութիւն լոկ ենթադրութեամբ: Այժմ երբ այդ Յիշատակարանի սկզբնագիրը գըտնուած է, աւելորդ է ամէն ենթադրութիւն:*

*Յիշատակարանն է*[10]*.*

*«Կամաւքն Աստուծոյ Հաւր կենդանւոյ եւ կամողի յամենայնի եւ միածնի Որդւոյ իւրոյ կենարարի մերոյ եւ կենդանարար եւ երկըրպագելի Հոգւոյն սրբոյ:*

Ես Կիրակոս ի վերջ հասեալ գիտնականաց մեղաւոր եւ անարժան ծառայ Աստուծոյ, ցանկացող եղէ այսմ լուսաիղձ եւ կենսակիր կտակիս եւ ետու աւարտել Գեորգայ գրչի ի ստոյգ եւ յ(ը)նտիր գաղափարէ սըր-

---

[9] F. N. Finck und L. Gjandschezian, Verzeichnis der armenischen Handschriften der Kgl. Universitätsbilitothek zu Tübingen, Tübingen 1907, S. 3—6: *Հմմտ. Հ. Ն. Ակինեան, Տիւբինգէնի Համալսարանին* Ma XIII, 1 *հայերէն Աւետարանին Յիշատակարանը* (1113)· *Հանդ. Ամս.* 1917/8, *էջ* 159:

[10] *Շղագիր տողերու Ա. մասը տես Քարտէզ հայ հնագրութեան, էջ* 48· *Բ. մասը՝ անդ, Տախտակ ՂԲ., պատկ.* 146· *Մնացածները Կարէնեանցի արտագրութենէն են: Յիշատակարանս աչքի առաջ ունեցած է Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, էջ* 233*ա. «Դարու միով եւս յառաջ* (1113) *գրեալ է սոյն աւետարան մի ի Գէորգայ գրչէ՝ հրամանաւ մեծի վարդապետի Կիրակոսի կանոնագրի վանացն, որ նոյնպէս յիշէ զՍ. Աստուածածին եկեղեցին Դրազարկի». հաւանօրէն Գ. Շիրմազանեանէ հաղորդուած...: — Յօդուածս արդէն շարուած էր, երբ հասաւ ինձ ի ձեռն Մեծ. Հ. Հ. Ոսկեանի վեհափառ Գարեգին Կաթողիկոսի Մատեանն Յիշատակարանաց* (*Ա. Մաս, էջ* 1—412), *ուր գտայ Յիշատակարանս իր ամբողջական մասերով:*

բոյն Սահակայ թարգմանչի յատակ եւ ականակիտ որպէս եւ ի փրկչէն ասացան, *զոր յոյժ բազմանաւք եւ յոգնա(տոչոր)*[11] *տենչանաւք մեծաւ աշխատութեամբ ստացայ զսա ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ եւ յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ ամենայն բնաւ զարմից՝ կենդանեաց եւ ննջեցելոց:*

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի հրեշտակակոխ մենաստանիս Դրազարկիս՝ առաջի սուրբ Աստուածածնիս եւ սուրբ եղբայրութեանս ի միջիս, ի ՇԿԲ թուականիս հայկակեան ազգիս, ի թագաւորութեանն Յունաց Աղէքսի երկաքնակի. եւ ի կաթողիկոսութեան Հայոց Բասղի եւ յաջորդի նորուն Գրիգորի ի փառս Քրիստոսի:

*Հ. Բ. Սարգիսեան, Բազմավէպ* 1905, *էջ* 304*ա կը հաւաստէ, թէ Վենետիկի Մխիթ. Մատենադարանի մէջ կայ Գրիգոր Արշարունեաց եպիսկոպոսի Ընթերցուածոց Մեկնութեան «կէս երկաթագիր եւ հնագոյն» օրինակ մը, որուն ստացողն եղած է Գէորգ Մեղրիկ, ինչպէս էջ* 278 *«ինքնագիր յիշատակարանը» ցոյց կու տայ: Անդրադոյն տեղեկութիւն այս ձեռագրի մասին կը պակսի ինձ:*

ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Գէորգ իր ժամանակակիցէն, Մատթէոս Ուռհայեցիէն կը պանծացուի իբրեւ «այր հրաշալի եւ սքանչելի ճգնաւոր», որ ճգնած*

[11] *Տպ. զոգնա...:*

է 50 տարի չարունակ չորաճաշակ եւ կիրակի օրերը ոտնաւոր ոքնութեամբ: Ան սկսած էր իր կրօնաւորական կեանքը Սեւանի մէջ, ապա աշակերտած էր Պարլահու վանքը Գրիգոր Վկայասէրի առաջնորդութեան տակ, ունենալով իրեն աշակերտակից Կիրակոս վարդապետը. որ կը դրուատէր զինքը իբրեւ «երէց աւուրբք եւ խոհականութեամբ, եղբայր մեր եւ անդրանիկ մերոյն կրթավարժ եւ հրահանգայեղց աշակերտութեան, խաչակիր եւ քրիստոսազգեաց»: Ան նկատուեցաւ յետոյ «գլխաւոր վարդապետ», քարոզիչ ապաշխարութեան, «օրինակ բազմաց» եւ «հայր խոստովանութեան ամենայն Հայաստանեայց»: Կը գրէ նա ինքն, թէ «որքան յայս անուն եւ յաստիճան կոչեցայ, հասարակ ամենեցուն, որպէս անձին իմոյ, խնդրեցի ի Տեառնէ», այսինքն աղօթեցի Աստուծոյ եւ խնդրեցի իրմէ շնորհք ինչպէս իմ անձին, նոյնպէս համաշխարհի համար: Իր գլխաւոր արդիւնքն եղաւ ցիր եւ ցան ճգնող միանձնաւորները հաւաքել վանական յարկերու տակ, կազմակերպել միաբանական հաստատութիւններ, եւ սահմանել անոնց համար կանոններ, հետեւողութեամբ առաջին սուրբ հարց հրահանգներուն, որով ծաղկեցան Դագարկի եւ Խորին անապատի վանական հաստատութիւնները:

Գէորգ «ըստ քաղցրութեան բարուց» եւ «քաղցրուսոյց վարդապետութեամբ» ար-

ժանացաւ ժամանակակիցներէն «Մեղր» յորջորջանքին: Իր քաղցրախօս լեզուն կը հնչէ դեռ այսօր իր Աղօթքներուն եւ իր Ողջունագրին մէջ, որ պարզ է եւ յստակ, նմանողութեամբ դասական հեղինակներու, որոնց արտագրութիւններու ջերմեռանդ ընթերցող եղած է: Կարելի է մատնանշել տեղիքներ, բառեր, որոնք կը տեսնուին իր գրչին տակ եւ կ'ենթադրեն Յովհ· Ոսկեբերանի Մեկնութիւնները, Վարք Հարանցը եւ այլն, թող Աստուածաշունչէն կրած ազդեցութիւնները:

Թէ բերա՞ծ է ինքը որ եւ է աջակցութիւն Կիրակոսի, Թէոպիստէի եւ ուրիշներու թարգմանութիւններուն, սրբագրութեամբ լեզուի, չգիտենք: Բայց կրնանք վստահաբար ըսել, թէ ան օգնած է նոր թարգմանուած գործերու արտագրութեան. յամենայն դէպս եղած է յորդորիչ եւ քաջալերիչ Կիրակոս Վարդապետի, որ լծուած էր անոնց սրբագրութեան ըստ հայկաբանութեան:

Գէորգ Վ· Մեղրիկ թողուցած է սակաւաթիւ գրաւոր աշխատանքներ: Անոնցմէ հինգը աղօթքներ են, ինչպէս խորագիրները կը վկայեն. չորրորդն եւ հինգերորդը հաւանօրէն նախնարար մէկ ամբողջութիւն կը ներկայացնէին, չորրորդը աղօթքի ձեւով հայելի խոստովանութեան (Beichtspiegel) մըն է, ուր յառաջ կը բերուին մեղքերու տեսակները, որոնց համեմատ խոստովանողը պիտի քննէ իր խիղճը. հինգե-

րորդը զղջման արտայայտութիւն է․ այս իմաստով ճիշդագոյն է ձեռագրաց ոմանց տուած խորագիրը «Բանք խոստովանութեան յանցանաց»:

Աւելի ուշագրաւ է «Մատեանն պատատանաց» կամ Ողջունագիրն Մեղրիկի «զկնի ելից իւրոց յաշխարհէ»․ ուղղուած Բարսեղ եւ Գրիգոր կաթողիկոսներուն, իր աշակերտներուն, վանականներուն եւ ծանօթ եւ անծանօթ հաւատացեալներուն: Այս՝ ծաւալով ընդարձակագոյն գրութիւնն է Մեղրիկ վարդապետի եւ իր տեսակին մէջ միակը հայ գրականութեան մէջ, նման մը Ս․ Եփրեմի Կտակին: Մեղրիկ գրած է զայն հաւանօրէն իր մահէն տարի մը յառաջ, թերեւս 1113ին, երբ կենդանի էր Բարսեղ կաթողիկոս եւ աթոռին ժառանգ անուանուած էր Գրիգոր Փոքր վկայասէր: Ան կը զգար իր մահը մերձ, եւ մտահոգուած էր յետ ելից յաշխարհէ անդրաշխարհի ճանապարհի մասին, աչքի առաջ բերելով Եփես․ Զ․ 12, անցքը «ընդ այսս չարութեան որ ի ներքոյ երկնից»: Կը յորդորէ նախ իր հաւատացեալները յարատեւելու այն աւետարանական վարդապետութեան եւ խրատներու մէջ, զորոնք քարոզած էր ինքը, ապա կը խնդրէ անոնց աղօթքը իրեն համար զօրաւիգն՝ յաղթելու համար այսերու դիմամարտութեանց եւ հանելու անփորձանք խոստացուած աւետիքներու:

*Այս Մատեանն պաղատանաց կը հրատարակեմ ամբողջութեամբ միակ օրինակէ, Նիկոսիայի Ս. Աստուածածին եկեղեցւոյ Մատենադարանին Թ. 40 ձեռագրի համաձայն, ուր կը գրաւէ Թղ. 175ա—181ա: Ձեռագիրը տեղ տեղ ցեցակեր եղած է, այս պատճառաւ ալ բառեր, նաեւ տողեր անընթեռնելի եղած են: Օրինակութիւնս կատարած եմ 1945 յուլիս 5ին ի Կիպրոս: Ձեռագրիս մասին տես իմ ցուցակս նոյն Մատենադարանի ձեռագիրներու (տակաւին անտիպ)* *:

* Վերագոյն, էջ 121—124 տուած էի 1113ին ի Դրազարկ գրուած Աւետարանի Յիշատակարանի մէկ մասը, համարելով թէ գրիչն Գէորգ կարող է նոյն ըլլալ Մեղրիկ վարդապետի հետ: Որովհետեւ Կիրակոս վարդապետ, ստացիչը, որ եւ է խօսք չէ ըրած այդ Յիշատակարանին վերջը իրմէ շատ յարգուած Մեղրիկի անձնաւորութեան մասին, հարկ է հրաժարիլ այն մտածումէն, թէ Գէորգ գրիչ Մեղրիկն ըլլայ: Այս Յիշատակարանն իր երկու մասերով տես Լ. բաժնին մէջ:

## ՄԱՏԵԱՆ ՊԱՂԱՏԱՆԱՑ ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԵՂՐԿԱՅ ՁԿՆԻ ԵԼԻՑ ԻՒՐՈՑ ՅԱՇԽԱՐՀԷ

*Կամաւք եւ ողորմութեամբ ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ ամենասուրբ Հոգւոյն։*

*Այս իմ գիր ողջունի եւ պաղատանաց է, մեղապարտ եւ տրուպ ծառայի Աստուծոյ Գէորգեայ. զոր գրեցաք առ համաւրէն սուրբ եղբայրութիւնդ, որոց տեսեալ զմեզ եւ կամ լուեալ զմէնջ։ Քանզի ըստ կամաց ամենազաւր հրամանին եհաս ինձ կէտ վերջին եւ հոգս ճանապարհին որ առ Աստուած. ուստի սոսկացեալ անձն իմ զողամ եւ տագնապիմ յոյժ։ Մոռացեալ զցաւս մարմնոյ յաղերս պաղատանաց եկի առ ձեզ. եւ հոգեպէս առաջի անկեալ որպէս Աստուծոյ, խուռն հարեալ զոտից ձերոց, ո՛վ աստուածասէր հարք եւ եղբարք, եւս եւ ոյք առաքելական աթոռոյ էք արժանացեալ։ Ամենեքին, ոյք զԱստուած առաջի աչաց ունիք համապազ եւ սիրէք զնա, եւ պահէք զպատուիրանս նորա, զմեծն եւ զսքանչելին, թէ Յայսմ ծանիցեն*

4 որդոյ։ — 8 գէորգեա։ — 15 հոգէպէս։ — 21 զնայ... նորայ։ — 22—25 Յովհ. ԺԳ. 35։ —

ամենեքեան թէ իմ աշակերտք էք, եթէ սիրեցէք զմիմեանս, որպէս եւ ես զձեզ սիրեցի մահու չափ: Եւ որք զարհուրիք յաստուածային հրամանաց բանի աւետարանին Յոհաննու որ ասէ, թէ Որ զեղբայր իւր ոչ սիրէ արդեամբք, զԱստուած ոչ երբեք սիրեսցէ: Եւ արդ գիտեմ զի դուք ամենեքեան յաւժարութիւն ունիք սիրել զԱստուած եւ զեղբայրս, որ է գլուխ պատուիրանին, յորս եւ առաւել հաստատեսցէ զձեզ Աստուած եւ աւրհնեսցէ եւ փրկեսցէ յամենայն վտանգից որ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ. եւ ի խնամս ողորմութեան իւրոյ պահեսցէ (միշտ) եւ անարատ վարուք մինչեւ ի գալուստն իւր յերկնից, եւ կացուսցէ զաւարթերես առաջի իւր ի մէջ ամենայն սրբոց, հրեշտակաց եւ մարդկան, լսելով զքաղցր եւ զանարատ զձայնն եթէ Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ:

Եւ արդ ես բազմամեղս, որ ոչ ունիմ համարձակութիւն յաւուր յայնմիկ առաջի բարձրելոյն, այլ իբրեւ յԱստուած ապաւինեալ կարաւտիմ աղաւթից ձերոց եւ բարեխօսութեանն եւ միջնորդութեան առ Տէր. եւ աղաչեմ զաստուածսիրութիւնդ ձեր համաւրէն, որոց բնակեալ էք ի գառուցեալ սրբարանի, եւ հոգէպէս մերձաւորութեամբ ի հռչակեալ եղբայրանոցդ եւ ի փոքր անա-

27—28 Ա. Յովհ. Դ. 10: — 28 սիրեցէ: — 40 Մատթ. ԻԵ. 34:
44 բարէխօսութեանն:

*պատուդ· եւ որք միայնութեամբ ի բարւոք կափուլն զօվանայք, այս ինքն ի ծոց Հաւր եւ ամենայն յոգնախումբ հրեշտակերամ սըրբազգեստիցդ, որոց ի մասին խաղաղութիւն եւ աւրհնութիւն։ Եւ աւրհնութիւն Աստուծոյ ժամանեսցէ առ ձեզ, որք լուեալ զմէնջ կամ տեսեալ, նաեւ բազմաց ի ձէնջ կարեկից էաք ըստ Աստուծոյ եւ ոմանց խրատ եւ կիսոց վշտակից խնամով։ Վասն որոյ ես վշտագնեալ եւ տարժանեալ եղբայրս ձեր (որ) ի կատարած կենացս խմոց հասի, աղաչեմ զամենեսեան եւ պաղատանաւք հայցեմք ի ձերում սրբութենէդ վասն ահագին եւ սոսկալի աւուրս, յորս եկն եհաս կոչաւղն· եւ զնամ զանձան եւ զերկայն ուղեգնացութիւն եւ կալ առաջի մեծ եւ ահաւոր դատաւորին, անկաշառ եւ անբարեխաւս ատենին որ ոչ զաւրեն վկայք եւ ոչ է ժամ արտասուաց կամ բանի պաղատանաց· յորում փակի ամենամեծ եւ կեցուցիչ դուռն ապաշխարութեան եւ գթութիւնն երկայնամիտ եւ ողորմած Կենարարին, դառնայ փութանակի ի համառաւտ վճիռն, ըստ արժանեաց հատուցման, ըստ իւրաքանչիւր գործոց։ Եւ արդ ոչ ունիմ տալ պատասխանի առաջի ճշմարիտ եւ արդար դատաւորին, (որ) զհաւաստի համարս պա-*

51 *Հմմտ. Յովհ. Ոսկեբերանի Մեկն. Պաւղոսի,* Ա. 122· «*Զանապատն տեսանիցես, զմենութիւնն նշմարիցես... անկանիցիս* ի բարիոք կափուլն»։ — 56 *կարէկից*։ — 62 *սրբութենէտ*։ — 64 *ուղղէգնացութիւն*։

հանջէ վասն բանից եւ գործոց եւ խորհըրդոց, յայրատ հայեցուածոց եւ գաղտնի խմանալեացն ըստ աւետարանին. Նաեւ աւուրց աւուրց, եւ ժամուց ժամուց, որչափ կեամք ի սնոտի եւ ընդունայն կենցաղումս: Եւ ես զի՞նչ պատասխանի տայցեմ եւ կամ զորո՞ց տացից համարս խմաստուն համարատուին զանաւրէն եւ զանարժան խորհրդոցս. կամ զո՞րչափ զատարկ եւ սնոտի եւ վայրապար բանից եւ զչարաց, զորտնջոց, զբամբասանաց, զչարախաւսութեան, զստութեան, զկեղծաւորութեան, զփաղաքշանաց, զշոդմոդութեանց, զողոքանաց, ուր աստուածային աղն պիտոյ էր լինել եւ զանհամեմեացն յաւդել զանհամութիւնն. ուր պարտն էր ողբալոյ եւ յողբս փոխարկելոյ զստրջացեալսն, զպանձանաց եւ զանմիտ լրջմտութեանս: Ուր պարտն էր ոչ ամբառնալ ի հողոյ յաղագս բիւրուց սխալանացն եւ յիշել զտաղանդսն, թէ Ում շատ տուաւ, առաւել եւս պահանջեսցեն ի նմանէ. բայց ես թոյլ եւ մեղկ, անձնակամ եւ հեշտասէր կեցի յաշխարհի, ուր պարտն էր զտիւ եւ զգիշեր անսպառապէս խոկալ զկա || ող |||| ն, զի յայնս հրաւիրեցայ ի Տեառնէ. եւ ըստ սրբոյն Պաւղոսի արտասուաւք խնդրել եւ ուսուցանել զիւրաքանչիւր: Այլ ես առաւել մարմնականաւքս զբա-

— 77 յարատ: — 78 Նայեւ: — 79 ժամու ժամուց: — 81 պատասխանեցայց: — 83 զանաւրե...ն արժանի: — 87 զփաղագշանաց: — 95 Ղուկ. ԺԲ. 48: — 98 Հմմտ. Յեսու, Ա. 8, Սղմ. Ա. 2: — 101 Գործք

դեալ: Եւ արդ զինչ զաւրեմ ընդ գրով արկանել զանբաւութիւն սխալանաց իմոց. եւ թէ ապաշխարեցի եւ զղջացայ, ոչ գիտեմ թէ լուաւ Տէր կամ եթող զպարտ քանքարոյն, զոր վատնեցի ծուլութեամբս:

Եւ արդ զի անչափ վիրաւքս մեղաց պաշարեալ է անձն իմ, որով սասկամ եւ զարհուրիմ: Արդ յաղաւթս ձեր ապաւինելով, աստուածասէր հոգիք, հարք իմ եւ եղբարք, կարեկիցք եւ աւգնականք ինձ եղերուք, ձեռն տուեալ աղաւթիւք ի ժամուս յայսմիկ եւ առ յապա, ինձ եւ ամենայն հանգուցելոց, յաղագս հրամանին Տեառն որք ի ձեզ եւ վասն ճշմարիտ սիրոյ եղբայրութեան ձեր, յորս հաստատ | | | | | | | | | | | | ն, ի ճշմարիտ շնորհս: Զի իւրաքանչիւր ոք ի ձէնջ որ ոչ ի հարկէ կամ հարեւանցի ստութեամբ, այլ ի սուրբ սրտէ եւ ի մտաց բարեաց եւ գթովք հոգւոյն աղաւթեսցէ վասն իմ եւ վասն ամենայն վաղճանելոց ի Քրիստոս, հարիւրապատիկ առցէ յամենառատ եւ ի բարեգութ Տեառնէն, պահեստ իւրոյ երկայնաձիգ ճանապարհին եւ պաշար: Իսկ եթէ ողորմութիւն գլուխ է ամենայն բարեաց, ապա քան զմարմնոյ ողորմեալն՝ հոգւոյն է վերագոյն. այնչափ որչափ ոգի առաւել է քան զմարմին: Եւ այս է զոր ասեմս ձեզ, կատարմամբ մեղսաքաւիչ խորհրդոյն աւժանդակեալ ինձ եւ ամենայն

Առ. Ի. 31: — 114 յապայ: — 129 Հմմտ. Ղուկ. ԺԲ. 23:

վաղճանելոցն յուսով։ Ըստ իւրաքանչիւր կարի ամենեքեան ըստ ա | | | | է սաղմոս ունիցիք, եթէ բանիւ եւ սրտիւ ողջախոհ մտաւք աղաւթս արասցէ գնացելոյն ի շինած հոգւոյս պիտոյից եւ պատարագի գործ գործէ։ Նաեւ զայս ընկալարուք ահիւն Աստուծոյ, զի որքան յայս անուն եւ յաշտիճան կոչեցայ, հասարակ ամենեցուն որպէս անձին իմոյ խնդրեցի ի Տեառնէ։ Ապա պարտիք դուք եւ մեզ աղաւթել, զի յայս ճանապարհէ, որ առաջի կայ ամենայն հոգւոց, կործանեսցէ աջ ամենակեցոյց հզաւրին զչար բանսարկուն ամենայն իւրայաւքն, եւ ամենասուրբ Տէրն տերանց Աստուածն աստուածոց, հզաւրն Իսրայելի մերժեսցէ եւ հերքեսցէ զսատանայ եւ զամենայն արբանեակսն նորա յանվախճան եւ յանսահման սասանութիւնս· եւ հրեշտակք Տէրունւոյն նեղեալ հալածեսցեն զնոսայ | | | | ոչ կարասցեն նեղել զոգի իմ կամ պահանջել զիւրեանց զչարութիւնսն, այլ աղաւթիւք ձերովք եւ ողորմութեամբ հզաւրին անցեալ վերացայց քան զիւրեանց իշխանութիւնսն եւ արժանի եղէց միշտ փառաւորել զամենասուրբ զԵրրորդութիւնն ասելով· Աւրհնեալ որ զասդ յերկնից, լոյսդ ճշմարիտ, յարեւելից փառաւք Հաւր զատել զերկիր։ Երանի թէ եւ հայել ի սուրբ եւ յանաւրինակ յանճառելի լոյս նորա եւ տեսանել

136 նայեւ։ — 148 տրունոյն։ — 148/149 Սղմ. ԼԴ. 5։ — 164 ընդ յարձակա....ալն։

արժանի լինիցիմ. եւ քաղցր տեսանել զողորմածն եւ Հզաւրն, զՀեզն, զՀանդարտ երեսս նորա առ իս Հայեցեալ: Արդ զոր ինձ եւ այլոցն առ Քրիստոս երթացելոցն առնիցէք, ամենառատ բարի Թագաւորն Աստուած ընդարձակա (ամենակ)ալն, ամենապաՀն, ամենառատն, ամենապարգեւ Հզաւր աջովն իւրով բիւրապատիկ ձեզ Հատուսցէ առատ եւ յանկէտ միշտնջենաւոր յաւիտենին, յանճառ եւ յանպատում կեանսն ընդ ամենայն սուրբս իւր յանեղծ եւ յաննուաղ մեծութենէն եւ արժանի արասցէ զձեզ զամենեսին դէմ յանդիման տեսանել զփառս նորա եւ Հաղորդել լուսոյ նորա ըստ աւետեաց բանին, թէ Նման Նմա լինելոց եմք: Որով եւ դուք, ով սիրելի եղբարք, զգուշացարուք կենաց ձերոց. մի սիրէք զսնոտի եւ զունայն զլի ցաւաւք կեանս զայս. եւ մի զկորուսիչ ոգւոցն զՀեշտութիւն մարմնոյ, եւ մի ագաՀութեան եւ իշխանութեան զՀետ երթայցէք. եւ մի ի ճշմարիտ խոստովանութենէն, ի պաՀոց եւ յաղաւթից թուլանայք եւ մի ոք (ոխակա)լութեամբ եւ Հեռիւ գ(տա)նիցի, եւ մի ընդ անաւրէն չար Հերձուածողաց Հաղորդիցիք: Այլ զկէտ կոչման եւ զաՀագին աւր դատաստանին առաջի աչաց ունելով միշտ ի նոյն խոկասջիք եւ Հանապազ զնոյն Հոգասջիք, յոր երթալոցն էք, ուստի ոչ եմք զերծանե-

172 Ա. Յովհ. Գ. 2: — 180/181 մի ոք .......լութեան: — 187/188 Եբր. Ժ. 31: — 188 կենդանոյ:

*լոց: Քանզի ահագին է խղճիւ ինչ անգանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ: Արդ տէր Յիսուս հաստատեսցէ զձեզ յամենայն բարիս եւ ի հաճոյսն իւր յաւիտեանս. ամէն:*

*Ողջունեմ զձեզ զամենեսեան զԹովքն Քրիստոսի Յիսուսի. եւ սիրով ձեր որ առ նա եւ միաբանութեամբ առ միմեանս:*

*Ողջունեմ եւ ձեաւք զամենայն ուղղափառ եկեղեցիս եւ զամենասուրբ Աստուծոյ սեղանս. ուր պատարագի կենարար, անապական եւ անմահական եւ աստուածացուցիչ մարմին եւ արիւն միածնի Որդոյն Աստուծոյ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որում փառք եւ պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

# ԱԿԱՆՑ ԿԱՄ ԱԿՆԵՐԻ ՎԱՆՔԸ

*Հայկական Կիլիկիոյ լեռնային կողմերը, Մոլեւոն, Բարձր, Լեւոն Կլայ եւ Անդրունին անառիկ բերդերու հովանւոյն տակ ԺԲ.— ԺԴ. դարերուն ծաղկեցան բազմաթիւ վանական հաստատութիւններ: Զանոնք կը հիւրընկալէր գլխաւորաբար Ցախուտ գաւառը, որ կը տարածուէր Բարձրբերդի ստորոտը, հիւսիս-արեւելք ուղղութեամբ: Այդ վանքերն են.*

1. *Ականց կամ Ակների, «մերձ յաստուածապահ ամրոցն, որ կոչի Անդրունին բերդ» (Թ. 20)*[1]:

2. *Անդրիասեանց, «մերձ յանառիկն դղեակ Բարձր անուն կոչեցեալ*[2]»:

3. *Առակլի, տե՛ս Խորին:*

4. *Գոների, «ի Գահս Կիլիկիոյ, ի գաւառն բերդին Բարձր ասացելոյ». «մերձ ի Բարձրն կոչեցեալ բերդ*[3]»:

---

[1] *Գրուածքիս վերջը զետեղած եմ այն Յիշատակարանները, որոնք կը հային Ակների վանքի պատմութեան. փակագծի մէջ առնուած* 1—25 *թուերը կ՚ակնարկեն այդ Յիշատակարանները:*

[2] *Սիսուան*, 149:

[3] *Սիսուան*, 144—146. *էջմ. Թ.* 182:

5. Թլուրքթի, «մեծ եւ հռչակաւոր անապատս որ կոչի Թլուրքթի... տեղիքս լեռնային [4]»:

6. Լիսոնկայ, «ի լեառն Կարմիր, մերձ յանառիկ դղեակն Բարձրբերդ [5]»:

7. Խաչատրոյ, «մերձ ի բերդս Բարձր, ի վերայ գետոյս Շղրկայ ի քարանձաւ եւ ի նեղ տեղիս». «մերձ ի Գոներ [6]»:

8. Խորին կամ Խոռնին, «Առակլի», «որ է մերձ ի սահմանս Բարձր բերդոյ եւ Լեւոն կլային, անառիկ դղեկացն». «յԱնապատի Առակլի, որ անուն Խորին ճանաչի [7]»:

9. Ծիծեռնաբոյն եղն (՞). Լիսոնկայ գրուած ձեռագիր մը կ'աւարտի «ի յանապատս Ծիծեռնբոյն եղն [8]»:

10. Ձորոյ Ս. Թորոսի [9]:

11. Միակեցեր [10]:

12. Պօղոսեան անապատ մերձ ի Գոներ [11]:

---

[4] Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., 449—450: Սիսուան, 156 եւն:

[5] Բանասէր, 1899, էջ 129—130: Հմմտ. Սիսուան, 153:

[6] Էջմ. 182 (յամէ 1303):

[7] Էջմ. Թ. 617 եւ Երուսաղէմ, Թ. 596. Վիեննա, Թ. 324 (Ցուց., էջ 771): Հմմտ. Սիսուան, 151—152:

[8] Բանասէր, անդ: Այլուստ ինձ անծանօթ:

[9] Տես վարը Թ. 19: Հմմտ. Սիսուան, 156:

[10] Սիսուան, 153:

[11] Անդ, 147:

13. **Փերճէր**. Կոստանդին Հեթումցի, 1311ին կ'օրինակէ Աւետարան մը «ի Ջորս ձորնի… ի խցկան միոջ, որ է հարաւակողմն Պերճ անապատիս[12]»։

14. **Փոսի**, «ի գաւառիս Յախուտ կոչեցեալ, յաշխարհիս Կիլիկեցւոց, յանապատիս որ կոչի Փոս[13]»։

Մէկ կողմէ երկրին քաղաքական ապահովութիւնը շնորհիւ անառիկ ամրոցներուն, միւս կողմէ իշխաններու եւ թագաւորներու նիւթական եւ բարոյական հովանաւորութիւնը քաջալեր եղան հոգեւէր հաւատացեալներու նուիրուելու վանական կեանքի։ Կ'երեւայ թէ երկրին տիրապետներուն այ ցանկութիւնն եղած է պաշտպանել իրենց սահմաններն ոչ միայն բազկի ոյժով, այլ եւ կրօնաւորներու աստուածահաճոյ աղօթքներով։

Մենաստանները, որոնք ունէին ներքին կազմակերպութիւն եւ բնակուած էին մեծաթիւ անդամներով, հանդիսացան արտաքին փայլ Հայոց Եկեղեցւոյ ներքին զարգացման, այլ եւ հայ մշակոյթի կեդրոններ, ուր կը մշակուէր գիտութիւնը, գրչութեան արուեստը, կը յարգուէին նախնեաց գրական արտադրութիւնները եւ նոր օրինակներով կը յաւերժացուէր անոնց գոյութիւնը. շատ բան

---

[12] Թորոս Աղբար, Բ., 433։ Հմմտ. Սիսուան, 152—153։

[13] Նարեկացւոյ Աղօթամատոյց եւ Յիսուս Որդի, յամէ 1276 (ի Տարօն)։ Հմմտ. Սիսուան 234 եւն։

նախնեաց մատենագրութենէն հասած է մեզի Կիլիկեան արտագրութիւններով:

Յորքան ամուր էին Հայկական Կիլիկիայի սահմանները, անդորր՝ երկրին քաղաքական կեանքը, ծաղկման վիճակի մէջ էին Վանքերը: Անոնք կը սկսին խամրիլ, կամաց կամաց իրենց գործունէութենէ դադրել, երբ ներքին կռիւները ծայր կ՚առնէին եւ կը թուլանար արտաքին սահմաններու պաշտպանութիւնը: Դատելով մեզի հասած ձեռագրական յիշատակարաններէ, Կիլիկեան Հայաստանի մենաստանները կը լռեն սկսեալ 1336է: Վերոյիշեալ Վանքերէ չունինք որ եւ է ձեռագիրներ 1335էն սկսեալ. միայն 1418ին կը գտնենք ձեռագիր մը, ժողովածոյ խրատական խրաց, գրուած Տօնական երէցի գրչէն «ի Խորին անապատիս ի հռչակաւոր եւ ի սուրբ ուխտիս» (Էջմ. Թ. 601):

Կ՚արժէ առանձին աշխատութիւն մը նուիրել Հայկական Կիլիկիոյ «գերահռչակ» վանքերու պատմութեան: Յուսով եմ, թէ Մեծ. Հ. Հ. Ոսկեան, որ կը զբաղի Հայ վանական հաստատութեանց Պատմութեամբ, օր մը իր զննութեան նիւթ պիտի ընէ նաեւ այս վանքերը: Ես նկատի պիտի առնեմ հոս անոնցմէ մին միայն, Ակների կամ Ականց Վանքը:

Ականց կամ Ակների վանքը հիմնարկուած է «ի լեռնային կողմանս» Հայկական Կիլիկիոյ, այն է «մերձ յաստուածապահ ամ-

*րոցն որ կոչի Անդրունին բերդ*[14]*», Ցախուտ գաւառի մէջ, որ կը տարածուէր «առ ստորոտով Բարձր բերդի», ըստ Հ. Ղ. Ալիշանի՝ նոյն բերդին հիւսիս-արեւելեան քղանցքին*[15]*։ «Պատմութիւն ազգին Ռուբինեանց» գրուածքին հեղինակը կը զետեղէ Ակները առ եզր Պարատիս գետոյ*[16]*։ Կիր. Գանձակեցւոյ համաձայն, հոն, ուր հիմնարկուած էր Ակների վանքը, «եզր էր տեղին այն», այսինքն կ՚իյնար Հայկական Կիլիկիոյ սահմանածայրը։*

*Ակների (Ակներոյ) կամ Ականց վանք կո-*

---

[14] *Կը յիշուի մէկ անգամ միայն* 1332*ին, հաւանօրէն նոր կառուցուած բերդերէն մին. իր անունն առած ըլլալու է Անդրուն գիւղէն, որ կը յիշուի նոյնպէս մէկ անգամ նոյն* 1332 *տարւոյն (Թ.* 23*բ). եւ ըլլալու է նոյն էնտէրուն վիճակին հետ, «մի ի կարգելոցն ի գաւառի Մարաշայ ըստ օսմանեան դիւանաց, որոյ եւ գիրք անծանօթ, բայց թուի մերձ ի Հաճին... բայց թերեւս եւ ի գետահովտի Ջահանայ, որում պատշաճի Մարաշ գաւառ, ուր եւ վտակ մի է համանուն» (այս ինքն՝ Անտըրըն-սու գետ). Սիսուան* 169*բ. իսկ էջ* 203*բ կ՚ըսուի. «սակաւուք հեռի վտակ մի Անտըրըն-սու կոչեցեալ՝ թափի ի Ջահան. եւ հուպ ի գլուխ դաշտին երեւին աւերակք եկեղեցւոյ փոքու եւ բերդի միոյ, զոր ի դէպ է կարծել Անդրունն հին, զոր խնդրեցաք ի սահմանս Հաճնայ». Հմմտ. նաեւ էջ* 193*բ։*

[15] *Սիսուան, էջ* 153*ա։*

[16] *Գետս կը յիշէ նաեւ Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ* 91*. Թորոս իշխան Կնդռոսկաւի բերդը առնելով «զբնակիչսն բերդին բնակեցոյց առ ափն գետոյն Պառատիսոյ, որ այժմ Կրակա կոչի անուն տեղեացն», նոյնը ունի նաեւ Սամուէլ Անեցի (էջ* 121*). «... առ ափն Պառատիս (երկու օր. Պատաառիս) գետոյ, որ այժմ Ներքին Կրակայ կոչի»։ Գետս Պլինիոսի* Paradisus*ն է, ըստ Դիւլորէի այժմեան Մէրքէնդէրէ-սու* (Hist. des Croisades, Document arm. I. 449 *եւ* 613)*, իսկ ըստ Ալիշանի, Թէուֆեամբ, Սէօկիւտլի գետն կամ անոր օժանդակը (Սիսուան,* 12)*։*

չուած է հաւանօրէն Ակներ գիւղէն, իսկ գիւղս իր անունն առած է այն ակնաղբիւրներէն, որոնք կը բղխէին այն կողմերը: Վանքս պատմութեան մէջ կը յիշուի 1215—1335 տարիներուն. Կիլիկիոյ Ժամանակագիրը ժէ. դարու կէսին «այժմ յաւուրս մեր, կ՚ըսէ, ըստ անուան վանիցն՝ տեղին Ակներ կոչի, եւ վանացն յաւերակին՝ աղօրէն, այսինքն ջրաղացք. զի ոչ ոք կայ ի նմա ի վաղուց հետէ» (Սիսուան, 535):

Վանքիս հիմնադիրն եղած է Լեւոն Ա. Թագաւոր. Վահրամ Րաբունի Թուելով Թագաւորին շինարարական գործերը կը գրէ[17].

Ամրոց բազում եւ գղեակ շինեալ,
Եւ զԿիլիկիա շրջապատեալ.
Ականաւոր ուխտըն կազմեալ,
Որ է Ակներ անուն ձայնեալ.
Եւ զոր Նախնեացն էր պարգեւեալ
Վանօրէիցըն զոր շինեալ,
Սա այնոցիկ առաւելեալ,
Եւ մեծապէս առատացեալ:

Աւելի ճոխ կը գրէ այս մասին Կիրակոս Գանձակեցի (77). Լեւոն Ա. «Կարգէր վանօրայս ընդ ամենայն կողմանս տէրութեան իւրոյ եւ բազմացուցանէր զպիտոյս նոցա, զի մի ումեք իւիք կարօտեսցին՝ ըստ մարմնոյ բաւականին, այլ միայն աղօթից եւ պաշտաման պարապեսցին. յորոց մի է ի վանօրէիցն,

---

17 Պատմութիւն Ռուբինեանց, էջ 214:

զոր կարգեաց նա, հռչականուն Ակներ կոչեցեալ վանք, որ մինչեւ ցարդ եւս վարին նովին կարգադրութեամբ, զոր նոյն կարգեաց, զամենայն աւուրս չաբաթու պահօք կատարել, այլ միայն լուծանել զշաբաթ եւ զկիւրակէն ձկամբ կամ կթեղինօք»:

Նոյն պատմագիրը կը հաւաստէ, թէ Լեւոն Ա. «յոյժ սիրէր զայն վանքն վասն բարիոք կարգաւորութեան նոցա եւ հաճոյական աղօթից». եւ իր փափագն էր, որ իր վերջին հանգստարանն ըլլայ նոյն վանքը: 1219ին, երբ ծանրապէս հիւանդացաւ թագաւորը, «հրամայէր հանել զինքն ի Սսոյ եւ տանել ճանապարհաւ Ակներոյն, զոր ինքն էր շինեալ, զի յորժամ մեռցի, անդ տարեալ թաղեսցեն զնա»: Հասնելով չուն Մրվանայ (Մաւրիա՞ն) գիւղը, թագաւորն «սկսաւ զելիցն իւր ի կենցաղոյս հոգալ ըստ պատշաճի եւ զմարմինն հանգուցանել ի սուրբ ուխտն Ակներն»: Լեւոն կը վախճանի մայիս 2ին, նոյն գիւղին մէջ: «Եւ եղեւ հակառակութիւն, թէ ո՞ւր հանգուսցեն զմարմինն. զի կաթողիկոսն տէր Յոհան բռնադատէր ի Թրազարկ տանել, եւ իշխանքն՝ յԱկներն, ուր ինքն հրամայեաց»: Ի վերջոյ կը միաբանին, «զի հանցեն զփորոտին եւ տարցեն յԱկներն, եւ զմարմինն տարցեն ի Սիս եւ տապանաւ հանգուսցեն յեկեղեցւոջ իւրում»: Այսպէս Կիլիկիոյ Պատմիչը[18]: Նոյն իմաստով կը պատմէ

---

[18] Հայապատում, Բ., էջ 440–441:

դէպքս նաեւ Կիրակոս Գանձակեցի. «կէսքն ասէին, թաղել զնա ի թագաւորանիստ քաղաքն ի Սիս, եւ այլք՝ ի վանքն որ կոչի Ակներ, զի յոյժ սիրէր նա զայն վանքն... իսկ ոմանք ոչ համարեցան պատշաճ, զի եզր էր տեղին այն եւ թշնամիք բազում էին նորա յայլազգեաց. Գուցէ, ասեն, եկեալ հանցեն զնա եւ այրեսցեն հրով, վասն բազում քինուն, զոր ունէին ընդ նմա. ապա միաբանեալ ամենեցուն՝ տարեալ զմարմին նորա թաղեցին ի Սիս. զսիրտն իւր եւ զփորն տարան ի վանքն Ակներ» (էջ 94):

Նաեւ Հեթում Ա. թագաւորի սրտին շատ մօտ էր վանքս. 1267ին, երբ թշնամին ասպատակեց Կիլիկիա եւ պարտուեցաւ հայ բանակը, պատերազմի դաշտի վրայ ինկաւ արքայորդիներէն մին (Թորոս), իսկ անդրանիկն Լեւոն գերի բռնուեցաւ, «բեկաւ, կը գրէ Գրիգոր Ակներցի[19], սիրտն (որդեսէր թագաւորին Հեթմոյ) ի կարի եւ յանհնարին տրտմութենէն... մինչ եկն ի սուրբ եւ ի գերահռչակ ուխտն միանձանց ի յԱկանց անապատս. եւ աստ մխիթարեալ սակաւ մի ի միեղէն եղբարց սուրբ ուխտիս՝ կեցեալ աւուրս ինչ, մինչ ելաւ Թուրքն յերկրէս»: Ոչ շատ յետոյ վերադարձաւ թագաւորը նորէն Ակներ, ապրելու հոն իր վերջին օրերը: Կիլիկիոյ Պատմիչինն են տողերս. «Ի սոյն ամի (ԶԺԸ 1269) յամսեանն հոկտեմբերի, որ աւր

---

[19] Պատմութիւն Թաթարաց, էջ 40 (55):

ԻԹ. էր, յերեքշաբաթի, ի մտանել արեգականն Թագաւորն Հայոց Հեթում փոխեցաւ ի կենցաղոյս եւ յաւելաւ առ հարս իւր առ ստորոտով Բարձրբերդոյ ի գեաւղն որ կոչի Ակներ. եւ բարձեալ տարան զնա ի սուրբ ուխտն Թրազարկ..., որ եւ ի ժամ վախճանին բարիոք խոստովանութեամբ կրաւնաւորեցաւ եւ անուանեցաւ Մակար», այս ինքն, ինչպէս պէտք է ենթադրել, գրուեցաւ միաբան Ակների վանքին: Ուրիշ հեղինակ մը կը պատմէ դէպքս. «Ի հասանել վախճանի Թագաւորին Հեթմոյ առ եզր Պարատիս գետոյ, որ կոչի Ակներ, նախ կրօնաւորեցաւ եւ կոչեցաւ անուն նորա Մակար, եւ ապա հանգեաւ եւ թաղեցաւ ի Թրազարկն[20]»: Անշուշտ թագաւորն իր կցորդներով չբնակեցաւ Ակների վանքին մէջ, այլ Ակներ գիւղի մէջ ունէր իր ապարանքը:

Եթէ Ակների Եկեղեցին չարժանացաւ իր գամբանարանին մէջ ամփոփել թագաւորներ, բայց եղաւ այն արքայազուններու գամբանարան. «Ի թուականիս ՉԼԳ (1284), ի ժամ սորին գրութեան, կը դրէ յիշատակագիր մը, փոխեցաւ առ Քրիստոս բարեպաշտ իշխանաց իշխանն, արքայեղբայրն Հայոց եւ տեառնս, Վասակ տէր Ճանճոյն, ի մարտի ամսոյ ԺԳ. յաւուր երկշաբաթոջ, ընդ երեկս աւուրն, ի մայրաքաղաքին Սիս եւ թաղեցաւ ի սուրբ

[20] Պատմութիւն ազգին Ուրբէլեանց, հրտ. Սամուէլ Անեցւոյ Յաւելուածին մէջ, էջ 211:

ուխտն Ակներ. որոյ ողորմեսցի Տէր Յիսուս Քրիստոս. ամէն[21]»: Հոս թաղուեցաւ նաեւ Պաղտին մարաջախտ եւ իշխանաց իշխան, որ վախճանած էր Հալէպի բանտին մէջ (Սիսուան, 154) 1336ին:

Արդէն 1215ին կը նկատուի վանքս «գերահռչակ անապատ որ կոչի Ակներ» կամ «Ականց անապատ» (Թ. 1. Հմմտ. նաեւ Թ. 13) եւ «մեծ եւ հռչակաւոր անապատ որ կոչի Ակներոյ վանք» (Թ. 1բ, նաեւ 3)· «հոյակապ եւ ականաւոր մենաստան» (Թ. 14), «վանք գերահռչակ» (Թ. 15/16), «հռչակաւոր մենաստան Ակներոյ վանք» (Թ. 12), «աստուածաբնակ եւ հռչակաւոր ուխտ Ակներ կոչեցեալ» (Թ. 18), «հրեշտակաբնակ ուխտ Ակներոյ» (Թ. 19) եւ այլն:

Վանքիս լեռնաշէն եկեղեցին է յանուն «Ս. Աստուածածնի» կամ «Տիրամօր»: Կը յիշուին հոն նաեւ Ս. Առաքելոց եկեղեցի, «ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս եւ սուրբ Առաքելոցս» (Թ. 1, 1բ, 15)· Ս. Յակոբայ եկեղեցի, «ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ սուրբ Յակոբայ» (Թ. 16)· Ս. Նշանի «ընդ հովանեաւ սուրբ Նշանիս եւ սուրբ Յակոբայ» (Թ. 11), «ընդ հովանեաւ սուրբ Տիրամօրն եւ Ս. Յակոբայ եւ այլ ամենայն սրբոց» (Թ. 17)· Ս. Փրկիչ, «ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս եւ սրբոյ Աստուածածնիս» (Թ. 3):

---

[21] Էջմ. Թ. 195, Թղ. 118բ: Հրտ. Արարատ, 1898, էջ 210:

*Եկեղեցին ունէր Ս. Խաչի եւ Սրբոց Նշխարաց մասունքներ, «ընդ հովանեաւ... աստուածընկալ Նշանացս» (Թ. 2), «եւ այլ բազմահաւաք սրբոցս» (Թ. 3), «աստուածընկալ Նշանացն եւ այլ բազմահոյլ նշխարացն սրբոց» (Թ. 13), «եւ կենսաբեր սուրբ Նշանացն եւ նահատակացն որ աստ կան» (Թ. 12) եւ այլն։*

*Ակներու վանքը իր ներքին կանոնադրութեամբը խստակեաց վանքերէն էր։ Կիրակոս Գանձակեցւոյ համաձայն վանքին սահմանադրութիւնն տուած է ինքնին Լեւոն Ա. թագաւոր. «որ մինչեւ ցարդ եւս վարին նովին կարգադրութեամբ, զոր նայն կարգեաց, զամենայն աւուրս չարաթու պահօք կատարեալ, այլ միայն լուծանել դշաբաթ եւ զկիւրակէն ձկամբ կամ կթեղինօք» եւ «աղօթից եւ պաշտաման պարապել»* [22], *Դաւիթ Բջնեցի, որ լսելով «զհամբաւ բարեաց եւ սուրբ կրօնք եւ կանոնք այս մենաստանիս» եւ այցելած է հոն, 1261ին կը յայտնէ իր հիացմունքը ականատեսի գրչով. «Ամենեքեան, կ՚ըսէ, իբրեւ զհրեշտակ Աստուծոյ արթուն եւ զուարթուն յօրհնաբանութիւնս Աստուծոյ ի տուէ եւ ի գիշերի անդրաղ եւ անհանգիստ» (Թ. 3)։*

*Արդէն 1215ին ունէր Վանքս իր յարկին տակ ոչ միայն հանգուցեալներ, այլ եւ ծերունի եւ երիտասարդ միաբաններ։ Ցիշատա-*

---

[22] *Կիր. Գանձակեցի, էջ 77. բնագիրն ուղղած եմ համաձայն Վիեննայի Թ. 574 ընտիր ձեռագրին։*

կացիր մը այս տարւոյն կը խնդրէ յիշել «զՀայր Թորոս եւ զմիաբանեալ եղբարսն իւր զմեծամեծս եւ զփոքունս, զյառաջացեալսն առ Քրիստոս եւ որ այժմ են» (Թ· 1)· ուստի կրնանք ենթադրել թէ թուականէս գոնէ երկտասնեակ տարի յառաջ ըլլալու է անոր հիմնարկութիւնը: Նոյն իմաստով կը գրէ ուրիշ մը՝ Գրիգոր Ակներցի 1273ին. «Տէր Աստուած ողորմեսցի ամենայն գործաւորաց եւ սպասաւորաց սրբոյ ուխտիս՝ առաջնոցն եւ միջնոցն, այլ եւ վերջնոցն որ գալոցն են զկնի մեր» (Թ· 8): Այդ «գործաւորաց եւ սպասաւորաց» թուին մէջ կը յիշէ Դաւիթ Բջնեցի «զտնտես եւ զմարնպան եւ զհացպան եւ զփռնպան եւ զամենայն աշխատողս» (Թ· 3):

Վանքին գլուխը կը կոչուէր «Հայր» կամ «Առաջնորդ» կամ «Վերակացու»: Անոր իշխանութիւնը ժամանակաւոր էր, այսինքն կը տեւէր որոշ տարիներ (իբր 6 տարի), որմէ ետքը կը կատարուէր նոր ընտրութիւն: Կը յիշուին հետեւեալ վանահարք·

1· Թորոս (Թ· 1) 1215
2· Գրիգոր 1261
3· Ստեփանոս (Թ· 7) 1273
4· Սարգիս, ներկայ Սսոյ ժողովին[23] 1307
5· Գրիգոր (Թ· 10—11) 1312—15

---

[23] Հ· Ա· Պալճեան, Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս, էջ 275. 281:

6· *Ստեփանոս* (*Թ*· 15—16) 1325
7· *Մխիթար* (*Թ*· 20) 1332
8· *Յովհաննէս, ներկայ Մխիթար կաթողիկոսի ժողովին* [24] 1342

*Կարեւոր պաշտօն էր փակակալութիւնն կամ Եկեղեցպանութիւնը· փակակալն ունէր իր հսկողութեան տակ նաեւ Եկեղեցւոյ Մատենադարանը: Կը յիշուին հետեւեալները·*

1· *Սիմէոն* (*Թ*· 3) 1261
2· *Վարդան* (*Թ*· 7—8) 1273
3· *Գրիգոր* (*Թ*· 12) 1315
4· *Ստեփանոս* (*Թ*· 16—20) 1325—32
5· *Վարդան* (*Թ*· 23) 1335

6· *Յովհաննէս «փակակալ եւ երաժիշտ»* [25]:

*Կ'երեւայ թէ Ակներ ունեցած է նաեւ իր եպիսկոպոսները, թերեւս իբրեւ թեմակալ Ցախուտի թեմին: Ինձ ծանօթ են երկու եպիսկոպոս միայն՝*

*Տէր Բարսեղ* (*Թ*· 3) 1261
*Տէր Վարդան* 1307—1332

*Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոս երբ* 1306*ին կը գրէր իր թղթին մէջ առ Հեթում Բ· Թագաւոր, որ խորհուրդի կանչէ*

---

[24] *Պալճեան*, 274:
[25] *Սիսուան*, 517:

«զեպիսկոպոսներն եւ զխորադէտս[26] եւ զԱկներոյն հայրերն, որ տանին ցուցանեն զայս գիրքս յիւրեանց վաներն՝ պարկեշտ, կատարեալ եւ խելօք մարդկան[27]»: Ականատես հանդիսացան Ակների վանքին մէջ Վարդան վարդապետ, որ յետոյ եպիսկոպոս ալ եղաւ, եւ իբրեւ այսպիսի ներկայ էր Սիսի 1307ի ժողովին[23]: Իր գովութիւնը կը հիւսեն ժամանակակիցները․ կը խնդրուի յիշել «զՎարդան վարդապետն սքանչելի վարուք ի մէջ եկեղեցւոյ» (Թ․ 3 յամէ 1261)․ «Սուրբ ուխտիս Ակներոյ զծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան» (Թ․ 15—16 յամէ 1325․ Թ․ 19—20) «զժուժկալ եւ զփոյթն յաստուածային բանից զերջանիկ ծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան, զյորդորողն մեր ի գրել գրոց աղաչեմ յիշել ի Տէր» (Թ․ 20 յամէ 1332): Հաւանօրէն սա է նաեւ «Վարդան նուաստ եւ տրուպ վարդապետ, որ զգիրս (Աւետարան) գրեցի» Յովհաննէս քահանայի համար (Թ․ 13 յամէ 1323): Ինձ կը թուի թէ ա՛յս Վարդան կ՚ակնարկուի նաեւ 1288ին ի Կիլիկիա (Սիս կամ Ակներ) գրուած ձեռագրի մը մէջ, որմէ արտագրութիւն մ՚է Միւնխէնի Թ․ 6 յամէ 1432 (Գալէմքեարեան, Ցուցակ, էջ 19): Գրիչն Թորոս երէց օրինակած էր ի խնդրոյ Սարգիս Ճալուէ ա—

---

[26] Կարդա՞լ «զԽորադետոյ», այսինքն Խորնի Ձորի վանքերու Հայրերը:

[27] Կղեմէս Գալանոս, Միաբանութիւն Հայոց սուրբ Եկեղեցւոյ..., Հռոմ 1650, Մասն Ա․, էջ 448:

րեւելցի վարդապետի[28]. ոտանաւոր յիշատակարանին մէջ կը խնդրէ յիշել.

Ը՜նդ որս մեծ ռաբին Վարդան կոչեցեալ,
Այն երջանիկն աստուածընկալ,
Որ ի մարմնի հրեշտակացեալ,
Եւ աշխարհի քարոզ եղեալ:

Վարդանս, որ գործած է յԱկներ, չէ՞ թողուցած որ եւ է գրական աշխատութիւն: Այլուր (Հանդ. Ամս. 1946, էջ 95—109), երբ կը խօսէի Վարդան Բարձրբերդցի–Կիլիկեցի վարդապետի մասին, խօսք ըրած էի նաեւ չարականագիր Վարդանի մը նկատմամբ, որ ծաղկած էր ԺԳ. դարու վերջին տասնեակին (անդ, էջ 106—109): Այժմ խնդիր կրնայ ըլլալ, թէ այս չարականագիր Վարդան հնարաւոր չէ՞ արդեօք նոյնացնել Ակներցի Վարդանի հետ: Աւելին ըսել կը թողում ապագային: Ուշադիր կ'ընեմ միայն, որ նաեւ «Տէր Բարսեղ», որ կը յիշուէր յԱկներ, որ նոյն է անշուշտ համանուն արքայեղբօր հետ, նոյնպէս չարականագիր էր. իր մասին պիտի խօսիմ ուրիշ առիթով մը:

Իրեն ժամանակակից է ուրիշ Վարդան քահանայ մ'ալ յԱկներ, որ հաւանօրէն նոյն

---

[28] Սարգիս Ծալուէ 1286ին «յարեւելից եկաք, կ'ըսէ, յաստուածակոխ քաղաքն Երուսաղէմ», եւ Ս. Յակոբի գաւիթը սալեցի եւ Հրեշտակապետի վանքը պարիսպեցի Լեւոն Թագաւորի եւ Յակոբ կաթողիկոսի ծախքով (Տէր–Յովհաննէսեան, Պատմ. Երուսաղէմի, Ա., էջ 189—190): 1287ին ի Սիս օրինակել կու տայ Սողոմոնի գրքերը (Լալայեանց, Ցուցակ Վասպուր., էջ 56—58):

է «արեամբ նահատակ» Վարդան քահանայի հետ։ Այս Վարդան կը յիշուի առաջին անգամ 1273ին իբրեւ փակակալ (Թ․ 7—8)․ 1324ին իբրեւ գրիչ Աւետարանի (Թ․ 14), ուր եւ կը յիշուի իր քուերորդին Ներսէս քահանայ։ Ինձ ծանօթ է ԺԴ․ դարէն Ներսէս գրիչ մը, որ «Վարդան բանի սպասաւորի» համար կ'օրինակէ Փիլոնի գրութիւնները (Թ․ 10 դ)։ Կը յիշուի Վարդան քահանայ մ'ալ 1329ին, որ հօրեղբայրն է Կարապետ գրչի (Թ․ 18)․ բայց սա ուրիշ մ'ըլլալու է։ Նկատմամբ Վարդան արեամբ նահատակ քահանայի ծանօթ են ինձ հետեւեալ վկայութիւնները 1329էն, որոնք ենթադրել կու տան թէ նա միաբան էր Ակների եւ հմուտ բանաւէր մը․ «Աղաչեմ յիշել ի Տէր զարեամբ նահատակեալ քահանայ զՎարդան, որ զաւրինակն էր գրեալ, այս ինքն Աւետարան մը կ'օրինակէ, զոր ուղղած էր «Գէորգ Լամբրոնացի» (Թ․ 17)։ «Եւ յիշման արժանին զսուրբ քահանայն զարեամբ նահատակն զՎարդան, որ բազում տառապանօք էր գրեալ զօրինակս, երիս օրինակս մերձ ունելով եւ մեզ դիւր ճանապարհ էր կազմեալ» (Թ․ 18)․ խօսքը Յովհաննէս Ոսկեբերանի Մատթէի Մեկնութեան մասին է, որուն բնագիրը Վարդան համեմատութեամբ երեք ձեռագիրներու վերակազմած է։ «Ողորմութիւն օրինակիս գրողին Վարդանայ... քահանայի եւ արեամբ վկայի․ այլ եւ Պետրոսին որ յօժար կամօք ետ որ գրեցի»։ Գրիչն է Հայրապետ, որ կա-

տարած է իր օրինակութիւնը 1329ին «յանապատս Փոս վերակոչեալ յաշխարհիս Կիլիկեցւոց»: Գրիչս, որ օրինակած է Յովհաննէս Երնջակեցւոյ Տաղարանը, կամ թերեւս Սանդուխք գրութիւնը, յառաջ բերած է Գլխացանկէն յառաջ առաջին գրչին Վարդանի տողերս. «Այս բանք գովութեան ճառիցս թուի թէ չէ միաբան ճառից. այլ ես զհամարն ի վերայ առաջնոյ ճառացուցին եդի, զի յօրինակն անհամար էր եւ ստոյգ ևրեր մինչ ի վերջն»: Հայրապետ գրիչ իրմէ կ՚աւելցնէ. «Զայս Վարդանն էր գրեալ հասու եղեալն[29]»: Ակների մէջ մեզի ծանօթ է 1315ին Պետրոս սարկաւագ եւ 1329ին Պետրոս քահանայ: Անհնարին չէ, որ սարկաւագս նոյն ըլլայ քահանային եւ իր կարգին Հայրապետ գրչի յիշած Պետրոսին հետ. ուստի զաղափար օրինակն Փոսի վանքը տարուած ըլլալու է Ակներէն:

Վանքիս միաբան եղած է նաեւ Յովհաննէս Արքայեղբայր եւ արքեպիսկոպոս Գոների, որուն համար կ՚ըսուի թէ Աւետարան մը գրուած է «ձեռամբ Յովհաննու եպիսկոպոսի ... ի սուրբ ուխտն Ակներ, ուր յոլով ամօք նախ՝ նոցին միաբան էր գրեալ եւ յոլով արդիւնք անդ արարեալ» (Թ. 6): Յովհաննէս գրասէր էր եւ բանասէր, նաեւ յաջող բանաստեղծ, արժանաւոր միաբան մը Ակների վանքին:

---

[29] Յ. Թօփճեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Դաղեան Խաչիկ վարդապետի, Ա., էջ 86. հմմտ. Հանդ. Ամս., 1947, էջ 260—261:

*Գրասէր հանդիսացան հոն նաեւ Ստեփանոս եւ Գրիգոր վանահայրերը. որոնց օրով (1270—1330) ծաղկեցաւ գրչութեան արուեստը յԱկներ անհամեմատ կերպով: Անոնք ջանք տարին կազմել Վանքին մէջ ընտիր գրադարան մը, օրինակելով եւ օրինակել տալով հայրագիտական, պատմական եւ ոգեշահ գործեր: Գրիգոր անուանի եղաւ նաեւ իբրեւ պատմագիր, իր մասին պիտի խօսիմ առանձին յօդուածով մը:*

Գրիչներ:

*Ակների մէջ ծաղկեցան բազմաթիւ գրիչներ. կը յիշեմ.*

1. *Պետրոս եղբայր Սիմէոնի* 1215 (*Թ.* 1):
2. *Դաւիթ Բջնեցի* 1261 (*Թ.* 3):
3. *Անանուն գրիչ* 1267 (*Թ.* 4):
4. *Բարսեղ* 1269 (*Թ.* 5):
5. *Յովհաննէս Արքայեղբայր* 1269:
6. *Ղազար եղբայր Աւետիքի* 1273 (7):
7. *Գրիգոր Ակներցի* 1273 (*Թ.* 8), 1312 (*Թ.* 10), 1329 (*Թ.* 19):
8. *Գրիգոր որդի Վահրամայ* 1325 (*Թ.* 15, 16), 1331 (*Թ.* 20 *բ*), 1332 (*Թ.* 20):
9. *Գրիգոր Բ. Ակներցի* 1335 (*Թ.* 24), 1386 (*Թ.* 25):
10. *Ներսէս Կլայցի, եղբայր Յովհաննէսի* 1312 (*Թ.* 10), 1313 (*Թ.* 11):
11. *Յովհաննէս* 1313—1315 (*Թ.* 10, 12):
12. *Վարդան վարդապետ եղբ. Բարսղի* 1323 (*Թ.* 13*բ*):

13. *Վարդան քհ.* (*Նահատակ՞*) 1324 (*Թ.* 14)։
14. *Սերովբէ որդի Ներսխի* 1326 (*Թ.* 17), 1334 (*Թ.* 22)։
15. *Կարապետ եղբօրորդի Վարդան քահանայի* 1329 (*Թ.* 18)։
16. *Մինաս* 1322 (*Թ.* 13ա)։

Մանրանկարիչներ։

1. *Պաւղոս* 1267 (*Թ.* 4)։
2. *Գրիգոր դպիր* 1312 (*Թ.* 10)։
3. *Գրիգոր նորընծայ քահանայ* 1315 (*Թ.* 12)։
4. *Կարապետ քահանայ* 1329 (*Թ.* 19)։
5. *Դաւիթ* (*Բջնեցի՞*) 1334 (*Թ.* 22)։

Կազմողներ։

1. *Թուրէն* 1215 (*Թ.* 1)։
2. *Մանուէլ* 1273 (*Թ.* 7)։
3. *Յակոբ Մեծպարոնենց* 1312 (*Թ.* 16)։
4. *Բարսեղ քհ.* 1325 (*Թ.* 16)։
5. *Կարապետ գրիչ* 1329 (*Թ.* 18)։

*Կը հրատարակեմ այս տեղ այն բոլոր Յիշատակարանները, որոնք գրուած են Ակների եւ Ջորոյ Ս. Թորոսի վանքերու մէջ։*

1ա. «*Յամի վեցհարիւրորդի վաթսունեւորդի չորրորդի Թուականութեանս Հայոց* (1215) *գրեցաւ գիրքս Յաճախապատում լուսաւոր վարդապետութիւն եւ խրատք ոգէշահք, ազգի ազգի բժշկարանք ախտացելոց հոգով, ասացեալ սուրբ եւ երջանիկ Լուսա–*

ւորչին Հայոց Գրիգորի, ընդ[30] նմին եւ ուղղափառ վարդապետութիւն ընդդէմ հերձուածողաց ազգի ազգի աւրինաւք վկայութեամբ սուրբ գրոց սրբոյն Սեբերիանոսի ուղղափառ վարդապետի ասացեալ յաւգուտ եւ ի շահ ուղղադաւան եկեղեցւոյ եւ ի կործանումն եւ յամաւթ չարափառ հերձուածողաց: Ի գերահռչակ անապատս որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Առաքելոցս. հրամանաւ երից երանեալ հաւրն Թորոսոյ եւ այլ միակամ եւ միախորհուրդ եղբայրութեանս ձեռամբ Պետրոսի փցուն եւ անպիտան գրչի: Ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի յաղթողի եւ բարեպաշտի. եւ ի հայրապետութեանն տեառն Յոհաննիսի Հայոց կաթողիկոսի:

Արդ որք աւգտիք ի սմանէ՝ յիշեսջիք աղաւթիւք զհայրն Թորոս եւ զմիաբանեալ եղբարսն իւր, զմեծամեծս եւ զփոքունս, զյառաջեալսն առ Քրիստոս եւ որ այժմ են եւ որ զկնի մեր գալոց են. զի զամենեսեան արժանաւորս արասցէ խոստացելոց բարութեանցն, զոր ակն ոչ ետես եւ ունկն ոչ լուաւ: Յիշեսջիք եւ զանպիտան անձն Պետրոսի գրչի եւ զհարազատ եղբայրն իմ զՍիմեւոն եւ զծնողսն մեր զհոգեւոր եւ մարմնաւոր...:

Մեղապարտ անձն Ըռոբինա կազմողի սորա աղաչէ զձեզ, ով սուրբ եղբարք, աւել

---

[30] Մինչեւ այս տեղ լուսատիպ հրտ. Յովսէփեան:

ցաւակցութեամբ, թէ Աստուած ընչեա դյան-ցանս Ըսոբինա եւ գծնողաց իւրոց. եւ Աս-տուած գձերն ընջէ. եւ նմա փառք յաւի-տեանս» (Թղ. 161ա):

բ. «Զսուրբ եւ զպատուական եւ զաս-տուածահաճոյ հայրն զԹորոս զԱկանց անա-պատին առաջնորդն յիշեսջիք ի Քրիստոս, որք կարդայք կամ ընդաւրինակէք, եւ զծնաւղս նորա. եւ որ յիշէ յիշեալ եղիցի» (Թղ. 160բ):

գ. «Ի թուին ՈԿԸ (1219) մեռաւ թագա-ւորն Հայոց Լեւոն, որում ողորմեսցի Քրիս-տոս Աստուած եւ սուրբ թագաւորացն պսա-կակից արասցէ:

Եւ յայսմ ամի տապալեցին անիծեալ Տա-ճիկքն զՆրուսաղէմ ի հիմանց, զբովանդակ եկեղեցիսն եւ զպարիսպն շուրջանակի եւ զա-մենայն շինութիւն քաղաքին: Ճշմարտապէս աստ կատարեցաւ ասացեալն ի Տեառնէ, թէ Ոչ մնասցէ այդր քար ի քարի վերա, որ ոչ քակտեսցի: Այս յառաջիկայն Աստուծոյ է գիտելի» (Թղ. 161բ):

Էջմիածին, Թ. 947 (Ճառք Սեբերիա-նոսի. Յաճախապատումը անջատուած է. տե՛ս յաջորդ Յիշատակարանը): Սկիզբէն մաս մը լուսատիպ հրատարակած է Գարեգին Եպ. Յովսէփեան, Քարտէզ հայ հնագրու-թեան, տախտակ ԽԷ. հմմտ. նաեւ էջ 33: Մասամբ հրատարակուած՝ Հ. Գ. Զարբանա-լեան, Մատենադարան հայ. թարգմանու-

թեանց, էջ 688. հմմտ. նաեւ Մխուան, էջ 154 (1, բ յիշատակագրութիւնը):

2. Փառք...: Կատարեցաւ լուսաւոր վարդապետութիւնս սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի, գիրք որ կոչի Յաճախապատում, ի թուականութեանս Հայոց ՈԿԴ (1215), ի հայրապետութեան տեառն Յոհաննիսի Հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեան աստուածասէր եւ բարեպաշտի Լեւոնի: Գրեցաւ հրամանաւ հաւր Թորոսի եւ յաւժարութեամբ ամենայն եղբայրութեանս ի մեծ եւ ի հռչակաւոր անապատիս, որ կոչի Ակներոյ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Առաքելոցս եւ աստուածընկալ Նշանացս: Արդ... յիշելոյ արժանի արարէք զմեղապարտ... գրողս զՊետր. եւ զծնողսն իմ...: Դարձեալ աղաչեմ զընթերցողսդ՝ սխալանաց եւ խոշորութեան եւ անյարմար գրելոյս չլինել մեղադիր, քանզի ախմար էի եւ այլ ոչ էի արարել. եւ յայս վասն ստուգաբանութեան աւրինակին համարձակեցա...:

Ողորմեսցի Քրիստոս Աստուած Կիրակոսի... որ աշխատեցաւ ի սմա...»:

Երուսաղէմ, Թ. 94 (Յաճախապատում. հմմտ. Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Երուսաղէմի): Ձեռագիրս նախնաբար Ա. մասը կը կազմէր էջմիածնի Թ. 947 ձեռագրին (տե՛ս նախորդ Թ. 1 Յիշատակարանը):

3. Յետագայ Յիշատակարանը, որ բատակալ սկզբնագրերով տնատուած է, պակասաւոր է սկզբէն, ինկած են «ԶԴԱԻԻԹ Գր»(իչ) տուները. այժմ կը սկսի.

«Իսկ յետ բազում ժամանակաց...

Զարչարեալ տասն զանազան տնջանաւք (Գր. Լուսաւորիչ), որ եւ զայս նամակս չաբագրեաց մեծահանճար քարտուղարն Ագաթանգեղոս ի սկզբան(է) մինչեւ ցկատարումն:

Յայս իսկ || (անմխի)թար եղեալ ի բազմաչա՟ մեծագին գանձուցս սուրբ եղբարց մեծ եւ հռչակաւոր անապատիս Ակներ կոչեցեալ. զի ունելով այլ (իմացիր՝ զայս) գիրս զժուարընթեռնլի, զի ոչ արժէին ընթեռնուլ ի ժամատեղ կամ ի սեղան համարձակ:

Իսկ կամակից եղեալ առաջնորդք ուխտիս փոխե[ա]լ զսա յայլ գիր, որով եւ իմ յանձն առեալ զհրամա(յ)եալս ի պատուական հարց եւ եղբարցս գրել զսա:

(Շնորհ)աւք ամենակալ(ին) կատարե(ցի բստ) կարողութեան (իմոյ) ոչ եթէ գիտէի զարուեստ գրչութեան յանդգնեցաք ի գործս այլ բստ յուսոյ որ ի սուրբ յուխտս եւ բստ հրամանի պատուական եղբարցս, որպէս եւ գրեալ է, թէ Կեանք է լսողութիւն:

Եւ արդ աղաչեմ եւ մաղթեմ զձեզ, ո՞վ ամենամաքուր եւ հոգիապայծառ սուրբ դասք քահանայից եւ միայնակեցաց, որք հանդիպիք այսմ տառի կա՛մ ընթերցմամբ կամ զա-

զափար առնելով, յիշել առ Քրիստոս զպատուական հայրն զԳրիգոր մաքրակրօն քահանայ եւ զտէր Բարսեղ եւ զՎարդան վարդապետ սքանչելի վարուք ի մէջ եկեղեցւոյ, եւ զփակակալ Սիմէոն եւ զՀայրապետ ամենայնի(ւ) սրբասէր եւ աստուածահաճոյք, նաեւ զհոգեւոր եղբայրս իմ զՆերսէս եւ Յոհանէս յոյժ պիտանի եւ աւգտակար ի գործս բարիս. եւ զայլ ամենայն եղբայրութիւնս, որ ոչ էր կար մի ըստ միոջէ անուանել: Աղաչեմ յիշել եւ զԹորոս միակեաց եւ զԳրիգոր, որ աշխատեցաւ ի կոկ թղթիս. նաեւ զանուն եւ զմարմրան եւ զհացբան եւ զխոմպոն եւ զամենայն աշխատողս առ Քրիստոս յիշել, զսուրբ ծերունիք զՍարգիս եւ զԿարապետն ||| (եւ զԵփր)եմ:

Յուցից եւ...

Է եւ ինձ պատմել, զի գոլով իմ ի Նահանգէն յարեւելից, յԱյրարատեան գաւառէն, ի գեղակէն Բջնոյ. եւ իմ խոցեալ չար վիրաւք հոգւոյս զանազան մեղաւք. ապա այնուհետեւ որպէս զչար վիրաւք հարեալ մարդ ի խնդիր ելեալ բժշկի եւ ոչ ուրեք գտեալ այլ միայն դէմ եղեալ գնալ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ եւ ի Հռոմ ի Պատկերն անձեռագործ եւ սուրբ Պետրոս եւ Պաւղոս, նաեւ յԱստուածածին որ ի ծագս տիեզերաց եւ ի սուրբ առաքեալն Յակոբ:

Քանզի ոչ եթէ վասն պանծանաց գրեմ զայս, այլ վասն մեծ մեղաց իմոց, որ անհուն է եւ անչափ է:

*Իսկ դարձեալ <լուեալ> զհամբաւ քաջեաց եւ սուրբ կրաւնք եւ կանոնք այս Մենաստանիս եւ յոյժ ցանկացայ. եւ եկեալ եմ յուսով մեծաւ եւ աշխատութեամբ յոյժ եւ տուայ (տանուք):*

*Տեսեալ զիս աւագ եւ պանդուխտ՝ ողեւէր եղբարցս եւ գթացին յիս իբրեւ զծնաւղ եւ ցուցին ինձ սէր իբրեւ զՏէր Յիսուս, զոր հաստուցէ Քրիստոս սոցա ըստ իմ........ ....(կ)եանս տացէ հանդերձ յաւիտենից ընդ սուրբս իւր. եւ ոչ միայն զայս, այլ եւս առաւել ցուցին յիս գթութիւն:*

*Եւ ես ոչ ունելով զձեւ սոցա եւ զկարգ, զի ամենեքեան իբրեւ զհրեշտակ Աստուծոյ արթուն եւ զուարթուն յաւրհնաբանութիւնս Աստուծոյ ի տուէ եւ ի գիշերի անդադար եւ անհանգիստ. եւ զայս տեսանելով իմ, վա՛յ եւ եղուկ ասելով անձին իմոյ, զի թափուր գոլով ի կրաւնից սոցա եւ յառաքինութենէ:*

*Բամեալ զիս այնուհետեւ զմտաւ ածի զգործս զայս, թերեւս լինիմ կցորդ քարեաց սոցա. ուրեմն եւ որդորելով զիս եւ խրախուսելով սուրբ հարցդ որ ի վերոյ գրեցաք: ...աղաչեմ զսրբութիւնդ ձեր անմեղադիր լինել սխալանացս եւ սիրով ուղղել. զի այս էր կարողութիւն իմ. այլ եւ ի սոյդ աւրինակէ գրեցի եւ ըստ չափու զգրագարձ ||| (թուղթ ինկած) (թղ. 366ա—367բ):*

բ. *Ով համագումար դասք սրբազանից, յորժամ ընթեռնույք կամ լսէք. յիշեցէք ի Քրիստոս զորգորիչ գործոյս զՀայրապետն եւ*

*զՍիմեւոն փակակալ եւ զանմաքուր գծողս…* (*Թղ*· 48*ա*)։

գ· *Զամենամեղս… զգրիչ Դաւիթ յիշել, աղաչեմ… եւ զծնողսն մեր եւ զամենայն եղբայր…* (*Թղ*· 247*ա*)։

դ· *Ողորմութեամբն Աստուծոյ սկսայ ի յամսեանն գէկտեմբեր ԺԵ· եւ շնորհաւք սուրբ Հոգւոյն կատարեցի ի մարտ Լ…* (*Թղ*· 325*ա*)։ *Կողքին այլ ձեռքէ խոշոր բոլորգիր· «Ի Թվիս Հայոց ՉԺ»* (1261)։

*Էջմիածին, Թ*· 1656 (*Կար*· 1614· *Ագաթանգեղոս*)։ *Հրտ· Ստ· Կանայեանց*· Zeitschrift für armenische Philologie 2 (1904), 298—303 (*յատկապէս* 300—302)։ *Ագաթանգեղոս, Թիֆլիս–Վաղարշապատ*, 1909, *էջ ԻԹ—ԼԳ*։

4· *Փառք…։ Արդ աղաչեմ զձեզ… յիշել… զիմ անարժանութիւնս սրտի մտաւք եւ զայնոսիկ որ քաջալերիչ եւ յորդորիչ եղեն մեզ ի սոյն գիր, զհոգեւոր եղբայր մեր զԴաւիթ եւ զՊաւղոս, որ զխորան(սն զլ)խոցս նկարեաց կարմրադեղով· նաեւ զծնողս մեր եւ զսնուցողս մեր…։ Գրեցաւ սուրբ աւետարանս յԱկանց անապատիս, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս եւ սրբոյ Աստուածածնիս եւ այլ բազմահաւաք սրբոցս· ի Հայրապետութեան տեառն Կոստանդեա եւ ի թագաւորութեանն Հեթմոյ· ի Թուականութեանս Հայոց ՉԺԶ»*։ (*Շարունակութիւնը տես վարը, էջ* 232, *Թ*· 3)։

բ․ *Փառք...։ Գրեցաւ ի թուիս ի ՉԺԶ* (1267), *յանապատիս Ականց կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս եւ սուրբ Աստուածածնիս... ի գաւառիս Յախուտ։ Յայս նշանաւոր ամիս աւարեցաւ աշխարհս Կիլիկեցւոց յանաւրէն Իսմայէլացւոց եւ ի բազում սուք եւ տրտմութեան են ազգ քրիստոնէից...։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած հոգեւոր եղբաւր մերոյ Դաւթի, որ աւժանդակ եւ քաջալերիչ եղեւ մեզ...* (*թղ*․ 239*ա*)։

գ․ «*Ցուրտ է, ձեռս կաղուել է․ գէշ կու գրուի․ թողութիւն արա աղաչեմ*» (*թղ*․ 155*ա*)։ «*Անհեթեթ կու գրուի․ ցուրտ է․ ձեռս կաղուել է․ թողութիւն արա, աղաչեմ*» (*թղ*․ 161*ա*)։

*Նոր Ջուղայ, Թ*․ 51 *Ամենափրկչի վանաց* (*Նոր Կտակարան եւ Մարգարէութիւնք Եսայեայ եւ Եզեկիէլի․ Ս․ Տէր-Աւետիսեան, Ցուցակ հայ․ ձեռագրաց Նոր-Ջուղայի․ անտիպ*)։ *Ձեռագրին գրիչը չէ յիշուած յանուանէ*։

5․ *Աստուածաշունչ* (1269)․ ա․ «*Զստացող տառիս զտէր Յոհանէս բարոնի, զեղբայր թագաւորին* (*Հեթմոյ Ա*․) *յիշեսջիք ի Տէր եւ զծնաւղսն նորին ամենայն զարմաւք իւրովք, ո՛վ աստուածասէր ընթերցողք․ ընդ նմին եւ զանպիտան գծողս Բ՛՛ղ* (*Բարսեղ*) *եւ զծնաւղսն իմ...*» (*թղ*․ 39*ա*, *ի վերջ Ծննդոց գրքին*)։

բ․ 144*ա*․ «*Սուրբ մարգարէիս բարեխաւսութեամբ... Քրիստոս Աստուած ողորմեա*

ստացողի տառիս տէր Յոհաննէսի բարունոյ եղբաւր արքայի... աղաչեմ յիշել եւ զմեղապարտ գծողս Բ"դ...: Յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս թագաւորն Հեթում († 1269 հոկտ. 29), որոյ հանգիստ պարգեւեսցէ Քրիստոս Աստուած եւ ընդ սուրբ թագաւորսն դասեսցէ զհոգի նորա: Եւ յաջորդէ զաթոռ նորին որդի իւր Լեւոն...»: Այլ գրով. «Ստացողիս եւ ուղղողիս Յոհ" եպ" թողութիւն տացէ Քրիստոս...» (թղ. 144ա):

գ. «Զստացող տառիս զտէր Յոհաննէս բարունի յիշեսջիք ի Տէր եւ զծնողսն իւր. ընդ նմին եւ զՅոհաննէս սրբասնեալ քահանայ, որ զաւրինակս ետ: Աղաչեմ յիշել եւ զսուրբ ուխտիս սպասաւորն զերջանիկ կրաւնաւորն զԹորոս մառնապանն, որ բազում սպաս տարաւ մեզ եւ հոգք» (թղ. 364բ):

Բուն յիշատակարանը ինկած է: Գրչութեան տարին է 1269/70, տեղը կը թուի Ակներ, ուր ծաղկած են Բարսեղ գրիչ եւ Թորոս մառնապան:

Էջմիածին, Թ. 345 (Աստուածաշունչ):

6. Շեղելով ժամանակագրական կարգէն, այս տեղ կը դնենք 1287ին գրուած Աւետարանի մը յիշատակարանները, որոնց գրիչն է Յովհաննէս արքայեղբայր.

ա. «Գերակատար գլխոյն մաքուր անձամբ, ...գրող սորա եւ աշխատողս Յոհ" եպիսկոպոս ծնողաւք եւ ընտանեաւք մեր եւ համայն Քրիստոսի երկրպագողաւք յիշեալ

*լիցուք ի ձէնջ ի բարի. եւ դուք եւս»* (*Թղ.* 102*ա*):

բ. *«Եղկելի ոգիս Յոհ՛՛ եպ՛՛ արքայեղբայր այսմ գրոց, ծնողաւք մեր կրկին եւ ընտանեաւք եւ ամենայն ի սա աշխատողաւք յիշեալ լիցուք ի բարին Քրիստոս...»* (*Թղ.* 103*բ*):

գ. *«Երջանիկ անձանցդ տաւնասիրաց եւ աստուածասիրաց պաղատիմ հոգս դասապարտ ծառայակիցս Յոհ՛՛ եպ՛՛ արքայեղբայր ստացող սորա եւ կիսոյն գրոց, յիշել ի մեծի յուսափայլ տաւնիս գիս եւ զծնաւղսն իմ եւ զեղբարսն եւ զքոյրսն համայն նոցին ծննդաւք եւ զարմիւք... եւս եւ զ՚ի մեզ աշխատողսն կրկին...»* (*Թղ.* 348*բ*):

դ. *Այլ գրով, նորագոյն յամի* 1590. *«Փառք... աւարտեցաւ... գրեալ սուրբ ձեռամբ Ոհաննէս եպիսկոպոսի ի Թագաւորութեանն Հայոց Հեթմո, ի սուրբ ուխտն Ակներ կոչեցեալ, ուր, յոլով ամաւք նախ, նոցին միաբան էր գրեալ եւ յոլով արդիւնք անդ արարեալ, ի Թուականին Հայոց ՉԼԶ* (1287) *ի մարտի ամսոյ ի ԺԳ. ի սուրբ քառասնորդացն պահս. որոց Տէր Աստուած ողորմեսցի»* (*Թղ.* 349*ա*). *Հանուած առանց տարակուսի ձեռագրին բուն յիշատակարանէն, որ կը պակսի այժմ*:

*Էջմիածին, Թ.* 197 (*Մագաղաթեայ Աւետարան, նկարազարդ*): *Անկէ Միսուան, էջ* 535*ա*:

7. Թէոփիլոսի Ներսիսեանին վերջը, որ գրած է Գրիգոր Լուսաւորչի վրայ. «Զոր եւ մինչեւ ցայժմ ճրագս այս Թաքուցեալ էր ընդ մահճաւք եւ ծածկեալ էր ընդ գրուանաւ։ Իսկ ի հրամանէն Աստուծոյ յայտնեցաւ սա ի սուրբ վանս յԱրքայկաղնիս. իսկ իմոյ անարժանիս յոգնամեղ եւ անպիտան կրաւնաւորիս Պաւղոսի ըղձալի փափագանաւք գրեալ եղի ի հոյակապ մայրաքաղաքացեալ սուրբ անապատս Արքայկաղնիս, ի յիշատակ մեղաւոր հոգւոյ իմոյ եւ ծնաւղաց իմոց։ Իսկ համբաւ սորա իբրեւ պսակազարդ Թագաւորի՝ հասեալ ի յերկնանման սուրբ եւ աստուածաբնակ անապատն ի յԱկներն, առ լուսազգեստ սուրբ եւ երջանիկ հայրն Ստեփանոս. եւ նորա առաքեալ որակս եւ հրամայեաց գրել եւ աւանդել զսա ի դրունս սուրբ տաճարին Աստուածամաւրն ի պայծառութիւն տաւնի մեր Լուսաւորչին եւ յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց եւ իմոյ ամենամեղի։ Եւ ես յատ իմում կարի գրեցի եւ առաքեցի։ Եւ աղերսալի պաղատանաւք աղաչեմ, ով սրովբէանման զաւք լուսերամից, յիշեսջիք աղաւթիւք զաստուածապատուեալ հայրն զՍտեփանոս, զառաջնորդ սուրբ ուխտիս Ականց անապատիս եւ զծնաւղսն իւր եւ զիմաստուն երաժիշտն զՄանուէլ, որ ուսով իւրով բերաւղ եղեւ ճառիս ի վանս։ Եւ զաշխատաւղ գրիչս զՊաւղոս եւ զծնաւղսն մեր եւ զամենայն ի Քրիստոս հաւատացեալս. եւ Քրիստոս առ հասարակ յիշաւղացդ եւ յիշելեացս

ողորմեսցի: Եւ նմա փառք յաւիտեանս. ամէն» (Թղ. 83ա):

Երուսաղէմ, Թ. 89 (Արտաւազդ Արքեպ., Ցուցակ Հայ. Ձեռագրաց Երուսաղէմի): Հրտ. Հ. Գ. Զարբանալեան, Մատենադարան, էջ 472:

Բ. Ի վերջ Պատմութեան Վարուց Ներսիսի Շնորհալւոյ (Թղ. 159բ). «Իսկ ի Թուականութեանս Հայոց ՉԻԲ (1273), զկնի ՃԱ ամի վերափոխման սրբոյ հայրապետին Ներսիսի, ի հրամանէ հաւր Ստեփանոսէ աստուածազարդ ծերոյ եւ սպասաւորէ սուրբ ուխտիս Ականց անապատիս չարագրեցաւ[31] Պատմութիւն սուրբ հայրապետին Ներսիսի եւ իւրոց նախնեացն ճշմարտաճառ եւ անսուտ պատմութեամբ, ի ժամանակս քրիստոսապսակեալ բարեպաշտ Թագաւորին Հայոց Լեւոնի որդւոյ Թագաւորին Հեթմոյ, յաշխարհիս Կիլիկեցւոց: Արդ վայելողք սրբոցս արանցս պատմութեան յիշեսջիք սիրով ի Քրիստոս զվերոյնչանակեալ պատուական հայրն Ստեփանոս եւ զամենայն եղբայրութիւն սուրբ ուխտիս զմեծ եւ զփոքր, զքա-

[31] Երուսաղէմի Թ. 146 եւ Զմմառի Թ. 40 հ. ունի «իսկ ի Թուականութեանս Հայոց ՈՂԹ (1240), զկնի եւթանասուն եւ եւթն ամի վերափոխման սրբոյ հայրապետին Ներսէսի, ի հրամանէ եւ ի յորդորմանէ սուրբ վարդապետին Յովհաննու ես Գրիգորիս գրիչ ծառայ ծառայիցն Քրիստոսի չարագրեցի... բարեպաշտ Թագաւորին Հեթմոյ յաշխարհիս Կիլիկեցւոց...»: Նոյնը հրտ. Սոփերք Հայկականք, ԺԳ (1854), 83, որ չունի ընդգծուած տողերը:

հանայ եւ զկրաւնաւոր…: Յիշեսցէ Քրիստոս Աստուած եւ զՎարդան փակակալ սուրբ տաճարիս: Դարձեալ… յիշեսջիք զիս զանարժանս Ղազար… եւ զեղբայրն իմ զԱւետիքն… եւ զկոկող նիւթիս զպատուական քահանայն Քերովբէ…: — Ով մանգունք եկեղեցւոյ… զՄանուէլ յիշեսջիք, զի սակաւ մի եւ մեք աշխատեցաք ի կազմած գրոցս․․» (Թղ․ 160ա):

Երուսաղէմ, Թ․ 89, Թղ․ 159բ (Հաւաքածոյք): Նոյնը նաեւ Թ․ 32: Քաղուածաբար՝ Միութիւն հանդէս Հաշտենից․ 1 (1860), Թ․ 6, էջ 42: Նոյնը Զմմառի Թ․ 296, Թղ․ 62ա․ ասկէ հրտ․ Կիւլէսէրեան, Պատմութիւն կաթողիկոսաց Սսոյ, էջ 310—311:

8․ Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութեան եւ Յաղագս քահանայութեան ճառին վերջը․

«Արդ ես նուաստս յամենայնի Ստեփանոս հայր Ականց անպիտանս, ետու գրել զՊատմութիւն տեառն Միխայէլի պատրիարքի Ասորւոց… եւ զՊատմութիւն Տաթարին, այսինքն ազգին Նետողաց ԽԴ․ ամաց գործելոց մինչեւ առ մեզ…:

«Արդ ես եղկելի գրիչս Գրիգոր աղաչեմ զպատահեալսդ ի սմա, յորժամ ընթեռնոյք զարարածապատում պատմութիւնս, ասացէք Տէր Աստուած ողորմեսցի հօր Ստեփաննոսի առաջնորդի սուրբ ուխտին Ակներոյս եւ ամենայն ննջեցելոց իւրոց․ ողորմեսցի Քրիստոս Աստուած փակակալ Վարդանայ եւ ծնո-

ղաց խորոց. Տէր Աստուած ողորմեսցի ամենայն գործաւորաց եւ սպասաւորաց սրբոյ ուխտիս, առաջնոցն եւ միջնոցս, այլ եւ վերջնոցն որ գալոց են զկնի մեր. ողորմեսցի Քրիստոս Աստուած Կոստանդ եւ Սիոն քահանայիցն եւ համաշունչ եղբարցն, որ զթուղաս կոկեցին: Եւ ի վերայ այսր ամենայնի յիշեցէք յողորմութիւնն Աստուծոյ զտառապեալ գրիչս, զի բազում աշխատանօք եւ տկար մարմնով գրեցի...: Յիշեցէք ի Քրիստոս եւ զպատուական քահանայս զՅովհաննէս, որ զվերջին տետրս գրեաց, զի մեք էաք յոյժ տկար եւ անխել: Յիշեցէք եւ զտէր Թադէոս զհայր Աւագ անապատին, որ զօրինակս շնորհեաց: Եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն»:

Երուսաղէմ, Թ. 89: Հրտ. Ժամանակագրութիւն տեառն Միխայէլի Ասորւոց պատրիարքի. Երուսաղէմ, 1871, էջ 45 (ի վերջ Յղ. Քահանայութեան ճառին):

բ. Թաթարաց Պատմութեան վերջը.

«Յամի եւթն հարիւրերորդի քսաներորդի <երկրորդի> թուականութեանս Հայոց (1273) գրեցաւ աշխարհապատում տառս այս հրամանաւ սուրբ եւ փառաւորեալ հօր Ստեփաննոսի Ականց անապատիս, այլ եւ կամակցութեամբ փակակալի սուրբ անապատիս Վարդանայ եւ ամենայն եղբայրութեանս՝ քահանայից եւ կրօնաւորաց, ձեռամբ տառապեալ գծչի Գրիգորոյ սպասաւորի բանին: Արդ աղաչեմք զպատահեալսդ ի սմա, որ ոք

*ընթեռնույք զաշխարհապատում տառս զայս, յիշեցէք ի Քրիստոս զհայրն Ստեփաննոս եւ զծնողսն իւր. ընդ նմին եւ զամենայն եղբայրութիւնս սորա անապատիս, զքահանայքս եւ զկրօնաւորքս եւ զմեղուցեալ գրիչս. զի դուք որ յիշէք զմեզ, յիշեսցէ եւ զձեզ Քրիստոս Աստուած յողորմութիւն իւր. ամէն»:*

*Յիշատակարանս հրատարակուած է Թաթարաց պատմութեան վերջը, Երուսաղէմ,* 1870, *էջ* 71:

9ա. *Վահրամ վարդապետի ճառն «Յաղագս սրբոյ Երրորդութեան», օրինակուած* 1285*ին, ունի վերջաւորութեան յիշատակագրութիւնս. «Այլ եւ ստացողի սորա տեառն Ստեփաննոսի արքեպիսկոպոսի մայրաքաղաքին Տարսոնի: Թվին ՉԼԴ: ԶԳրիգոր մեղսաբեր անձն ապաաւոր բանի, որ բազում տառապանօք եւ տկար անձամբ գծագրեցի զբանս աստուածաբանականս, յիշեսջիք յաղօթս հանդերձ ծնողօք եւ վարդապետօք»:*

*Այսպէս Վիեննայի Թ.* 77 *ձեռագրին (ԺԸ.—ԺԹ. դարէ) նախագաղափար օրինակին մէջ (Տաշեան, Ցուցակ, էջ* 331*): Թէեւ չէ յիշուած Ակների վանքը, բայց գրիչն Գրիգոր առանց տարակուսի նոյն է նախորդ (Թ.* 8*ա եւ բ) յիշատակարաններու գրչին հետ:*

9բ. *«Յամի* 1293 *գրեալ է ուրեք այս հակիրճ յիշատակարան. Զսուրբ գիրս այս՝ զՍաղմոսաց Մեկնիչս Յոհաննէս Ծլուղ վարդապետ ի յիւր մահուն օրն՝ պարգեւել էր*

Ակներոյ վանացս, իւր հոգոյն յիշատակ: Քրիստոս Աստուած հանգուսցէ զիւր հոգին»:

Սխտուան, էջ 154բ:

10ա. «Փառք...: Ի թագաւորութեանն Հայոց Աւշնի եւ ի հայրապետութեան տեառն Կոստանդ. եւ ի թուականութեանս Հայոց ՉԿԱ (1312), գրեցաւ գիրս այս, որ կոչի Ճաշակնոց, ձեռամբ Ներսիսի բազմամեղի, ի խնդրոյ կուսակրաւն քահանայի Թորոսի: Արդ աղաչեմ զձեզ, որ հանդիպիք եւ տեսանէք զգիրս զայս, խոշորութեան եւ սղալանացս անմեղադիր լերուք եւ գրողի սորա մեղաց թողութիւն խնդրեցէք եւ եղբարց իմոց Յովանէսի եւ Թորոսի եւ ծնողաց իմոց, ընդ նմին եւ Թորոսի քահանայի ստացողի սորա, որ ետ գրել զսա ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց. Տէր Յիսուս ողորմեա Գրիգորի քահանայի, որ այժմ հայր է Ականց անապատին, որ սկիզբն արար գրոցս եւ գրեաց մինչեւ յՍրբոտմանցն չարականն» (Թղ. 349բ):

բ. «Ո եղբարք, աղաչեմ յիշել զեղկելի գրիչս Գրիգոր զպիր, որ զգիրս խաղեցի եւ զարդարեցի ոսկով եւ ծաղկիւ...»:

գ. «Զմեղաւք դատապարտեալ կազմող սորա զՅակոբ երէց Մեծպրենց եւ զծնաւղսն իմ եւ զազգայինս աղաչեմ յիշելի Տէր»:

Լոնդոն, British Museum, Թ. 46 (Conybeare, Catalogue, p. 95):

10բ. Ձեռագրիս կազմողն Յակոբ երէց Մեծպարոնենց (ա՛յսպէս կարդա՛) կը յիշուի նաեւ Սեբաստիոյ 1309ին գրուած Աւետարա–

*նին մէջ, որուն գրիչն է Ստեփանոս սարկաւագ, իսկ գրութեան տեղը անծանօթ. էջ* 533, *Յովհաննու Աւետարանին վերջը կը յիշատակագրուի. «Փառք փրկչին եւ յիշատակ մեղաւորիս Ստեփաննոսի սարկաւվարգոյ: — Ո՛հ գնուաստ կազմաւղ աստուածախաւս մատենիս զՅակոբ Մեծպարոնենց* (*տպ. մեծպարոնեայ*) *աղաչեմ յիշել ի Տէր Յիսուս... ի Թվ. ՉԾԸ* (1309) *կազմեցաւ սայ ընդ հովանեաւ Տղայ սուրբ Գորգոյ»* (*Թորգոմ Եպ. Գուշակեան, Ցուցակ, Հանդ. Ամս.* 1924, *էջ* 518—519):

10գ. *Երուսաղէմի Թ.* 1331, *Փիլոն Երրայեցւոյ գործերը օրինակած է Ներսէս գրիչ ի պէտս Վարդանայ բանի սպասաւորի: Գրչութեան տեղն եւ տարին անծանօթ է: Հաւանօրէն Ակներ գրուած:*

11ա. *«Կատարեցաւ Կցուրդք ասացուածք Եփրեմի երանելոյ ձեռամբ անարհեստ գրողի Գրիգորի սպասաւորի Ակներոյ վանիցս, ի Թվ. ՉԿԲ* (1313): *Ի սոյն ամի սկիզբն արարաք շինման բերդին որ ի Քարտիզկնոցն»* (*Թղ.* 74*բ*):

բ. *«Բժշկեա, Տէր, աստուածային սպեղանաւք քո զխըխայթեալ վէրս հոգւոյ գրողկան սուրբ մատենիս՝ Գրիգորի սպասաւորի սուրբ անապատիս Ակներոյ...»* (*Թղ.* 242*ա*, *սխալ զետեղուած*): — *ԽԲ. Կցուրդին վերջը. «Անկիրթ վերակացուիս սրբոյ անապատիս ողորմեա Տէր իմ Յիսուս»: Գրիգորի գրչէն են Թղ.* 1*ա*—98*բ*:

գ. «Զստացաւղ գրոյս զերջանիկ հայրն իմ ըստ հոգոյ զԳրիգ(որ) քահանայ եւ զանարժան գրիչս զՅոհաննէս յիշեսջիք» (Թղ. 128ա):

դ. «Այնմ ընակութեան արժանի արասցէ Քրիստոս Աստուած զստացաւղ գրոցս զԳրիգոր, զառաջնորդ անապատիս» (Թղ. 181ա):

ե. «Ցաւուր Նընջման սրբոյն Գրիգորի, սեպտե" Լ. մի ումն մանկագոյն քահանայ վաղճանեցաւ, որոյ ողորմեսցի Քրիստոս: Կոստ": Կապ" (Թղ. 142բ—143ա լուսանցքին):

Էջմիածին, Թ. 821 (Ժողովածոյք ճառերու): Ասկէ Վիեննայի Թ. 257. Հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ 661. եւ Զարբանալեան, Մատենադարան, էջ 466 (մասամբ):

11բ. «Փառք...: Շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբ Նորին աւարտեցաւ... Աւետարանս... ձեռամբ յոգնամեղ գրչի Ներսէս Կլայցո մեղաւորի ի վայելումն անձին իւրոյ...: Արդ գրեցաւ սա ի յանապատս որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս եւ սուրբ Յակոբայ... ի թագաւորութեան Աւշնի բարեպաշտի եւ ի հայրապետութեան Տեառն Կոստանդեայ Կեսար(ա)ց(ւոյ), ի թուիս ՉԿԲ (1313)»:

Նոր Ջուղայ, Աւետարան Ս. Գրիգոր եւ Ս. Գէորգ Եկեղեցւոյ (Տէր-Աւետիսեան, Ցուցակ, Թ. 40):

11գ. Հայոց ՉԿԳ (1314) թուին. «Ես Պաւղոս վարդապետ աշխարհաւ Կիլիկեցի, ի սուրբ ուխտէն Ակներ կոչեցեալ, ըստ տա—

տանման մտաց արդարեւ հոգմով մանկութեան իմոյ, նաեւ յաղագս փափագման իմաստասիրական արհեստից տարաշխարհիկ եղեալ... բնակեցայ ի կողմն նահանգիս Սիւնեաց, ի գաւառս Վայոց ձոր կոչեցեալ, ի վանս Գլաձոր, առ ոտս» Եսայի վարդապետին: Հոս կ'օրինակէ Աւետարան մը Սիւնեաց Ստեփանոս Տարսայիճ արքեպիսկոպոսի համար:

Յ. Թօփճեան, Ցուցակ Դաղեան Խաչիկ վարդապետի, Բ., էջ 29—30, ամբողջութեամբ Գ. Վ. Յովսէփեան, Христ. Востокъ 2 (1913) 246—252:

12. «Փառք...: Ես Յոհաննէս... մեծաւ աշխատութեամբ... ի լաւ աւրինակէ զգիրս զայս գծեալ... ի խնդրոյ... նորընծայ քահանայի Մարտիրոսի ի յիշատակ իւր...: Ընդ նմին եւ զեպիսկոպոսս մեր եւ զքաղցրաչունչ վարժապետս զտէր Վարդան, որ յոյժ մեզ ցաւակից եղեւ խրատու եւ խնամածութեամբ» յիշեցէք:

«Գրեցաւ գիրքս այս ի թուականութիւնս Հայոց ՉԿԴ (1315), ի հայրապետութեանն տեառն Կոստանդեա եւ ի թագաւորութեանն Հայոց Աւշնի, որոյ տացէ Տէր Աստուած յաղթութիւն ի վերա թշնամեաց իւրոց եւ յերկարութիւն ժամանակաց ուղղափառ դաւանութեամբ: Ի գաւառիս Ցախուտ կոչեցեալ, ի հռչակաւոր մենաստանիս Ակներոյ վանք, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին եւ այլ նշխարացն եւ նահատակացն որ աստ կան

*հաւաքեալ, ձեռամբ մեղապարտ եւ փցուն գրչի Յոհ״: Արդ աղաչեմ... զՄարտիրոս նորընծա քահանայ... եւ ըստ հոգոյ եղբայրսն իւր զՊետրոս սարկաւագ եւ զԹորոս միայնակեց... յիշման արժանի արասջիք: Ընդ նոսին եւ զմխեղէն եղբայրութիւնս՝ զԳրիգոր զառաջնորդ սուրբ ուխտիս եւ զԳրիգոր փակակալն եւ զայլս՝ զքահանայսն եւ զկրաւնաւորսն...: — Զծաղկող սորա զԳրիգոր նորընծա քահանայ յիշեսջիք ի Տէր»:*

*Երուսաղէմ, Թ.* 2311 (*Մասն Նոր Կտակարանի եւ ճաշոց գիրք*). *Ցուցակ Արտաւազդ Արքեպիսկոպոսի*:

13ա. *Առակք Սողոմոնի եւ Գիրք Յոբայ եւ ճառք Գր. Նիւսացւոյ. «Գրեալ ի հռչակաւոր անապատին որ կոչի Ակներ, ի բազմավրդով ժամանակիս, ի հայրապետութեան Կոստանդեայ եւ ի թագաւորութեան Լեւոնի պատանեկի, զոր նշկահեալ... եւ ապատակ արարեալ ընդ ամենայն երկիրս. եւ պանծալի քաղաքն աւարի առեալ զծովահայեացն զԵգեայն, որ է Այաս եւ զքրիստոնեայսն զամենեսեան... Թիւ ՉՀԱ* (1322). *ձեռամբ եսաթչուառ գրողիս Մինասայ, որոյ խորտակեալ է հոգւոյ ոսկերքս»*:

*Թորոս Աղբար. Բ., էջ* 389 (*կիսագրուած տեղերը կ'երեւայ, թէ գրաքննիչէն ջնջուած են*): *Ակկէ Սիսուան, էջ* 535*ա*:

13բ. *«Փառք...: Որում փափագմամբ սիրով եւ ջերմն հաւատով սրբանունդ եւ կուսակրաւն քահանայ Յոհաննէս ցանկայր ստա-*

նալ զսուրբ եւ զաստուածային զանձս անկողոպտելի ի բարգաւաճանս եւ ի մխիթարութիւն անձին իւրոյ: Իսկ մեր տեսեալ զբարի յաւժարութիւն կամաց նորին, կամեցաք եւ մեք վասն սիրոյն Քրիստոսի, տալ նմա գրով զսուրբ աւետարանս, որպէս զի յընթեռնուլն զսա թողութիւն մեղաց հայցեսցէ ի նոյն ինքն ի Քրիստոսէ մեզ եւ ծնողաց մերոց: Յաղագս որոյ զանկարութիւն մարմնոյ մոռացաք եւ մեծաւ աշխատութեամբ գրեցաք զսա կարողութեամբ եւ շնորհին Աստուծոյ, նաեւ ձեռնտուութեամբ նորին Յոհաննիսի, որում Քրիստոս Աստուած վայելել տացէ զսա հոգով եւ մարմնով ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց: Արդ աղաչեմ զընթերցողքս սուրբ տառիս անմեղադիր լինել խոշորութեան եւ սղալանաց գրիս, վասն զի կար մեր այսչափ էր, այլ եւ ողորմութիւն հայցեցէք յողորմածէն Աստուծոյ, որք պատահէք եւ կամ աւրինակէք նախ Յոհ. քահ. եւ ծնողաց նորին, եւ ինձ մեղաւորիս Վարդանա նուաստ եւ տրուպ վարդապետի, որ զգիրս գրեցի եւ ծնողաց մերոց, եւ յիշողք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեան. ամէն: Գրեցաւ սուրբ աւետարանս ի լաւ եւ ի յընտիր աւրինակէ ի գերահռչակ անապատիս որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ աստուածընկալ նշանացն եւ այլ բազմահոյլ նշխարաց սրբոց եւ երջանիկ միեղէն եղբայրութեանս, որք սիրով ընկալան մեզ եւ

ուժանդակ եղեն գործանութեանս, որոց վարձատրեսցէ նոցա Տէր. եւս առաւել հեզահոգի եւ յոյժ քաղեմիտ ճգնազգեաց կրօնաւորն Հայրապետ մանկանն ձեռնտու եղեւ գրութեան սորա, որոյ Քրիստոս իւր լիցի ձեռնտու: Ով սուրբ եղբարք յիշեսջիք եւ զհարազատ եղբայրն իմ զԲարսեղ եւ զբարի դրացինն մեր զՄխիթար. եւ Աստուած զձեզ յիւր բարին յիշէ: Եղեւ գրութիւն սորա ի թուին Հայոց. ՉՀԲ (1323): Յայսմ ամի էջ խանն Խազան բազում եւ անթիւ զաւրաւք յաշխարհն որ կոչի Շամբ, զի սոքաւք հատուցէ Աստուած զչար(ի)ս Իսմայելացոցն ի գլուխ իւրեանց առնուլ զվրէժ սրբութեան իւրոյ: Ո՛վ եղբայր եւ սիրելի մեր Յոհաննէս, ընկալ սիրով զաշխատութիւնս մեր եւ աղաւթս արա վասն մեր եւ անմեղադիր լեր խոշորութեան եւ սղալանաց, զի ծածկագէտն եւ շնորհաբաշխն գիտէ որ այս էր կարողութիւն մեր որում փառք» եւն (թղ. 318բ—320բ):

Վիեննա, Թ. 342 (Աւետարան). Տաշեան, Ցուցակ, էջ 789—790:

14. «Փառք...: Կատարեցաւ Աւետարանս ի հոյակապ եւ յականաւոր մենաստանիս որ մակագրեալ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս եւ կենակիր սուրբ Նշանացս եւ մասանց տէրունականաց եւ նշխարաց սրբոց. ի հայրապետութեան տեառն Կոստանդեա եւ ի թագաւորութեանն Լեւոնի տղային, զորս պահեսցէ Տէր Աս-

տուած խաղաղութեամբ...: Յիշեսջիք եւ զքուերորդին մեր զՆերսէս քահանայ եւ զԹորոս քահանայ եւ զՅովհաննէս, որ յուղղելն աշխատեցան: Յիշեսջիք, աղաչեմ, եւ զթշուառ գրողս Վարդան, որ ի յոյժ երկայն աւուրս գրեցի զսա տառապանաւք ցաւոց, որ խորտակեալ է հոգւոյս ոսկերք վասն զե՛խ եւ անառակ գընացիցս: Գրեցաւ ի Թվ. ՉՀԳ (1324) ի փառս Քրիստոսի...»:

Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 93 (Աւետարան):

15. «Փառք...: Աւարտեցաւ Մեկնութիւն Թղթոյն Կողոսացւոց, զոր արարեալ է երանելի սուրբ հայրապետն Յոհան Ոսկեբերան տիեզերաց վարդապետն ի վարժումն մանկանց եկեղեցւոյ եւ ի փառս Աստուծոյ, ի թուին Հայոց ՉՀԴ (1325) ի թագաւորութեան բարեպաշտին Լեւոնի եւ ի հայրապետութեան տեառն Կոստանդեա ի վանս գերահռչակ որ կոչի <Ակներ, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնի եւ սրբոց> Առաքելոցն եւ այլ բազմահոյլ վկայիցն: Արդ աղաչեմ զամենեսեան... յիշեսջիք յաղաւթս ձեր սուրբ ուխտիս Ակներոյ զծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան եւ զՍտեփաննոս հայրն եւ զամենայն զեղբայրութիւնս, որոց ողորմեսցի տէր Քրիստոս: Երեսս անկեալ աղաչեմ զի եւ զմեզ անտես չառնիցէք, այլ եւ զմեզ յիշեսջիք յաղաւթս ձեր զանպիտանս Գրիգոր գրիչ եւ զհայրն իմ զՎահրամ եւ զմայրն իմ եւ զչորեսին եղբարսն իմ զՍտեփաննոս քա-

հանայ եւ զԱնդրէաս կրաւնաւորն եւ զՄարգիսն եւ զԹորոսն զյառաջացեալսն առ Քրիստոս. յիշեսջիք եւ զքեռին իմ զՍիմէոն երէց եւ զորդին իւր զԿոստանդ քահանայ եւ զամենայն ազգայինս իմ»:

Նոր Ջուղայ, Թ. 199 Ամենափրկչի (Յովհ. Ոսկերեանի Մեկնութիւն Կողոսացւոց Թղթոյն). Յիշատակագրութիւնս արտագրած է հին ընագրէն ձեռագրին Նորոգողը: Նոյնը Վենետիկ, Թ. 238 (Սարգիսեան, Ցուցակ Հայ. Ձեռագրաց Մխիթ. Մատենադարանին, Բ., էջ 572): Հմմտ. Նաեւ Սիսուան, էջ 155ա:

Կը յիշուի ԺԴ. դարուն գրուած ճաշոցի մը մէջ «տէր Սարգիս որդի Վահրամայ». Ձեռագրին ոչ գրչութեան տարին ծանօթ է եւ ոչ ալ տեղը: Կ'ըսուի. «Տէր Աստուած... ողորմեա տէր Սարքսի եւ Վահրամայ հաւր նորա, եւ ստացողի սորայ Սերովբէի եւ եղկեյր ծրողին Յովասափին եւ ծնողաց նորա Գեղերին եւ Մարտայ. Եւս առաւել Սէրովբէին սուրբ քահանային եւ աւագ եղբաւր նորա Շահկայ եւ միւս եղբաւրն փոխեցելոյ ի Քրիստոս եւ ընտրելոյն Յակովբոսի ստացողաց սորա. ամէն» (Տիւբինգէն, Համալսարանի Մատ. Հայ. ձեռագրաց Թ. 21, Թղ. 58ա):

16. «Փառք...: Գրեցաւ ի Թուին Հայոց ՉՀԴ (1325) ի Թագաւորութեանն բարեպաշտ եւ քրիստոսապսակ Թագաւորին Լեւոնի, որդւոյ Աւշնի, եւ ի հայրապետութեան տեառն

Կոստանդեա ի վանս գերահռչակ որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Յակովբայ եւ այլ բազմահոյլ վկայիցն. ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս հաւր Ստեփանոսի եւ փակակալի սուրբ տաճարիս Ստեփաննոսի: Արդ աղաչեմ զամենեսեան որք աւգտիք ի հոգեւոր բանիցս... յիշեսջիք... զբնակիչք սուրբ ուխտիս զծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան եւ զՍտեփաննոս հայրն եւ զՍտեփաննոս եկեղեցւոյնն եւ զայլ համաւրէն միաբան եղբայրութիւնս...:

«Արդ աղաչեմ յիշել եւ զբազմամեղ եւ զանարժան գրիչս զստացող գրոցս զԳրիգոր զանպիտան քահանայ եւ զհայրն իմ զՎահրամ եւ զմայրն իմ եւ զչորեսին եղբարսն իմ զՍտեփաննոս քահանայ եւ զԱնդրէաս կրաւնաւորն եւ զՍարգիսն եւ զԹորոսն, զառաջացեալսն առ Քրիստոս...: Յիշեսջիք եւ զքոյրն իմ որդաւք իւրովք եւ զհոգեւոր հայրն իմ զԿոստանդին զաւակաւք իւրովք: Աղաչեմ յիշել ի Տէր եւ զքեռորդին իմ զԿոստ՛ քահանայ եւ զհայրն իւր զՍիմեոն երէց եւ զմայրն իւր եւ զքորսն եւ զամուսինն իւր եւ զաստուածատուր որդին իւր զՊետրոսն եւ զդստերսն...: Յիշեսջիք ի Տէր եւ զեղբաւր որդիսն իմ...:

«Ողորմեսցի Քրիստոս Աստուած կուսակրաւն քահանայիցն Գրիգորի եւ Սէրովբէին, որք յղորդեյն աշխատեցան...: Ողորմեսցի

*Քրիստոս Բարսեղ քահանային եւ ծնաւղացն խորոց, որ զգիրքս կազմեաց, եւ Կարապետին, որ ծաղկեաց. եւ խոշորութեան գրոյս եւ սղալանացս որ ի սմա անմեղադիր լերուք»* (*Թղ.* 367*բ*—369*ա*):

Բ. *Թղ.* 297*բ.* «*Արդ... մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ ստացողի եւ գրողի գրոցս բազմամեղիս Գրիգորի... Նաեւ ամենայն միաբան եղբարցս Ականց անապատիս...*»: *Նոյնիմաստ յիշատակագրութիւն մը նաեւ Թղ.* 179*ա*:

*Էջմիածին, Թ.* 1414 (*Յովհ. Ոսկեբերանի Մեկնութիւն Ա. եւ Բ. Թղթոցն Տիմոթէոսի եւ Թղթոյն Տիտոսի*): *Ասկէ Սիսուան,* 535*ա*:

16բ. *Գրիգոր Նարեկացւոյ Աղօթամատոյց մը գրուած է* 1326*ին ի ձեռն Սերովբէ գրչի որդւոյ Ներսէսի Ցախուտ գաւառի* «*ի հռչակաւոր անապատիս Ակներ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Տիրամօրն եւ սրբոյն Յակովբայ եւ այլ ամենայն Սրբոց*»:

*Սիսուան, էջ* 153:

17. «*Փառք...: Գրեցաւ սա ի Կիլիկեցւոց աշխարհն ի լեռնային կողմանս, յաստուածարնակ եւ ի հռչակաւոր ուխտս Ակներ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ այլ սրբոցս. ի յոյժ ազնիւ աւրինակէ, զոր է ուղղեալ մեծիմաստ եւ սուրբ վարդապետն Գէորգ Լամբրունեցի, ձեռամբ ամենաթշուառի Կարապետի...: Գրեցաւ սա ի թուին Հայոց ՉՀԸ* (1329). *ի հայրապետու-*

թեան տեառն Յակովբայ եւ ի թագաւորութեան Հայոց Լեւոնի որդւոյ Աւշնի։ Արդ... յիշեսջիք... զհօրեղբայրն իմ զՎարդան քահանայ եւ զմօրեղբայրն իմ զԿարապետ զուսուցիչն իմ...։ Աղաչեմ յիշել ի Տէր զարբեամբ նահատակեալ քահանայ զՎարդան, որ զաւրինակս էր գրե(ա)լ։ Յիշեսջիք ի Տէր եւ զԹորոս քահանայ, որ յուղղելն եւ ի հետեւելն աշխատեցաւ...։ Աղաչեմ յիշել զժանտատես գրող սորա եւ զկազմաւղ զԿարապետ...։ Յիշեսջիք ի Տէր եւ զՍարգիս քահանայ եւ զծնաւղ իւր, որ զգիրքս ծաղկազարդեաց...»։

Նոր Ջուղայ, Ս․ Գրիգոր եւ Ս․ Գէորգ եկեղեցւոյ Աւետարան (Տէր-Աւետիսեան, Ցուցակ, Թ․ 42)։

18․ Յովհաննէս Ոսկեբերանի Մեկնութիւն Մատթէի․ «Գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՉՀԸ (1329)․ ի թագաւորութեանն Լեւոնի աստուածասիրի որդւոյ Աւշնի եւ ի կաթողիկոսութեանն տեառն Յակովբայ, ընդ հովանեաւ քաջայաղթ վկայարանիս, որ կոչի Զորոյն սուրբ Թորոս․ ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ աւրհնելոյն յաւիտեանս․ ամէն։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած Կարապետ քահանայի եւ ծնողաց իւրոց, որ զծայրս ճառիցս ծաղկազարդեաց» (լուսատիպ՝ Սիսուան, 156)։

Գրիչն է Գրիգոր, որ կը մաղթէ յիշել «զմիաբան եղբայրութիւն հրեշտակարնակ ուխտին Ակներոյ զհոգեւոր հարքն մեր՝ զծե-

բունի սուրբ վարդապետն պաէր Վարդան եւ զպատուելի քահանայն զՍտեփաննոս փակակայն եւ զԳրիգորն եւ զԿոստանդին հեզահոգին եւ զԹորոս ժառանկն, որ ի վերայ ամենայն երախտեացն, զոր արարեալ էին մեզ, յաւելին եւ զայս, եւ լցին զփափագ սրտի իմոյ, եւ շնորհեցին զօրինակն, որ գրեցի զսա...: Եւ յիշման արժանին զսուրբ քահանայն՝ զարեամբ նահատակն զՎարդան, որ բազում տառապանօք էր գրեալ զօրինակս, երկս օրինակս ունելով, եւ մեզ դիւր ճանապարհ էր կազմեալ»: Կը յիշէ նաեւ ուրիշ շատերը, այսպէս Յովհաննէս քահանայ եւ անոր եղբայրն «Մարտիրոս սարկաւագ, որ զԹուղթս կոկեաց», հոգեւոր հայրերն՝ Գրիգոր միակեց եւ եղբայրն՝ Մարտիրոս, որոնք եղբօրորդիքն են Սամուէլ քահանայի արեամբ նահատակելոյ, «զորոց, կ՚ըսէ, ի մանկութենէ գոհ էի, եւս առաւել այժմ, զի զաունս եռուն, որ հանգեայ ի գրելս, եւ յորդորող էին միշտ». այսպէս նաեւ Ստեփաննոս քահանայ եւ Վասիլ մառնպան. «զի եւ նա մեզ էր ողորմած». եւ քահանայքն Մարտիրոս, «որ զգիրքս կազմեաց», Կարապետ, Յովաննէս, Յոհաննէս միւս, Դաւիթ, Մինաս, Պետրոս, Պօղոս եւ Սեղովբէ:

Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 155:

19ա. «Փառք...: Գրեցաւ սա ի Կիլիկեցւոց աշխարհի ի լեռնային կողմանս, ընդ

Հովանեաւ վկայարանիս որ կոչի Զորոյն սուրբ Թորոս ի   ազնիւ աւրինակէ, ձեռամբ ամենաթշուառի Գրիգորի ժանտատես գրով եւ բազմաչփոթ մտաւք...: Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՉՁ (1331) ի հայրապետութեան տեառն Յակոբայ եւ ի թագաւորութեան Հայոց Լեւոնի որդւոյ Աւշնի: Արդ որք պատահիք սուրբ տառիս յիշեսջիք զեղկելի գրողիկս Գրիգոր եւ զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՎահրամ եւ զմայրն եւ զչորեսին եղբարսն իմ զՍտեփաննոս քահանայ եւ զԱնդրէասն եւ զՍարգիսն եւ զԹորոսն եւ զՍիմէոն քահանայ, զքեռին իմ եւ զորդին իւր զԿոստանդին քահանայ եւ զամուսինն իւր եւ զորդիս նոցին: Աղաչեմ յիշել ի Տէր զյիշման արժանին զսուրբ վարդապետն զՏէր Վարդան, որ միշտ խրատտու է մեզ ի բարիս եւ յորդորաւղ   սուրբ տառիս զաւրինակն չնորհեաց, գրեալէ   գիրն   աւրինակին գրաւղն. եւ զԿարապետ քահանայ, որ զիւր Աւետարանն ետ, որ զկանաչ գլխահամարսն գրեցի, եւ զՍտեփաննոս քահանայ, որ յուղղելն ընդ մեզ աշխատեցաւ, յիշեսջիք ի Քրիստոս եւ զՅոհանէս քահանայ, որ զԹուղթս կոկեաց եւ զՍտեփաննոսն որ զհամարաբրառսն գրեաց  :

Կեսարիա,, Ս. Կարապետի վանքի Նոր Մատենադարան, Թ. 16 (Աւետարան, Տրդատ եպ. Պալեան, Ցուցակ, անտիպ):

Այս տեղ կը յիշեմ նաեւ Յիշատակա-

գրութիւնս, ուր «Ս. Թորոսի ուխտը» կը յիշուի, թերեւս նոյն՝ Ձորոյ Ս. Թորոսի հետ: Մխիթար, որ միաբանած է վանքիս, թերեւս նոյն ըլլայ 1323ին (Թ. 13) յիշուած համանուն «բարի դրացւոյն» հետ:

19բ. «Յամի ՉԾ (1301) թուականութեանս Հայոց եկն այր մի աստուածասէր եւ բարեպաշտ Մխիթար անուն եւ միաբանեցաւ սրբոյ ուխտիս Սուրբ Թորոսի եւ սրբոյ նշանիս. յինէ մասնակից աղաւթից եւ պատարագաց եւ եբեր ընծայս յարդար ընչից իւրոց եզինս երկուս»:

Էջմիածին, Գէորգեան Բաժին, Թ. 23, 107ա (Հայաստան, 1851, Թ. 51. Macler, Rapport sur une mission scientifique, p. 39):

20. Յովհաննէս Ոսկեբերանի Մեկնութիւն Յովհաննու. «Ի յրման տասատապութեանս լիակատար գոհութիւն Աստուծոյ...: Զոր տեսեալ զսրբոյ աւետարանին թարգմանութիւնս որ ըստ Յոհաննու՝ բազմամեղ եւ տրուպս Գրիգոր, գրեցի զսա եւ ստացայ ի վայելումն մանկանց նոր Սիոնի եւ ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբարց, յոյժ ցաւած անձամբ հոգեկանաւք եւ մարմնականաւք, ոչ զոք ունելով ձեռնտու ի գրելն, այլ միայն զողորմութիւնն Աստուծոյ եւ զաւգնականութիւն սրբոց իւրոց: Եւ արդ... յիշեսջիք... զմիաբան եղբայրութիւն հրեշտակաբնակ ուխտին Ակներոյ զհոգեւոր հարքն մեր: Եւս

առաւել զծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան եւ զՍտեփանոս փակակալն, որ զաւրինակն շնորհեցին եւ զԹուրքէնն, որ գրեալն էր զաւրինակն, եւ զՎասիլ ճգնաւորն եւ զծնաւղս նոցին եւ զեղբարս...: Յիշեսջիք ի Տէր եւ զայնոսիկ, որ ի գին Թղթոյս եւ հացկանն մերոյ երախտիք ունին, եւ զԱնպէտն եւ զծնաւղսն իւր, զի եւ նա ետ մեզ հաց...: Եւ ի վերջոյ... զժանտամիտ գրաւղս եւ ստացաւղս զԳրիգոր եւ զհայրն իմ զՎահրամ եւ զմայրն եւ զեղբարսն՝ զԱնդրէաս կրաւնաւոր եւ զՍարգիս եւ զԹորոս զյառաջեալսն առ Քրիստոս եւ զմիւս եղբայրն զպատուելի քահանայն զՍտեփանոս եւ զՍիմէոն երէց զքեռի իմ եւ զորդի իւր զԿոստանդին քահանայ եւ զմանկունսն իւր, եւ զՄխիայն եւ զորդիսն իւր եւ զամենայն ազգայինսն մեր...: Գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՉՁԱ (1332), ի թագաւորութեանն Լեւոնի աստուածասիրի, որդւոյ Աւշնի եւ ի կաթողիկոսութեանն տեառն Յակովբա. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Նշանին մերձ յաստուածապահ ամրոցն, որ կոչի Անդրունին բերդ, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ աւրհնելոյն յաւիտեանս. ամէն...: Ողորմեսցի Քրիստոս Աստուած Յովանէս քահանայի, որ աշխատեցաւ ընդ մեզ յղորդել գրոցս աւրինակաւն, եւ կրաւնաւորացն Ճաւֆրունին եւ Պաւղոսին եւ Թո-

բոսին, առ որովք հանգաք ի գրելն...» (Թղ. 418ա):

բ. Թղ. 3ա. Յանուն Աստուծոյ սկսայ մայիս ԻԹ. յիշատակի ՅԺԸ Հայրապետացն Նիկիայ սուրբ ժող(ովոյն). աւգնեա ինձ Տէր Յիսուս:

գ. Թղ. 104բ. Ստեփանոս եւ Առաքել եւ այլ եղբարք «ի գին թղթոցս» օգնական կ՚ըլլան:

դ. 180ա. «Զժուժկալ եւ զփոյթն յաստուածային բանից ընթերցումն եւ զհամբերողն ի խստակրաւն պահս եւ յաղաւթս՝ գերջանիկ ծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան, զյորդորողն մեր ի գրել գրոց աղաչեմ յիշել ի Տէր. եւ զՍտեփանոս փակակալ Ականց վանացն, որ զաւրինակս շնորհեաց, եւ զՄխիթար հայրն եւ զայլ միաբան եղբայրութիւնն, որ կամակից եղեն ի տալն, յիշեսջիք ի Տէր...»:

ե. Թղ. 217բ. «Քրիստոս Աստուած... փրկեա... եւս առաւել զԹորոս Նաւտարն եւ զորդին իւր զԱնդրէան եւ զմայր Նորին եւ զեղկելիս Գրիգոր...»:

զ. Թղ. 379բ. «Ողորմեսցի Քրիստոս Աստուած հոգեւոր եղբարցն մերոց Սարգսին եւ Վասլին եւ Անտոնին...»:

է. Թղ. 422բ. Մինաս քահանայ կընուիրէ վերջին թերթին թուղթը:

Էջմիածին, Թ. 1347:

21. Այս տեղ կը զետեղեմ նաեւ յետագայ յիշատակարանը, ուր թէեւ գրութեան տեղը յանուանէ չէ յիշուած, բայց ըլլալու է Ակներ.

«Փառք...: Գրեցաւ սա ի Կիլիկեցւոց աշխարհ, ի թուականութեանս Հայոց ՉՁԳ (1334) ի Հայրապետութեան տեառն Յակոբայ եւ ի թագաւորութեանս Հայոց Լեւոնի որդւոյ Աւշնի արքայի, <ի հռչակաւոր ուխտս Ակներ կոչեցեալ> ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Նշանիս, ձեռամբ ամենաթշուառ Գրիգորի, ժանտատես գրով եւ բազմաշփոթ մտաւք. ի խնդրոյ հոգեւոր եղբաւր մերում պատուական եւ սրբասնեալ քահանային Պաւղոսի, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ եւ յիշատակ բարի իւր եւ ծնողաց իւրոց եւ եղբարց: Արդ... յիշեսջիք ի Տէր զպատուելի քահանայն Պաւղոս եւ զհայրն իւր զԿարապետ եւ զմայրն իւր եւ զեղբարսն՝ զՄարտինոս եւ զԳէորգ զյառաջեալսն առ Քրիստոս եւ զմիւս եղբայրն զԿոստանդին եւ զքոյրն Ազբրաց եւ զայր նորին զԳրիգոր, եւ զհոգեւոր որդին իւր զՅովանէս եւ զհայր նորին զԱնդէա ուկերիչ զհանգուցեալն ի Քրիստոս եւ զեղբայր իւր զԿոստանդին եւ զամենայն ազգայինս նոցա... ամէն...: Յիշեսջիք ի Տէր զեղկելի գրողիկս զԳրիգոր եւ զհայրն իմ զՎահրամ եւ զչորեսին եղբարսն զՍտեփանոս քահանայ

եւ զԱնդրէասն եւ զՍարգիսն եւ զԹորոսն եւ զամենայն ազգայինս մեր...»:

Վենետիկ, Թ. 164 (Աւետարան, Սարգիսեան, Ցուցակ, Ա., էջ 698):

22. «Փառք...: Յամի եւթնհարիւրորդի ութսներորդի երրորդի (1334) թուական(ի)ս Հայոց տումարի, գրեցաւ սուրբ Աւետարանս այս ձեռամբ եռաթշուառ անձին Սէրովբէի ի խնդրոյ պատուելի քահանայի Վասլի ի վայելումն...: Գրեցաւ սա ի թագաւորութեան Հայոց Լեւոնի եւ ի հայրապետութեան տեառն Յակոբայ ի յԱկանց անապատին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Յակովբայ եւ այլ բազմահաւաք սրբոց...: Նաեւ զեղկելիս զանարժան նուաստ ծառայս զԴաւիթ ծաղկաւղս յիշեսջիք եւ զպատուելի քահանայ զՊաւղոս, եւ զուք յիշեալ լիջիք ի Քրիստոս...»:

Կեսարիա, Թ. 11 (Աւետարան, Տրդատ եպ. Պալեան, Ցուցակ Ս. Կարապետի վանաց Նոր Մատենադարանի. անտիպ):

23. «Եւ արդ եղեւ գրաւ գրչութեան սորա ի թուականութեանս Հայոց ՉՁԴ. (1335). յաստուածարնակ ուխտս Ակներ, ընդ հովանեաւ Տիրամաւր Աստուածածնիս եւ այլ բազմահաւաքեալ սրբոցս, ի հայրապետութեան տեառն Յակովբայ եւ ի թագաւորութեանս Հայոց չորրորդ Լեւոնի» (տողերս նմանահանութեամբ՝ Սիսուան, էջ 155):

Հ. Ղ. Ալիշան յառաջ կը բերէ նաեւ հետեւեալները. «Յառաջ ժամանակաւ եւ գրել

(Գրիգոր) զՔաղաքավարութիւն աստուածաբան աւետարանչին Յովհաննու եւ զՎարս սրբոյ հօրն մերոյ Յոհաննու Ոսկեբերանի, նաեւ զծովահանձար Մեկնութիւն սորա, որ զտասն Թղթոցն սրբոյն Պաւղոսի եւ զաստուածաշունչ Քնարս Դաւթի մարգարէին, Ձեռնադրութեան գրոցն: Իսկ փակակալն Վարդան՛ եւ վերասացեալն Գրիգոր խնդիր արարին յաղագս գրոյս այսորիկ» (այսինքն Կանոնաց ինչ Մաշտոցի Յունաց, զոր եւ ստանայ յիշեալդ Գրիգոր քահանայ եղբօրորդի Անտոնի կուսակրօն միակեցի: Իսկ վասն միւսոյ Գրիգորի ասէ)· «Տերունւոյ քահանայի, հեզի եւ իմաստասիրի, որ հայրօրէնաբար ի մանկական տիոց խնամէ զմեզ աստուածային բանիւ»: (Զմի յերկուց Գրիգորեանցն զարձեալ որոշակի Ակներցի կոչէ, եւ ի խնդրոյ նորին ամօք յառաջ, 1332. թարգմանեալ է ի յունէ զկանոն վերադարձի յուրացութենէ՝ ի ձեռն Կոստանդեայ երիցու, յԱնդրուն գիւղ:)

Այս կանոնին հայող տողերն են. «Թարգմանեցաւ ի յունականէն ի մերս ի ձեռն Կոստանդեա երիցու, յանուանեալ գեղն Անդրուն, ի խնդրոյ Գրիգորի Ակներցոյ, ի թու'' **ՉՁԱ**» (1332) (լուսատիպ՝ Սիսուան, էջ 168):

Սիսուան, էջ 155—156: Ցանկալի էր ունենալ Յիշատակարանս իր ամբողջութեան մէջ:

24· Առանց թուականի է հետեւեալ Յի-

*չատակարանը ձեռագրի մը, որ կը պարունակէ Գրիգոր Նարեկացւոյ Աղօթամատոյցն եւ Պատմութիւնն Ապարանից Ս․ Խաչին, որուն գրիչն է Գրիգոր Ակներցի․ կը համարիմ գրուած այս շրջանին* (1335)։

ա․ *«Կոստանդին յոյժ վշտացեալ յաշակերտութիւն սուրբ հաւրս իմո* (Գր․ *Նարեկացւոյ*) *սրբոց շաւղաց, յաղագս անբերելի տենչանացն, որով բերէի առ Երանելիս, ի պատկերէ բանից աղերսական խըրոց աղաւթից տուփացեալ, եւ զայս առ ի նմանէ ի հիւսուած տառի ստանալ, խուզեալ գտի գրեալ յաստուածընկալ ձեռաց տեառն Ներսէսի Տարսոնի եպիսկոպոսի տիեզերալոյս վարդապետի եւ մեծաւ ջանիւ ըստ կարի յարմարեցի չարժեալ ի սիրոյ։ Այդ աղաչեմ զքեզ, Հայր իմ սուրբ Գրիգոր Նարեկացի, նայեա յիմս որ առ քեզ սէր անտանելի, որպէս եւ ի քոյդ ըղձալին ի քէն Տեառնորդի․ եւ ցայտեա յառատ իմաստիցդ եւ ի շնորհաց քոց հոգի, մինչ լիցի աւարտել տառապելոյս զկենցաղս տաժանելի եւ այդր բացաւ երեւաւք ողջագուրիւ համբուրել զոտս սրբոյդ, հոգւոյս սիրելի։*

բ․ (էջ 181)․ *ԶԳրիգոր Ակներցիս աղաչեմ յիշել յաղաւթս ձեր, ո՛վ տեսողք եւ վայելողք սմին։*

գ․ (էջ 302)․ *Զգծաւղ եւ զստացաւղ քաղցրաճաշակ ճառիցս, զԳրիգոր Ակներցիս*

աղաչեմ յիշել ի Տէր· եւ Տէր յիշողացդ եւ յիշեցելոցդ ողորմեսցի· եւ որ զԱմէնն ասէ· եւ Քրիստոսի փառք յաւիտեանս:

Հալէպ, Թ· 141 Քառասուն Մանկունք Եկեղեցւոյ (Արտաւազդ Արքեպ· Սիւրմէեան, Ցուցակ, Ա·, էջ 246):

25· «Եւ արդ գրեցաւ սակաւագիծ յիշատակարանս այս ձեռամբ յոգնամեղ եւ անարհեստ գծողի, որոյ անուն Գրիգոր Ակներցի յորջորջի· ի խնդրոյ պատուելի եւ սրբասնեալ կուսակրաւն քահանայիցս Յովհաննիսի, Մկրտչի, Ստեփանոսի եւ Գրիգորի···: Այլ եւ Ատոմ միայնակեցին, որ յոյժ աշխատեցաւ յընծայաբերութիւն սուրբ Աւետարանիս···»:

Աւետարանս գրուած է 1312ին. իսկ 1386ին հանուելով Տարօնի Ս· Ղազար վանքէն տարուած է Երուսաղէմ եւ ընծայաբերուած Ս· Յակոբայ: Յիշատակարանիս գրիչ Գրիգոր Ակներցի Յիշատակարանի՞ն գրիչն է միայն, թէ նաեւ Աւետարանը գրուած է իրմէ: Պէտք է մանր քննել Երուսաղէմի Թ· 1949· իմ տեղեկութիւններս առնուած են Նապայեան Սահակ կաթողիկոսի ձեռագիր Ցուցակէն: «Գրիգոր Ակներցի» գրիչ առաջին անգամ 1335ին երեւան կու գայ:

26· Ինձի կ՚երեւայ, թէ Ակներ գրուած են նաեւ յետագայ երկու ձեռագիրները·

*«Փառք...: Գրեցաւ սա ի Կիլիկեցւոց աշխարհի ի Թուականութեանս Հայոց ՉՁ (1331), ի հայրապետութեան տեառն Յակոբայ եւ ի Թագաւորութիւն Հայոց Լեւոնի որդւոյ Աւշնի արքայի, ընդ հովանեաւ Աստուածածնիս (Զ. աստուածաշինիս) եւ այլ կենսակիր սուրբ Նշանացս, ձեռամբ ամենաթշուառի Դաւթի ժանտատես գրով եւ բազմաշփոթ մտաւք ի յընտիր աւրինակէ:* |||

*Երեւան, Պետ. Թանգարան, Թ.* 97:

27. *«Փառք...: Գրեցաւ Երգարանս ի Թվ. Հայոց ՉՁԲ* (1333) *ձեռամբ անարհեստ գրչի Սարգիս... կրաւնաւորի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս ի վանքս որ կոչի Ա* |||| *ի յիշատակ շնորհալի քահանայի Մանուէլի... առ ի յիշումն հանդիպողաց հաւր իւրոյ Որդանայ (Վարդանա՞յ) եւ մաւր իւրոյ Ոսկեհատի եւ եղբարց իւրոց Եւատինէ, Թամոս* |||:»

Leiden, Or. 5525 (*Ծարակնոց.* Macler, Rapport d'une mission scientifique en Belgique..., p. 151):

*Այս իբր 40 մեծ եւ փոքր Յիշատակագրութիւնները չեն ընծայեր անշուշտ ոչ վանքին գրաւէր միաբաններու արտադրութիւններու լիակատար ցանկը եւ ոչ ալ վանքին ներքին եւ արտաքին կեանքի ամբողջական պատկերը: Անոնք պարզապէս կենդանութեան նշմարներ են, դոյզն յուշեր Ակների անցեալէն: Յուսով եմ, թէ մեր ծանօթու-*

*թիւնը վանքին մշակութային գործունէութեան մասին աւելի պիտի ընդարձակուի, եթէ աւելի խնամքով ուսումնասիրուին Հայ ձեռագրական Հաւաքածոյքները Վենետիկ, Երուսաղէմ, Երեւան եւ այլուր*:*

---

* Տողերս կը գրէի 1948ին: Այնուհետեւ լոյս տեսան՝ 1. Լ. Ս. Խաչիկեան, ԺԴ. դարի հայերէն ձեռագիրների յիշատակարաններ, Երեւան 1950 եւ 2. Գարեգին կաթողիկոս (Յովսէփեան), Յիշատակարանք ձեռագրաց, Ա., Անթիլիաս 1952. Բ. հատորը, որ մամուլի տակ է, ինձ անմատչելի է տակաւին:

Ոչ մին եւ ոչ միւսը բերին կարեւոր նորութիւն: Կը նշանակեմ այս տեղ վերագոյն, էջ 157—195 հրատարակուած յիշատակարաններէն անոնք, որոնք կը գտնուին այդ հատորներուն մէջ.

| | | | |
|---|---|---|---|
| Թ. 1ա | = | Յովսէփեան, | էջ 777—778 |
| Թ. 2 | = | Յովսէփեան, | էջ 775—776 |
| Թ. 3 | = | Խաչիկեան, | էջ 187—188 |
| Թ. 7 | = | Յովսէփեան, | էջ 277—278 |
| Թ. 10ա | = | Խաչիկեան, | էջ 87 (1323°) |
| Թ. 11ա | = | ” | էջ 97 |
| Թ. 13ա | = | ” | էջ 178 |
| Թ. 13բ | = | ” | էջ 188 |
| Թ. 14 | = | ” | էջ 190 |
| Թ. 15 | = | ” | էջ 195 |
| Թ. 16ա | = | ” | էջ 194—195 |
| Թ. 17ա | = | ” | էջ 219 |
| Թ. 18 | = | ” | էջ 219 |
| Թ. 20 | = | ” | էջ 251—252 |
| Թ. 21 | = | ” | էջ 266—267 |
| Թ. 26 | = | ” | էջ 243 |

Նոր է Խաչիկեան, Թ. 109., էջ 81. Աւետարան մը, գրուած Ակներ 1311ին, Գրիգոր գրչէ, ի խնդրոյ Գրիգոր միայնակեացի: Ակներ գրուած կը համարուի նաեւ Թ. 197. էջ 158., գրուած 1319ին:

Վահրամի որդի Գրիգորի եւ իր եղբայրներու մասին տես Հանդ. Ամս. 1951, էջ 471:

8 յունուար 1953:

ԻԹ

# ԳՐԻԳՈՐ ԳԱՀԱՆԱՅ ԱԿՆԵՐՑԻ

## ՊԱՏՄԱԳԻՐ ԹԱԹԱՐԱՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

(1250—1335)

## ԻԹ.

# ԳՐԻԳՈՐ ՔԱՀԱՆԱՅ ԱԿՆԵՐՑԻ

## ՊԱՏՄԱԳԻՐ ԹԱԹԱՐԱՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## 1250—1335

### «ՎԱՐԴԱՆ ՊԱՏՄԻՉ» ԵՒ «ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՅ»

1. *Մեզի անծանօթ կը մնան Գրիգորի ծննդավայրն եւ ծնողքը, եւ առ հասարակ իր կեանքի առաջին շրջանէն կենսագրական գծեր: Գիտենք միայն, թէ ունեցած է ան Մխիթար անունով եղբայր մը, որ վաղամեռիկ եղած է 1273էն յառաջ*[1]*: Այս տարւոյն Գրիգոր արդէն միանձն քահանայ է, «սպասաւոր բանի» Ակների վանքին մէջ, միաժամանակ պարապած գրչութեան արուեստով: Եթէ նկատենք զինքը իր առաջին յայտնութեան* (1273)[2] *իբր 23 տարեկան հասակի մէջ, ծնած կ'ըլլայ մօտաւորապէս 1250ին: Ան գործեց մինչեւ իր մահը Ակների կամ*

---

[1] *Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութեան վերջը, կը գրէ 1273ին. «Յիշեցէք եւ զծնողսն իմ զննջեցեալսն ի Քրիստոս եւ զհարազատ եղբայրն իմ զՄխիթար, որ տարաժամ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս»: Այս տողերը դուրս թողուցած է Սաւալանեանց իր 1871ի հրատարակութեան մէջ. յառաջ բերած է Սիւրմէեան Արտաւազդ արքեպ., Ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի, Վենետիկ 1948, էջ 144:*

[2] *Վերագոյն էջ 157—195 յառաջ բերուած յիշատակարաններէն Թ. 8, 9ա, 10ա, 11ա, 18, 23 կամ Գրիգորի գրչէն են եւ կամ իր մասին ակնարկութիւններ ունին:*

Ականց վանքին մէջ: 1312—1313 տարիներուն կը յիշուի առաջնորդ նոյն վանքին, ընտրուած անշուշտ նախորդ տարիներուն. մինչեւ ե՞րբ մնաց ան այս պաշտօնին մէջ՝ չգիտենք: Գրիչ մը 1335ին կը ներկայացնէ զինքը «ծերունի քահանայ, հեզ եւ իմաստասէր, որ հայրօրէնաբար ի մանկական տիոց խնամէ զմեզ աստուածային բանիւ». ան վախճանեցաւ հաւանօրէն այս թուականէն ոչ շատ ուշ իբր 85ամեայ պարարտ տարիքի մէջ: Գրիգոր տակաւին պատանի էր, երբ ընդունեցաւ Ակաների վանքը Հեթում Ա. Թագաւորի այցելութիւնը. որ «եկն ի սուրբ եւ ի գերահռչակ ուխտն միաբանից յԱկանց անապատս եւ աստ մխիթարեալ սակաւ մի ի միեղէն եղբարց սուրբ ուխտիս՝ կեցեալ աւուրս ինչ»: Երկու տարի յետոյ միւսանգամ եկաւ հոն Թագաւորը, անցնելու իր կեանքի վերջին օրերը († 1269, Հոկտ. 29)[3]:

Գրիգոր Կ՚որակուի «Իմաստասէր», բնաւորութեամբ «հեզ». նա ինք զինքը կը ներկայացնէ «տկար անձամբ», «յոյժ տկար եւ անխել». բայց եւ այնպէս պարապած գրչագրութեամբ: 1273ին Ստեփանոս հօր յանձնարարութեամբ օրինակած է Միքայէլ Ասորւոյ ժամանակագրութիւնը, որ պահուած է Երուսաղէմի Թ. 32 ձեռագրին մէջ. 1313ին ալ արտագրած է իր սեպհական պիտոյից համար Ս. Եփրեմի Կցուրդք կամ Ասացուածք

[3] Պատմ. Թաթարաց, 55 եւ 64:

կոչուած գիրքը, պահուած, մասամբ պակասաւոր, Էջմիածնի Թ. 821 ձեռագրին մէջ: Իսկ 1273ին հեղինակած է Թաթարաց Պատմութիւնը:

Գրիգոր, թէեւ ինք զինքը կ՚անուանէ «բանի սպասաւոր» «աոաջնորդ» եւ այլն, բայց էր աստիճանով «քահանայ». այսպէս ալ կը նկատէին զինքը ժամանակակիցները, ուստի չէ կրած ան երբ եւ իցէ «վարդապետ» պատուանունը:

Միանձն մը, որ աւելի քան 60 տարի իր բնակութիւնն ունեցած է Ակների վանքի հովանւոյն տակ, կրնանք առանց վարանելու կոչել զինքը Ակներցի: Շատ հաւանական է որ ծննդեամբ ալ ըլլայ Կիլիկեցի: Տարբեր է իրմէ միւս այն Գրիգոր Ակներցին, որ հաւանօրէն Ակներ գիւղէն էր եւ կը յիշուի 1332—1335 տարիներուն: Ուրիշ է դարձեալ համանուն եւ արդիւնաւոր գրիչն Գրիգոր որդի Վահրամայ, որ բնակութեամբ հաւանօրէն Զորի Ս. Թորոսցի, 1325—1334 տարիներուն օրինակութիւններ կատարած է Ակների մէջ:

Հ. Մ. Զամչեան[4], նկատի առնելով Թաթարաց Պատմութեան այն տեղիքը, ուր կ՚ըսուի, «ընդ աւուրսն ընդ այնոսիկ փոխեցաւ ի Քրիստոս աւագ եւ փառաւոր վարդապետն մեր Վանական եւ սուգ մեծ եթող մեզ. եւ ոչ թէ միայն մեզ աշակերտելոցս նմա,

[4] Պատմութիւն Հայոց, Գ., էջ 187, 240:

այլ եւ ամենայն աշխարհի» (էջ 33), համարած է, թէ պատմագիրը նաեւ ինք զինքը Վանականի աշակերտներու մէջ թուած է։ Այս կարծեաց թերեւս նպաստաւոր երեւցած է նաեւ միւս տեղիքը· «եւ տարան (Թաթարք) զինքն, զփառաւոր վարդապետն մեր Վանական, ծառայ՝ աշակերտօքն իւրովք» (17)։ Ինչպէս պիտի տեսնենք յետոյ, հոս պատմողն ոչ թէ պատմագիրն է, այլ իւր տեղեկատուն, որ արեւելցի է։

2. Պատմութիւն Թաթարաց։ Գրուածքիս սկզբնագիր օրինակը կը գտնուի Երուսաղէմի Թ. 32 ձեռագրին մէջ[5]։ Ձեռագիրս, 35×25 հմ. մեծութեամբ, գրուած է երկսիւն, 319 թուղթ (638 էջ), բոլորգրով, Ակների վանքին մէջ։ Կը բովանդակէ Միքայէլ Ասորւոց Պատրիարքի (1166—1199) ժամանակագրութիւնը, թարգմանուած 1246ին ի Հռոմկլայ։ Այս թարգմանութիւնը հասած է մեզի երկու խմբագրութեամբ, որոնք կ՚ենթադրեն հասարակաց բնագիր մը։ Տ. Սաւալանեանց հրատարակեց այս երկու խմբագրութիւններն ալ ուրոյն ուրոյն հատորներու մէջ, մին 1870ին եւ միւսն 1871ին, երկուքն ալ Երուսաղէմ։ Մինչ առաջին խումբը բազմաթիւ ձեռագիրներու մէջ աւանդուած է, երկրորդէն հասած է միակ օրինակ մը Երու-

---

[5] Ձեռագրիս նկարագրութիւնը տուած է Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի, Վենետիկ 1948. էջ 141—145։

սաղէմի յիշեալ Թ. 32 ձեռագրին մէջ, որուն բովանդակութիւնն է.

ա. *Տեառն Միքայէլի Ասորւոց պատրիարքի ժամանակագրութիւն յԱդամայ սկսեալ մինչեւ առ մեզ: — Ես, եղբարք աստուածասէրք եւ ուսումնասէրք, հայելով ի բազմութիւն ժամանակագրաց*... Թղ. 1ա—261բ (տպ. 1—503) եւ (*Յաղագս Քահանայութեան*) 294ա—316ա (1—45): Միքայէլ Ասորի աւարտած էր իր ժամանակագրութիւնը 1195ի դէպքերու յիշատակութեամբ:

բ. Հայ թարգմանիչը կամ ուրիշ մը կցած է անոր ժամանակագրական յաւելուած մը, որ համառօտիւ Լեւոն Ա. թագաւորի գործունէութիւնն դրուատելէ եւ մահը (1219) յիշելէ ետքը (տպ. 503—507), կը յայտարարէ. «Եւ է այժմ թիւն Հայոց ՈՂԵ» (1246), որ թարգմանութեան տարին է: Ապա կ՚ըսուի. «Այլ որ ինչ ի միջոցի աստ եղեն, եւ զայն ասասցուք համառօտ». ուստի կը խոստացուի 1219—1246 տարւոյ համառօտ ժամանակագրութիւնը տալ. բայց մենք կը գտնենք միայն ՈԿԵ (1216)—ՈՀԸ (1229) տարիներու ժամանակագրութիւնը (տպ. 507—525):

Կը յաջորդէ Գրիգոր դրչի յիշատակարանը. «Ի թուականին Հայոց ՈՀԸ. կատարեցաւ աշխարհապատում պատմութիւնս տէր Միխայելի սուրբ պատրիարքին Ասորւոց, զոր ստուգիւ գրեաց ծայրաքաղ առնելով յաստուածաստեղծ մարդոյն Ադամայ... որ են թիւք ամացն յելիցն Ադամայ մինչեւ ի

*ժամանակ կատարելոյ գրոցս ի ձեռն Միխայէլի Ասորւոց պատրիարքի ամք ՑՆԼ* (1229/30): *Եւ այժմ է թիւս Հայոց ՉԻԲ* (1273), *որ գրեցաւ գիրքս ձեռամբ տառապեալ Գրիգորոյ*, զոր կամաւքն Աստուծոյ գրեսցուք եւ մեք զպակասութիւն սորա ամաց քառասուն եւ չորից» (*տպ.* 525—526):

գ. *Անկէ կը տեսնուի, որ այն գաղափար օրինակը, զոր ստացած էր Աւագ* (*Մլիճոյ* *) *անապատի տէր Թաղէոս հօրմէ, կ՚աւարտէր ՈՀԸ տարւով: Խոստացուած ԽԴ տարիներու պատմութիւնը արդեամբք ալ զետեղուած է յիշատակարանէս ետքը, այսպիսի խորագրով* (*Թղ.* 262*ա*—297*բ*). «Պատմութիւն վասն ազգին Նեստողաց, թէ ուստի՛ կամ յորմէ ցեղէ անեցան եւ տիրեցին բազում աշխարհաց եւ գաւառաց». *այս մասը կը սկսի եւ կ՚աւարտի. «Յետ ելանելոյ աստուածաստեղծ մարդոյն Ադամայ ի դրախտէն...: Կատարեցաւ Պատմութիւն Տաճարիս գործելոց քառասուն եւ չորք ամաց. բայց համառօտ եւ ոչ ամենն»:*

*Նաեւ այս մասին վերջը կցած է բարեխիղճ հեղինակ-գրիչը յիշատակարան մը. «Յամի եւթն հարիւրերորդի քսաներորդի* <*երկրորդի*> *թուականութեանս Հայոց* գրեցաւ աշխարհապատում տառս այս հրամանաւ սուրբ եւ փառաւորեալ հօր Ստեփանոսի Ակնեց անապատին. այլ եւ կամակցութեամբ փակակալի սուրբ անապատին Վար-

---

* *Տես վարը* § 11 (*էջ* 226—227):

դանայ եւ ամենայն եղբայրութեանս՝ քահանայից եւ կրաւնաւորաց, ձեռամբ տառապեալ գրչի Գրիգորոյ սպասաւորի բանին...»: *Իսկ ձեռագրին վերջը բարեհաճած է ստացիչը, Ստեփանոս վանահայր իր կողմէն ալ յիշատակագրութիւն մը զետեղել, ուր կը գրէ ի մէջ այլոց. «Արդ ես նուաստս յամենայնի Ստեփաննոս հայր Ականց անպատիս, ետու գրել զՊատմութիւն տեառն Միխայելի պատրիարգի Ասորւոց, զոր է գրեալ ծայրաքաղ յԱդամայ մինչեւ ի Ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ եւ ի Ծնընդենէն Քրիստոսի մինչեւ ի Հայոց թուականին վեցհարիւր յեւթանասուն եւ յութն* (1229) *եւ* զՊատմութիւն Տաթարին, այսինքն ազգին Նետողաց խԴ ամաց գործելոց մինչեւ առ մեզ, *վասն իմանալոյ զանցաւորութիւն սուտ եւ պատրող կենցաղոյս*[6]՝ *ընթերցողացդ եւ լսողացդ...»* (*տպ. Բ. Մաս, էջ* 43—45):

*Սաւալանեանց, որ այս ձեռագրէն հրատարակած էր Միքայէլի ժամանակագրութիւնը* 1871*ին, կանխած էր այս մասը իբրեւ «Թաթարաց Պատմութիւն» առանձին հրատարակել Երուսաղէմ* 1870*ին, փոքրադիր եւ մանրագիր: Նոյնը միեւնոյն տարւոյն, լոյս ընծայեց նաեւ Քերովբէ Պատկանեան Պետերբուրգ, ինչպէս յետոյ պիտի տեսնենք:*

3. *Գրիգորի խոստովանութիւնը «գրեացուք եւ մեք զպակասութիւն սորա (այսինքն*

---

[6] *Պատմութիւն Թաթարաց, էջ* 71:

շարունակութիւնը նախորդ մինչեւ 1229 հասնող ժամանակագրութեան «մինչեւ առ մեզ», այն է 1273, «ամաց քառասնից եւ չորից» եւ դարձեալ Ստեփաննոս վանահօր վկայութիւնը, թէ Գրիգոր գրչի «ետու գրել զՊատմութիւն տեառն Միխայելի... եւ զՊատմութիւն Տաթարին... ԽԴ ամաց <դիպացն> գործելոց մինչեւ առ մեզ» յայտնաբարբառ կը հաստատեն, թէ այս Թաթարաց Պատմութեան հեղինակն է Գրիգոր քահանայ, Ակների «սպասաւորն բանի» եւ Միքայէլի ժամանակագրութեան գրիչը 1273ին: Ուշագրաւ է որ Գրիգոր ճիշդ այս Թաթարաց Պատմութեան վերջը պատշաճեցուցած Յիշատակարանին մէջ կը շեշտէ, թէ «գրեցաւ աշխարհապատում տառս այս հրամանաւ... հօր Ստեփաննոսի... այլ եւ կամակցութեամբ փակակալի... Վարդանայ եւ ամենայն եղբայրութեանս»: Ինծի կը թուի թէ այս կամակցութիւնը կը հայի առաւելապէս Թաթարաց Պատմութեան, այս ինքն, որ այն գրուի եւ զետեղուի Միքայէլի ժամանակագրութեան եւ Յաղագս Քահանայութեան գործերու մէջտեղ:

Թէ Գրիգոր գրչի «գրեսցուք»ը յօրինենք, յերիւրենք, հեղինակենք իմաստով հարկ է հասկնալ, կը վկայեն նաեւ հիները, յատկապէս այն անանուն ցանկագիրը, որ կազմած է, հաւանօրէն ԺԷ դարու վերջին քառորդին, «Ցանկն պատմագրաց», ուր արձանագրած է իբրեւ ժամանակագրական կարգով ԼԳ.

պատմագիր՝ «Գրիգոր Պատմագիրք. եւս վասն ազգին Թաթարաց մինչեւ ի ժամանակս Կոստանդնի Մեծի կաթողիկոսին[7]»: Առանց տարակուսի Պատմագիրքս ծանօթ եղած է իրեն Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութենէն, դետեղուած «Յաղագս Քահանայութեան» գրուածքէն յառաջ. եւ որովհետեւ այս գրութեան թարգմանութիւնը (Ժամանակագրութեան հետ) կատարուած է 1246ին Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի օրով, հետեւցուցած է, թէ 44 տարիներու Ժամանակագրութիւնը, այսինքն Թաթարաց Պատմութիւնը շարունակուած է «մինչեւ ի ժամանակս Կոստանդնի»: Ա՛յս ցանկն է, զոր տեսած է 1839ին Տէր Ստեփան Տէր-Յովհաննէսեան յԱսպահան, եւ համարած է «Ցանկ մի գրչագիր մատենից», ուր կարգացած է նաեւ «Գրիգոր պատմագիր վասն ազգին Թաթարաց» եւ հաղորդած Վենետիկի Մխիթարեանց Աբբահօր[8]: Սոյն հաղորդագրութեան վրայ յեցած էր նաեւ Հ. Ղ. Ալիշան[9], երբ կը գրէր. «Թաթարաց վրայ գրողներու կարգին հարկ է յիշել եւ Գրիգոր Պատմիչ մի... վասն զի յիշուի երկու երեք Ձեռագրաց ցանկերու եւ Պատմչաց շարքի մէջ. մէկն գրէ. «Գրիգոր Պատմագիր վասն

---

7 Էջմ. Թ. 2271: Նոյնը Հ. Գ. Գալէմքեարեան, Պատմութիւն հայ լրագրութեան, Վիեննա 1893, էջ 207:

8 Ծաղ Ս. Աթանասի. Վենետիկ 1899, էջ Զ—Է:

9 Հայապատում Ա. էջ 110 «Գրիգոր վարդապետ»:

Թաթարաց». միւս մի՝ նոյնպէս, եւ մինչեւ Ս. Կոստանդին կաթողիկոսի ժամանակ. երրորդ մի գրէ, թէ Գրիգոր վարդապետ յԱկանց անապատի վանս Կիլիկիոյ՝ հրամանաւ Ստեփանոսի վանահօր՝ Միխայէլի ժամանակագրութեան դադրած տեղէն՝ շարունակեր է զՊատմութիւնն ԽԴ տարի եւս, յատկապէս զԹաթարաց գրելով[10]: Այսքան յիշատակք, կ՚ըսէ Հ. Ալիշան, բաւական հաստատութիւն կու տան, թէ Ուռհայեցւոյն շարայարողէն[11] տարբեր համանուն մէկն՝ գրած ըլլայ իր ժամանակին զամէնքը սարսափեցնող նորատեսիլ Նետողաց ազգին ասպատակութեանց վրայ»: Հ. Ալիշան չէ անդրադարձած, թէ հոս խօսքը այն «Թաթարաց պատմութեան» վրայ է, որ լոյս տեսած էր 1870ին Երուսաղէմ եւ Պետերբուրգ (Մագաքիա աբեղայի անունով):

Զարմանալի է Տ. Սաւալանեանց, որ նախ 1860ին խօսք ընելով Երուսաղէմի Թ. 40 (այժմ Թ. 32) ձեռագրին վրայ կը գրէր[12], թէ Մ. Ասորւոյ ժամանակագրութիւնը գրուած է «Հրամանաւ հօր Ստեփանոսի Ականց անապատի եւ ձեռամբ Գրիգոր վարդապետի: Աստ շարագրածն է նաեւ Թաթարաց պատմութիւնը իբր շարունակութիւն Միխայելի

---

[10] Նկատի ունի Սաւալանեանցի տողերը «Միութիւն, հանդէս Հաշտենից» ի մէջ:

[11] Այս ինքն Գրիգոր Քեսունցիէն:

[12] Միութիւն, հանդէս Հաշտենից (1860 Կ. Պոլիս), Թ. 6, էջ 42:

գրոց, եւ կը պարունակէ 44 տարուան դէպքեր»։ Իսկ 1870ին, երբ լոյս ընծայեց Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութեան Ա. խմբագրութիւնը, էջ 531 ծանօթութեան մէջ նկատի առնելով 1218—1229 տարիներու ժամանակագրութիւնը, որ միայն կը գտնուի Ա. խմբագրութեան ձեռագիրներու մէջ, կը գրէ. «Այսպէս վերջաւորի եւ յերկուս օրինակս. եւ թուի այս կա՛մ Վարդանայ գրեալ ի թարգմանելն, եւ կա՛մ Գրիգորի երիցու Ականց անապատի, որոյ ինքնագիր է օրինակս (իմացիր Թ. 32)։ Սակայն Վարդանայ տալի են այսոքիկ. զի եւ Գրիգոր երէց ի վերջ յիշատակարանին որ ի վերջ Պատմութեանս է, ասէ. գրեցաւ գիրքս ձեռամբ տառապեալ Գրիգորոյ...։ Գրեսցուք եւ մեք զպակասութիւն սորա զամաց ԽԴիցն։ Տէր Աստուած ողորմեայ Վարդանայ ծառայի քո յաւուր գալստեան քո. եւ յաւելու զՊատմութիւն Թաթարաց»։

Նոյն տարւոյն տպագրուեցաւ նաեւ «Պատմութիւն Թաթարաց Վարդանայ պատմչի հանեալ ի ձեռագիր օրինակաց Թանգարանի Ս. Յակոբեանց», Երուսաղէմ 1870։ Յառաջաբանին մէջ (էջ 7) կ՚ըսուի. «Գրեալ է Վարդանայ պատմչի յաշակերտացն Վանականայ վարդապետի ի ԺԳ դարու, ի 1247 եւ ընդօրինակեալ ի 1272. եւ օրինակն զոր ունիմք ի ձեռս ձեռագիր է նորին Գրիգորի երիցու Ականց անապատի ի Կիլիկիա։ Օրինակս չունի առանձին յիշատակարան գրչու—

գէն. սակայն ի լուսանցս օրինակին ուրեք ուրեք տեսանի գրեալ նովին ձեռագրով. «Ողորմեա, Տէր, Վարդանայ ծառայի քո»: Նա եւս՝ կից է օրինակս Միխայելի Ասորւոց կաթողիկոսի ժամանակագրութեանն, որ յայտնի թարգմանութիւն է նորին Վարդանայ ի յիշատակարանին ծանուցեալ: Եւ լեզու եւ ընթացք պատմութեանն իսկ վկայեն զաս նորին լինել հեղինակութիւն»: Պատճառաբանութիւններ, որոնց հիմ կը պակսի: Նախ իսկ Միքայէլի ժամանակագրութեան թարգմանութիւնը Ա. խումբի ձեռագրաց համաձայն կատարուած է ՈՂԷ (1248) եւ ըստ Բ. խումբի ձեռագրին՝ ՈՂԵ (1246) տարւոյն: Երկրորդ Թաթարաց Պատմութիւնս, որ 44 տարիներու շրջան մը կ՚ընդգրկէ, կը սկսի 1229 եւ կը հասնի 1272, երբ Վարդան պատմիչ վախճանած էր: Երրորդ ի լուսանցս, նաեւ Յիշատակարաններու մէջ յաճախ յիշուած Վարդանները Գրիգոր գրիչ կը զանազանէ Վ. փակակալ եւ «միւս» Վարդան. վերջինս յետոյ եպիսկոպոս եղաւ: Իսկ լեզուի զանազանութեան մասին կ՚արժեն դեռ Հ. Ղ. Յովնանեանի եւ Հ. Հ. Ոսկեանի ապացոյցները:

Թաթարաց Պատմութեանս հրատարակիչն է Տ. Սաւալանեանց, որ, երբ Հ. Ղ. Յովնանեան (1890) անդրադարձաւ իր այս տեսութեանց անպատեհութեան, փութաց չքմեղել ինք զինքը այսպէս. «Թաթարաց պատմութեան տպագրութեան մէջ, որ մեր

բացակայութեան միջոցին պատահեցաւ անփորձ եւ ինքնապարծ համբակ աբեղայի մի ձեռօք, ագիտաբար Վարդանայ տրուած է հեղինակութիւնը[13]»: Անշուշտ այս անհաճոյ ձեռնմխութիւնն վաղուց պարզուած պիտի ըլլար, եթէ Սաւալանեանց Միքայէլի Ժամանակագրութեան Բ. հրատարակութեան Յառաջաբանին մէջ անդրադարձած ըլլար այս կէտին: Հոս կը կարդանք լոկ. «Իսկ որ ինչ յաղագս Գրիգոր վարդապետի են գիտելիք, որ է գրիչ հայերէն բնագրիս, որ խոստանայ յեր. 528, գրել զանցս 44ից ամաց, սկսեալ յամէ 1248 (!) մինչեւ 1272, այն է զյարձակումն Թաթարաց ի Հայս, որոյ գործ ընծայի յազգիս մերում Մաղաքիայի ուրումն աբեղայի, խօսեցեալ է մեր արդէն ի յառաջաբանի նոյն Թաթարաց, տպեալ ի սուրբ Աթոռս յամի 1870» (էջ ԺԵ):

Աւելի պայծառ արտայայտուեցաւ Սաւալանեանց 1891ին. երբ Թաթարաց Պատմութիւնը կանխող Յիշատակարանին պարբերութիւնը «Գրեսցուք եւ մեք զպակասութիւն սորա՝ ամաց ԽԴ» կ'իմանայ. «Քառասուն եւ չորս ամաց բառն գրքին ընդօրինակութեան թուականէն, այն է 1272է առաջ է, որ է ըսել 1228 թուականէն սկսեալ...: Սոյն վաւերական տեղեկութիւնները կարդացողն առանց երկմտելու 44 ամաց պատմութիւնն Թաթարաց՝ Գրիգորի պիտի ընծայէ, եւ ոչ ուրիշի

[13] Ծաղիկ, 1891, էջ 113բ:

կամ Մաղաքիայի, ինչպէս սխալ աւանդութիւն մը տարածուած է[14]»:

4. «Մաղաքիա աբեղայ»: Առաջինը Հ. Միքայէլ Չամչեան եղաւ, որ Մաղաքիա աբեղայի անունը իբրեւ հեղինակ Թաթարաց պատմութեան, հրապարակ դրաւ: Իր Հայոց Պատմութեան Ա. հատորի սկիզբն աղբիւրներու ցանկին մէջ կը ներկայանայ «Մաղաքիա աբեղայ ԺԳ. դարուն՝ փոքր մի յետոյ քան զԿիրակոս եւ զՎարդան, ի ժամանակս Լեւոնի Գ. արքայի, եւ Յակոբայ կաթողիկոսի կլայեցւոյ: Սա արար զՊատմութիւն յարձակման Թաթարաց յաշխարհն Հայոց, եւ այլ ինչ գործոց, ցամն Տեառն 1272[15]»: Իսկ Գ. հատորի մէջ թուելով Վանական վարդապետի չորս աշակերտները, կ'աւելցնէ. «որոց աշակերտակից համարի եւ Մաղաքիա աբեղայ[16]»: Այլուր կը գրէ. Հեթում Ա. «երթեալ գնացեալ ի վանս Ականց (որ թուի լինել սուրբ ուխտն Ակներոյ, ուր եւ կրօնաւորեալ էր Մաղաքիա աբեղայ՝ որ պատմէ զայս)» եւն[17]: Ի վերջոյ Գ. հատորի Յաւելուածին՝ ժամանակագրական տախտակներու մէջ (էջ 87) կ'արձանագրէ յամի 1263. «Մաղաքիա աբեղայ պատմիչ»:

Այսպէս ծնունդ առած է Մաղաքիա աբեղայ, իբրեւ պատմագիր, տեղւոյ եւ ժա-

---

[14] Ծաղիկ, անդ, 113ա:
[15] Պատմութիւն Հայոց, Ա. էջ 16—17:
[16] Անդ, Գ. էջ 187 եւ 240:
[17] Անդ, Գ. էջ 267:

մանակով ճշդուած անոր գործունէութիւնը. այնպէս որ կարող էր անոր արժանաւոր տեղ յատկացնել Հայոց գրականութեան պատմութեան մէջ Գերապ. Սուքիաս Սոմալեան[18].

„Molto più pregiata non tanto per lo stile, quanto per le utilissime cognizioni, che somministra, è la Storia delle scorrerie de' Tartari, e delle stragi fatte da esso loro in Asia, e specialmente in Armenia fino all' anno 1272, di cui fu autore un monaco chiamato Malachia, condiscepolo secondo alcuni del suddetto Ciriaco." Որո՞նք են այդ ոմանք»: Կը յիշեն նաեւ Նոր Հայկազեան լեզուի Բառգրքի հեղինակները[19]. «Մաղաքիայ աբեղայի յելս ԺԳ. դարու Պատմութիւն ազգին Նետողաց, այս ինքն զալստեան Թաթարաց ի Հայս: Սորին ոճով»:

Քանի որ Հ. Մ. Զամչեան կ'օգտուի «Մաղաքիա»ի Պատմութենէն եւ ՆՀԲի հեղինակները անկէ բառեր կը քաղեն, հարկ է ենթադրել, թէ «Թաթարաց Պատմութենէն» օրինակ մը գոյութիւն ունեցած ըլլալու է Վենետիկի Մխիթարեան Մատենադարանին մէջ: Արդեամբք ալ 1847ին այդ ձեռագրէն օրինակութիւն մը նուիրաբերուած է Պետերբուրգի Ակադեմիային, որ ապա զետեղուած է նոյն քաղաքի Ասիական Թանգարանի մէջ: Այս

---

[18] Mons. Placido Sukias Somal, Quadro della Storia letteraria di Armenia. Venezia 1829, p. 112—113.

[19] Վենետիկ 1838, Ա. Նախադուռն, էջ 14ր:

ձեռագիրը աչքի առաջ ունեցած են Մ. Բրոսէ եւ Ք. Պատկանեան:

M. Brosset փութաց ամբողջութեամբ թարգմանել «Մաղաքիայի» այս Պատմութիւնը գաղղիերէնի, զոր զետեղեց Ouvrage de Malakia-Abégha, ou Malakia-le-Moine խորագրի-տակ իր Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie գործին մէջ, St. Pétersbourg 1851, էջ 438—467: Իսկ քսան տարի ետքը Քերովբէ Պատկանեան նախ հրատարակեց բնագիրը. Մաղաքիայ աբեղայի Պատմութիւն վասն ազգին Նետողաց. Ս. Պետերբուրգ 1870, էջք 64. եւ ապա տուաւ ռուս թարգմանութիւնը. Історія Монголовъ инока Малакіи. XIII вѣка. Переводъ и объясненія К. П. Патканова. С. Петербургъ 1871, 8° էջ 7 IX + 106 (էջ 57—106 ծանօթութիւններ):

5. Առաջին անգամ Տիգրան Սաւալանեանց եղաւ, որ բողոքեց այս վերագրումի դէմ, յօղուածով մը, որ վերնագիր կը կրէր. «Մաղաքիա աբեղայ չէ հեղինակ Պատմութեան Թաթարաց գրքին. Ծաղիկ լրագիր 1891 (Կ. Պոլիս), Թ. 10, էջ 112—113. եւ Հարազատ հեղինակ կը մատնանշէր Գրիգոր «վարդապետը»: Այս բողոքի առիթ տուած էր Հ. Ղ. Յովնանեանի յօղուածն «Մաղաքիա աբեղայ»[20]: Արձագանգ չգտաւ սակայն այս

[20] Հանդ. Ամս. 1890, էջ 35—36 (= Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, Վիեննա 1897, էջ 239—249):

ձայնը. Հ. Ղ. Ալիշան, Հայապատում Ա., էջ 109—110, նկատի ունի դեռ «Մաղաքիա աբեղայ». նոյնպէս Պատմութիւն հայկական դպրութեան. Բ.[2] (Վենետիկ 1905), էջ 112—115 կը շարունակէ խօսիլ «Մաղաքիա աբեղայ»ի վրայ, «որ ԺԴ. դարու պատմիչ մըն է» (հմմտ. նաեւ Ծաղիկ, 1891, էջ 113 գ)· անոնց կարգին նաեւ Հ. Հ. Ոսկեան, Յովհաննէս Վանական եւ իւր Դպրոցը, Վիեննա 1922, էջ 114—122:

Անշուշտ հիմ մ'ունէր Հ. Զամչեան, Թաթարաց Պատմութեան հեղինակը «Մաղաքիա աբեղայ» համարելու: Անոր գաղտնիքը թաքնուած է այն ձեռագրի մէջ, զոր ձեռքի տակ ունեցած է Մխիթարեան Հայրը: Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի համառօտ ցանկ մը, զոր ունիմ աչքի առաջ, մատնանիշ կ'ընէ, թէ «Մաղաքիայ աբեղայի Պատմութիւնն ազգին Նետողաց կամ Թաթարաց» կը գտնուի Սոկրատի Ա. օրինակին մէջ, էջ 424—468: Այս ձեռագիրը ներկայիս կը կրէ Թ. 781 եւ գրուած է ՌՀԳ (1624) տարւոյն Կ. Պոլիս Մաղաքիա վարդապետի համար[21]: Ձեռագրին մէջ Թաթարաց Պատմութիւնը կը կանխէր «Գաւազանագիրք յաղագս երեւելի աթոռոյ առաջնորդաց» (որ մասն կը կազմէր Միքայէլ Ասորւոյ «Յաղագս Քահանայութեան» գլխոյն), էջ 393—421· ասկէ

---

[21] Հ. Բ. Սարգիսեան, Տեսութիւն Սեղբոստրոսի պատմութեան, Վենետիկ 1893, էջ 1—2, ծան.:

յառաջ էր հաւանօրէն Փ. Սոկրատ: Ձեռագիրս ըստ ամենայն հաւանականութեան իրեն գաղափար-օրինակ ունեցած է Երուսաղէմի Թ. 960, գրուած ՌԾԱ (1602) թուին, Բարսեղ գրչէ «ի վայելումն Մաղաքիա վարդապետի[22]»: Ձեռագրիս նկարագրութիւնը տեսայ եւ Խապայեան Սահակ կաթողիկոսի Ցուցակին մէջ: Երուսաղէմի Թ. 32 ձեռագրին վերջին յիշատակարանի տողերս «Արդ ես նուաստս յամենայնի Ստեփաննոս հայր Ականց անապատիս ետու գրել զՊատմութիւնս...» հոս, Թ. 960ի մէջ, վերածուած է. «Արդ ես նուաստ յամենայնի Մաղաքիա սպասաւոր բանի գրեցի զՊատմութիւնս...»: Իսկ Թ. 32ի Յիշատակարանին Բ. մասը՝ «Արդ ես եղկելի գրիչս Գրիգոր...» բոլորովին անտեսուած է:

Կ՚ենթադրեմ, թէ նաեւ Վենետիկի Թ. 781 ձեռագրին մէջ պահուած է այս կեղծուած Յիշատակարանը: Բայց ինձ բոլորովին անիմանալի է, թէ «Մաղաքիա սպասաւոր բանի» ի՞նչպէս Հ. Զամչեանի քով եղած է «Մ. աբեղայ»: Թերեւս Մաղաքիա իբրեւ միաբան Ականց վանքին նկատուած է «աբեղայ»: Ամէն դէպքին կեղծիք մըն է «Մաղաքիա աբեղայ» իբրեւ հեղինակ Թաթարաց Պատմութեան:

---

22 Մ. Վ. Տէր-Մովսէսեան, Սոկրատի Սքոլաստիկոսի Եկեղ. Պատմութիւն, էջ ԼԲ (ձեռագրին թիւը սխալմամբ նշանակուած է 990):

6. Մաղաքիա Թոխաթեցի: Այս «Մաղաքիա սպասաւոր բանի» կարող է ըլլալ միայն Մաղաքիա Վ. Թոխաթեցի, որ գրասէր անձ էր: Սա ՌԾԱ. (1602) թուին կը գնէ «ի ձեռաց անօրինաց» Իգնատիոսի Մեկնութիւնն Ղուկասու Աւետարանին, գրուած 1381ին[23]: Յովհաննէս Գրիչ Ամիթի մէջ կ'օրինակէ 1613ին Ներսէս Շնորհալւոյ Մեկնութիւնն Մատթէի «ի վայելս գերապանծ րաբունւոյն ... տէր Մաղաքիա աստուածաբան վարդապետին Թօխաթցոյ» (էջմ. 1245): Սիմէոն Լեհացի այս 1613 տարւոյն, գարնան հանդիպած է իրեն ի Թոխաթ, եւ 1614ին յԱմիթ[24]: Կը պատմէ Գրիգոր Դարանաղցի[25], թէ Մաղաքիա վարդապետը 1625ին այցելած է Վենետիկ եւ 1634ին առանձնացած է Վանայ ծովու կղզիներէն միոյն վրայ եւ հոն ալ վախճանած:

7. Նկարագիր: ԺԳ. դարուն, երբ ողողեց թաթարական հեղեղը առաջաւոր Ասիա, ի մէջ այլոց Հայաստան եւ դրացի աշխարհներ, շատերը գրիչ ձեռք առին նկարագրելու «Նետողաց ազգի» դէմքն ու նկարագիրը, կենցաղն ու բարքը, դաժանութիւններն ու հարստահարութիւնները: Կ'ըսուի, թէ առաջինն եղած է անոնց թուին մէջ Վանական վարդապետ († 1251), որ ոչ միայն ականա–

---

23 Հ. Մ. Պոտուրեան, Հաւաքածոյ Յիշատակարանաց (անտիպ):

24 Սիմ. Լեհացի, էջ 187 եւ 209 եւ ծան.:

25 Գր. Կամախեցի. 291, 382, 363—364:

տես եղած է այն անցքերուն, այլ եւ իր ան-
ձին վրայ զգացած է անոնց վայրագ հա-
րուածները: Անյիշատակ չէին կարող թո-
ղուլ այդ աշխարհասասան անցքերը նաեւ
Վանականի երկու պատմագիր աշակերտ-
ները՝ Կիրակոս Գանձակեցի եւ Վարդան եւ
ի վերջոյ Ստեփանոս Օրպէլեան: Մինչ ա-
սոնք Թաթարներու բռնապետութեան տակ
գրի կ'առնէին իրենց տեսածները, Սմբատ
սպարապետ եւ Գրիգոր Ակներցի կը գրէին
Հայկական Կիլիկիա, որ թէպէտ դաշնակից
կը նկատուէր Թաթարներու, բայց կը գտ-
նուէր յայս կոյս անոնց տիրապետութեան
սահմաններէն:

Վանական, Կիրակոս, Վարդան, Սմբատ
եւ Ստեփանոս ականատես եւ ականջալուր
էին իրենց պատմած դէպքերու: Ոչ այսպէս
Գրիգոր Ակներցի: Սա 1273ին հազիւ 23 տա-
րեկան քահանայ միանձն էր Ակների վանքին
մէջ: Անոր ծննդավայրը թէեւ ծանօթ չէ յա-
նուանէ, բայց առանց տարակուսի Կիլիկեցի
էր ան: Ուստի անկարելի էր, որ ան 1228—
1273 տարիներու դէպքերը, յատկապէս այն
անցքերը, որոնց թատերաբեմը Արեւելք էր,
իբրեւ ականատես կամ ականջալուր գրի առ-
նէր: Իր հաղորդագրութիւնները, սակայն,
ճշգօրէն կը համապատասխանեն այն իրա-
դարձութիւններու, որոնց նկարագրութիւնը
տուած են հայ եւ օտար ժամանակակիցներ·
Գրիգոր կը նկատուի իր Պատմութեան մէջ
արժանահաւատ: Այս արժանահաւատու-

թիւնը յեցած է անշուշտ ականատեսներու եւ ականջալուրներու վկայութիւններու վրայ. անոնք ապրած էին տեղւոյն վրայ, հանդիսատես եղած անցքերուն, հետաքրքրուած պատճառներով, մէկ խօսքով իրադէտ եւ քաղաքագէտ անձնաւորութիւններ եղած են:

Ակների մեծահռչակ մենաստանը հիւրասիրած է իր յարկին տակ այդպիսի անձնաւորութիւններ: Այն տեղ դեգերած է երկար ժամանակ Դաւիթ Բջնեցի (1261էն ի վեր). ստէպ ստէպ այցելած է վանքս Հեթում Ա. թագաւոր. անշուշտ եկած էին հոն նաեւ Արեւելքէն այցելուներ, անոնց թուին մէջ Կիրակոս Գետիկցի (Արեւելցի), որ 1269ին Յայսմաւուրքն խմբագրեց ի Սիս, Սոսթենէս վարդապետ, հաւանօրէն համանուն աշակերտն Վանականի, որ 1270—1280 շրջանին կը յիշուի գովութեամբ. կը լսեմ յիշել այլ քաղաքագէտ եւ զինուորական անձնաւորութիւններ, որոնք ըլլայ թագաւորին հետ, ըլլայ առանձին պատուած են Ակների վանքն իրենց այցելութեամբ: Այս այցելուներու առթիւ մշակած սուլխներու ժամանակ առանց տարակուսի խօսքը դարձած պիտի ըլլայ նաեւ քաղաքական իրադարձութեանց շուրջը: Կիրակոս Գանձակեցի կը հաւաստէ, թէ Հեթում Ա. երբ դարձաւ Մանկու ղանէն Վարդենիս գիւղը եւ հիւրասիրուեցաւ Քուրդ իշխանէն (1255), «բազում իրս զարմանալիս եւ անծանօթս պատմէր մեզ զբարբարոս ազգաց, զոր տեսեալ էր եւ լուեալ» (էջ 216):

Նոյնը ըրաւ անշուշտ Թագաւորը Կիլիկիոյ վերադարձին: Այսպէս եւ ուրիշներ: Ակների գիտուն միաբանները, պէտք է հաւատանք, թէ այս ամէնը ոչ միայն լսեցին, այլ եւ գրի առին իբրեւ յուշագրութիւններ: Ակների մէջ կար ընդարձակ պատմութիւն մը ժամանակակից անցքերու: Այդ Պատմութենէն համառօտած է Գրիգոր իր «Թաթարաց Պատմութիւնն քառասուն եւ չորս ամաց», կամակցութեամբ Ստեփանոս վանահօր, Վարդան փակակալի եւ համօրէն եղբայրութեան: Այս իմաստով միայն հասկանալի կ'ըլլայ իր արտայայտութիւնը «գրեսցուք եւ մեք», «կատարեցաւ Պատմութիւն Տաթարիս... բայց համառօտ եւ ոչ ամեն». ուստի իր աղբիւրը աւելի ընդարձակ էր եւ լայնագոյն: Ձեռագրին ստացիչն էր Ստեփանոս վանահայր. հետեւաբար պէտք մը չկար չեշտելու, թէ այն գրուած է նաեւ «կամակցութեամբ» ուրիշներու: Գրիգոր ինքը այլուր սովոր է կիրարկել նման դէպքերու մէջ «ես եղկելի գրիչս Գրիգոր աղաչեմ» եւն:

Թէ արդարեւ խմբագրութիւն է «Թաթարաց Պատմութիւնս, կը զգացուի մտադիր ընթերցմամբ: Առաջին 1228—1265 տարիներու անցքերու մասին տեղեկատուն արեւելցի մըն է, Վանական վարդապետի աշակերտներէն մէկը. որ դՎանական «վարդապետն մեր» կ'անուանէ (էջ 17, 22), որուն մահը, կ'ըսէ, «սուգ մեծ եթող մեզ. եւ ոչ միայն մեզ աշակերտելոցս նմա, այլ եւ ամենայն աշ-

խարհիս» այսինքն Աղուանից (33)։ Ան քաջ ծանօթ է Աղուանից աշխարհի տեղագրութեան. եւ նոր վարչաձեւին. Թաթարք, կ՚ըսէ, «արարին ընդ երեք մասն զաշխարհս ...որ այժմ ունին դեռ եւս» (20)։ Ան 1264ին տակաւին Աղուանից կողմերը կը գտնուէր, վասն զի մանրամասն նկարագրած է նոյն տարւոյն երեւցած մեծ գիսաւորի աստիճանաբար երեւումն եւ աներեւութանալը (50)։ Շատ տեղ կիրարկած է թաթարերէն յատկապէս Թաթար դատարանի եւ զինուորական վարչութեան հայող մասնական բառեր, որոնք չէին կրնար Կիլիկեցւոյ մը գրչին տակ իբրեւ տեղական բարբառին մէջ ընդունած փոխառութիւններ երեւան գալ։ Այդ բառերէն ինչ ինչ նոյն իսկ աղճատուած կերպարանք առած են տեղ տեղ հաւանօրէն լեզուին անծանօթ արտագրողին շնորհիւ։

Թաթարաց կենցաղի, կրօնի, օրէնքներու եւ Ջանկզխանի մասին տեղեկութիւնները (էջ 11—12) հաւանօրէն Հեթում Ա.ի թելադրութեամբ գրուած են, այսպէս նաեւ Կիլիկիոյ ներքին եւ արտաքին քաղաքականութեան հայող մանրամասնութիւնները։ Ուշադրութեան արժանի է, որ Աղուանից պատմութեան մասին տեղեկատուն իր շրջանը յաճախ «աշխարհս» կը կոչէ։ Այսպէս նաեւ Կիլիկիոյ նկատմամբ հաղորդագրութիւններու աղբիւրը. կ՚ըսուի. «իբրեւ լուաւ զայս ամենայն բարկութիւնս, որ գործեցաւ ի Վե-

րին աշխարհն Արեւելից, ապա վասն սիրոյ քրիստոնէից, եւս առաւել վասն իւր սեպհական երկրին գնաց» Հեթում առ Մանկու ղան (35)։ Ուր Հեթում Ա. եւ Լեւոն Բ. թագաւորներու խօսքերը ի մէջ կը բերուին, պատմագիրը կ'արտայայտուի ռամկօրէն լեզուով, որ կը յիշեցնէ Ղազար Փարպեցին, որ նոյնպէս ընտանեկան նկարագիր կու տայ իր խօսքերուն, երբ Վահանի մտածմունքները կ'արտայայտէ։

Գրիգորի լեզուն առ հասարակ գրաբար հայերէնն է, քիչ շատ կոկուած ձեւի մէջ. կարելի չէ զայն խիստ իմաստով «ստորին ոճ». կոչել, ինչպէս կը ներկայացնէ ՆՀԲ։ Հ. Ղ. Յովհանեանի[26] դատումով Գրիգոր «գրաբարագէտ է եւ հին լեզուաւ գրելու վարժ»։ Եւ եթէ տեղ տեղ կիրարկած է «ստորին ռամկաբանութիւն», այդ լեզուն «գրեթէ կը նոյանայ այլ ընիկ Կիլիկեցւոց լեզուին հետ»։ Եւ այս շատ բնական է, վասն զի Գրիգոր բնիկ Կիլիկեցի էր։

8. Գրաւոր աղբիւր կը նկատեմ իր գըրքին տակ բացի Աստուածաշունչէն, ուսկից կոչումներ յառաջ կը բերէ, հետեւեալ գրութիւնները.

ա. Մեկնութիւն անուանց Եբրայեցւոց. Գրիգոր կը գրէ. «Մեծն Աբրահամ, որ հայր վերամբարձ անուանեցաւ» (էջ 10). այն է

---

[26] Հետազօտութիւն նախնեաց ռամկօրէնի, էջ 252—255։

«Աբրամ. հայր մեծարոյ կամ հայր բարձրեալ կամ վերամբարձ»[27]: Դարձեալ՝ «Իսմայէլ, որ թարգմանի լսումն Աստուծոյ» (էջ 10). բնագիրն ունի «Իսմայէլ. լուր Աստուծոյ»[27]:

Բ. *Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութիւն* (1871): Գրիգոր. «Իսկ յազախնեացն Աբրահամու, որ են անուանք նոցա՝ միոյն Հագար եւ միւսոյն Կենդուրայ. ի Կենդուրայ ծնաւ Իմրան, որ են Պահլաւք, ուստի Քաջն Արշակ եւ սուրբն Գրիգոր Լուսաւորիչն Հայոց» (էջ 10): Միքայէլ. «Եւ թագաւորեցուցին իւրեանց զԱրշակ Քաջ յորդւոցն Աբրահամու որ ի Կենդուրայ ի Բահլ քաղաքէ» (էջ 76): Տեղիքս Մովսէս Խորենացի ունի (Բ. 1). «թագաւորեաց (Պարթեւաց) Արշակ Քաջ, որ է ի զաւակէ Աբրահամու ի Քետուրական ծննդոց»: — Գրիգոր. «Իսկ յԵսաւայ յորդւոյն Իսահակայ ծնան Յեսաւացիք, որ են Սկիւթացիք, սեաւք եւ վայրագ եւ այլադէմք. ի նոցանէ ծնան Բորամիճք եւ Լեզկիք...: Եւ ասի թէ Եդոմայեցիք այլ ի սմա ծննդոցն է՝ որ են Փրանգք. ուստի եւ խառնեալ ի միմեանս՝ երեք ազգս այս Հագարու եւ Կենդուրայ եւ Եսաւայ. եւ ծնաւ... Տաթար» (էջ 10—11): Միքայէլ, «Երէցն Եսաւ, որ է Եդոմ. ի նմանէ Եդոմացիք, որ են փռանկք» (էջ 26): Թէ Գրիգոր ի՛նչ աղբիւրէ

27 F. Wutz, Onomastica sacra, 2. Hälfte, Leipzig 1915, S. 850.

տեղեկացած է Եսաւացւոց = Սկիւթացւոց մասին, ինձ անծանօթ է (տես սակայն վարը Թ. գ):

գ. Վարդան Արեւելցւոյ 1246ին Միքայէլի Ժամանակագրութեան վերջը կցած ընդարձակ Յիշատակարանէն[28] առնուած է «Իսկ սուրբն Ներսէս ասէ — բայց ընդ արեգակն գարմանային» երկար հատուածը մանր փոփոխութեամբ (էջ 11): Իսկ Վարդան աչքի առաջ ունեցած է Ներսէսի վերագրուած (ինչ ինչ ձեռագիրներու մէջ, այսպէս Վենետիկի Մխիթ. Թ. 257, թղ. 433ա, Սարգիսեան, Ցուցակ, Բ. 791) Ագադրոնի «վասն անբարի ժամանակին» գուշակութիւններն եւ Մովսէս Խորենացւոյ ընծայուած Աշխարհացոյցը (տպ. Վենետիկ 865, էջ 614): Երկու բնագիրներու՝ Գրիգորի եւ Վարդանայ դէմ առ դէմ համեմատութիւնը տուած է Հ. Հ. Ոսկեան, Վանական վարդապետ եւ իր Դպրոցը, էջ 118—119:

9. Գրիգոր Ակներցի աւարտած է իր Պատմութիւնն Թաթարաց 1272 տարւոյ վերջերը: 1273 տարւոյն ալ գրուած է այն ձեռագիրը, որ կը պարունակէ գրուածքիս

---

[28] Ա. Խմբագրութիւն (տպ. 1870ի), էջ 614—615: Աւելի կը տեսնուի, թէ Վարդանի Յիշատակարանը ամբողջութեամբ կը գտնուէր Գրիգորի գաղափար-օրինակին մէջ, բայց արտագրութեան ժամանակ, երբ Թաթարաց Պատմութիւնը զետեղուած է ձեռագրին մէջ, աւելորդ նկատուած է Յիշատակարանին Թաթարաց հայող մասը:

սկզբնագիրը. ուստի ճշդիւ հասցուցած է պատմութեան թելը «մինչեւ առ մեզ»: Իրեն ծանօթ է Լեւոնի թագաւորութեան Դ. տարին, այն է «յետ երից ամաց թագաւորութեան նորա» (էջ 69): Լեւոն ժառանգեց հայրենի գահը իր հօր Հեթում Ա.ի մահէն († 1269 հոկտ. 29) քիչ յառաջ, իսկ օծումն ընդունեցաւ 1271 յունուար 6ին: Այսպէս հաշուելով 1272 կ'ըլլայ Դ. տարին:

Այլուր, Պատմութեան վերջին հատուածին մէջ, կ'ըսուի. «ընդ այս աւուրքս յայտնեցաւ պատուական եւ սուրբ Նշխարք Մեծին Ներսիսի հայրապետին Հայոց յիւրեանց հանգստարանին» (էջ 70): Այս Յայտնութիւնը կատարուած է «ի ժամանակս վերջին, յորում էին ի Ծննդենէն Քրիստոսի ամք ՌՄՀԵ (ըստ Եւսեբիոսի, այն է 1275—3 = 1272) եւ ի Ս. Գրիգորէ ՋԿԸ (968 + 304 = 1272) ամ եւ ի մահուանէ սրբոյն Ներսիսի՝ ՊՀԲ ամ (կ'ենթադրէ 872 + 400 = 1272) եւ ի թուականին Հայոց... ՉԻԱ (1272), ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ... եւ ի թագաւորութեան Հայոց Լեւոնի[29]»: Ըստ այսմ լուրը հասած է Ակներ 1272—1273 տարւոյն:

10. Յիշեցինք վերագոյն, թէ Թաթարաց մասին գրուածք մ'ունեցած է նաեւ Վանա-

---

[29] Սոփերք հայկականք. Է. (Վենետիկ 1853) էջ 44—45:

*կան վարդապետ։ Իր պատմութենէն օգտուած են Կիրակոս Գանձակեցի եւ Վարդան. բայց մեզի չէ հասած այն։ Օգտուելով առիթէս պատմագէտներու ուշադրութեան կը յանձնեմ Երուսաղէմի Թ.* 493 *ձեռագիրը, գրուած* 1780*ին, որ Տ. Սաւալանեանցի Ցուցակին համաձայն կը բովանդակէ «Պատմութիւն Թաթարաց», այսպիսի սկզբնաւորութեամբ. «Բայց հաճոյ թուեցաւ մեզ յայսմ. ներկայիս յայտ առնել...»։ Ի՞նչ Պատմագիրք է այս. ո՞վ է անոր հեղինակը եւ ի՞նչ անոր բովանդակութիւնը. ունի՞ որ եւ է աղերս Վանական վարդապետի գրուածքին հետ։ Կ'արժէ քննել ի մերձուստ։*

11. *Աւագ վանք։ Գրիգոր Ակներցի Միքայելի ժամանակագրութեան վերջը «յիշեցէք, կ'ըսէր, եւ զտէր Թադէոս զհայր* Աւագ անապատին, *որ զօրինակս շնորհեաց» (Բ.* 45)։ *Այս արտայայտութեան ձեւը ցոյց կու տայ, թէ վանքս Ակների մերձաւորութեան եղած ըլլալու է, թէեւ Հ. Ղ. Ալիշան իր Սիսուանի մէջ համանուն վանք մը ի Կիլիկիա չէ մատնանշած։ Ինձ կը թուի, թէ այն «Աւագ Մլիճոյն» վանքն է, որուն եկեղեցին կ'անուանուի «Սուրբ Աստուածածնի եւ սուրբ Փրկչին» (էջմ.* 199, *թղ.* 107*բ, որուն գրիչն է Կոստանդին)։ Այս Ս. Փրկիչ եկեղեցին եւ անապատը կանգնած է* 1241*ին Կոստանդին արքայահայր ի ձեռն Թադէոս վարդապետի, որ Հեթում թագաւորի ձեռնա-*

սուն որդին էր, ինչպէս ընդարձակ արձանագրութիւնը (Սիսուան, 75) կը յայտնէ։ Մլիճի վանքը կը գտնուէր Պապեռոնի բերդէն ոչ շատ հեռու։ Այս Թադէոս վարդապետ կ'երեւայ թէ յետոյ եպիսկոպոս եւ վանքին հայրն եղած է, կենդանի տակաւին 1273ին*։

---

* Յեցած այս ուսումնասիրութեան վրայ, որ նախ տպագրուած էր Հանդ. Ամս. 1948, էջ 387—403, Թաթարաց Պատմութեան երրորդ տպագրութիւնը Գրիգոր Ակներցւոյ անունով լոյս ընծայեցին. R. P. Blake and R. N. Frye, History of the nation of the Archers (the Mongols) by Gregor of Akanc‘, hitherto ascribed to Maγak‘ia the monk. The armenian text edited with translation and notes: Havard Journal of asiatic studies, vol. 12, nos. 3—4, 1949, p. 269—399։ Հրատարակութեան կից ուսումնասիրած է գրուածքին մէջ պատահած թաթարերէն անուններն եւ բառերը՝ F. W. Cleaves, The mongolian names and terms in the «History of the nation of the Archers»: Havard Journal, անդ, էջ 400—443։ Գրախօսած J. Muyldermans: Le Muséon, 63 (1950) 144—145։

8 յունուար 1953։

# Լ

# ԿԻՐԱԿՈՍ Վ. ԳԻՏՆԱԿԱՆ

## 1050՞–1127

### 1. ՊԱՌԼԱՀՈՅԻ ԴՊՐՈՑԸ

Երբ յանձնուեցաւ Անի քաղաքը Կոստանդին Մոնոմախին (1045), Գրիգոր Մագիստրոս մտաւ կայսեր ծառայութեան։ Իր մէկ թուղթին մէջ կը ներկայացնէ ան ինք զինքը «Վասպուրականի եւ Տարօնոյ եւ Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրոյ, Միջագետաց տէր եւ Մոնոմախին մագիստրոս, վեստ եւ տուկ» (էջ 213)։ Կոստանդին Մոնոմախ վախճանեցաւ 1054ին։ Գրիգոր կայսեր յանձնած էր իր կալուածներն ալ եւ փոխարէն պարգեւ ստացած Միջագետքի մէջ քաղաքներ եւ գիւղեր (Ար. Լաստ. 42)։ Գիտենք թէ ան ժամանակ մը գործեց Միջագետք. առ Սարգիս վարդապետ թղթին մէջ կը գրէ ի մէջ այլոց. «Այլ հարցիր... զի՞նչ եւ ի Միջագետս եւ կամ որպիսի պատուասիրութիւնս, մանաւանդ եթէ եւ բարձրութիւն մերոյս նահանգի եհաս ի ձեռն իմոյ տկարութեանս» (էջ 65)։ Դժբախտաբար չէ մասնանշուած մեզի թէ Միջագետքի ո՞ր կողմը յատկապէս շնորհուած են իրեն քաղաքներ եւ գիւղեր։ Մագիստրոսի մահը կը նշանակուի 1058ին։ Իր որդիներէն

մին, Վասակը, կարգուած էր դուկ (duc) Անտիոքի եւ սպանուած 1076ին (Մ. Ուռհ. 213)։ Իսկ կրտսերագոյնը՝ Վահրամ, Խաչիկ Բ. կաթողիկոսի մահէն ետքը, Կարսի նախկին Գագիկ թագաւորի ստիպմունքի վրայ կ'ընտրուի յաջորդ, Գրիգոր անունով, որ յետոյ յորջորջուեցաւ Վկայասէր։ Օծութիւնը տեղի կ'ունենայ ի Ծամնդաւ, որ բերդաքաղաք մըն էր Տաւրոսի եւ Անտիտաւրոսի լեռնաձորերուն մէջ, կոչուած նաեւ Zamandi եւ Tzaman(d)o։ Առ հասարակ ընդունուած է, թէ Գրիգոր իր աթոռն հաստատած էր այս տեղ Գագիկի հովանաւորութեան տակ։ Բայց նորագիւտ յիշատակարանները կը վկայեն թէ կաթողիկոսին աթոռանիստն էր Պաղահոյ վանքը, ուր էին, ինչպէս կը գրէ ինքնին, «մեր սեփական պարգեւական եկեղեցիքն», որոնց շինութիւնը Գրիգոր Մագիստրոսի կ'ընծայուի։ Պաղահոյ վանքին դիրքը մատնացոյց չէ եղած. բայց կ'ըսուի թէ կը գտնուէր ի ստորոտս Տաւրոսի, Սեաւ լերանց վրայ, որոնք դասականաց քով Ամանոս լերինք կը կոչուին եւ Տաւրոսական լերանց մէկ բազուկը կը համարուին եւ կը տարածուին դէպի հարաւ մինչեւ ասորական Միջագետք եւ դէպի արեւմուտք մինչեւ Եփրատ։ Միջին դարուն Սեաւ լերինք կոչուեցան, ուր հաստատուած էին մեծաթիւ վանական հաստատութիւններ, բնակուած մեծաւ մասամբ Հայերէ, Ասորիներէ եւ Յոյներէ (Սիսուան, 403—405)։

Գրիգոր վկայասէր երբ վերադարձաւ իր երկար ուղեգնացութենէն, «Հասաք, կը գրէ 1101ին, ի սուրբ լեառն, զոր Սեաւն կոչեն, ի մեր սեփհական պարգեւական եկեղեցիքն, յուխտն սուրբ, զոր ըստ ասորի բարբառոյ Պառլահոյ կոչեն, որ թարգմանի Դրախտ Աստուծոյ. եւ անդ յԼԶ. ամի մերոյ աթոռակալութեանս» թարգմանել տուի, կ'ըսէ, Թէոփիստէ հայերէնագէտին Յովհաննէս Ոսկեբերանի վարքը (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., 285)։ Այլուր «Հասի, կը գրէ (1100ին), ի ստորոտս Տաւրոսի, ի հրեշտակարնակ կայարան սրբոցն (իմացիր՝ ի վանս Պառլահոյ) եւ գտի անդ զհոգեշնորհ գիտնականն Կիրակոս, որդին իմ ըստ հոգւոյ եւ աշակերտ մեծ գիտնականին Գէորգայ փոխանորդին մեր» (Յովսէփեան, անդ 255)։ Ասկէ ազդուած, հաւանօրէն, կը վիպասանէ Ներսէս Շնորհալի (Վիպասանութիւն, էջ 548).

Մինչ ի Տաւրոս լեառն հասեալ...
Ի Սեաւ մըթին լեառն անուանեալ,
Ուր են հոգիք լուսաւորեալ...։
Զրանի սիրողըն հաւաքեալ
Եւ առ ինքեան բնակեցուցեալ։

Այս կաճառին գեղեցիկ նկարագրութիւնը կու տայ Յովհաննէս գրիչ, որ օրինակած է 1098ին Կանոնագիրք մը Գրիգոր վարդապետի համար. Գրիգոր Վկայասէր «գայլս ոմանս

յիւրոց հարազատաց ձեռնադրէ փոխանակ իւր եւ ինքն զանխլաբար պանդխտանայ ազօթից եւ վերծանութեան պարապելով: Էին նորա ուսումնակից(ք) եւ վարժակիցք վարդապետք սուրբ(ք) եւ առաքինազարդք Գէորգ Մեղրն կոչեցեալ եւ Կիրակոս, որք վարժք յաստուածայինն՝ ուշ ունելով մարգարէական երանութեանցն, յորէնս Տեառն խորհելոյն ի տուէ եւ ի գիշերի, փոյթք յառնել եւ յուսուցանել եւ ճշմարտագէտ դեղովք ապաշխարութեան զբազումս արժանացուցին շնորհին:

«Ի սոցա վարժարանէ այր ոմն հեզամիտ եւ բարեշնորհ, ներհուն եղեալ մակացութեան արհեստի՝ Գրիգոր անուն, ...հրամայէ ինձ Յովհաննիսի գրել» Հայոց եկեղեցւոյ Կանոնագիրքը: «Եւ իմ նայեցեալ ի սէր սիրեցելոյն Աստուծոյ, անյապաղ փութով սկսայ ի մեծ եկեղեցւոյն Պառլահու: Եւ անդ նեղեալ յեղեռնաթոյն ոմանց առաջնորդաց ոչ ժամանեցի ի կէս կատարման: Դիմեցի յապահով եւ ի քրիստոսակարգ եկեղեցւոջս Յովհաննու անապատիս, ի գլուխ լերինս» (Արմէնի). Հոս յառաջնորդութեան Մեղեդէի ի գլուխ կը հանէ օրինակութիւնը (Յովսէփեան, անդ, էջ 259—263):

Այս Յիշատակարանին ծանօթ կ'երեւայ Վարդան Արեւելցի, որ իր Դրուատիքին մէջ, նուիրուած Պահլաւունի երեք կաթողիկոսներուն յիշատակին եւ գրուած հաւանօրէն Հռոմկլայի մէջ, այսպէս կը պատմէ Վկայա-

սէրի մեկնումը իր աթոռանիստէն. Գրիգոր «ի տեղի իւր թողու զԳէորգ վարդապետն իւր եւ ինքն զանխլաբար գնայ ի Սեաւ կոչեցեալ լեառն եւ անցանէ ի Միջագետս ի Տրուայ վանս, որ հօր իւրոյ (Գրիգոր Մագիստրոսի) շինեալ էր. եւ տայ ի Դպրոցս զերկու որդիս մեծի իշխանին Ապիրատն կոչեցելոյ, որ էին որդիք քեռն իւրոյ, զԳրիգոր եւ զՆերսէս քաջարոյս մանկունք». եւ ինքը կ'ուղեւորի դէպ ի Կ. Պոլիս: Եթէ յիշեալ Գէորգը Լոռեցին է, սա փոխանորդ եղած էր 1069—1072 տարիներուն, երբ Գրիգոր վերին Հայաստան գացած էր: Բայց հոս խօսքը երկրորդ ճանապարհորդութեան մասին է. այս անգամ փոխանորդ չկարգեց Գրիգոր, վասն զի կային մէկէ աւելի կաթողիկոսներ: Իսկ Սեաւ լեռ բարձրանալու, ապա Միջագետք իջնալու եւ Տրուայ վանքին մէջ Դպրոց բանալու պէտքը չկար, քանի որ Պաղահոյ վանքին մէջ կար գիտուն եւ սրբասէր վանականներու կաճառ: Բոլորովին նոր կը լսուի «Տրուայ վանքին» անունը: Ապիրատի որդիք Գրիգորի ոչ թէ քեռորդիներն էին, այլ քրոջ թոռները: Ասոնցմէ Գրիգոր ծնած է կ'ըսուի 1096ին եւ Ներսէս 1102ին (Ալիշան, Շնորհալի, էջ 43—45), մինչ Վկայասէր ուղեւորած էր 1074ին: Այսպէս թէեւ հակաժամանակագրական խառնափնթոր մ'ունինք մեր առջեւ, բայց հետաքրքրական է, որ «Տրուայ վանքին» շինութիւնը կը վերագրուի Գրիգոր Մագիստրոսի, զոր կարելի է մերձեցնել Պաղահոյի վան-

քին, եւ անոր տեղը փնտռել Միջագետքի եւ Սեաւ լեռան սահմաններու վրայ:

Հ. Մ. Ջամչեան, Պատմ., Գ., էջ 20, յիշելով Վկայասէրի վերադարձը երկրորդ ճանապարհորդութենէն, կը գրէ թէ ան «եկն բնակեցաւ յառաջին կայանս իւր ի Սեաւ լերինն առ Տորոսիւ յԱրեգ վանսն»: Արեգ անունս փոխառութիւն է Մ. Ուռհայեցիէն, որուն համաձայն, երբ 1102ին խնդիր յարուցուեցաւ Զատկի տօնին համար, թէ արդեօք 6ի՞ն թէ 13ին տօնելի է, Ուռհայեցիք դիմեցին Վկայասէրին, «որ բնակեալ էր ի Սեւ լեառն, ի յանուանի անապատն որ կոչի Արիգի», եւ հարցուցին անոր հրամանը (էջ 287): Ջամչեանի ազդեցութեան տակ է Հ. Ղ. Ալիշան, որ Սեաւ լեռան վանքերուն մէջ «ամէնէն անուանին էր, կ'ըսէ, Կարմիր վանքն մօտ ի Քեսուն իշխանանիստն Գող Վասլին, եւ անոր մօտ Արեգի վանքն (եթէ ոչ նոյն). այս էր գլխաւոր կայարան Վկայասիրին, եւ յետոյ Բարսղի կաթողիկոսի» (Շնորհալի, էջ 49): Մ. Ուռհայեցւոյ տեղիքը սակայն չ'արդարացներ այս եզրակացութիւնը: «Արիգի վանքը», որ անգամ մը միայն յիշուած է հայ գրականութեան մէջ, եղած է կաթողիկոսին հիւրընկալու միայն 1102ին: Գիտենք որ միանձնասէր Դիտապետը սովոր էր վանքէ վանք շրջիլ, անգամ մ'ալ հանդիպած է այս տեղ: Ասկէ կարելի չէ հետեւցնել թէ վանքս 1100էն յառաջ ալ կաթողիկոսական կայան եղած ըլլայ: Իսկ նկատմամբ «Կարմիր վան-

*քին» նկատի առնելու է Միքայէլ Ասորւոյ պատրիարքի հաղորդագրութիւնը, որուն համաձայն «Գող-Վասիլի կինը առաւ Ասորիներէն Քեսունի մօտ գտնուած Կարմիր վանքը, որ կը պատկանէր սերունդէ սերունդ մեր ժողովուրդին: Ան դուրս հանեց ասորի վանականներն եւ տուաւ Գրիգորիս Կաթողիկոսին եւ հայ վանականներուն. նոյնպէս Ջաբարի վանքերը, որոնք Բեթ-Քենայէ կը կոչուէին, եւ են թուով հինգ վայրեր. ուր կային շատ վանականներ»*[1]*: Որովհետեւ Գող-Վասիլ ԺԱ. դարու երրորդ քառորդին սկսաւ իր նուաճումները, ուստի երբ Գրիգորիս կը գտնուէր ճանապարհորդութեան մէջ, Կարմիր վանքի գրաւումը հարկ է ի բացակայութեան Կաթողիկոսին տեղի ունեցած ըլլալ: Գող Վասիլ Կարմիր վանքը տրամադրած ըլլալու է Գրիգորիսին* 1100*էն ետքը: Հոս վախճանեցաւ եւ թաղուեցաւ Վկայասէր* 1105*ին. իսկ* 1113*ին Գող Վասիլ. նոյն տարւոյն տեղի ունեցաւ վանքիս մէջ Գրիգոր Գ. փոքր վկայասէրի կաթողիկոսութեան հաստատութեան ժողովը (Ուռհայեցի* 300, 324, 330)*: Բարսեղ կաթողիկոսի աթոռանիստն էր Շուղր, ուր եւ մեռաւ եւ թաղուեցաւ (Ուռհայեցի,* 329)*:*

*Գրիգոր Վկայասէր երբ ընտրուեցաւ կաթողիկոս (*1065*), իր մօտը առաւ Սեւանի սրբակեաց ճգնաւորը Գէորգ Վ. Մեղրիկ, եւ*

---

[1] Chronique de Michel le Syrien, ed. par J. B. Chabot, t. III, Paris 1905, p. 199.

Գէորգ Վ. Լոռեցի «մեծ գիտնականը», զոր գպրապետ կարգեց: Վերջնոյս աշակերտեցաւ Կիրակոս, հաւանօրէն նոյնպէս Վերին Հայաստանէն: Ասոնց յարեցան ապա Գրիգոր վարդապետ եւ Մատթէոս քահանայ, որ, ինչպէս ինծի կը թուի, նոյն է համանուն Ուռհայեցի ժամանակագրին հետ: Կային անշուշտ ուրիշներ ալ, որոնց անունները չեն յիշուած: Ասոնք հիմը դրին Պաղլահոյի Դպրոցին եւ ծաղկեցուցին զայն յընթացս 1065—1100 տարիներուն ապահովաբար, թերեւս նոյն իսկ մինչեւ 1110: Գէորգ Վ. Լոռեցի, որ ժամանակ մը նաեւ կաթողիկոսին փոխանորդն եղած էր (1069—1072), կաթողիկոսին հետ անհամաձայնութեան մը հետեւութեամբ, քաշուեցաւ Տարսոն եւ այն տեղ ալ վախճանեցաւ: Անհաճոյ դէպքեր պատահած ըլլալու են հոն նաեւ 1098ին, որ առիթ տուած էր Յովհաննէս գրչին հեռանալու վանքէն:

Այս կաճառը կ'ակնարկէր Ներսէս Շնորհալի, երբ կը գրէր Վկայասէրի մասին, թէ

Զբանի սիրողսըն հաւաքեալ...
Եւ առ ինքեան բնակեցուցեալ:

Այս տեղիքը չարաչար իմացած է Հ. Մ. Չամչեան, երբ հետեւցուցած է թէ Վկայասէր յԱրեգի վանս ունէր իր կայանը, «ուր եւ ժողովեաց առ ինքն արս իմաստունս եւ բանիբունս յազգէ իւրմէ եւ յազգէ Յունաց եւ Ասորւոց. եւ ի ձեռն նոցա անդադար պա-

բաժէր ի Թարգմանութիւն զանազան գրոց՝ մանաւանդ վարուց սրբոց: Ունէր առ իւր եւ զիմաստասէր ոմն յազգէ Յունաց Թէոփիլոսէ անուն տեղեակ լեզուին Հայոց, որում ետ Թարգմանել ի ձեռն Կիրակոսի վարդապետի զՄեկնութիւն Յովհաննու արարեալ յՈսկեբերանէ» (Պատմ., Գ., էջ 20): Նկատեցինք վերագոյն թէ սխալ է Արիգի վանքը կաթողիկոսին «առաջին կայանը» համարել. ուստի եւ իմաստնոց կաճառն ալ կարելի չէ այնտեղ փոխադրել. միւս կողմէ յոյն եւ ասորի թարգմանիչները ոչ թէ իրեն քով հրաւիրած է կաթողիկոսը, այլ անոնց յանձնարարած է միայն թարգմանել, իւրաքանչիւրն իր վանքին կամ բնակավայրին մէջ:

## 2. ԿԻՐԱԿՈՍ Վ. ԳԻՏՆԱԿԱՆ

Այս տիտղոսով կ՚անուանեմ Կիրակոս վարդապետը, զոր շնորհած է իրեն Գրիգոր Վկայասէր. բայց պէտք չէ շփոթել զինքը համանուն «Կիրակոս դծծակերպ գիտնականին» հետ, որ, ինչպէս կը գրէ Ստեփանոս Ասողիկ, «վարուք առաւել քան թէ բանիւք վարդապետէր» եւ կը ծաղկէր Ժ. դարու վերջին եւ ԺԱ. դարու առաջին քառորդին ի Թեղենիս (Ստ. Ասողիկ, էջ 185—186): Մատթէոս Ուռհայեցի յորջորջած է մեր Գիտնականը «Կիւրոս», որ առանց տարակուսի Կիւր<ակ>ոս իմանալու է: Ոմանք կոչած են զինքը Դրազարկեցի, վասն զի իր կեանքի վերջին իբր 15 տարիները անցուցած

է Դրազարկի մէջ։ Կիրակոսի ոչ ծննդավայրը եւ ոչ ալ ծնողաց անունները աւանդուած են մեզի։ Հաւանօրէն պատանի հասակին Գէորգ Լոռեցւոյ կամ Գէորգ Մեղրիկի հետ գաղթած է Վերին Հայաստանէն։ Աշակերտած է Գէորգ Լոռեցի «մեծ գիտնականին» Պաղահոյի Դպրոցին մէջ 1065—1072 տարիներուն։ Իր ծնունդը պէտք է ենթադրել իբր 1050ին։ Գրիգոր Վկայասէր 1100ին յիշած է զինքը, «զհոգեշնորհ գիտնականն Կիրակոս, որդի իմ ըստ հոգւոյ եւ աշակերտ մեծ գիտնականին Գէորգայ փոխանորդին մեր». իսկ Կիրակոս երախտագիտութեամբ օրհնած է յիշատակը իր ուսուցչին. «Զսուրբ վարդապետն մեր զԳէորգ, զդիտապետն Հայոց, զհովիւն բարի եւ զգաստ եւ մարդասէր հոգին, որ վերստին ծնաւ զմեզ բանիւն կենաց» (Յիշատ. Գործք Առաքելոցի Մեկնութեան)։ 1098ին Յովհաննէս գրիչ կ՚անուանէ Գէորգ Մեղրիկն եւ Կիրակոսը Կաթողիկոսին «ուսումնակիցներն եւ վարժակիցները». որոնք «սուրբ եւ առաքինազարդ» են, «արք վարժք յաստուածոյինսն», «փոյթք յառնել եւ յուսուցանել»։ Ասոնց Դպրոցէն ընձիւղած գիտէ ան Գրիգոր վարդապետը, ձեռագրին ստացիչը, որ էր «այր հեզամիտ եւ բարեշնորհ, ներհուն մակացութեան արհեստի»։ Սա էր առանց տարակուսի այն Գրիգորիսը, որուն համար խնդրած է Վկայասէր իր Տօնամակի մէջ յիշել «եւ զԳրիգորիս համանուն իմ եւ համազգի, որ եւ գրիչ եւ յօրինիչ գրոցս». եւ

*գոր Կիրակոս Կաթողիկոսին «կարեւորն» կ՚անուանէ։*

*Կիրակոս եղբայրական անձուկ սիրով եղբայրացած էր վանքիս մէջ Գէորգ Մեղրիկի հետ. կը խնդրէ յիշել Գործք Առաքելոցի Մեկնութեան յիշատակարանին մէջ «եւ զերէց աւուրբք եւ խոհականութեամբ զեղբայրն մեր եւ զանդրանիկ մերոյն կրթավարժ եւ հրահանգայեղց աշակերտութեան՝ զխաչակիրն Գէորգ մականուն Մեղր կոչեցեալն. վասն զի յորդորիչ եղեւ մեզ իսկզբանն եւ թելադիր կատարմանս սորա»։ Գէորգ «երէց էր աւուրբք» քան Կիրակոսը, վասն զի ծնած էր 1044ին. եւ «անդրանիկն մերոյն... աշակերտութեան», վասն զի նոյն դպրոցին թէ աշակերտն եւ թէ ուսուցիչն եղած էր։ Մատթէոս Ուռհայեցի կը գրէ Մեղրիկի համար, թէ ան «զառաջին (այլ ՁՁ զամենայն) ժամանակս կենաց իւրոց անցուցեալ էր միայնակեցութեան կարգօք ցամս յիսուն» (էջ 334). իր մահուան տարին է 1114/5. ուստի միայնակեցութեան առաջին տարին կ՚իյնայ 1065ին, որ Վկայասէրի կաթողիկոսութեան առաջին տարւոյն կը համապատասխանէ։*

*Գրիգոր Վկայասէր 1074—1105 տարիներուն բազմաթիւ թարգմանութիւններ կատարել տուած է հայերէնագէտ յոյներու եւ ասորիներու։ Այս թարգմանութիւնները սակայն անթերի չէին, մանաւորապէս հայկաբանութեան տեսակէտէ. կը ներկայացնէին խրթնաբանութիւններ, որոնք թէ դժուարի-*

մաց էին եւ թէ դժուարալուր հայ ականջին։ Հարթելու համար այս անհարթութիւնները, հարկադրուեցաւ Վկայասէր յանձնել այդ թարգմանութիւնները քաջ հայերէնախօսներու, յղկելու լեզուն ըստ հայ ճաշակին։ Կիրակոս վարդապետին յանձնեց Յովհ. Ոսկեբերանի Մեկնութիւնքն Գործք Առաքելոցի եւ Յովհաննու Աւետարանին, զորոնք թարգմանած էին յոյն բնագրէ Կիրակոս հռետոր եւ Թէոփիստէ, երկու լայնափոր հատորներ։ Միաժամանակ զանիկա իրեն գործակից եւ օգնական առաւ Վկայասէր Ճաշոց գրքի նոր խմբագրութեան համար։ Ասոնց մասին պիտի անդրադառնամ յետոյ լայնագոյնս։

Կիրակոս անցուց 1101—1105 տարիները հաւանօրէն Կարմիր վանքի մէջ, ուր հաստատուած էր Վկայասէր. իսկ Կաթողիկոսի մահէն († 1105) ետքը գնաց, ինչպէս կ'երեւայ, Շուղր անապատ, ուր կը նստէր Բարսեղ կաթողիկոս († 1113)։ Կը պատմուի թէ Բարսեղ կաթողիկոս «առնու ընդ իւր վարդապետս եւ եպիսկոպոսունս եւ այլ եւս ոմանս յիշխանացն եւ յընտիր տանուտէրացն եւ գայ յողջոյն իշխանաց իշխանին Վասլի (ի Քեսուն), ունելով ընդ իւր զգլխաւոր վարդապետսն զՄեղրիկ Սեւանեցին, որ զԴրագարկի սահմանն է կարգաւորեալ, եւ զԿիրակոս, (որ) շատ տօնս եւ յիշատակս սրբոց ի Մարտիրոգոքս ճաշագրոցն է յաւելեալ. եւ գայ եւ նորօք ի մեծ ուխտն սուրբ ի Կարմիր վանքն» (Յովսէփեան, անդ, 305)։ Այս այցե-

լութեան մասին ի Կարմիր վանս՝ յիշատակութիւն ըրած է նաեւ Կարապետ վարդապետ Սարգիս Շնորհալւոյ Կաթողիկեայց Թղթոց Մեկնութեան Նախերգանքին մէջ (Յովսէփեան, անդ, էջ 301)։

Բարսեղ կաթողիկոս եւ Գող Վասիլ իշխանաց իշխան վախճանեցան 1113ին. եւ Գրիգոր Ապիրատեան ընտրուեցաւ կաթողիկոս։ Կ՚երեւայ թէ այս միջոցին երկու հարազատները՝ Գէորգ եւ Կիրակոս փոխադրուած էին արդէն Դրազարկ. Յիշատակագիր մը կը գրէ թէ կային հոն «Լուսաւորք ոգւով վարդապետք ի նմա՝ Գէորգ եւ Կիրակոս եւ Իգնատիոս հռչակեալն» (Յովսէփեան, անդ, 341)։ Այն ստոյգ է որ Կիրակոս 1113ին ի Դրազարկ էր. այս տարւոյն Գէորգ գրիչ կ՚օրինակէ անոր համար Աւետարան մը (տե՛ս վարը)։ Յաջորդ տարւոյն, 1114/5ին վախճանեցաւ Դրազարկի մէջ Գէորգ Մեղրիկ։ Զանցած 14 տարի՝ վախճանեցաւ նաեւ Կիրակոս վարդապետ եւ թաղուեցաւ նոյն վանքին մէջ. Մատթէոս Ուռհայեցի կ՚արձանագրէ իր Տարեգրքին մէջ ի յիշատակ Կիրակոսի տողերս, յամի ՇՀԶ (1127/8).

«Իսկ ի թուականութեանն Հայոց ՇՀԶ մեռանէր սուրբ վարդապետն Հայոց, որ ասի Կիր<ակ>ոս, նմանեալ առաջին սրբոցն, ուսեալ զամենայն Կտակագիրսն Աստուծոյ եւ ամենայնի խորին քննութեամբ հասու եղեալ, լիապէս հասեալ ի վերայ Հին եւ Նոր Կտակարանացն Աստուծոյ, ընկերակից Գէորգայ

վարդապետին, որ ասի Մեղրիկ։ Սա մեռաւ եւ թաղեցաւ ի վանքն որ կոչի Դրազարկ. եւ կոչեցաւ վանքն այն Գերեզմանատունք սուրբ վարդապետացն. վասն զի անդ թաղեցաւ սուրբ վարդապետն Հայոց որ ասի Մեղրիկ, որ ժողովեաց անդ զամենայն դասս ճգնաւորացն Քրիստոսի եւ հաստատեաց անդ կարգ եւ կրօնք զառաջին սրբոց հարցն» (էջ 366 տպ. Վաղարշապատ 1898)։

Մահուան տարին Սամուէլ Անեցւոյ Ժամանակագրութեան մէջ (էջ 128) նշանակուած է. «Ի ՇՀ (1121) թվին վարդապետն Կիրակոս կանոնագիրն Դրազարկուն հանգեաւ ի Քրիստոս»։ Անճիշդ է ոչ միայն թուականը, այլ եւ Կիրակոսի «կանոնագիրն Դրազարկուն» ըլլալը. այս պատիւը կ'ընծայուի Գէորգ Մեղրիկին։

Յիշատակագիր մը 1123ին ի Դրազարկ կը գրէր. «Որպէս Հռովմայեցւոց քաղաքն ունելով զերկուս արեգակն զՊաւղոս եւ զՊետրոս, սոյնպէս եւ Անապատս այս ունելով զերկուս լուսաւորս՝ զգերակայ վարդապետն Կիրակոս եւ զմականուն վարդապետն Արքայեցի Գրիգոր կոչեցեալ. երկոքին քաջք եւ առաքինիք, առաքինութեամբ անհաս եւ գիտութեամբն գերիվերոյ քան զամենեսեան» (տե՛ս վարը)։ Իսկ 1113ին Գէորգ գրիչ կը խնդրէ յիշել Աւետարանին ստացիչն «զԿիրակոս տիեզերական եւ գերահռչակ գիտնական» (տե՛ս վարը)։

Հայ գրականութեան մէջ սկսեալ ԺԸ. դարէն Կիրակոս վարդապետ ներկայացուած է իբրեւ «Թարգմանիչ» յունարէնէ եւ ասորերէնէ։ Այս ըմբռնումը յառաջացած է Յովհաննու Մեկնութեան ձեռագրէ մը, որուն ներկայացուցիչն է Երուսաղէմի Թ. 460 յամէ 1691)։ Ձեռագրիս յիշատակագիրը կը խնդրէ յիշել «գւրբագան Կիրակոս վարդապետն, որ ...Ասորւոց գրէ եւ լեզուէ եւ ի յունականէն քերթողական արուեստիւ թարգմանեալ է ի հայ բառ եւ գիր» (Զարբհանալեան, Մատենադարան, էջ 613)։ Նոյնը կ'երեւայ թէ գտնուած է այն երկու հնագոյն ձեռագիրներէ մէկուն մէջ, զորոնք ունեցած է Մեկնութեանս հրատարակիչն (Կ. Պոլիս 1717, էջ 487). հոս ալ կը խնդրուի յիշել «գւրբագան Կիրակոս վարդապետն որ... թարգմանեաց զսա ի յունականէն ի հայ բարբառ եւ գիր»։ Այսպէս նաեւ Ստեփանոս Ռօշքա նոյն Մեկնութեան «Թարգմանիչը» գիտէ Կիրակոս վարդապետը (Վիեննա, Ցուցակ, էջ 180. իրեն հետեւած է Հ. Յ. Տաշեան, անդ, էջ 1101). Հ. Մ. Չամչեան, Պատմ., Գ., 16, 508. «Սորա (Կիր. վարդապետի) է թարգմանութիւն Մեկնութեան Յովհաննու». իսկ էջ 20 կը գրէ ուղիղ՝ Թէոփիստէ թարգմանիչ, Կիրակոս սրբագրող։ Այսպէս ալ Հ. Մ. Աւգերեան, Լիակ. Վարք, ԺԱ., էջ ՉԹ. Ճաշոցի խմբագրին համար կը գրէ. «Սա ինքն է Կիրակոս Վ. թարգմանիչ՝ գործակից Վկայաբանին յամենայնի» (Նոյն-

պէս Աճառեան, Բ., 621—623, Ակինեան, Հանդ. Ամս. 1950, էջ 131, 138, 140): Quadro, 1825, էջ 35 եւ Somal, էջ 76. ՆՀԲ. Ա. 17 միաբերան կը կրկնեն թէ Յովհաննու Մեկնութիւնը թարգմանած է ասորերէնէ Կիր. վարդապետ:

Գրականութիւն

1. *Մատթէոս Ուռհայեցի*, Ժամանակագրութիւն: Վաղարշապատ 1898, էջ 366:

2. *Սամուէլ Անեցի*, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ 1893:

3. *Յովհ. գրչի Յիշատակարանն* 1098էն. հրտ. Հ. Ն. Ակինեան, Հանդ. Ամս. 1930, էջ 561 = Թուղթ Մակարայ Բ. Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս Սիւնեաց եպիսկոպոս. Վիեննա 1930, էջ 96—98: Նոյնը լատիներէն թարգմանութեամբ՝ P. Peeters, Un témoignage autographe sur le siège d'Antioche par les Croisés en 1098: Miscellanea historica in honorem Alberti De Meyer, t I. Louvain 1946, p. 373—390. Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ 259—260:

4. *Մեկնութիւն սրբոյ աւետարանին որ ըստ Յօհաննու... արարեալ Յօհաննու Ոսկեբերանի*: Կ. Պոլիս 1717:

5. *Հ. Մ. Չամչեան*, Պատմութիւն Հայոց, Գ. հատոր, Վենետիկ 1784, էջ 16, 20, 34:

6. *Հ. Մ. Աւգերեան*, Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, հատոր ԺԱ, Վենետիկ 1814. Յաւելուած, էջ Ձէ—Ղ:

7. Quadro delle opere di vari autori anticamente tradotte in Armeno, Venezia, 1825.

8. P. S. Somal, Quadro della storia letteraturia di Armenia. Venezia 1829.

9. *Նոր Բառգիրք հայկազեան լեզուի, Ա., Վենետիկ* 1836, *Նախադրութիւնք, էջ* 17:

10. *Հ. Ղ. Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ* 1873, *էջ* 32—33:

11. *Հ. Գ. Զ(արբհանալեան), Հայկական հին Դպրութեան պատմութիւն, Վենետիկ* 1897, *էջ* 602—603, 705:

12. *Հ. Գ. Զարբհանալեան, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ* 1889, *էջ* 611—613:

13. *Հ. Աճառեան, Հայոց անձնանունների բառարան, Բ., Երեւան* 1944, *էջ* 621—623:

14. *Հ. Ն. Ակինեան, Գէորգ Վ. Մեղրիկ եւ իր գրութիւնները, Հանդ. Ամս.* 1950, *էջ* 129—146:

15. *Գարեգին Ա. կաթողիկոս [Յովսէփեան], Յիշատակարանք Ձեռագրաց, Ա., Անթիլիաս* 1951, *էջ* 259—264, 285—286, 309—328:

## Գրութիւնք

*Կիրակոս վարդապետ որ կը գովուի Գրիգոր Վկայասէրէն իբրեւ «հոգեշնորհ գիտնական». եւ Մ. Ուռհայեցիէն իբրեւ այր «ուսեալ զամենայն Կտակագիրսն Աստուծոյ եւ ամենայնի խորին քննութեամբ հասու եղեալ,*

*լիապէս հասեալ ի վերայ Հին եւ Նոր Կտակարանացն Աստուծոյ», չէ Թողուցած մեզի որ եւ է ինքնակաց գրուածք մը, որ համապատասխանէ այս գրուատիքներու :*

*Մեզի ծանօԹ են իրմէ .*

ա. Սրբագրութիւն Գործք Առաքելոցի Մեկնութեան թարգմանութեան ի ձեռն Կիրակոս հռետորի :

բ. Սրբագրութիւն Յովհաննու Աւետարանին Մեկնութեան թարգմանութեան ի ձեռն Թէոփիստէի :

գ. Տօնամակի կամ Ճաշոցի լրացումը :

դ. Յիշատակարան մը *իր յանձնարարուԹեամբ* 1113*ին Դրազարկ գրուած Աւետարանի մը վերջը :*

ե. Մեկնութիւն Գործք Առաքելոցի, *որմէ հասած են մեզի հատուածներ միայն :*

*Բացի այս հինգէն կ'ընծայուին Կիրակոս վարդապետի*

զ. Շարականն Արեւելք գերարփին :

*Հ. Մ. Չամչեան, Պատմ., Գ.,* 20 *կը գրէ. «Ասի ուրեք՝ Թէ սա (Կիրակոս վարդապետ) արար զշարականն* Արեւելք գերարփին *ի Փոխումն սուրբ Աստուածածնի. բայց կարծի առաւել յոմանց Թէ այն իցէ արարեալ յայլմէ Կիրակոս վարդապետէ Եզնկացւոյ, որ ծաղկեցաւ ի յետին ժամանակս ի ԺԵ. դարուն» : Իսկ էջ* 509 *խօսելով Կ. Երզնկացւոյ մասին կը գրէ. «Սմա ընծայեն ոմանք եւ զսքանչելի շարականն... Արեւելք գերարփին... : Իսկ ոմանք տան զայն միւս Կիրա-*

կոս վարդապետի Թարգմանչին յաւուրս Վկայասիրին... եւ կամ գուցէ այլոյ ուրուք իցէ. այլ մեք չունեմք աստէն զհաւաստին որոշել»:

Շարականս, կոչուած Անձինք Վերափոխման Ս. Կուսին, հին Շարակնոցներու մէջ երեւան կու գայ արդէն 1317ին (Էջմ. Կար. 660), 1343ին (Վիեննա, 173): Ձեռագիրներէն ոմանք (այսպէս Վիեննա, 403, յամէ 1484) կ'ընծայեն Կիր. Երզնկացւոյ. նոյնպէս գիտէ նաեւ Առաքել Սիւնեցի (Քերթուածք, էջ 322): Իսկ Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա., էջ 108), խօսելով Կիրակոս Արեւելցւոյ կամ Գետիկցւոյ մասին, կը գրէ թէ շարականիս հեղինակը «Կիրակոս Արեւելցի» կոչուած է: Ինձ անծանօթ է այս յորջորջումը:

Է. Յայսմաւուրք: Հ. Մ. Աւգերեան, Լիակատար Վարք, ԺԱ., էջ ՀՁ, որ Կիրակոս Արեւելցւոյ Յայսմաւուրքի մասին իր տեղեկութիւնները երկրորդ ձեռքէ ունի, կը գրէ, թէ Կիրակոս Արեւելցի, «որ ասի Երզնկացի, ապա թէ ոչ՝ է գործ Կիրակոսի վարդապետի աշակերտին Վկայասիրի, ի յետնոց զարդարեալ այլ եւս յաւելուածովք՝ զկնի աւուրց Շնորհալւոյն»: Այսօր սակայն կան հրապարակի վրայ մէկէ աւելի օրինակներ Կիրակոս Արեւելցւոյ կամ Գետիկցւոյ Յայսմաւուրքին. եւ կարելի չէ շփոթել զայն ոչ համանուն Երզնկացւոյ եւ ոչ ալ Վկայասէրի գործակցին հետ:

## 3. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑԻ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

1. Յունարէն բնագիրը: *Յովհաննէս Ոսկեբերան Կ. Պոլսոյ եպիսկոպոսապետը († 14 սեպտ. 407) մեկնած է ճառօրէն Հին եւ Նոր Կտակարաններու կարգ մը գրքեր: Անոնց թուին մէջ է Գործք Առաքելոցի Մեկնութիւնը, խօսուած Կ. Պոլիս 400ին կամ 401ին 55 ճառերով:*

*Այս ճառերը հասած են մեզի յունարէն բնագրով: Կ'ըսուի, թէ անոնք Ե. դարուն լատիներէնի թարգմանուած ըլլան Կասիոդորոսի խնդրանքով եւ Մուտիանոսի թարգմանութեամբ: Ունինք Մեկնութիւնս նաեւ հայերէն թարգմանութեամբ կատարուած 1076ին Գրիգոր Վկայասէրի յանձնարարութեամբ ի ձեռն Կիրակոս հռետորի ի Կ. Պոլիս:*

*Բանասէրներէն ոմանք, որոնք ուսումնասիրած են Ոսկեբերանի լեզուն, ոճն եւ արտայայտութեան եղանակը, չգտնելով Մեկնութեանս մէջ նոյն Հօր ինքնայատուկ առաւելութիւնները մտամոլոր մնացին ճառերուս հարազատութեան նկատմամբ: Երազմոս չուզեց իսկ Ոսկեբերանի գրչէն համարել զայն: Բայց որովհետեւ ի նպաստ հարազատութեան կան բազմաթիւ փաստեր, ներքին եւ արտաքին, ուրիշներ միացան այն համոզմունքի, թէ այդ թերութիւնները արդիւնք են այն հանգամանքին, որ Ոսկեբերանի խօսած ճառերը գրի առած են արագագիր գրիչները եւ ճառախօսը չէ ունեցած*

*ժամանակ զանոնք աչքէ անցնելու եւ յղկելու, ինչպէս սովոր էր ընել ուրիշ դէպքերու մէջ:*

Montfaucon *յոյն բնագրէն երեք ձեռագիր կը յիշէ.* Colbert*եան եւ* Coislin*եան Մատենադարաններու մէջ: Անոնցմէ մէկն է Պարիսի Ազգային Մատենադարանի* gr. 729, *որուն համար կը գրէ* Montfaucon, *թէ այնքան կը չեղէր միւս երկուքէն, որ կարելի չէր համեմատութիւն առնել անոնց հետ:*

*Յոյն բնագրին առաջին տպագրութիւնը հոգաց* H. Savile, *լոյս տեսած յԵտոն 1612ին. ապա* Ch. Morel, *Պարիս 1636ին եւ ի վերջոյ* B. de Montfaucon, Joannis Chrysostomi opera omnia, t. IX (Paris 1731), 1—416: *Ասկէ արտատպուած՝* Migne Patrologia graeca, t. 60:

*Այժմ մասնաւոր ուշադրութիւն դարձուած է Պարիսի* gr. 729 *ձեռագրին, զոր կ'ուզէ* Edgar R. Smothers *Յիսուսեանը հրատարակութեան պատրաստել: Այս նպատակով դիմած էր ինձ տեղեկութիւններ խնդրելու հայերէն թարգմանութեան մասին: Բաւականութիւն տալու համար իր փափագին, լայնագոյն չափով նկատի պիտի առնեմ թարգմանութիւնս եւ յարակից հարցերը:*

2. Կա՞ր Գործք Առաքելոց Մեկնութեանս հնագոյն հայերէն թարգմանութիւն մը: *Մեր թարգմանիչները երբ թարգմանեցին Աստուածաշունչը, փոյթ տարին որ տան նաեւ անոր մասերու Մեկնութիւնները: Այս նպատակով թարգմանեցին Եփրեմ Ասորւոյ*

*եւ Յովհաննէս Ոսկեբերանի մեկնողական գործերը։*

*Յովհ. Ոսկեբերանի գործերէն Թարգմանուեցան.*

ա. *Սաղմոսաց*, բ. *Եսայեայ*, գ. *Մատթէի*, դ. *Յովհաննու եւ* ե. *Պաւղոսի Թղթոց Մեկնութիւնները։ Այս Թարգմանութիւնները ժամանակը չէ պահպանած սակայն ամբողջ եւ անվթար։ Բայց եւ այնպէս ունինք ինչ ինչ Մեկնութիւններ էական մասով փրկուած, եւ ուրիշներէն հասած են մեզի հատակոտորներ։ Եթէ Նախնիք այս Մեկնութիւնները արժանի համարեցան Թարգմանելու, ունէի՞ն պատճառ մը անտեսելու Գործք Առաքելոցի Մեկնութիւնը։ Ձենք կրնար հաստատել գայս։ Բայց եւ այնպէս չունինք որ եւ է հատակոտոր մը մեր ձեռքը, որուն վրայ հիմնուելով կարենանք ապացուցանել, Թէ կար նաեւ անոր Թարգմանութիւնը։ Այս լռութիւնը սակայն Թոյլ չի տար տակաւին ժխտելու անոր գոյութիւնը։ Զունէինք որ եւ է հատակոտոր նաեւ Սաղմոսաց Մեկնութենէն, որ գուշակել տար մեզի անոր Թարգմանութիւնը, բայց եւ այնպէս ասորական–հայկական կրկնագիր ձեռագիր մը բերաւ երեւան հայ Թարգմանութենէն ընդարձակ բաժին մը*[1]*։ Կրնանք յուսալ Թէ ապագան նման անակնկալ մը կարող է պատճառել մեզի։ Ս. Եփրեմի Մեկ–*

---

[1] *Հանդ. Ամս.* 1917/8, էջ 1—32։

նութիւնը Գործք Առաքելոցի միակ ձեռագրի մէջ հասած է, եւ այն առանց խորագրի։ Իցիւ բախտը նաեւ Մեկնութեանս ժպտէր։

Այս կարծիքի է նաեւ Գործք Առաքելոցի խմբագիր Մեկնութեան հրատարակիչը, որուն են տողերս. «Որ թէպէտ եւ ըստ հասարակաց կարծեաց առ Թարգմանչօք փոխեալ թուի ի հայ, որպէս հատուածք ինչ անտի ի հին ճառընտիրս երեւեալք զայնր զարու ցուցանեն ոճ չարագրածոյ, այլ գուցէ հնոյ թարգմանութեանն օրինակ կորուսեալ՝ վերստին եւ թարգմանել Վկայասէրն» (Յառաջաբան)։

Այս տեսակէտէ միայն վարը § 6 յառաջ բերուած հատուածներէն 1 եւ 2 կարող են նկատողութեան առնուիլ. Թ. 2 ամբողջութեամբ պիտի տամ գրութեանս վերջը։

3. Գործք Առաքելոցի Մեկնութեան նոր թարգմանութիւնը։

Գրիգոր Վկայասէր Կ. Պոլիս կը հասնի 1075ին։ Իր նպատակն էր թարգմանել տալ Ոսկեբերանի Մեկնութիւնն Գործոց Առաքելոց, «զտենչալին յոքունց», եւ Վկայաբանական գրուածքներ, որոնք կը պակսէին հայ գրականութեան մէջ։ Առ այս գտաւ քաղաքին մէջ Կիրակոս հռետորն եւ Ժորժ անուն քահանայն, որոնք գրագէտներ էին, ծանօթ յոյն եւ հայ լեզուերու։ Ասոնք հաւանօրէն Հայ-հոռոմներ էին։ Առաջնոյն կը յանձնէ «առատաձեռն պարգեւօք» թարգ-

մանել Ոսկեբերանի Գործք Առաքելոցի Մեկնութիւնը. երկրորդին՝ Վկայաբանութիւններու թարգմանութիւնը, յանուանէ Ստեփանոս Ուռնեցւոյ վկայութիւնը: Թէպէտ հայերէնագէտներ էին անոնք, բայց անվարժ էին յոյն բնագիր մը անթերի հայկաբանութեամբ հայացնելու: Այս պատճառաւ երբ թարգմանութիւնները ներկայացուց Վկայասէր Պառլահոյի իմաստասէրներու կաճառին, չգտաւ անոնց հաճութիւնը: Հարկադրուեցաւ Կաթողիկոսը այդ թարգմանութիւնները հմուտ հայերէնախօսներու յանձնել յղկելու եւ կոկելու անոնց խրթին, յոյն բնագրէ ստրկական հելենաբանութեամբ հայացուած տողերը: Մեկնութեան սրբագրութիւնը կատարեց Կիրակոս վարդապետ, ի հարկէ առանց աչքի առաջ ունենալու յոյն բնագիրը: Որչափ ալ կը հաւաստէ Կիրակոս, որ շատ ուշադրութեամբ կատարած է իր սրբագրութիւնները, ըստ կարի աշխատելով, որ չայլայլի բնագիրը, բայց եւ այնպէս կամայ ակամայ պիտի աղաւաղէր բնագրին ամբողջութիւնը: Այս կէտին ուշադիր կ՚ընեմ բանասէրները, երբ ուզեն Հայ թարգմանութեան հիման վրայ վերակազմել յոյն բնագիրը:

Այս տեղ կը ներկայացնեմ Գրիգոր Վկայասէրի Յիշատակարանը, զոր նաեւ Գէորգ Լամբրոնացի զետեղած է իր խմբագիր Մեկնութեան վերջը:

*Ձեռագրին մէջ այս Յիշատակարանին կը յաջորդէ Կիրակոս վարդապետի Յիշատակագրութիւնը, զոր պիտի տամ քիչ յետոյ ուրոյն բաժնի մէջ։*

## Թարգմանութեան Յիշատակարանը

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից ամէն։*

*Այերս նորոգող ստացողիս [եւ աշխատասիրաբար նորոգողի]։*

*Յամի վեցհազարերորդի հինգհարիւրորդի առաջնորդի արարածոց աշխարհի[1]. եւ ի հազարերորդի եւթանասներորդի եւթներորդի Կենարարին մերոյ գալստեանն[2], եւ ըստ Խոսրովային թուոյ Հայկազանցս հինգհարիւրորդի քսաներորդի հինգերորդի[3], ի թագաւորութեանն Միքայէլի Դուկի[4], եւ ի պատրիարգութեանն Կոզմայի երկարնակի[5]. ես Գրիգորիս որդի Գրիգորի Պալհաւունոյ, ողորմութեամբ մեծին Աստուծոյ արժանացեալ աթոռոյ հաւրն իմոյ սրբոյն Գրիգորի եւ ըստ յառաջատես տեսլեան սրբոյն Սահակայ՝ ի սատակացեալ սրոյ Սկիւթացւոցս*

---

[1] «Յամի ՅՇԱ (6501) արարածոց աշխարհի». կ՚ենթադրէ մինչեւ Քրիստոս 5425. ուստի 6501 - 5425 = 1076։

[2] «Ի ՌՀԷ Կենարարին մերոյ գալստեան». այն է 1077—1 = 1076։

[3] «Ըստ Խոսրովային թուոյ Հայկազանցս ՇԻԵ» = 525 + 551 = 1076։

[4] «Ի թագաւորութեան Միքայէլի Դուկի». այն է Միքայէլ Է. Դուկաս («Տուկիծ»), 1071—1078։

[5] «Ի պատրիարգութեանն Կոզմայի երկարնակի». կ՚ակնարկէ Կոզմաս Ա. Երուսաղեմացին, Կ. Պոլսոյ Յունաց պատրիարքը, 1075 օգոստոս—8 մայիս 1081։

*հալածանաւք հասի ի պայծառաշէն կայանս սրբոյն Կոստանդիանոսի: Եւ մեծաւ ըղձմամբ հայցեալ՝ գտի զտենչալիս յոքունց, զգերահրաշ Մեկնութիւն Գործոց Առաքելոցն մեծին Յովհաննու Ոսկեբերանի, լուսաւոր եւ հոգէշահ վարդապետութեամբ: Եւ հանդիպեալ հմտագոյն հռետորին Կիւրակոսի յունական եւ հայկական ուսմամբ պերճացեալ. եւ առատաձեռն պարգեւաւք ետու թարգմանել զտենչալիս ոգւոյ իմոյ: Եւ ընկալեալ սրտալիր ուրախութեամբ իբրեւ զտախտակսն Նախամարգարէին. եւ մեծաւ տաժանմամբ հասեալ զհամատարածն Լիբիա եւ Ասիական ծոցոյն, խնամաւք Հոգւոյն հասի ի բաժինս Սեմայ, ի ստորոտս Տորոսի, ի հրեշտակարնակ կայարան սրբոցն:*

*Եւ գտի անդ զհոգէշնորհ գիտնականն Կիրակոս, որդի իմ ըստ հոգւոյ եւ աշակերտ մեծ գիտնականին Գէորգեայ փոխանորդին մեր: Եւ սորա յաւժարական մտաւք աշխատութիւն զանձամբ առեալ, ըստ առատատուր Հոգւոյն պարգեւացն, վերստին արծարծեալ զխորթացեալ բանս Հռետորին, յեղանակելով ի դիւրալուրս եւ յարմարականս մերոյին ազինս:*

*Արդ մաղթեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ հոգիաբուղխ պատգամիս, յիշել զիմ աղկաղկութիւնս ի Տէր սրտի մտաւք. ընդ նմին եւ զաշխատողս ի սմա, եւ գրել զփոքր յիշատակս ընդ սմին գրոց, յորժամ գրեսջիք, եւ մի պակասեցուցանել. զի եւ*

*պճեղ գրեսցէ Տէր ի գիրն կենաց, յաշխարհն կենդանեաց, որ է եւ եղիցի աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից:*

=*էջմ*. 1315, *թղ*. 452*ա—բ*: *Ասկէ նաեւ Յովսէփեան, Յիշատակարանք ձեռագրաց, Ա*., 255—256: *Տես նաեւ Խմբագիր Մեկնութիւնն Գործոց, էջ* 467—468:

4. Կիրակոս հռետոր թարգմանիչ:

*Գրիգոր Վկայասէր հանդիպած է իրեն* 1075*ին Կ. Պոլիս*: *Անոր նկարագիրն կու տայ. «հմտագոյն հռետորն Կիրակոս յունական եւ հայկական ուսմամբ պերճացեալ»*: *Իրեն կը յանձնարարէ թարգմանել Յովհ. Ոսկեբերանի Գործք Առաքելոցի Մեկնութիւնը, վարձատրելով առատաձեռն պարգեւներով: Այս թարգմանութիւնն ի գլուխ կ'ելլէ. բայց կը նկատուին անոր մէջ «խրթնացեալ բանք», այսինքն տեղ տեղ յոյն բնագիրը թարգմանուած է ստրկական, որ դժուարահաս եւ անախորժ կը հնչուին հայ ընթերցողերուն համար: Հարկ կ'ըլլայ նոր աշխատութիւն. կաթողիկոսը կը յանձնէ Կիրակոս վարդապետին ի Պաղահոյ վանս վերածելու զայն «յեղանակելով ի դիւրալուրս եւ յարմարականս մերոյն ազինս»*:

*Ո՞վ էր այս Կիրակոս հռետոր: Դժբախտաբար Վկայասէր անոր մասին անդրագոյն տեղեկութիւններ չէ հաղորդած: Նոյն քաղաքին մէջ Վկայասէրի հօր Գրիգոր Մագիստրոսի օրով կար համանուն անձ մը իմաս–*

տասիրական հարցերով զբաղած, որուն հետ թղթակցութեան մէջ ապրած է Մագիստրոս. ունինք իր Թղթոց գրքին մէջ երկու թուղթ ուղղուած «առ Կիրակոս յոյն դպիր» (էջ 109—116)։ Երկրորդ թուղթը կ'ենթադրէ յանձին Կիրակոսի մէկը, որ «ի մէջ բազմութեան ամբոխի», այսինքն իմաստուններու կաճառի մէջ կը բանախօսէ տիեզերախօսութեան մասին։ Մագիստրոս կը գրէ իրեն. «Եթէ կամեցիս ի ծերութեանդ զմանկականն եւ այժմ ուսանել, ընթերցցիս զմատեանն Գ. Գաղիանոսի... որ ի սակս կազմութեան մարդոյ» (էջ 112)։ Արդ «Կիրակոս յոյն դպիր», որուն հետ Մագիստրոս կը թղթակցի հայերէն՝ իմաստասիրական հարցերու շուրջը, ակամայ կը յիշեցնէ Կիրակոս հռետորն որ «յունական եւ հայկական ուսմամբ պերճացեալ» է։ Մագիստրոսի թուղթը թուական չի կրեր. բայց հաւանօրէն գրուած է 1050էն ետքը. եւ եթէ իր «ծերացեալ» թղթակիցն այն միջոցին 50—60 տարիքի մէջ էր, կարող էր 1075ին ըլլալ 70ի մէջ մերձաւորապէս, տակաւին յուժի պարապելու թարգմանութեամբ։ Այսպէս Կիրակոս երբեմն ապրած Վկայասէրի հօր հետ թղթակցութեան մէջ, ուրախութեամբ յանձն պիտի առնէր ընդ առաջ գալ իր թղթակցին բարձրաստիճան որդւոյն գրական առաջարկութեան։ Զարմանալի չէ այնուհետեւ, եթէ խրթնաբան Մագիստրոսի թղթակիցը իր թարգմանութեան մէջ խրթնաբան երեւցած ըլլայ։

5. Կիրակոս վարդապետի Յիշատակարանը։

*Գրիգոր Վկայասէր 1100ին յանձնեց Գործք Առաքելոցի Մեկնութիւնը Կիրակոս վարդապետի, որպէս զի սրբագրէ թարգմանութեան անհարթութիւնները. եւ ան, ինչպէս կը գրէ Վկայասէր, «յօժարական մտօք աշխատութիւն զանձամբ առեալ... վերստին արծարծել գխորթացեալ բանս Հռետորին՝ յեղանակելով ի դիւրալուրս եւ յարմարական մերոյին ազինս»։ Սրբագրութիւնը գլուխ կ'ելլէ հաւանօրէն 1102/3ին։ Կիրակոս վարդապետին յորդորիչ եւ քաջալեր կ'ըլլայ Գէորգ Մեղրիկ։*

*Այս տարւոյն գրուած ըլլալու է նաեւ Կիրակոս վարդապետի Աղերսը, ինչպէս կ'ըսուէր Վկայասէրի Յիշատակարանին վերնագրին մէջ։ Շատ լայնաբար յօրինած է Կիրակոս իր Աղերսը, որ պահուած է միայն էջմ. 1315ի մէջ։ Նոյնը ինչ ինչ փոփոխութիւններով, յապաւումներով եւ յաւելուածներով կրկնուած է Յովհաննու Մեկնութեան վերջը։ Գարեգին Կաթ. Յովսէփեան, Յիշատակարանք Ձեռագրաց, Ա., էջ 309—318, այս երկուքը մէկի վերածած է, մասնաւոր ցուցմունքներով, երբ անտեսուած են ինչ ինչ տողեր։ Կարեւոր համարեցայ Սկզբնագիրը, որ Գործոց Մեկնութեան համար գրուած էր, իբրեւ Կիրակոսի անդրանիկ գրութիւնը ամբողջութեամբ տալ. էական մասը անձամբ օրինակած էի ձեռագրէն*

*(1927ին), լրացումը կատարեցի Յովսէփեանի հիւսուածքէն հանելով:*

Աղերս աշխատասիրաբար Նորոգողի:

*Յիշատակարան գրոցս ըստ պատշաճի յանգման:*

*Զաստուածպետական բոլոր գոյացութիւնն թէ զի՞նչ երբեք իցէ, առ ի յասացելոցն աւրհնաբանի, գեր զբան եւ անհաս ի մտաց իմանալեացն եւ ի մարմնաւորաց, իսկ զնոյն բարերարութիւնն որոշեալ եւ յայտնեալ ըղձափափագ աղաւթիւք ձեռնարկելի է մաքուր մտաց սրբոց ասելով.*

*Երրորդութիւն գերագոյ, գերագոյնդ Աստուած եւ գերագոյնդ բարութիւն, քրիստոնէից վերատեսուչ, յաստուածայնոյ իմաստութեանն ուղղեայ զմեզ, ի խորհրդականացն ասացելոց, գերածանաւթ եւ գերաճանաչ եւ ծայրագոյն գագաթն, ուրանաւր պարզքն եւ արձակք եւ անփոփոխելիք աստուածաբանութեանն խորհուրդք, ըստ գերալուսութեան ծածկեալ, թաքնախորհուրդ լռութեանն մի գոլ:*

*Բայց մեզ ըստ իրիս առաջի կացելոյ ի գրաւ զաւրեղիս, աստուածախաւս տառիս, զոհութեամբ զամենայնս աստուածպետական յառաջ ճանապարհացն զգործս աւրհնաբանելի է, վասն զի լոյսն փառաց հաւր էական ինքնաբուն միութիւն, գերակատար ծայրալրութեամբ կատարողական, տեսակ բարի, ի նիւթի ոչ տեսակ, մերովս արարչա-*

պետութեամբ տեսակ, զմերս բաց երեսաւո-
րեալ տիպ անխառն առ ամենեսին, եկեալ
խոնարհութեամբ ի մարմնի միացեալ, որով
կատարեալ զոնաւրինականսն, եւ վերստին
արարչագործեալ զազգս մարդկան, ի փառս
աւրհնաբանութեան երկրորդական դասուց:
Որով ընտրեալ զընտրեալսն ի սկզբանէ, կե-
նարար բանիւն եւ զաւրութեամբ մեծապայ-
ծառ լուսազգեացս արարեալ, վերակարգէ ի
փառազնատեսակ կառուցման ի հոյլս ժո-
ղովրդոց գլուխս, որոց եւ զաստուածածա-
նաւթ, զաստուածագործ անունն, վերակո-
չեալ առաքեալս, ինքեան պարգեւատուի,
առաքելոյ փոխանորդս կացուցանէ, խոստա-
նալով աւետեաւք զգալուստ ի նոսա աս-
տուածպետական Հոգւոյն:

Արդ նոքա զաւրացեալք ի Բանէն աս-
տուածագործ Հոգւոյն լցեալք, տախտակք
աստուածագիրք եւ արձանք բանաւորք աս-
տուածատեսակք եղեալ, լուսոյն ճշմարտի
կայարան զտեալք եւ թագաւորեալք ի լոյս,
ընթացան լուսով ընդ տիեզերս, արեգա-
կունք արդարութեան եղեալ աստուածային
կենարար բանիւն, եւ աստուածագործ Նորո-
գատուր հոգւոյն լցին զընդհանուրս, հալա-
ծեցին զխաւար եւ բարձին զմոլորութիւն
յաշխարհէ, փախուցին զժանդն սատանայ,
ամենայն չարագործ դիւաւքն, փշրեցին
զպատկերսն սատանայի, զոր պաշտէին մար-
դիկ, եւ զճենճերս չարաւահոտս, զարշելիս
երեւեցուցին, սրբեցին զամենայն տիեզերս

ի մեղաց, ստացան մարդկան հոգի եւ միտ(ս) նորս եւ մարմինս ժուժկալս եւ անմեղս եւ միանգամայն ասել, զերկիրս երկին արարին եւ զմարդիկ ընդ հրեշտակս խառնեցին, գործելով զմեծամեծս քան զոր Փրկիչն արար յաշխարհի, ըստ նորուն խոստմանն:

Եւ եւս առաւելեալ անուանակիրն անաւթն ընտրութեան քան զամենեսեան ի գործս եւ ի բանս, յարեւելս եւ յարեւմուտս, ի հիւսիւսի եւ ի հարաւ, ընդ ամենայն տեղիս ելից զաւետարանն: Վասն որոյ եւ երանելի աւետարանիչն, զերկրորդ զրուցրութենէ բուռն հարեալ՝ ծանոյց ամենայն ընդհանրական եկեղեցւոյ զսկիզբն եւ զպատճառ փրկութեան ամենեցուն:

Ուստի եւ երանելին Յովհան Ոսկեբերան, հետեւողն առաքելոց, զվարդապետականն գործ ի ձեռն առեալ, որ համազոյգս ընդ բնաւախաւս տառս աւետարանին խաղացեալ զայս ընդ ամենից պրակս, ըստ որում եւ տէրն մեր ի վերջնում տնաւրինական ժամանակիս զաւսուցչապետականն առնելով յանձն, թէ մակագրեալ անուն թէ եմ իսկ, զորոյ ձեւ բերեալ յինքեան սորա լոյս ի լոյս յաւելեալ, աղբիւրաբար բղխեալ, լնու զընդհանուր եկեղեցիս ուղղադաւան հաւատացելոց, մաքրելով զոգիս ամենեցուն ի քրէական ծանունց ծառայականաց: Որով աստուածայաւրս (°) ի զաւրս աստուածատես արժանացաք անծան դիմաց քատ(ակ)ի հասանել, գեղապարիւ, գաղափարութեամբ առ

սարսափելին ներմարդութեամբ, անպատ խառնութեամբ միաւորիլ, որում աստուածաբանս բանին աներեւակի, կրական զմերս ցուցեալ փառաւք փանաքիս այսմ տաղտկալի եւ քակտելի տաղաւարիս, տարան կենդանետղ գտեալ լիապատար հոգւով, ո[ու]գեալ զերեքսրբեանն աւրհնաբանութիւն:

Վասն որոյ եւ ես վերջացեալս ի գործառնութենէ երկասիրութեան, ժամանելոյն ի գործս եւ ի բանս աստուածատուրս, տարտամ հետեւողս աշակերտութեամբ քեզ, ո՛վ տէր իմ տէր, աստուածակիր լուսափայլութեամբ լցեալ Յովհան, եւ տե(սեալ) զքոյդ աստուածունակ պայծառութիւն եւ ծխա(ծա)նածաւալ ծաղկազուարճ, երա(ն)գախումբ, իմաստայեղձ գիտս բանի, զարթուցեալ եւ սթափեալ ի զանդաղմանէ եւ ջանիւ մեծաւ եւ անկիրթ արհեստիւ, բազում տաժանմամբ աշխատեալ վերստին ստացայ զքեզ գրաւորութեամբ:

Քանզի շնորել չահատակումն ի խոյզս մանրորոն սիրակարկաջ սաղապս իմաստութեան, խնդիր արանց աստուածարելոց, զի ի խնդիրս երկասիրաց ցանգ առկայեալ կայ կուտակս զաղտակրականն մարգարիտ, որ է նոյն ինքն բան, բանատու բերան բացունողաց եւ ընկալողաց զհոգի կենդանախառուկիչ, զի սա է պանծալի պատուականութիւն, յորմէ յորդորմամբ յառաջ տածի բերկրական խրատ եւ բանալի ականջաց սրտի:

Զայսուիկ գերագարդ լրութիւն լնուս յանցնիւր ոգիս եւ դու, ով չարժ[1] աստուածահայր մեր եւ ուսուցիչ հանուրցս, Գրիգորիոս, քանզի դու հոգիակորով կարեկցեալ մերում ախմար արհեստականութեանս եւ տեսութիւն սուրբ եւ փառազուարճ, նմանեալ տեառն մերոյ Քրիստոսի եւ նորին աշակերտացն, զորոց զգործս ի ձեռն առեալ եւ բացեալ ետուր մեզ եւ ամենայնիւ նորոգելով զբնութիւնս մեր հրեշտակակրաւնս արարեալ վերաթռիչս կացուցեր, նոյնպէս եւ տեսաւորեալ գերահրաշափառ ունակութեամբ զբազմացն հանդիսացար կարգս, ուղղածեցար յաջորդումն նախաթոռոցն ազգապետիլ քահանայապետութեամբ եւ սաւառնացելոցն հնչմանց զկցորդութիւն աւրհնաբանութեանցն, առ բերելով փողազոչ երգս, զի զգովեստականսն քո առ աստուածութիւնն, ուղղափառ հաւատոյ եւ բանքդ քո վերառոցէ (Զ. առատեսցէ) ի հանդիպումն երեսացն Աստուծոյ: Եւ քո բազկատարած աղաւթարուղի պաղատանաւքդ զստորանկեալս յոտս քո վերամբարձեսցես ամենաթագաւորին Աստուծոյ:

Արդ եւ դուք, ով սուրբ մանկունք եկեղեցեաց հրեշտակերամ լուսաձիր զաւք կրաւնաւորաց, որք էք ընդհանուրս առկայացեալ եւ ունիք փոյթ աշխատաժիր կրաւնից զտանել առաջակաց եւ սիրով սրտի ծարաւեալ ոգւով զիմէք ի սուրբ պատուիրանս, ի զի-

---

[1] Ուղղուած՝ վարժ:

տել եւ յառնել կամ առնել աւրինակ ի նորակերտել, ի խորոց սրտէ, մաքուր մտաւք եւ բազկատարած պաղատանաւք հայցելով առ Աստուած, յիշեցէք զքրիստոսազգեաց զերկրորդ լուսաւորիչն մեր զԳրիգորիս, զհետեւող սրբոյն Գրիգորի, զանգին Հայկազանցս, զլուսաւոր մարգարտիս զպատճառն. Թերեւս եւ զիս զբազմամեղս զԿիւրակոս, որ բազում աշխատեցայ ի սայս՝ սակս անյարմար եւ խրթնի թարգմանութեան[1] Հռետորին յունականի. որ եւ ջանացի յերիւրել միայն, ոչ յաւելուլ եւ ոչ պակասեցուցանել յաստուածաշունչ բանիցն. իսկ եթէ [վեր]իվեր գոլով սորայս մակացութիւն քան զմեր տեսութիւն եւ պակաս ինչ կամ այլատարազ եղեւ, աղաչեմ չլինել մեղադիր. զայս գիտելով թէ ոչ ի ծուլութենէ կամ յանփոյթ առնելոյ եղեւ, այլ յանհաստատութենէ հատակոտոր թարգմանելոյն: Բայց ըստ իս ոչինչ պակասեցուցեալ ի ճշմարտութենէ: Ուստի եւ զսխալանսն անտես առնել Աստուծոյ եղբայրական սիրով զիջեալ ըստ իս՝ աղաւթեցէք ի վերայ վշտացելոյս ներքին եւ արտաքին պատերազմաւք: Ընդ որս եւ զսուրբ վարդապետն մեր զԳէորգ զգիտապետն Հայոց, զհովիւն բարի եւ զգաստ եւ մարդասէր հոգին, որ վերստին ծնաւ զմեզ բանիւն կենաց. եւ զերկց աւուրբք եւ խոհականութեամբ զեղբայրն մեր եւ զանդրանիկ մերոյն կրթավարժ եւ հրահան-

---

[1] Զ. խիրթն ի թարգմանութիւնս:

*գայեղց աչակերտութեան՝ զխաչակիրն Գեորգ մականուն Մեղր կոչեցեալն. վասն զի յորդորիչ եղեւ մեզ ի սկզբանն եւ թելադիր ի կատարմանս սորա: Եւ եւս զծնողս իմ հանգուցեալս ի Քրիստոս. որպէս զի աղաւթիւք ձեր եւ ամենայն սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. ընդ որում Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյն փառք եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն»* (*էջմ.* 1315, *թղ.* 452*բ*—454*բ*):

6. Գործոց Մեկնութեան ձեռագիրները:

*Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Գործոցն Առաքելոց:*

*Բազմաց անգիտելի է մատեանս: Եւ չէ պարտ զայսչափ գանձս ի ծածուկ լինել...:*

Վջ. *Նմա նմանեսցուք արիագունին այնմիկ եւ ազամանդեայ հոգւոյն. զի հետեւելով նմա գնալ կարասցուք ընդ շաւեղս կենցաղավարութեան նորա: Զի կարող լիցուք ընդ հասեալ ծով կենցաղոյս նաւել եւ յանկոհակ նաւահանգիստն հասանել, եւ խոստացելոց բարութեանցն սփռելեացն Աստուծոյ հանդիպեալ... ամէն:*

=*Էջմիածին, Թ.* 1315, *թղ.* 60*ա*—454*բ* (*յամէ* 1270°: *Սկիզբէն թուղթ մը ինկած*): 1316 (1288*էն*: *Ներածութիւնն եւ Յիշատակարանները կը պակսին*): 1363 (1292*էն*: *Սկիզբէն պակասաւոր. չունի Յիշատակարանները*):

*Այս երեք ձեռագիրները միայն պահած են Մեկնութեանս Թարգմանութիւնը։ Թ.* 1315 (*Կար.* 1330) *կորսնցուցած է բուն յիշատակարանը, բայց ինչպէս մանր յիշատակագրութիւններէն կ՚իմանանք, գրիչն է Յակոբ, որուն եղբայրն Կոստանդին «յայսմ ամի սպանաւ յանաւրինաց»* (*Թղ.* 454*բ*)*. ստացողն է Յովհաննէս արքայեղբայր արքեպիսկոպոս, որ Թղ.* 9*ա յիշատակագրած է. «Զաստուածասէր եւ զքրիստոսազգեաց հարազ եւ զեղբարդ իմ ի Քրիստոս աղաչեմ յոքնամեղ դատապարտեալս ոգի Յոհ՛՛ եպ՛՛ արքայեղբայր Հայոց որ եւ րաբուն, յիշել հանապազ զծնաւղսն իմ եւ զեղբարսն եւ զքերսն ամենայն Թագազնեա տոհմայնաւքն մեր...։ Յոյժ փափաքմամբ գրեցի ինչ ինչ մեղսակարկամ ձեռամբս իմով. եւ է զոր այլոց ետու գրել տաժանելի կրիւք... ի դառն եւ ի վշտալի եւ տխրալլուկ աւուրս, յորում նեղիմ յընդանեաց իբր ի Թշնամեաց եւ վշտագնիմ ի սիրելեաց իբր յատելեաց. որոց եւ յիշողացդ զմեզ ի բարի Քրիստոս Աստուած ողորմեսցի միշտ. ամէն»։ Յակոբ գրիչ մը ի Սիս ծանօթ է* 1274*էն* (British Museum, Cod. arm. 40, Conybeare, Catalogue, p. 85)։ *Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան, Արարատ,* 1897, *էջ* 330—331, *խօսած է ձեռագրիս վրայ, ուր կը համարի, թէ Մեկնութեանս միակ ծանօթ օրինակն ըլլայ այս, գրուած ընդմէջ* 1259—1272 *տարիներու։ Յովհ. Արքայեղբար վախճանեցաւ* 1290*ին։ Երեք ձե–*

*ռագիրներն ալ ԺԳ· դարու վերջին քառորդէն են:*

Հատակոտորներ:

1· *Յովհաննու Ոսկեբերանի ի Գործոց Մեկնութենէ:*
*Բազմաց անգիտելի է մատեանս...*
վջ· V. 208· *մատչէր ի քաւութիւն ամենայն ժողովրդեանն եւ մի քահանային:*
V. 220· *վասն այսորիկ ոչ վաղվաղակի առաքէ զհոգին, այլ ի Պենտակոստէին:*
W. 47· *զերկրաքարշս յարութեան հաւանեցուցանէին:*

= *Վենետիկ*, 208, 76*բ*—91*ա* (*ԺԲ/ԺԳ· Ցուցակ, Բ.*, *էջ* 178—179: 220, 21*ա* (1836· *Ցուցակ, Բ., էջ* 306): *Տօնական Ձ·* 564: *Տօն. Գ.* 168: *Տօն. Բ.* 307: *Տօն. Ե.* 119: *Երուսաղէմ*, 1250, 275*ա*—283*ա* (*ԺԴ*): *Վիեննա*, 47, 145*բ*—146*բ* (1725):

= Montfaucon IX, 1 (hom. I.)

2· սկ· *Ջրանն առաջին: Տես զերանելի աւետարանչիս խոնարհութիւն· զի ոչ ասաց թէ զառաջին աւետարանն զոր գրեցի:*

= *Վիեննա*, 47, 148*բ*—159*բ* (*քաղուածաբար*): *Տես վարը, էջ* 312—338:

= Montf. IX, 4 (hom. I.)

3· *Յովհ. Ոսկեբերանի ի Գործոց Մեկնութենէ. Եփրեմի եւ Սարկաւագին ասա-*

ցեալ ի Հոգին սուրբ։
Ի կատարել աւուրն պենտակոստէի...

= Վենետիկ, 208, 100բ—105ա (Ցուցակ, Բ., 179)։ Տօնամակ Ձ. 627։

4. Ոչ փայրաբնակս, այլ պարգամիտս...

= Վենետիկ, Յաճախապատում, Բ. օրինակ (յամէ 1625. Թուղթ մի բան)։

5. Ստեփանոս այր լի շնորհօք։ Տեսանե՞ս թէ որպէս առ եօթանսն նա էր նախապատուեալ...

վջ. եւ եթէ ամենեքեան նախահարքն ի նեղութիւն եւ ի չար կիրս էին։

= Հրտ. Յովհ. Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոյն Պաւղոսի. հատոր Բ. (Վենետիկ 1862), էջ 569—572։
= Montf. IX, 119—121 (hom. XV.)։

6. Եւ արդ եթէ մեծագունիցն եւ սքանչելի արանցն մեծ էր նեղութիւնն...

վջ. Արդ հաւանեսցուք սմա զի առողջ լինելով գործեսցուք զոր ինչ պարտ է առնել ի Քրիստոս Յիսուս...։

= Հրտ. անդ, էջ 573—578։
= Montf. IX, 151—153 (hom. XVI)։

7. Յովհ. Ոսկեբերանի ի Գործոց Մեկնութենէ յաղագս Յակովբայ եղբօրն Յովհաննու։

Ընդ ժամանակս ընդ այնոսիկ։ Սովորութիւն է Գրոց զկարգս ժամանակաց եւ թագաւորաց պահել...

վշ. *որք հաղորդին նորա չարչարանացն*:

= *Պարիս*, 114, 29*բ*—31*բ* (1355): *Վենետիկ*, *Ցօնամակ Զ*. 117: *Էջմիածին*, *Կարենեան*, *Ցուց*. 892, *Ե*.:

= Montf. IX, 207 (hom. XXVI):

7. Գէորգ Լամբրոնացւոյ խմբագիր Մեկնութիւն Գործոց Առաքելոց:

*Յովհաննէս արքեպիսկոպոս Արքայեղբայր երբ 1275ին օրինակել տալով իրեն համար Ոսկեբերանի Գործոց Մեկնութիւնը, դրաւ զայն ապա Գէորգ Վ. Լամբրոնացւոյ տրամադրութեան տակ, որպէս զի կազմէ համառօտ խմբագրութիւն մը, օգտուելով նաեւ Ս. Եփրեմի Մեկնութենէն եւ այլ աղբիւրներէ: Այս խմբագիր Մեկնութիւնը, որ 1290էն յառաջ յօրինուած ըլլալու է, այսինքն Արքայեղբօր կենդանութեան, գտած է ժամանակակիցներու եւ յաջորդ սերունդին քով մեծ ընդունելութիւն: Ունինք մեծ թուով ձեռագիրներ: Այս օրինակներէն ոմանք լռած են խմբագրին անունը: Այսպիսի օրինակներ ունեցած են իրենց տրամադրութեան տակ Վենետիկի Մխիթարեան Հայրերը. որոնք հրատարակեցին Մեկնութիւնս խորագրիս տակ. «Մեկնութիւն Գործոց առաքելոց խըմբագիր արարեալ նախնեաց յՈսկեբերանէ եւ յԵփրեմէ». Վենետիկ 1839, $8^0$, էջ 460:*

*Ձեռագիրները կը խորագրեն. «Ի Գործոց առաքելոցն բուն եւ ընդարձակ Մեկնութեանց սրբոցն տեառն Եփրեմի եւ երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի այս համառօտ չարա-*

հիւսեցաւ, որպէս եւ տեսցես առընթեր բանից յանձնիւր տեղւոջ դրոշմեալ զանուանս Սրբոցն· հրամանաւ տեառն Յովհաննիսի աստուածապահ ուխտին Գռներոյ առաջնորդի»:

Այսպէս առ հասարակ հնագոյն եւ նորագոյն ձեռագիրներու մէջ: Կը տեսնուի, թէ խմբագիրը չէ յիշատակած իր անունը վերնագրին մէջ· նաեւ չէ գրած Յիշատակարան վերջաբան: Հնագոյն ձեռագիրը, որ ինծի ծանօթ է, գրուած է խմբագրին կենդանութեան 1292ին, Խորին անապատի մէջ ի ձեռն Յովհաննէս Երզնկացւոյ: Իր յիշատակարանին մէջ կը գրէ Երզնկացի· «Աւարտեցաւ Մեկնութիւնս Գործոց Առաքելոցն, զոր համառօտեալ հաւաքեալ էր աշխատասէր եւ արդիւնական վարդապետն Գէորգ» (Տրդատ եպ· Պալեան, Ցուցակ Ս· Կարապետի վանաց նոր Մատենադարանի ի Կեսարիա, Թ· 35· անտիպ):

Ուրիշներ ունին· «Պատճառ Գործոց Առաքելոց ի Գէորգայ Լամբրոնացւոյ ի համառօտոյ վարդապետէն, ի քըւերորդւոյ Մեծին Գրիգորի Սկեւռացւոյն ասացեալ»: Կը յաջորդէ Ընծայականը· այսպէս Էջմ· 1449, 127բ (1656): Թորոս Աղբար, Բ· էջ 393 (ձեռագիրն 1310է՞ն): Զայս կը հաստատէ նաեւ ժամանակակից մը Յայսմաւուրքին մէջ· թէ Գէորգ Լամբրոնացի «առնէր եւ Համառօտ Մեկնութիւն Գործոց Առաքելոցն հրամանաւ տեառն Յովհաննու արքայեղբօր, որդւոյ Կոստանդեայ թագաւորահօր»· Վիեննա,

Թ. 7, Թղ. 594բ (հմմտ. Զարբհանալեան, Հին դպր., էջ 601)։ Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան, Արարատ 1897, էջ 331, կը յիշէ օրինակ մը, գրուած 1288ին. բայց չէ նշանակած ձեռագրին ոչ տեղն եւ ոչ ալ համարը։ Յառաջբերութենէն կը տեսնուի սակայն, թէ կ'ակնարկէ Էջմիածնի Թ. 1316, որ Ոսկեբերանի Մեկնութիւնն է, ինչպէս նշանակեցինք վերագոյն։

Այս տեղ Գէորգ Լամբրոնացի հետեւած է մասնաւորապէս Ոսկեբերանի Մեկնութեան, այնպէս որ, ինչպէս ուղիղ նկատած են Նոր Հայկազնեան Բառգրքի հեղինակները, բովանդակ գործին մէջ կ'իշխէ «դարձեալ բուն ոգին Ոսկեբերանի» (անդ, էջ 17բ)։

### 4. ՍՐԲԱԳՐՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ Ի ՁԵՌՆ ԹԷՈՓԻՍՏԷԻ

Յովհաննէս Ոսկեբերան Մատթէի Մեկնութենէն ետքը ձեռնարկեց մեկնել, նոյնպէս ճառօրէն, Յովհաննու աւետարանը, զոր ի գլուխ հանեց 88 (87) ճառերու մէջ, խօսած 389ին Անտիոք։ Յոյն բնագրին ընտիր հրատարակութիւնը հոգացած է Montfaucon Ոսկեբերանի Գործոց Ը. հատորին մէջ (Պարիս, 1728, էջ 1—542։ Նոյնը Migne, P. G. t. 59։

Մեկնութիւնս թարգմանուած էր Ե. դարու առաջին կէսին, ասորի թարգմանութենէ մը։ Կիրակոս վարդապետ հետամուտ եղած

է վերհանել զայն վանական գրադարաններու մէջ. բայց յաջողած է միայն առաջին 13 ճառերը գտնել: Իր պրպտումներու ժամանակ երեւան բերած է նաեւ Մեկնութեանս երկրորդ թարգմանութիւն մը, այս անգամ յունարէնէ թարգմանուած, կը յիշէ յանուանէ ԺԴ—ԼԳ ճառերը: Այս ճառերը գտած է մէկէ աւելի՝ եղծուած ձեռագիրներու մէջ, զորոնք բաղդատելով իրարու հետ, ստացած է վերակազմուած օրինակ մը: Ինքը հաւատացած է, թէ նախնիք թարգմանած էին ամբողջը: Իր խօսքերն են Յիշատակարանին մէջ. «Զերեսուն եւ զերին բազում յուզիւք առաջին մերոց թարգմանչացն գտաք թարգմանեալ. ի սկզբանն տասն եւ երեք ճառ(ք) յասորի լեզուէ. բանքն իսկ ցուցանեն. իսկ քսանն ի յունականէն. որ են երեսուն եւ երեք ճառ(ք): Բովանդակն էր լեալ գիրքն թարգմանած ի Հայս. եւ ի ծուլութենէ եւ յանփոյթ առնելոյ՝ այլքն կորուսեալ, եղծեալ էին յօրինակս հինս՝ ուր եւ կայ»:

Կիրակոս Վարդապետ որ եւ է խօսք չէ ըրած, թէ իր ձեռքի տակ եղած ձեռագիրներու մէջ երկրորդ թարգմանութեան առաջին 13 ճառե՞րն ալ պահուած էին. եւ դարձեալ կը համարի՞ ինքը թէ երկու թարգմանութիւններն ալ ամբողջութեամբ գոյութիւն ունեցած են: Կիրակոս կը գրէր տողերս 1111ին:

Այդ թուականէն մինչեւ այժմ սահած են իբր 850 տարիներ: Հաւաքուած են մատչելի եւ անմատչելի մատենադարաններու մէջ իբր

20.000 ձեռագիրներ: Բայց տակաւին կարելի չէ հաստատել կամ ժխտել, թէ պահուած չեն այդ կրկին թարգմանութիւններէն ամբողջական կամ մասնական ձեռագիրներ Ոսկեբերանի այս Մեկնութեան: Կարելի է միշտ ակնկալել: Հ. Ն. Սարգիսեան, որ հրատարակած է Ոսկեբերանի Պաւղոսի Թղթոց Մեկնութիւններն եւ անոր այլ ճառերը նախնեաց թարգմանութեամբ, երեք հատորներու մէջ, տուած է ի մէջ այլոց երկու-երեք հատակոտոր Յովհաննու Մեկնութենէն, որոնք ապացոյց կարող են մատակարարել նախ հաստատելու համար, թէ առաջին թարգմանութիւնն եղած է ամբողջական, եւ երկրորդ թէ գոյութիւն ունեցած են նաեւ երկրորդ թարգմանութեան առաջին 13 ճառերը:

Յովհաննու Մեկնութեան առաջին, դասական թարգմանութեան Ա—ԺԳ ճառերը պահպանած է մեզի Կիրակոս, Մեկնութեան երրորդ թարգմանութեան սկիզբը. որոնց սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւնն է.

Երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Աւետարանին որ ըստ Յովհաննու:

Ի հանդիսի աստ արտաքին աշխարհականք յորժամ բռնամարտիկ[1] զոք մեծազօր յաղթական պսակեալ ուստեք լսիցեն, համագունդ խուռնըմթաց առ հասարակ ամենեքեան ի վերայ դիմեն, զի եւ տեսանել եւ

[1] Տպ. բռնաւոր մարտիկ: Ա՛յսպէս ՆՀԲ:

գննել զմեծաքանչ զօրութիւնն եւ զիմաստութիւնն ճարտարութեան մարթացեն...:

վջ. ԺԳ. ճառին. «Իսկ շնորհքն զի՞նչ ասեն. Եկայք առ իս ամենայն աշխատեալք եւ ծանրաբեռինք, եւ ես հանգուցից զձեզ. եւ թէ Գնեաց զմեզ յանիծից օրինացն եղեալ վասն մեր անէծք»:

Շարունակութիւնը. «Յորդորակ. Եւ արդ զի գայս ամենայն շնորհս ընկալեալք...» Բ. թարգմանութենէն լրացուած է. որ դասական լեզուի նկարագիրը չունի:

Հրտ. Մեկնութիւն Ս. Աւետարանին որ ըստ Յովհաննու. Կ. Պոլիս 1717, էջ 2—137:

Այս տպագրութիւնը կը կարօտի քննական հրատարակութեան մը բաղդատութեամբ Մեկնութեան հնագոյն ձեռագիրներու եւ ճառընտիրներու մէջ պահուած հատուածներու. կը յիշեմ.

Ս. Յովհաննու Ոսկեբերանի սկիզբն Մեկնութեան Աւետարանին որ ըստ Յովհաննու:

Ի հանդիսի աստ արտաքին աշխարհականք...

= Վենետիկ, Թ. 212, թղ. 469բ—73ա (ԺԳ.: Յուցակ Բ. 233):

Հրատարակուած ասկէ կամ տպագրէն՝

Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պաւղոսի. Բ. (Վենետիկ 1862) էջ 579—596, առօրեւ ըջից, մանրատառ, իբրեւ «Կիլիկեան թարգմանութիւն» (!):

Ուշադրութեան արժանի է մասնաւորապէս հետեւեալը, որ կը ներկայանայ իբրեւ

հատակոտոր Մեկնութեանս ԿԴ. ճառէն, դասական Թարգմանութեան մնացորդ։

Յովհաննու Ոսկերբերանի (ի յարութիւնն Ղազարու)․

«Յիսուս ամբարձ զաչս իւր յերկինս եւ ասէ․ Հայր իմ, գոհանամ զքէն․․․։ Բազում անգամ ասացեալ է (իմ) զայդ․ եւ ա՛րդ ասեմ, զի Աստուած ոչ այնպէս ի սաստ փառաց մեծութեան իւրոյ հայի, որպէս ի մեր փրկութիւն․․․։

վջ․ քանզի եւ զքաղաքն բարձին եւ զազգն ջնջեցին զՀրէիցն։

=Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 78, յամէ 1202։ Ասկէ արտագրուած 1847ին Վենետիկի Թ. 228, Թղ. 136բ—39ա, Հ. Ն. Սարգիսեանէ։

Հրտ. Մեկնութիւն Թղթոցն Պաւղոսի․ Բ. էջ 596—609 (խոշորագիրը)։

Քննական դիտողութիւններ․ Նորայր Բիւզանդացի, Հայկական բառաքննութիւն․ Կ. Պոլիս 1880, էջ 50—51։ Նոյն, Կորիւն Վարդապետ եւ նորին Թարգմանութիւնք․ Տփղիս 1899, էջ 31։

Մնացորդ Բ. թարգմանութեան․

Այս Թարգմանութիւնը հաւանօրէն կատարուած է Ե. դարու երկրորդ (կամ Զ.ի առաջին) կէսին։ Ա. եւ Բ ճառերէն հատակոտորներ պահուած են չատ ձեռագիրներու մէջ. կը յիշեմ․

*Յովհաննու Ոսկեբերանի ի Յովհաննու Աւետարանին Մեկնութենէն։*

*Որք արտաքին հանդիսիցն տեսողք են, յորժամ լսիցեն զքաջ զոք եւ զհանդիսաւոր եւ պսակեալ, եկեալ ամենեքեան առ հասարակ ընթանան, որպէս զի տեսանելով զհանդէս նորա եւ զարուեստն եւ զամենայն զօրութիւնն...։*

*Վջ. եւ ցանկութեամբ ընչից ըմբռնել, եւ բարկանալն եւ խածանելն ոչ է մարդկան, այլ գազանաց։*

= *Երեւան, Պետ. Թանգարան, Թ.* 78, *Թղ.* 590*ա*—93*ա* (1202)։ 80, 317*ա* (1353)։ 601, *էջ* 912 (1729)։ *Էջմիածին, Թ.* 2039, 31*ա* (1357)։ 2040, 45*բ եւ* 416*բ*։ 3782, 260*ա* (*ԺԲ*)։ *Վենետիկ Թ.* 228, 222*բ*—26*ա* (1847, *Երեւանի Թ.* 78*էն օրինակուած*)։ *Պարիս,* 114, *Թղ.* 329*ա*—33*բ* (*ԺԳ*)։

*ԺԴ—ԼԳ ճառերը պահուած են Մեկնութեան Կ. Պոլսոյ* 1717*ի տպագրութեան մէջ, էջ* 137*բ*—346։

## Երրորդ թարգմանութիւնը ի ձեռն Թէոփիստէի

*Կ'երեւայ թէ Պաղլահոյի Դպրոցի մէջ պէտքը զգացուած է Յովհաննու աւետարանին Մեկնութեան։ Երբ Ոսկեբերանի Մեկնութիւնը նախնեաց Թարգմանութեամբ անկարելի եղաւ գտնել, իմաստոնց կաճառը խնդիր ներկայացուցած է Վկայասէր կաթողի–*

կոսին անոր նոր թարգմանութիւն մը հոգալու սկսեալ ԼԴ ճառէն։ Ընդառաջ գալով անոնց գովելի փափագին, յանձնարարած է Կաթողիկոսը հայերէնագէտ ասորի Անդրէաս քահանայի, որ անշուշտ Սեաւ լեռան վանականներէն էր, որպէս զի թարգմանէ այս Մեկնութիւնը ասորական օրինակէ մը։ Ան կը ձեռնարկէ թարգմանութեան։ Երբ վերահասու կ՚ըլլայ իրողութեան Կիրակոս վարդապետ, կը դիմէ Կաթողիկոսին, որ դադրեցնել տայ թարգմանութիւնը, պատճառաբանելով, որ ասորերէն լեզուն ի բնէ հայերէնէն «այլատարազ» ըլլալով, դժուարին պիտի ըլլայ հայ լեզուին եւ ոգւոյն համապատասխան թարգմանութիւն մը տալ. բայց «յարմար գոյ յունականն բարբառ ի մերս ըստ թարգմանութեան»։ Կը համոզուի կաթողիկոսը. եւ պատուէր կ՚ուղարկէ Անդրէաս քահանային դադրեցնել թարգմանութիւնը։ Իրեն ծանօթ էր հայերէնագէտ յոյն Թէոփիստէն, որ գրագիրն էր Ահարոն իշխանին Բալուի շրջանին մէջ։ Կը պատուիրէ անոր, որ թարգմանէ այս Մեկնութիւնը։ 1105ին կը վախճանի Վկայասէր, երբ տակաւին չէր վերջացած թարգմանութիւնը։ Կիրակոս կը հրահանգէ թարգմանչին, որ յաւարտ հասցնէ գործը. իր վրայ կ՚առնէ թարգմանութեան ամէն ծախք։

Նաեւ Թէոփիստէի հայերէնը կարօտ էր սրբագրութեան։ Աշխատութիւնը յանձն կ՚առնէ դարձեալ Կիրակոս։ Այս մասին խօսած է մանրամասնօրէն իր Յիշատակարանին

*մէջ: Ինչպէս վերագոյն ուշադիր ըրած էի, Գործք Առաքելոցի Յիշատակարանին ընդարձակ նախերգանքը կրկնուած է նաեւ հոս: Յառաջ կը բերեմ կարեւոր տեղիքներս միայն.*

Յիշատակարան գրոցս ըստ պատշաճի յանգման.

*«Փառք...: Զաստուածպետական բոլոր գոյացութիւնն..: Արդ եւ դուք, ով սուրբ մանկունք եկեղեցւոյ... յիշեցէք... զԿիրակոս... աղաւթեցէք ի վերայ վշտացելոյս ներքին եւ արտաքին պատերազմաւք:*

*Այդ եւ զանգիւտ Հայկազանցս զլուսաւոր մարգարտիս զպատճառն, զերանելի Լուսաւորչին մերոյ զփոխանորդ զԳրիգորիս, զհոգեւոր հայր մեր եւ զխնամածու, յիշեցէք ի Տէր, վասն զի նա եղեւ սկիզբն զսուրբ Աւետարանիս Մեկնութիւնս գրելոյ ի գիրս յայս ի ձեռն բազում աղաչանաց իմոց զինքն զԵրանելին, որ եւ լուեալ ինձ ըստ աստուածասէր եւ պատուիրանասէր հոգւոյ իւրոյ, սկիզբն ետ առնել թարգմանութեան նախ յԱսորւոյն լեզուէ: Եւ քանզի չափափ, այլատարազ գոյ լեզուն ասորի ի մերս Հայկազանցս արամեանս ազգ եւ լեզու, ըստ որում վերստին իմ աղաչանս ի ձեռն առեալ Վկայասէր ոգւոյ, ի յունականէն առնել զթարգմանութիւն զերահրաշ ճառիցս եւ աստուածախաւս բանիցս աստուածաբան աւետարանչիս Յովհաննու Մեկնութեան, ի ձեռն հոմանուն*

երանելի պատրիարգին Կոստանդինուպաւլսի տիեզերակեցոյց աշխարհալոյս վարդապետի Ոսկեբերան կոչեցելոյ մականուամբ, որպէս վերագոյնդ առ նա արարեալ իմ Կիրակոսի գրանս մաղթանաց: Վասն զի յարմար գոյ յունականն բարբառ ի մերս ըստ թարգմանութեան:

Արդ ունկնդիր եղեալ ինձ՝ թողեալ զԱնդրիաս երէց ասորի զթարգմանիչ, յղէ ի Միսապաւտամն գաւառ առ յունականն հռետոր Թէոփիստէ կոչեցեալ, որ էր քարտուղար եւ պատոյնաւտար իշխանին Առաւնն կոչեցելոյ: Եւ բազում ծախիւք, առատատուր պարգեւաւք նմա ետ թարգմանել զսուրբ գիրս: Եւ արդ նա ի Քրիստոս փոխեալ յերանելի կեանսն՝ բազում ճառք մնացին անթարգման. յոր ես ձեռն արկեալ նոյնպէս առատաբար ձրիւք զմնացեալսն ետու աւարտել նմին առն:

Եւ է ճառիցս թիւ զոր նորոգ ի յայտ ածաք, յիսուն եւ հինգ ճառ: Քանզի զերեսուն եւ զերիսն բազում յուզիւք առաջին մերոց թարգմանչացն գտաք թարգմանեալ. ի սկզբանն տասն եւ երեք ճառ յասորի լեզուէ. բանքն խակ ցուցանեն. իսկ քսանն ի յունականէն, որ են երեսուն եւ երեք ճառ: Բովանդակն էր լեալ գիրքն թարգմանած ի հայս. եւ ի ծուլութենէ եւ յանփոյթ առնելոյ՝ այլքն կորուսեալ եղծեալ էին յաւրինակս հինս ուր եւ կայր. եւ այս զոր գտաք, ի յախմար եւ ի ագէտ խաւարած գրագրերոյ այլայլած եւ թիւրած էր բանքն եւ տունքն եւ աւելի

եւ պակաս, անաւգուտ ի կարդալոյ եւ յիմանալոյ. զոր իմ Կիւրակոսի տրպի եւ անարժանի ի ձեռն առեալ ուղիղ յաւրինեցի ըստ մտաց բանիցն եւ այլ ի կրկին աւրինակաց. եւ ըստ այսմ զնորոգ Թարգմանեալս բազում ջանիւ եւ աշխատութեամբ յերիւրեցաք յուղիղն բառ եւ բան ըստ մերումս զհատակոտոր եւ զխրթին բանսն. եւ ըստ վերագոյն գրելոյն ոչ աւելի եւ ոչ պակաս:

Արդ այսպէս գրեցաք եւ տուաք վերջին աւուրց վերջին դարուս. յորում ըստ կանխասացութեան Փրկչին եւ առաքելոց նորա չար եւ դժնդակ են աւուրքս: Սատանայ թագաւորեալ, սէր եւ հաւատք եւ ճշմարտութիւն բարձեալ յամենայն մարդկանէ: Քանզի բոլոր տիեզերք գնացին զհետ սատանայի, է որ անհաւատութեամբ եւ է որ հերետիկոսութեամբ եւ է որ մեղաւք, յոր Թուլացան առհասարակ եւ մերս ազգ հաւատաւք եւ կարգաւք ուղիղ եւ գործաւք ըստ բանսարկուին կամաց հետեւեալք եւ հեռացեալք յերկնաւոր կոչմանէն: Նաեւ բարձրացեալ յերկրէ աստիճանաւ կրաւնաւորք եւ քահանայք ընդ այլ չարահաւատ ազգս նախանձեալ ի մարմին դարձան եւ ի կամս նորա, աւտարացեալք ի կոչմանէն Քրիստոսի: Այլ եւ յանիշխանութեան զոլով տիեզերք. քանզի կարծեալքն իշխանք ի սուր եւ յաւեր դարձան յիրեարս. եւս եւ որ Թագաւորք անուանէին: Եւ մեք ի սոյն աւուրս աշխատեալք նորոգեցաք զսա եւ տուաք ի յիշատակ ան-

*տուածասէր եղբարց սրբոց. Թերեւս անձանց եւ բազմաց աւգուտ գործիցեն: Որ եւ հովացեալք եւ ցրտացեալք եղեն բնաւք ի պատուիրանաց Աստուծոյ եւ ի սիրոյ գրոց:*

*Զայս գրեցաք, զի որք ընթեռնուցուն՝ իմացեալք զմերս եւ զսուրբ Դիտապետիս ջանս, ըստ այսմ ի Փրկչէն հայցեցէք զողորմութիւն Նորա: Ընդ որս եւ զսուրբ վարդապետն մեր զԳէորգ... յիշեսջիք աղաւթիւք»:*

*Այս հատուածը՝ «Ընդ որս — աղաւթիւք» առնուած է բառ առ բառ Գործք Առաքելոցի Յիշատակարանէն:*

** «Եւ որ զԳիրքս գրեցի հրամանաւ սուրբ աստուածարեալ վարդապետիս Կիրակոսի, որում Յիշատակարանս է եւ բովանդակ Գիրքս յաւրինեալ եւ յարմարեալ ըստ տանց եւ ըստ ամենայն արհեստից պատշաճեալ, դիւրահաս ընթերցողաց եւ լսողաց: Թէպէտ եւ խոշոր է գիրս եւ անարհեստ եւ ախմար գրիչս, բայց աղաչեմ յիշել ի սուրբ մաղթանս զբազմամեղս Ստեփաննոս կոչեցեալ եւ զեղբարս իմ, որպէս զի աղաւթիւք ձեր եւ ամենայն սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ, գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. ընդ որում Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյն փառք եւ պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

*Էր թիւ ի սկզբանցն արարչութեանց ի մեզ ՑՇԼԶ ամ, իսկ ի կենարար գալստենէն ՌՃԺԲ ամ:*

* Իսկ ի Թուրովայն Պարսից սկսեալ մերս թիւ ըստ ամաց ՇԿՁ. իսկ ըստ աւարտման առաջին շրջանին, ՇԼԲ նորս սկսեալ չար ամաց, ԼԴ ամ:

Այլ եւ զաղաչանս իմ զվերջին ընկալջիք սիրովն Աստուծոյ. զկնի վախճանի իմոյ ում եւ տայ Աստուած ի ձեռն իմ զուրբ գիրս զայս, մի արգելցէ տալ զսա աւրինակ՝ ով եւ կամեսցի գրել, զի տարածեսցի եւ մի ի մի փակեսցի խաւսքս Աստուծոյ: Եւ որք գրել տայցեն, գրեսցեն եւ զյիշատակարանս զայս բովանդակ ի նմին. եւ մի հատցեն ի սմանէ բան մի: Եւ որք զերկու խնդիրս իմ կատարեսցեն, գրեսցէ զնոսա Աստուած ի դպրութեան կենաց: Իսկ որք սուտնգանեն, մի գրեսցէ զնոսա Աստուած ի գիրն կենաց յաւիտենից: Եւ Տէր Աստուած աւրհնեալ եղիցի յանրաւ յաւիտեանս. ամէն:

* Մինչ զայս գրեցի թիւ նոր տոմարիս ամաց. ԼԷ. էր ընդ հինգհարիւր երեսուն եւ երկուցն ի սկսմանէ»:

Ձեռագրիս օրինակողն է Ստեփանոս, որ գրած է Կիրակոսի հրամանով: Իր գրչէն են Յիշատակարանիս մէջ ստորանիշ հատուածները:

= Էջմիածին, 1347, թղ. 414ա—418ա (յամէ 1332): Հրտ. Յովսէփեան, Յիշատակարանք Ձեռագրաց, Ա., էջ 309—318: Հրատ. Մեկնութեան Կ. Պ. 1717, էջ 957—967: Հմմտ. Զարբ. Մատ. 611—612:

Այստեղ նկատի առնուած են.

ա. Թուական ի սկզբանց արարչութեան ՅՇԼԶ (6536), որ կ'ենթադրէ ամն նախ քան զՔրիստոս 5425, ուստի յետ Քրիստոսի 1111:

բ. Թուական ի կենարար գալստենէն Քրիստոսի ՌՃԺԲ (1112): Այս ամն Քրիստոսի պէտք է իմանալ 1112—1 = 1111:

գ. Թուական ի Խոսրովայն Պարսից սկսեալ մերս թիւ (այն է Հայկական թուականը սկսեալ 552էն) ուստի ՇԿԶ + 551 = 1117/8:

դ. Թուական «ըստ աւարտման առաջին շրջանին ՇԼԲ՝ նորս սկսեալ չար ամաց ԼԴ.» որ յետոյ կոչուած է «Նոր տոմար», որուն սկիզբն է 1084, ուստի 1083 + 34 = 1117/8:

ե. «Թիւ Նոր տոմարիս ամաց ԼԷ. այսինքն 1083 + 37 = 1120/21: Այս տարւոյն կ'աւարտի ձեռագրիս օրինակութիւնը ի ձեռն Ստեփանոս գրչի:

Այս ա—դ թուականները իրարու հետ անյարիր են. որովհետեւ Ստեփանոս գրիչ Կիրակոսի Յիշատակարանին մէջ մուծելով իր յիշատակագրութիւնը՝ նախկին Յիշատակարանին գ եւ դ թուականները յարմարցուցած է զոյգն փոփոխութեամբ իր գրչութեան սկզբնաւորութեան տարւոյն (1117/8): Նախնարար եղած ըլլալու է՝ գ. ՇԿ եւ դ. ԻԸ: Ստեփանոս անփոփոխ պահած է ա եւ բ թուականները, վասն զի անտեղեակ եղած է անոնց գործածութեան:

*Գրութեան տեղը չէ յիշուած։ Հաւանօրէն գրուած է Դրազարկ, ուր անցուցած է Կիրակոս իր վերջին* 15 *տարիներն եւ ուր կ'ապրէր տակաւին Գէորգ Վ. Մեղրիկ* († 1114)։

*Վերագոյն առիթ եղաւ յիշելու թէ Մեկնութեանս օրինակողներէն մէկը անհասկացողութեամբ այն գաղափարը կազմած է թէ «սրբազանն Կիրակոս վարդապետ բազում աշխատութեամբ եւ ըղձափափագ տենչմամբ յԱսորւոց գրոյ եւ ի լեզուէ եւ ի յունականէն քերթողական արհեստիւ թարգմանեալ» է Մեկնութիւնս «ի հայ բարբառ եւ ի գիր» (Էջմիածին, Թ.* 3816, *հմմտ. Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.,* 319—320 *եւ այլն), որ ապա ձեռագրէ ձեռագիր անցած է եւ չփոթցուցած միամիտ ընթերցողները։*

*Ստեփանոս Ռոշքա կը գտնէ թարգմանութիւնս «թերի եւ սխալութեամբ լի», նկատելով թէ Կիրակոս «ոչ էր հմուտ Յունաց լեզուին, այլ օգնութեամբ յոյն մեկնողին գրէր, որպէս ինքն վկայէ» (Վիեննա, Թ.* 266. *Տաշեան, Ցուցակ, էջ* 680)։ *Նաեւ Ռոշքա ուշադրութեամբ կարդացած չէ Յիշատակարանը։*

*Մեկնութեանս ձեռագիրները։*

*Էջմիածին, Թ.* 1347 (1332)։ 3816։ 4119։ 4138 (1696)։ *Երուսաղէմ, Թ.* 206 (1682)։ 412 (1828)։ 460 (1310°)։ 717 (*ԺԷ*)։ *Վենետիկ,* 2 *նօտրագիր օրինակներ, մին* 1692*էն։ Ագուլիս, Ս. Թոմայի վանք (Ազգ. Հանդ.*

ԺԲ., 169)։ Վիեննա, Թ. 227 (ԺԹ. Թերա-կատար, Ցուցակ, 586)։

Կան բազմաթիւ հատակոտորներ ճառըն-տիրներու եւ Տօնամակներու մէջ. կը յիշեմ տպագրին կարգով.

1. Տեառն Յովհաննու Ոսկեբերանի ի Յովհաննու Աւետարանին Մեկնութենէ։

Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս անուն ի Բեթանիա...։ Բազումք են ի մարդկանէ, որք յորժամ տեսանիցեն զոմանս, որ սուրբք եւ հաճոյք են Աստուծոյ...։ Վջ. այլ առ նա-խանձու չարութեան իւրեանց զժողովուրդն չարժել կամէին, զի ի մահ մատնեսցեն զնա։

= Պարիս, 110, 300բ—304բ (ԺԲ.)։ Տիւբինգէն, 39, 156բ—163 (ԺՋ)։ Վենետիկ, Թ. 202, 272բ—277բ (1637)։ 212, 330ա (ԺԳ.)։ 228, 130ա (1847 = Երեւան 78)։ 296, 28ա (1820)։ Վիեննա, Թ. 2, 1ա—3ա (ԺԳ.)։ Երուսաղէմ, Թ. 1, 417ա։ = Տպ. էջ 678—712։

2. Մինչ դեռ Յիսուս չեւ էր եկեալ ի գեօղ անդր, այղ էր անդէն ի տեղւոջն ուր պատահեաց նմա Մարթա...։

= Երեւան, Պետ. Թանգ. 78 (1202)։ Ասկէ՝ Վենետիկ, Թ. 228, 134ա—136ա (1847)։ = Տպ. էջ 692։

Տպագիրն ունի. «Չեւ եւս էր եկեալ Յիսուս ի գեօղն, այլ էր անդէն ի տեղւոջն ուր ընդառաջ եղեւ նմա Մարթա»։ Պէտք է քննել երկու բնագիրները ի մերձուստ.

Թ. 228 կարող է հին՝ դասական թարգմանութիւնը ներկայացուցած ըլլալ:

3. Յառաջագոյն քան զտօն զատկին գիտաց Յիսուս...: Նմանողք ինձ եղերուք, ասէ Պաւղոս, որպէս եւ ես Քրիստոսի...:

Վջ. Թափէ եւ զամբարհաւաճութիւն:

= Վենետիկ, Թ. 202, 343ա—346ա (1637): 228, 200ա (= Երեւան, Պետ. Թանգ. 78): Բերլին, Թ. 46, 142ա: = Տպ. էջ 763—773:

4. Եւ իբրեւ լուաց զոտս նոցա, առ զհանդերձս իւր...: Դժնդակ է, դժնդակ է, սիրելիք անկանել ի խորս չարեաց...: Վջ. եցոյց մեզ ճանապարհ բարձրութեան զխոնարհութիւն...:

= Էջմիածին, Թ. 866, 125բ—128ա (ԺԵ): Վենետիկ, 212, 407ա (ԺԳ): Երուսաղէմ, Թ. 1, 223բ—224: 71, 413ա: = Տպ. էջ 771—773:

5. Ամէն ամէն ասեմ ձեզ. Ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր...: Վջ. եւ մեր զայս ամենայն գիտացեալ՝ թողցուք եղբարց մերոց զյանցանս նոցա. զի հանդիպեսցուք...:

= Վենետիկ, Թ. 346ա—347բ (1637): = Տպ. էջ 778—779:

6. Խաղաղութիւն թողում ձեզ...: Իբր թէ ասէր. Ոչ ինչ վնասելոց էք ի խռովութենէ աշխարհիս այսորիկ...: Վջ. տեսեր խոնարհութեան եղեալ բան եւ առ նոսա հաստատութիւնն:

= Վենետիկ, 202, 433բ—434ա (1637)։ Տպ. էջ 814—815։

7. Զոգան դարձեալ առ մխմեանս աշա-կերտքն...։ Եւ զի՞րդ վշտագնելի է ազգ կանանցական եւ առ գութ ողորմածաց...։ Վջ. եւ դարձեալ առաքելոցն ի հօրէ եւ երբեմն ի հոգւոյն սրբոյ զորուշմունս շնորհաց կատարէր ի Քրիստոս Յիսուս...։

= Վենետիկ, 202, 406բ—408ա։ 228, 206ա (1847 = Երեւան, 78)։ Երուսաղէմ, 1, 486ա։ = Տպ. էջ 929—936։

8. Իսկ Թովմաս մի յերկոտասանիցն...։ Զոր օրինակ որպէս պարզաբար եւ որպէս զխպաւ հաւատայն զխրութեամբ...։ Վջ. եւ զայսոսիկ ոյք հանդերձեալ էին լինել ընդ նմա լաւ մերում հասարակաց յարութեանն ի Քրիստոս Յիսուս...։ = Վենետիկ, Թ. 202, 408ա—410բ (1637)։ 222, 190ա։ 228, 208ա (1847 = Երեւան, 78)։ Երուսաղէմ, Թ. 1, 504բ։ 71, 454բ։ Նիկոսիա, 4, 211ա։ = Տպ. էջ 939—944։

9. Ասէ ցնոսա Յիսուս. Եկայք ճաշեցէք։ Զինչ պէտք էին հարցանելոյ, թէ դու ով ես. զի գիտէին թէ տէրն է։ Յայտնի է թէ հրա-շափառագոյն...։ Վջ. իսկ եհաս կատակին ար-դարութիւն, որով ուրախ արար զերկնայինսն եւ զերկրայինսն միանգամայն...։

= Պարիս, Թ. 114, Թղ. 26բ—28բ (ԺԳ)։ Տպագիրը հոս շատ կրճատուած։

10. Դարձաւ Պետրոս եւ տեսանէր զա-շակերտն, զոր սիրէր Յիսուս...։ Վասն է՞ր

*աւետարանիչս այնքան պատմէ զանձին գո-վութիւն...: Վջ. Արդ սքանչելատես մար-գարէն Եզեկիէլ գրէ վասն տէրունական ա-թոռոյն...:*

= *Փարիզ*, *Թ.* 114, *Թղ.* 32*ա*—33*ա* (*ԺԳ*): *Տպագիրն շատ կրճատուած*:

*Յովհաննու Մեկնութեան այս հատուա-ծներու ցանկը, որ կազմուած է զանազան, ոչ խնամով պատրաստուած Յուցակներէ, կը կարօտի վերաքննութեան ուղղակի ձեռա-գրաց վրայ, կարենալու համար ստուգել թէ հատուածներս երեք թարգմանութիւննե-րու ո՞ր խումբին կը պատկանին: Եթէ ցու-ցակագիրները բարի գտնուած ըլլային ճա-ռերուս սկզբնաւորութիւններն եւ վերջաւո-րութիւններն գէթ 2—3 տող յառաջ բերել, հնարաւորութիւն կ՚ունենայինք ճշդագոյնս դասաւորել մէն մի հատուածը*:

Հրատարակութիւն: *Մեկնութիւն սրբոյ Աւետարանին որ ըստ Յոհաննու (արարեալ սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի եւ տիեզերա-լոյս վարդապետի)*: *Կոստանդնուպօլիս, ի տպարանի Գրիգոր դպրի Մարզուանցւոյ* (1717), 8°, *էջ* 981:

*Հրատարակութեանս վրայ հսկած է Պաղ-տասար դպիր, իրմէ է գեղեցիկ վերջաբանն եւ չափական ներբողն Յովհաննէս Ոսկեբե-րանի: Ձեռքի տակ ունեցած են հրատարա-կիչք երկու «համանման եւ միատիպ» օրի-նակներ, մին գրուած Երեմիա վարդապետէ եւ միւսը տէր Ղազար քահանայէ «ի սահմանս*

տանն Սարյ» (էջ 981)։ Թէպէտ կ՚ըսուի, թէ «տպեցաք զսա բազում զգուշութեամբ եւ սրբագրական աշխատութեամբ», բայց եղած է սխալաշատ։ Վերջին ճառերը շատ համառօտուած են։ Դժբախտաբար չունիմ ձեռքիս տակ ձեռագիր օրինակ, համեմատութեան առնելու համար եւ այլ տեղիքներ։ Մեկնութիւնս բաժնուած է երկու հատորի եւ 88 ճառերը այդ բաժանման համաձայն դասաւորուած են 1 + 45 + (Բ.) 42 ճառ։ Ա. ճառը նկատուած է Նախերգանք։

Գիրքս ուրիշ հրատարակութիւն մ՚ալ տեսած է. այսինքն առաջին թերթն եւ վերջին երկու թղթերը (էջ 977—981) յետոյ, 1737ին, միւսանգամ տպագրուած են դուրս ձգելով հին տպագրութեան էջ 979, որով ունեցած է 980 էջ։ Այս մասին են տողերս. «Այս տետրս յառաջ այսպէս էր տպելի, բայց ի ձեռն ոմանց աւերումն էառ։ Եւ այժմ ի պակասիլ տետրից ոմանց՝ նոր տպեցաք զնոսա ի յրումն քանի մի գրքոց. յորում էր թիւն մեր 1186։ Եւ Քրիստոսի յուսոյն մերոյ փառք յաւիտեանս. ամէն»։

5. ՏՕՆԱՄԱԿԻ (ՃԱՇՈՑ ԳՐՔԻ) ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Հայոց Եկեղեցին սկսեալ հաւանօրէն Ե. դարու վերջերէն, իր տօնակատարութիւններու համար կը հետեւէր Երուսաղեմեան Տօնամակին, որ կ՚ընդգրկէր Յայտնութեան (Ծննդեան) տօնէն մինչեւ Հոգեգալուստ շրջանը։ Այս Մատեանը նկատի ունէր

Երուսաղէմի սրբավայրերը եւ այն տեղերը կատարուած տօնակատարութիւնները։ Նախնաբար յունարէն գրի առնուած էին հին սովորութիւնները, սաղմոսերգութիւնները եւ Հին եւ Նոր Կտակարաններէ առնուած ընթերցուածները. թէեւ ցայսօր երեւան եկած չէ յոյն Բնագիրը որ եւ է տեղ։ Երուսաղէմ կային բազմաթիւ վանքեր զանազան ազգերէ բնակուած։ Անոնց թուին մէջ էին նաեւ Հայ վանականները։ Կը յիշուի, թէ հայ վանքերու մէջ պաշտամունքները կը կատարուէին հայերէն։ Համընթանալու համար տեղական տօնակատարութիւններու, թարգմանեցին հայ վանականները այդ Տօնականը իրենց լեզուին։ Կիրարկուած լեզուն ցոյց կու տայ, թէ Ե. դարու երկրորդ կէսին պէտք է կատարուած ըլլայ թարգմանութիւնը։

Այս գիրքը հիները անուանած են «Տօնամակ», որ սղումն է «Տօնանամակ»ի, այն է Տօնագիրքի. կը կոչուի նաեւ Տարեգիրք, աւելի ուշ ժամանակներուն՝ Ճաշոց գիրք։

Ժամանակի ընթացքին կցուած էին Տօնամակին, ուրոյն բաժնի մէջ, նորամուտ տէրունական տօներ, սուրբերու եւ մարտիրոսներու յիշատակներ, մասամբ ըստ Հայոց եւ մասամբ ըստ Հռոմի ամսոց։ Բայց եւ այնպէս աղքատ մնացած էր հայ Տօնացոյցը համեմատութեամբ դրացի եկեղեցիներու՝ Ասորւոց եւ Յունաց։ Ծանօթացուած էին Հայոց թարգմանութեամբ պէսպէս Վարքեր եւ Վկայաբանութիւններ, բայց չէին առ-

նուած այդ սուրբերը Տօնացոյցի մէջ իբրեւ տօնելի սուրբեր եւ վկաներ, թէեւ այդ Վարքերն եւ Վկայաբանութիւնները կը կարդացուէին եկեղեցիներու մէջ ի շինութիւն հաւատացեալներու: Սուրբ մը տօնելի ընծայելու համար պէտք էր կանխաւ սահմանել այդ տօնին համապատասխան Սաղմոսներ, Ընթերցուածներ, Աւետարաններ եւ այլն:

Գրիգոր Բ. կաթողիկոս բարի նախանձով փոյթ տարաւ պայծառացնել Հայոց եկեղեցւոյ տօնակատարութիւնները, բայց մասնաւորապէս ճոխացնել Տօնացոյցը: 1074ին ուղեւորեցաւ Կ. Պոլիս, Երուսաղէմ, Եգիպտոս եւ այլն. իր գլխաւոր նպատակն էր թարգմանել տալ Վարքեր եւ Վկայաբանութիւններ, որոնք տօնելի էին դրացի եկեղեցիներու մէջ եւ կը պակսէին Հայոց: Սուրբ մը կամ մարտիրոս մը տօնելի հռչակելու համար պէտք էր տալ անոր պատմութիւնն ալ: Իր թարգմանած, լաւ եւս թարգմանել տուած Վկայաբանութիւնները թուով մեծ եղած են. անոնցմէ սակաւաթիւներ միայն կրցած են թարգմանել տուողին անունը: Վերադարձին բերաւ հետը այդ թարգմանութիւնները. ուրիշներ ի գլուխ եկան վերադարձէն ետքը, 1100—1104 տարիներուն: Կան թարգմանութիւններ, որոնք կը կրեն թարգմանութեան տարին, ուրիշներ, դժբախտաբար անթուական են: Գրիգոր կաթողիկոս իր այս գործունէութեան համար յորջորջուեցաւ, եւ իրաւամբ, Վկայասէր:

Սրբոց եւ վկայից տօները սովորութիւն ունէր Եկեղեցին տօնել անոնց մահուան կամ նահատակութեան, ինչպէս նաեւ նշխարաց փոխադրութեան օրը: Այս սկզբունքով ջանք տարաւ Վկայասէր ստուգել իւրաքանչիւր սուրբի մահուան օրը, որ սովորաբար նշանակուած կ'ըլլայ անոնց Վարքին եւ Վկայաբանութեանց մէջ: Հաւանօրէն ունէր աչքի առաջ նաեւ Բիւզանդական Տօնացոյց մը իբրեւ առաջնորդ: Այսպէս օրը ստուգելէ ետքը մատնանշած է սաղմոսները, կցուրդները, ընթերցուածներն եւ աւետարանները Հին եւ Նոր Կտակարաններէն. զորոնք գրի առած են ապա իր քարտուղարները: Կիրակոս վարդապետի վկայութեան համաձայն Վկայասէր կարգաւորած է 46 նոր տօներ աւուր պատշաճով. բովանդակ տարւոյն համար: Այս Տօնամակը անմիջապէս առնուած է գործածութեան: Առաջին խմբագրութիւնը կը ներկայացնէ Վիեննայի Թ. 241, էական մասով: Կ'երեւայ թէ այս օրինակը տարածուած է Կիլիկեան սահմաններէն դուրս, Ծովք եւ Հռոմկլայ, մինչեւ աթոռին Կիլիկիա տեղափոխուիլը:

Այս առաջին խմբագրութիւնը պէտք է կատարուած ըլլայ 1100—1102 տարիներուն. վասն զի կը պակսին հոն 1103ին թարգմանուած Վկայաբանութիւնները, այսպէս Ղամբէոսի (1103էն). այս եւ յաջորդ տարւոյն մէջ հարկ է զետեղել նաեւ Պարասկեւայի, Վառվառէի եւ Մամասի վկայաբանութիւնները,

որոնք անթուական են եւ ներս չեն առնուած Տօնամակին մէջ:

Տօնական տարին տակաւին իր լրումը չէր գտած: Կային օրեր, որոնք կը կարօտէին տօներու: Զայս զգացած էր Վկայասէր. այս պատճառաւ յանձնարարած էր Կիրակոս վարդապետին, որ հոգ տանի բաց մնացած օրերուն պատշաճեցնել տօնելի սուրբեր: Այս աշխատանքի լծուեցաւ Կիրակոս հաւանօրէն Դրազարկի մէջ, ուր կը գտնուէր 1110էն սկսեալ: Այս երկրորդ խմբագրութիւնը աւարտեց Կիրակոս աւելցնելով Վկայասէրի օրինակին մէջ 30 տօնելի օրեր: Ինչպէս կ՚երեւայ այդ տօները զետեղուեցան գլխաւորաբար Յունուար—Յունիս ամիսներուն մէջ, նոյն յօրինուածութեամբ, ինչպէս կազմուած էր Վկայասէրինը:

Այս տեղ անօգուտ կը համարիմ մի առ մի մատնանշել Կիրակոս վարդապետի յաւելուածները: Այս աշխատութիւնը կատարած է արդէն Մեծ. Հ. Աւգոստինոս Սեքուլա, որ պատրաստած է մանրակրկիտ ուսումնասիրութիւն մը Հայոց հին եւ նոր եւ նորագոյն ճաշոցներու վրայ:

Գրիգոր Վկայասէր եւ Կիրակոս վարդապետ կարեւոր բացատրութիւնը տուած են իրենց կատարած գործին շուրջ այն Յիշատակարաններու մէջ, զորոնք զետեղած են Տօնամակին մէջ, տես վարը: Ուրիշ մը, որ այս Յիշատակարաններուս ծանօթ եղած է, գրած է տողերս.

«Մեղրիկ Սեւանեցին, որ զԴրազարկի սահմանն է կարգաւորեալ, եւ Կիրակոս, որ շատ տօնս եւ յիշատակս սրբոց ի Մարտի(ր)ողոգս ճաշագրոցս է յաւելեալ» (Յովսէփեան, Ա., 305)։ Ուստի, երբ կը գրէ Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 231, թէ Մեղրիկ վարդապետ «գործ մի կարեւոր յեկեղեցւոջ մերում թողեալ՝ զԿարգաւորութիւն ճաշոց գրոց, յաւելմամբ տօնից եւ պատշաճ ընթերցուածոց, հրամանաւ եւ հաճութեամբ Գրիգորի Վկայասիրի», պէտք է իմանալ ի մասին Կիրակոսի, ինչպէս ուղիղ արտայայտուած էր այլուր (Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 32)։ Այսպէս նաեւ երբ նոյն հեղինակը, հետեւելով Սամուէլ Անեցւոյ զԿիրակոս «Կանոնադիր Դրազարկուն» կը համարի (Սիսուան, էջ 231) հարկ է Մեղրիկ Գէորգը ճանչնալ։

Այս Տօնամակին պէտք է մերձեցնել ինչ որ գրուած է 1287ին օրինակուած Տօնացոյցի մը սրբոց տօներու ցանկին յառաջաբանին մէջ, զոր յառաջ բերած է Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, 231· այն կարգաւորութիւնը «ընկալեալ ի Հայաստանեայց Եկեղեցի՝ ընտրութեամբ սուրբ Վարդապետացն նախադրական տանն սուրբ ուխտին Դրազարկու»։

Ճաշոց գիրքս կրեց յաջորդ շրջաններուն ալ բարեփոխութիւններ, այսպէս Տիրացու Տարօնեցիէն (ԺԲ. դարու վերջին քառորդին)։ Բայց մեր նպատակէն դուրս կը մնան զարգացման այս փուլերը։

Գրիգոր Վկայասէրի եւ Կիրակոս վարդապետի Յիշատակարանները։

*Միակ ձեռագիրը որ հասած է մեզի եւ կը պարունակէ այս կրկին Յիշատակարանները, պահուած է Հռոմ Լեւոնեան Վարժարանին մէջ, բերուած նոյն քաղաքի Մարիամ Եգիպտացւոյ Եկեղեցիէն, ուր էր Հայոց հին Հիւրանոցը։ Ձեռագիրը նախնաբար կը պատկանէր Պերուճիայի Հայոց Ս. Մատթէոսի եկեղեցւոյն, նուէր ուղարկուած 1279ին Հայոց Լեւոն Բ. Թագաւորէն. իսկ օրինակութիւնը կատարուած է 1230ին Երզնկա, Կապոսի վանքին մէջ ի ձեռն Գրիգոր գրչի. յիշատակարանը գրուած Մխիթար գրչէն։ Ձեռագրիս մասին աւելի մանրամասնութիւններ տես իմ Ցուցակ հայերէն ձեռագրաց Հռոմի Լեւոնեան Վարժարանի եւ Ս. Վլաս Հայոց Հիւրանոցի, Թ. 1։ Ձեռագիրս տեսած է նախորդ դարու սկիզբը Հ. Մ. Աւգերեան եւ 1846ին Հ. Եփրեմ Գամատարեան եւ արտագրած են կարեւոր Յիշատակարանները։*

*Թղ. 127ա—128բ. «Այս ինչ կայ ի գիրս. եւ այս է Յիշատակարան տաւնից տէրունականաց եւ Սրբոց Աստուծոյ, ցուցմամբ աւուրց Հռոմի ամսոց ըստ իւրաքանչիւր սրբոց՝ հանդիպմամբ չարչարանաց կատարման, եւ կամ ըստ խաղաղական ելից հանգստեան Մարտիրոսաց եւ Հայրապետաց սրբոց, որք հաճոյացան Աստուծոյ նեղ եւ անձուկ ճանապարհաւն Յիսուսի։ Զոր ես*

Գրիգորիս ծառայ Աստուծոյ եւ գիտապետ հայաստան ազգիս. համարձակեալ վասն սիրոյ վկայից Քրիստոսի, յաւելի ի նախակարգեալ տաւնսն Հռոմի ամսոց՝ ընտրեալ ի Տաւնամակաց յոքունց զսակաւս, որ ի բազմաց անփոյթ էր լեալ: Եւ մեք աշխատեալ զայսպիսի համառատահաւաք Տաւնամակս գրեցաք ի պայծառութիւն եկեղեցւոյ. զոր ցանկ ընթերցցի ի նմա ի ժամու սոսկալի պատարագին. զոր մի ոք աւելորդ վարկցի: Զորոց զվարս քաղաքավարական պատմութեանց, զոր ոչ գոյր առ մեզ հայ գրով՝ մեք աշխատութեամբ թարգմանեցաք ի յունականէն ի մերս գիր եւ բառ: Վասն որոյ աղաչեմ սրբոյք վկայիւքս զամենեսեան առ հասարակ, մի՛ անփոյթ առնել զմեր աղէտանց երկս աշխատութեան, այլ ընդօրինակել զագափարաւ եւ գրելով պարհել (Զ. պասել) յամենայն սուրբ եկեղեցիս եւ անխափան առանց յերկուանալոյ կատարել զկանոն ընթերցուածիս ի տաւնս յիշատակի սրբոցն: Եւ որ ոք գրէ զգիրս զայս, աղաչեմ գրել ի գլուխս գրոցն զգոյզն բան յիշատակի մերոյ. եւ աղաւթիւք յիշել ի Քրիստոս զարարող գրոցս: Եւ զԳրիգորիս համանուն իմ եւ համազգի, որ եւ գրիչ եւ յաւրինիչ գրոցս, յիշեսջիք ի Քրիստոս: Եւ որք յիշէքդ, յիշեալ լիջիք աւրհնութեամբ ի Տէր: Յիշեա, Տէր, եւ ողոր(մեա)»:

«Ես Կիւրակոս տրուպ Գիտնական եւ անարժան ծառայ Աստուծոյ, ծանուցանեմ ձեզ

*վասն սուրբ կտակիս՝ Տաւնամակի եկեղեցւոյ սրբոյ եւ աստուածայնոյ յիշատակի: Որպէս գիտէք(դ) ի սկզբանէ հաւատոց մերոց, մեր ուղղադաւան ազգիս արամեան, որդիացեալք աշակերտութեամբ սրբոյն Գրիգորի աստուածանման լուսաւորչին մերոյ, համաւրէն ամենայն սրբովք, որ եղեն յազգս մեր հաճոյ Աստուծոյ, զայս Գրոյ եկեղեց(ւ)ո(յ) անփոյթ արարին վասն ժամանակին, եւ մեծ եւ աստուածային տաւնքն Խաչի կամ Աստուածածնի, վկայիցն եւ սուրբ հայրապետացն, հարցն եւ ճգնաւորացն եւ կուսանացն վկայիցն, անփառաւոր եւ անկատար եւ անյարմար լինէր առանց այս գրոց: Ապայ Հոգին սուրբ ազդեաց սուրբ հայրապետին Գրիգորիսի աստուածասիրի եւ վկայասիրի, եւ նոր սկսեալ յաւրինեաց զսա՝ ըստ ամենայն տաւնից արժանապէս ի դէպ սաղմոսիւք եւ ընթերցուածովք աստուածախաւսիւք: Բայց ոչ ի գլուխ աւարտեաց զամենայն զոր պարտ եւ արժան էր տաւնելոյ: Ապա ինձ, որ միշտ ընդ նմա էի, եւ յամենայն իրս աստուածայինս կցորդ եւ յորդորիչ, եւ փոյթ յաշխատութիւն հոգեւորաց եւ Աստուծոյ սիրելեաց, հոգ եդ ի փախճանելն իւրում մի՛ անփոյթ առնել զմանէ, այլ յանկել ընթերցուածովք ըստ արժանին, զոր եւ արարի: Զի հարկ եղեալ է մեզ յԱստուծոյ տաւնել զսոսա: Եւ է այսպէս. քառասուն եւ վեց տաւն սուրբ հայրապետն կարգեաց, եւ երեսուն ես տրուպս յաւելի. որ լինին եւթանա-*

սուն եւ վեց. զորս բոլոր տար(ւ)ոյն բաւա-
կան համարեցաք ընթերցուածովքն եւ մար-
տիրող(ոգ)աւքն: Իսկ եթէ տարւոյն աւուրքն
չլինին բաւական. զի է տարի որ երկոտասա-
նալուսին լինի եւ է տարի որ երեքտասան.
եւ տաւնքն կարճ տարին յաւելուն՝ զուք զեր-
կուսն ի մի տաւնեցէք. Գ. եւ Դ. եւ այնպէս
զրնաւն ի գլուխ տարէք. զի ըստ հաւատոց
մերոց եւ տաւնքն սրբոցն պարտ է որ կատա-
րին: Իսկ զիսկիզբն ի սրբոց եւ աստուա-
ծաւորաց գրեցի, զի մի հայիցիք ի ծոյլ եւ
յորովայնամոլ կրաւնաստանսն եւ ընդ նոսին
կորընչիցիք ի կենացն Աստուծոյ. այլ սրբոց
նմանեալ՝ մեծ փափագմամբ տաւնեսջիք:
Մեք զընթերցուածքն առատապէս որիչ որիչ
եդաք ըստ ամսոյն, զի մի աղքատ եղիցի(ն)
կարգք եկեղեցւոյ: Հարկ եւ հրաման ունիք
յԱստուծոյ զսակաւ յիշատակարանս խրատու
ի գիրսն՝ զոր նորոգիցէք՝ յաւրինակել, որ-
պէս եւ զՀոգեւոր Տեառն յիշատակ ի նոր
գիր. եւ ի վերայ ամենայնի զմեզ զերեքեանս
ի նոյն, զսուրբ Կաթողիկոսն եւ զհամանուն
կարեւոր իւր զԳրիգորիս, եւ զիս զԿիրակոս
յիշեսջիք առաջի Քրիստոսի ի սուրբ խոր-
հրդին. եւ ի խորոց սրտէ խաղաղութիւն
խնդրեցէք ի Քրիստոսէ. եւ նոյն ինքն Յիսուս
Քրիստոս ամենեցուն ողորմեսցի եւ արժանի
արասցէ արքայութեան երկնից. որում փառք
յաւիտեանս:

= Նոյնը հրատարակած են Հ. Մ.
Աւգերեան, Լիակատար Վարք, ԺԱ., Յաւե-

լուած, էջ Ձէ—Ձթ: Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 1209—1210 (1846): Զարբ., Մատենադարան, էջ 722—724: Հայապատում, էջ 351—352: Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., 269—272:

### Ծ. ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՄԸ ԿԻՐԱԿՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԳՐՉԷՆ (ԱՒԵՏԱՐԱՆ 1113ԷՆ)

Հետեւեալ Յիշատակարանը գրած է Կիրակոս վարդապետ 1113ին Աւետարանի մը մէջ, զոր օրինակած է ընտիր ձեռագրէ մը, իր յանձնարարութեամբ, Գէորգ գրիչ ի Դրազարկ: Ո՞վ է այս Գէորգ գրիչ: Այս տարւոյն Դրազարկ կը գտնուէր Գէորգ Վ. Մեղրիկ, իբր 70ամեայ հասակին: Երբ կը գրէի Վարդապետին կենսագրութիւնը, միտած էի այն կարծիքի թէ նոյն ըլլայ գրիչս համանուն Մեղրիկի հետ: Բայց որովհետեւ Կիրակոս օրինակողը պարզապէս «Գէորգ գրիչ» կը ներկայացնէ, առանց մեծարական-ընկերական արտայայտութիւններու, զոր պիտի չխնայէր, եթէ Մեղրիկն ըլլար, այս պատճառով յաւագոյն է ճանչնալ զանիկա արուեստով գրիչ մը, որ ծաղկած է Դրազարկի մէջ Մեղրիկի եւ Կիրակոսի հովանաւորութեան տակ:

Այս Յիշատակարանին կից պիտի տամ երկրորդ մ՚ալ, որ գրուած է նոյն վանքին մէջ 1123ին, երբ տակաւին կենդանի էր Կիրակոս եւ կը յիշուի գովութեամբ:

Գիր յիշատակի Աւետարանիս:

*Կամաւքն Աստուծոյ Հաւր կենդանւոյ եւ կամաւղի յամենայնի եւ միածնի Որդւոյ իւրոյ կենարարի մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ կենդանարար եւ երկրպագելի Հոգւոյն սրբոյ:*

*Ես Կիրակոս ի վերջ հասեալ գիտնականաց, մեղաւոր եւ անարժան ծառայ Աստուծոյ, ցանկացաւղ եղէ այսմ լուսայիղձ եւ կենսակիր կտակիս. եւ ետու աւարտել Գեւորգայ գրչի ի սոայդ եւ յ(ը)նտիր գաղափարէ սրբոյն Սահակայ Թարգմանչի՝ յստակ եւ ականակիտ որպէս եւ ի Փրկչէն ասացան. զոր յոյժ բաղձանաւք եւ յոգնատոչոր տենչանաւք մեծաւ աշխատութեամբ ստացայ զսայ ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ եւ յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց եւ ամենայն բնաւ զարմից կենդանեաց եւ ննջեցելոց:*

*Արդ ո՜վ սուրբ հարք եւ ճգնազգեաց կրաւնաւորք եւ առաքինազումար դասք քահանայից, յորժամ մայելէք ի քաղցրաճաշակ եղեմատունկ մատակայ քառատաջեա հոսանաց կենդանական աստուածախաւս աւետարանական բանիցս, մանաւանդ յորժամ բառնայք ի ժամ սոսկալի պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յողջոյն ձեր իջանելով զաւրք հրեշտակաց եւ սքողեալ ահիւ խառնին ընդ ձեզ, յայնժամ նովին սուրբ Աւետարանաւդ եւ միջնորդական կենարար հ(րա)շիւք սուրբ պատարագին յիշեսջիք զստացողս սորին ողորմութիւն գտանել յահեղ աւ(ու)րն հա-*

*մառաւտի ընդ ամենայն սուրբս ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ ։*

*Գրեցաւ սուրբ Աւետարանս ի հրեշտակակերպ մենաստանիս Դրազարկիս, առաջի սուրբ Աստուածածնիս եւ սուրբ եղբայրութեանս ի միջիս, ի ·ՇԿԲ· թուականիս հայկազեան ազգիս, ի թագաւորութեան Յունաց Աղեքսի երկարնակի, եւ ի կաթողիկոսութեան Հայոց Բասղի եւ յաջորդի Նորուն Գրիգորի ի փառս Քրիստոսի ։*

Աղերսական բանք եւ մաղթանք վարդապետիս առ սուրբ Աւետարանս ։

*Ով հրաշափառ եւ երջանիկ երկնաւոր հրեղէն դասուն զարմանալի անբաժանելի ծոցածին Հաւր Բան եւ համագոյ Հոգւոյն կամաւղի, որ ի ստորինս ասեմ իջեալ ընդ մեղաւորս խաւսեցար, եւ կալով առաջի քո մեղաւորաց առ քոյդ սիրոյ սրբեցան ։*

*Քանզի եւ ընդ պոռնկին կարդ բանի եղեալ բարբոյ ի բաց ոչ մերժեցեր, եւ զՔանանացին անհամարձակ դիմաւքն ածեր ի յբուժին հաւատոյ եւ զկարկամեալն կանգնեցեր, վասն զի Աստուած գոլով իմ Յիսուս, քղանցիւք զքանցեալն յարենէ բժշկեցեր. եւ զոքանչին Սիմովնի զաւժամայն փրկութիւնն հասուցեր. առատ աղբիւր առ Սամարացին հոսեալ, հեղցիս յանարժանս ծառայս Կիւրակոս զգթութեանդ վտակս. եւ մի տար, Տէր, դատ ընդ ծառայի քում, որ ոչս արդարանամ, այլ մաղթանաւք Մաւր քո, Քրիստոս, զմեղաց իմոց զլուծն խորտակեա եւ քաւեա*

*զիս զյանցաւորս, որպէս զի ջնջեան ամաւթոյ մեղացն զոտից զվտակս արտասուաց եւ կացից ի դասուն քո, Քրիստոս Աստուած մարդասէր: Եւ զոր անաւսր լումայս եւ նուրբ խերեւեչս մատուցի, Տէր, ընդ այլոյն ընկալ, զի առ քեզ եւ ի քեզ եռու զի(ս) եւ իմոյ կենացս փրկանք դու ես, Քրիստոս Աստուած իմ, որ աւրհնեալ ես ընդ Հաւր եւ Հոգւոյն սրբոյ յաւիտեան. ամէն* (*Թղ.* 20*ա*—22*ա*):

*Թղ.* 23*բ*. *«Զստացիչ սրբո Աւետարանիս՝ զԿիւրակոս սուրբ վարդապետ յիշեսջիք ի Քրիստոս»: Թղ.* 102*բ*. *«ԶԿիրակոս տիեզերական եւ գերահռչակ գիտնական զ յիշեսջիք ի Տէր»: Թղ.* 145*ա*. *«Քրիստոս Աստուած շնորհաւոր արասցէ զսուրբ Աւետարանս սուրբ վարդապետին Կիւրակոսի. ամէն»*:

=*Էջմ. Նոր ժողովածու, Թ.* 1304: *Յովսէփեան, Յիշատակարանք Ձեռագրաց, Ա.*, *էջ* 320—322:

## 7. ԹԱԴԷՈՍ ՔԱՀԱՆԱՅԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ

*Հետաքրքրական է Յիշատակարանս ոչ միայն իբրեւ աստուածաբանական շարադրութիւն մը Դրազարկի Դպրոցէն, ուր կ'ուսուցանէր Կիրակոս վարդապետ, այլ եւ իր նորութիւններով Դրազարկի պատմութեան համար:*

1. *Անծանօթ էր մեզի Դրազարկի դիրքը. այժմ կ'իմանանք, որ շինուած էր ան «լեռ-*

նապատ» վայրի մը վրայ, «առ ստորոտով
լերինն Տաւրոսի, որ է մերձ յանմատոյց ա-
մուրն, որ յունական լեզուաւ Կոպիտառոյ
անուանի»:

2· Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 234,
Դրազարկի առաջնորդներ նշանակած է
1113—1127 տարիներուն. Գէորգ Մեղրիկ
† 1113· եւ Կիրակոս Գիտնական վարդապետ
1113—1127: Գիտենք, թէ այդ տարիներուն
Դրազարկ կը գործէին Գէորգ եւ Կիրակոս
վարդապետները, բայց թէ անոնք վանքին
առաջնորդութիւնը վարած են, չէ յիշուած:
Այժմ կը հաղորդէ մեզի Թադէոս գրիչ, թէ
1123ին, ուստի Կիրակոսի կենդանութեան,
վանքին առաջնորդն է իր եղբայրը «տէր
Յովհաննէս ընտրեալ քաւչապետ», որ ան-
շուշտ 1123էն ետքն ալ ժամանակ մը շարու-
նակած է իր պաշտօնը:

3· Նոր անուն է մեզի համար «Գրիգոր
Վ. Արքայեցի», անշուշտ ըլլալով ծագմամբ
Մոկաց «Արքայից գաւառէն»: Ան կը գովուի
իբրեւ սրբակեաց եւ գիտուն վարդապետ:

«Փառք երից անբաւից, անհասից, անի-
մանալեաց, միայնոյ ամենակալ անսկզբան
'ւ ամենից սկզբնողի նախսկզբան եւ անժա-
մանակի եւ ժամանակաց արարողի, աներ-
րիւ աներրի 'ւ երիցս արարողի, աննիւթի եւ
զաննիւթ արարածս նիւթաւղի. անսահմանի
եւ զամենայն սահմանողի, անմերձ յեղելոցս
եւ առ ամենեսեան հուպ, անբաւի 'ւ անկա-

*քաւոր, անխառն եւ անորիշ, սրբում պարզի, եղարուն եւանձեան աստուածութեանն պատիւ այժմ եւ յանծերանալի յաւիտեանս ամէն. արդար եղիցի, եղիցի:*

*Յամի Տ․որդի Հ․երորդի Երկրորդի* (1123) *Թուաբերութեանս Հայոց, ես նուաստ քահանայ Թադէոս ցանկացայ եղեա սատուածախաւս մատենի սորայն Եւագրեա միայնակեցի միանդամայն եւ վարդապետի եւ գրեցի զսա մեծաւ ջանիւ եւ աշխատութեամբ ի լեռնապատ անապատիս որ անուն Դրազարկ յորջորջի առ ստորոտով մեծի լերինն Տաւրոսի, որ է մերձ յանմատոյց ամուրն որ յունական լեզուաւն Կոպիտառայ անուանի: Զի որպէս Հռովմայեցւոց քաղաքն ունելով զերկուս արեգակն զՊաւղոս եւ զՊետրոս, սոյնպէս եւ անապատս այս ունելով զերկուս լուսաւորս զգերակայ վարդապետն Կիրակոս եւ զմականուն վարդապետն Արքայեցի Գրիգոր կոչեցեալ, երկոքին քաջք եւ առաքինիք, առաքինութեամբ անհաս եւ գիտութեամբն գերիվերոյ քան զամենեսեան, զոր եւ մեր սիրով եղեալ աստուածային գրոյս եւ սուրբ վարդապետս զաւրինակս շնորհեաց:*

*Սոցայ զաստուածաշնորհ եւ զպատուական եւ զծաղկալից բուրաստանս, որ ունի ամբարեալ ի զաւիթս ծոցոյ անծկութեան իւրոյ զվսեմական զանձունակ ոսկէնման բանք սրբոց մարգարէիցն եւ զառաքելոցն մանաւանդ եթէ զնոյն ինքն Տեառն բանն որ*

է Տէր առաքելոց եւ մարգարէից, եւ այլ բիւր զգուշաւոր խրատ, զի այս են պատուիրանք որ լուսաւորեն զամենայն հոգի, մանաւանդ զայնոսիկ որ լսեն եւ ի միտ առնուն ըստ այնմ զոր առաքեալ ասէ. Ոչ եթէ լսելիք ար-դարասցին այլ առնելիք:

Զայս ստացայ յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբաւր իմոյ եւ առաջնորդի տեառն Յովհաննիսի ընտրեալ քաւշապետի. ի յիմ արդար վաստակոց արձան յաւիտենական ա-ռաջի Աստուծոյ եւ մարդկան. զի սովորու-թիւն է աշխարհասիրացն որ ազգի ազգի հնարս գտանեն վասն կենցաղոյս յառաջանա-լոյ. նոյնպէս եւ մեզ պարտ է հնարս գտանել վասն հանդերձելոցն, զոր զսա գտայ զեղ եւ փրկութիւն անձին իմոյ, ուսումն մանկու-թեան եւ վայելս կենաց իմոց:

Արդ ով սուրբ հարք եւ երանեալ ճգնա-ւորք եւ բազմութիւն կրաւնաւորաց, որք լսէք ի սմանէ կամ ընթեռնույք եւ կամ ուսա-նիք ի սմանէ եւ կամ ընդաւրինակէք, յիշե-լով զանարժանս արժանի արարէք եւ մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ. զի թերեւս ողորմեսցի Որդին միա-ծին յիւրում գալստեանն յահեղ աւուրն հա-մարատուի որ աւրն է մեծ եւ երեւելի ի վերջ-նումն գիշերի. զի սովորութիւն է որ կեն-դանիքն վասն ննջեցելոցն աղաւթս առնեն, զի նոքա այլ չունին ակնկալութիւն եւ ապա-ւէն՝ բայց միայն զաղաւթս կենդանեաց եւ այդ բաւական է: Եւ որ զմեզ յիշէ ինքն յի-

*չեալ եղիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, նմա փառք յաւիտեանս ամէն, ամէն, ամէն»:*

*= Զմմառ, Թ. 83, Թղ. 198ա (ժողովածոյք):*

## 8. ԿԻՐԱԿՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆԸ

*Գէորգ Լամբրոնեցի Գործք Առաքելոցի իր խմբագիր Մեկնութեան մէջ յառաջ կը բերէ տեղիքներ, որոնք կը վերագրուին Կիրակոսի մը: Այս տեղիքները թոյլ կու տան ենթադրելու, թէ Կիրակոս հեղինակած ըլլայ Գործք Առաքելոցի Մեկնութիւն մը: Դժբախտաբար գրաւէր Լամբրոնացին իր Ընծայականին մէջ որ եւ է ակնարկութիւն չէ ըրած ոչ Կիրակոսի անձին եւ ոչ ալ անոր գրուածքին մասին:*

*Բայց Կիրակոս մը, որ 1290էն յառաջ պարապած է նման աշխատանքի, կարող է ըլլալ միայն մեզի քաջ ծանօթ Կիրակոս Գիտնական († 1127), որուն համար վկայուած է, թէ էր հմուտ Հին եւ Նոր Կտակարաններուն, հետամուտ եղած է Ս. Հարց, յատկապէս Յովհաննէս Ոսկեբերանի Մեկնութիւնները գրադարաններու մութ եւ խոնաւ խորշերէն դուրս կորզել, լոյս աշխարհ հանել եւ բազմացնել. անոր խնդրանքով էր, որ Գրիգոր Վկայասէր թարգմանել տուաւ Ոսկեբերանի Յովհաննու Աւետարանին եւ Գործք Առաքելոցի Մեկնութիւնները եւ անոնց*

*խրթնաբանութիւնները լուսաբանելու աշխատանքը յանձնեց իրեն:*

*Կրնայ մտածուիլ, թէ Կիրակոս ձեռնարկած ըլլայ իր աշակերտներուն համար համառօտել Ոսկեբերանի ընդարձակ Մեկնութիւնը եւ այս Համառօտութիւնն ըլլայ այն, զոր ձեռքի տակ ունեցած է Գէորգ Լամբրոնացի: Այս տեղիքներն են.*

1. ԿԻՐԱԿՈՍ. *Իսկ զի՞նչ այն, թէ* Մատնեաց զնոսա ի պաշտօն զօրութեան երկնից (Է. 42): *Այսինքն յերկրաւոր չար սովորութենէն փոխեալ ընդ երկնաւորացն արար խորհրդակից պաշտամանքն: Իսկ մատնելն զթոյլ տալն յայտ առնէ, որ ոչ ըստ նորին կամաց էր անբանիցն արիւնքն եւ նիւթական պաշտամունքն, այլ ըստ նոցին հեթանոսաբարոյ սովորութեանն. որ յիմանալին եւ ի հոգեւորն մարմնապէս հայէին, ոչ կարելով ըստ միտս կատարել զպաշտօնն, այլ կերակրովք եւ պէսպէս լուացմամբք մարմնոյ»* (էջ 143):

2. *Կիր.* («Զա՞յր հռոմայեցի եւ անպարտ պա՞րտ իցէ ձեզ հարկանել, *ԻԲ.*, 25): *Զի Պաւղոս ոչ էր Պաղեստինացի, այլ Կիլիկեցի, բուն իսկ ընդ Հռոմայեցւովք գոլով»* (էջ 395):

3. *Կիր.* (*ԻԲ.* 26—27): *Եւ ոչ աննշանի ուրուք, այլ պատուեցելոյ. զի եւ բազումք ի Հրէից յայնժամ բնակէին ի Հռոմ: Իսկ ոմանք ասեն, թէ զնոյն իսկ ստացեալ էր հայր նորա զհռոմայեցի զոյն ի Հռոմայեցւոցն, որպէս հազարապետն ասէր, թէ Ես բազում գլխով*

ստացոյց զիշխանութիւնս, զոր զգնոցն աւեն նշանակել զգլխովքն: Այլ զի՞նչ արդեօք յայս-մանէ լինի. մեռ զեր. արձակեալ անդէն ի կապանացն՝ ինջայ գնա առ Հրեայսն» (էջ395):

Այս տեղիքները տարակոյս չեն թողուր, թէ Լամբրոնացին աչքի առաջ ունեցած է Մեկնութիւն մը, որուն հեղինակը Կիրակոս կ՚անուանէ: Միա՞յն երեք տեղիքներս կա-րեւոր տեսած է ան յառաջ բերել Կիրակոսի Մեկնութենէն: Հարկադրուած եմ ուղղել հարցումս, վասն զի կը կասկածիմ թէ այն երկու, իբր Ժէ. դարէ ձեռագիրները, որոնց հիման վրայ կատարած են Մխիթարեանք իրենց հրատարակութիւնը, անթերի ներ-կայացուցած ըլլան զանազան գրուածքներէ ծայրաքաղ հանուած հատուածներու քով հեղինակներու համառօտագիր անունները: Պէտք է այս կէտը վերաքննել հնագոյն, խնա-մով օրինակուած ձեռագիրներու համաձայն:

## Ը. ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ԳՈՐԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՀՆԱԳՈՅՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻ՞ՒՆ ՄԸ

Ունիմ ձեռքի տակ Գործք Առաքելոցի ա-նանուն Մեկնութիւն մ՚ալ, որ կը ներկայացնէ նոյն Մատեանին Ա. 1—12 համարներու Մեկ-նութիւնը միայն: Այս Մեկնութիւնը պահ-պանուած է մեզի Գրիգոր Աբասի որդի, գրա-ւէր եպիսկոպոսն Սանահնի եւ Հաղբատ վան-քերու, որ ծաղկած է իբր 1180—1220 տարի-ներուն: Սա կազմած է Պատճառաց գիրք մը,

որ խորագիր կը կրէ. «Պատճառ լայն եւ նուրբ գրեանց առնեալ ի Հարցն սրբոց եւ ի վարդապետաց եւ ի մի հաւաքեալ եւ հոգացեալ մեծ րաբունապետին Գրիգորի որդւոյ Աբասայ». ըստ Էջմիածնի Թ. 1879 ձեռագրին, որմէ ծագած է գլխոց նոր դասաւորութեամբ Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 47 (յամէ 1725): Հեղինակիս եւ անոր գործին մասին տես իմ Մատենագրական Հետազօտութիւններ, Ա. (Վիեննա 1922), էջ 1—43:

Գրիգոր եպիսկոպոս այս տեղ Հին եւ Նոր Կտակարաններու «պատճառներու» կարգին կու տայ նաեւ Գործք Առաքելոցին հայոց հետեւեալ հատուածները.

ա. Սկիզբն եւ պատճառ Գործոցն Առաքելոց սրբոյն Եփրեմի ասացեալ». Էջմ. 1879, թղ. 254բ—257ա: Վիեննա, 47, թղ. 143ա—145բ:

բ. Յովհաննու Ոսկեբերանի տեսութիւն վասն Գործոցն Առաքելոց. Էջմ. թղ. 357ա, Վ. 47, թղ. 145բ—146բ. որ հանուած է Ոսկեբերանի Մեկնութեան Ա. ճառէն:

գ. Ընդէ՞ր ասի Գործք Առաքելոց. Էջմ. 358ա, Վ. 47, թղ. 146բ—148բ. որ քաղուածք մըն է Ոսկեբերանի երկու ճառերէն ի մասին Գործք Առաքելոցի. տպ. Ճառք, էջ 287—288 եւ 299—304:

դ. Անխորագիր Մեկնութիւն Գործք Առաքելոցի Ա. 1—12 համարներու. Էջմ. 359ա, Վ. 47, թղ. 145—160բ:

Այս անանուն Մեկնութիւնը կը ներկայացնէ Համառօտութիւն մը Ոսկեբերանի Մեկնութեան, որ տեղ տեղ շեղումներ ցոյց կու տայ Ոսկեբերանի կարգէն: Այս շեղումները Համառօտողին քմահաճոյքի՞ն պէտք է վերագրել, թէ Մեկնութեան երկրորդ բնագրին: Կը նշմարուին Համառօտութեանս մէջ նաեւ եկամուտ տարրներ, քաղուած Ոսկեբերանի ի Վերնագիրն Գործոց ճառէն (որ նաեւ Իգնատիոսին ծանօթ է) եւ դարձեալ Իգնատիոսի Մեկնութենէն եւ Սարգիս Կունդի Ղուկասի աւետարանին Խմբագիր Մեկնութենէն: Ասոնք մուտք գտած ըլլալու են հոն անշուշտ Աբասու որդի Գրիգորէն, յամենայն դէպս 1180էն ետքը:

Այս Համառօտութիւնն էական մասով հանուած է Ոսկեբերանի Մեկնութենէն եւ կը կրէ իր վրայ դասական հայերէնի կնիքը, անտեսելով ինչ ինչ բառեր եւ դարձուածքներ, որոնք Համառօտողին կրնան վերագրուիլ: Այս պատճառով կարեւոր կը համարիմ հրատարակել զայն ամբողջութեամբ: Իմ տրամադրութեան տակ ունիմ միայն Վիեննայի Թ. 47: Վերագոյն, 3 § 6, 1 յիշուած ձեռագիրները կարող էին նպաստել բնագրին վերակազմութեան: Ցանկալի էր մանաւորապէս ունենալ Էջմիածնի Թ. 1315էն Գործոց Ա. 1—12 համարներու Մեկնութիւնը, համեմատութեան համար: Ծանօթութիւններու մէջ մատնանշած եմ յոյն բնագրի համեմա-

*տական տեղիքները, ինչպէս նաեւ Իգնատիոսէ եւ այլ աղբիւրներէ քաղուածքները:*

## Համառօտ Մեկնութիւն Գործոց Առաքելոց

1. Զբանն առաջին: *Տես զերանելի Աւետարանչիս խոնարհութիւն. զի ոչ ասաց թէ զառաջին աւետարանն զոր գրեցի, այլ* զբանն առաջին: *Մեծագոյն քան զանձն իւր զնէ զանուն աւետարանին: Ընդէ՞ր* բան *կոչէ եւ ոչ աւետարան, թէ «Զգրեալսն յԱւետարանին Ղուկայ» ասէ. զոր Պաւղոս աւետարան կոչէ այսպէս ասելով. «Որոյ գովութիւնն յԱւետարանի անդ է յամենայն եկեղեցիս». եւ զայն յաղագս Ղուկայ ասաց:*

2. Զոր արարի: *Վասն է՞ր ոչ արար մի գիրս առ Թէոփիլոս, այլ յերկուս բաժանեաց. սակս հաւաստութեանն եւ վասն յանկուցանելոյ զլսողսն. եւ այլ եւս, զի իրօք ինչ բաժանեալ էին եւ դպրութեամբք, զոր յԱւետարանի անդ ասաց թէ* գրել քեզ: *Տես զնորա առաքելական կամսն. վասն առն միոյ արար այսչափ ստուգութիւնս, զի ամբողջ զԱւետարանն գրեաց. ի Տեառնէ լուաւ թէ «Ոչ են կամք Հաւր իմոյ, զի կորիցէ մի ի փոքրկանցս յայսցանէ յիս հաւատացելոց»:*

M = Montfaucon.
1. *տ.* 1—5 = M. 4: *տ.* 5—10 = *Ճառք Ոսկեբերանի, էջ* 316:
2. *տ.* 23—29. *Հմմտ. Իգնատիոս, Մեկն. Ղուկայ, էջ* 10—11: *տ.* 16. *Զ. ետես* փոխ. *տես:*

3. Վասն ամենայնի: *Զոր յԱւետարանին ասաց կարգաւ գրել. վասն զի սկիզբն եդ որպէս պարտն էր եւ ի կատարումն ած որպէս աւրէն էր ըստ պատշաճի գրոցս: Սկսաւ յիջանելոյն նորա եւ գալ ի մարդկայինս ծնունդն. ապա կարգէ զաստուածագործ նշանսն. եւ ի չարչարանս նորա, յարութիւնն եւ ի համբառնալն: Քանզի Յովհաննէս սիրելին Քրիստոսի, որ այն վայելեաց ի համարձակութեանն, որ ի վերայ սուրբ լանջաց նորա արժանի եղեւ անկանել, որ անդուստ ընկալաւ զաղբիւրս Հոգւոյն սրբոյ, ասէր թէ Ոչ է հնար զամենայն գրել. «Զի թէ գրեալ էր, կարծեմ թէ եւ ոչ աշխարհս բաւական էր տանել» զգրեալ գիրսն, զսքանչելիսն, զվարդապետութիւնն, որ առնելոյն եւ ուսուցանէ զոր խաւսեցաւ ընդ նոսա եւ խրատեաց: Նաեւ զհակառակութիւնն զոր կրեաց ի Փարիսեցւոց անտի. զոսա ասէ «թէ գրեալ էին», չէին մտաք մարդկան կարող տանել զամենայն: Եւ աւետարանիչքն փոքր մի գրեցին զմի եւ զերկուս ի բանիցն եւ ի նշանացն. զի բորոտք սրբեցան եւ ամենայն ախտաժէտք բժշկեցան եւ զամենայն բովանդակեալ ունին. սուղ ինչ ի վարդապետութենէն գրեցին եւ զկնիքն ունի:*

3. *տ.* 29—36 = *Ճառք*, *էջ* 316: *Իգնատիոս այ ծանօթ է ճառիս*, *էջ* 317 = *Իգն.* 11: *տ.* 36—47 = *Իգնատիոս*, *էջ* 13—14: M. 5:

4. Ով Թէոփիլէ, *Քաջ աստուածասէր. զի որք կամին քաջալերս տալ եւ զաւրացուցանել զանհմուտսն, քաջ նաւարկութեամբ անցանել ընդ խորս ծովուն եւ յամբառնալ ալեացն ընդդիմանալ, կամ որպէս զաւրավար առաքինի զնահատակսն քաջալերել մղել ի ճակատն, ըստ աւրինակի եւ աւետարանիչս յորդորէ քաջամուխ լինել ի խորս անքնին աստուածային անաւրէնութեանն, մտանել զխորհուրդս նուաստանալոյ Աստուծոյ մերով բնութեամբս, անարատ մտածութեամբ եւ ուղիղ տեսութեամբ հաւատոյ. հայել ի ճշմարիտ դաւանութիւնն. որ էջն ի խոնարհ եւ ելոյծ զպարտիս մեր եւ յառաջինն եհան պատիւ ընդ իւր տանելով ի վեր: Կամ* զաւրաւոր աստուածասէր *հանդերձ գովութեամբ պարզաբար դնէ զանուն իւր հիանալով ըստ Առաքելոյ. «Ո՜վ խորք մեծութեան եւ իմաստութեանն Աստուծոյ»: Սքանչման է նշանակս, նայել ճշմարտութեամբ ի մարդեղութեան խորհուրդն. զի բոլորից Տէրն զկերպարանս ծառայի էառ եւ ճոխն մեծութեամբ երկնի եւ երկրի արարիչ գոլով աղքատացաւ վասն մեր եւ համբեր անարգանաց մահու վասն մեր, նստաւ ընդ աջմէ մեծութեանն ի բարձունս:*

4. տ. 50—73 = Իգն., էջ 11—12: տ. 53. Զ. զօրաւոր: տ. 55, Զ. անքննին: տ. 57. Զ. նուաստանալով:

5. Ո՞վ ոք Թէոփիլոսն իցէ: Ոմանք ասացին թէ առ ամենայն հաւատացեալս է բանն, բայց ինձ թուի թէ նա մի ոք նշանաւոր եւ յերեւելի արանցն էր եւ այն ինչ նորընծայ ի հաւատս, ըստ իւրումն աւետարանութեան յորդորումն առ նա առնէ: «Զի ուսանիցես զբանիցն որոց աշակերտեցար զճշմարտութիւնն»: Եւ զի՞րդ. բանք միայն է անմասն ի Հոգւոյն, ոչ լի Հոգւով: «Զոր աւանդեցին մեզ, որք ի սկզբանէ ականատեսք եւ սպասաւորք եղեն Բանին». որք զբանն Քրիստոսի գրեցին: Ոչ հանդոյն Մատթէոսի եւ Յովհաննու զինքենէ ճառէ գոլ ականատես եւ ականջալուր, ցուցանէ յառաքելոցն զայն ընկալեալ, ոչ ի Մատթէոսէ եւ ի Յովհաննէ միայն, այլ եւ յամենայն առաքելոցն: Ոչ յիւրոց վկայութեանց միայն ստանայ, այլ բերէ զառաքեալն ի մէջ, եւ այնպէս հաւատալոյ առնէ արժանի զբանն: Եւ ընդէ՞ր ոչ ասաց թէ որք աւանդեցին մեզ՝ Հոգւոյն սրբոյ սպասաւորք են: Քանզի այն ամբարհաւանութիւն թուէր անհաւատիցն, վասն որոյ եւ Յովհաննէս ասէր. «Ես տեսի եւ վկայեցի, թէ սա է որդին Աստուծոյ»: Եւ Քրիստոս առ Նիկոդեմոս ասէր. «Զոր գիտեմքն խօսիմք եւ զոր տեսաքն եւ վկայեմք»: Եւ ցառաքեալսն ասէր. «Եւ դուք վկայէք զի ի սկզբանէ ընդ իս էք»: Եւ առաքեալքն բա-

5. տ. 74—79 = Իգն. 14: տ. 80—87 ուրիշ աղբիւր կ'ենթադրէ: տ. 90—122 = M. 4:

գում անգամ այսպէս ասացին. «Վկայեմք եւ մեք. եւ Հոգին սուրբ զոր ետ Աստուած հնազանդելոց իւրոց»։ Եւ Պետրոս առ ի հաւատարմացուցանել զյարութիւնն ասէր. «Որք կերաք եւ արբաք ընդ նմա» զկնի յարութեանն։ Քանզի Հոգւոյն վկայութիւն ընլեայն կայր յայնժամ. վասն այնորիկ եւ աւետարանիչն ասէր, թէ «Որ ետեսն վկայեաց յաղագս արեան եւ ջրոյն»։ Եւ զտեսութիւն մեծ վկայութեան ետ նոցա, թէպէտ եւ քան զտեսութիւնն ստուգագոյն են իրք Հոգւոյն սրբոյ, այլ ոչ անհաւատ։ Եւ քանզի Հոգւոյն հաղորդեալ էր այրն, ի բազում իրաց յայտնի է, ի նշանացն որ յայն ժամու լինէին իսկ, եւ ի հանդիպելոյն յայնժամ Հոգւոյն. եւ ի հանդիպելոյն յայնժամ Պաւղոսի վկայութեանն որ ասէր. «Որոյ գովութիւնն յաւետարանի անդ». եւ ի ձեռնադրութենէն Պաւղոսի եւ յեկեղեցեաց անտի նժդեհակից։ «Զի ճանապարհորդակից մեր եղեւ ի շնորհս յայսոսիկ որ պաշտին ի մէնջ»։

6. Զոր սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել։ Եւ ե՞րբ սկսաւ առնել. ի մատնութեանն Յովհաննու։ Եւ ե՞րբ կատարեաց. յորում աւուր պատուիրեաց աշակերտացն ի Գալիլեա քարոզել զաւետարանն։ Այլ գիտեա թէ որպէս Քրիստոս զբանս իւր ի ձեռն գործոցն հաւաստարիմ առնէր. «Ուսարուք յինէն զի հեզ եմ եւ խոնարհ սրտիւ»։ Ուսուցանէր

6. տ. 1—26 = M. 5։

*անստացուած լինել, եւ ցուցանէր ի ձեռն գործոյն․ Զի որդւոյ մարդոյ ոչ գոյ տեղի ուր դիցէ զգլուխ իւր: Հրամայեաց զթշնամիսն սիրել․ ուսոյց զայս ի ձեռն խաչին, յասելն․ Հայր, թող սոցա: Ասէր․ Եթէ ոք կամեսցի դատել եւ առնուլ զձորձ քո, թող ի նա․ զի ինքն ոչ միայն զձորձն, այլ եւ զարիւնն ետ: Այսպէս եւ այլոց հրամայեաց առնել: Զոր եւ Պաւղոս ուսուցանէր․ «Որպէս ունիք զմեզ ձեզ օրինակ»: Քանզի անհնար է վարդապետի, որ բանիւ միայն իմաստասիրէ․ զի ոչ է գործ վարդապետի, այլ կեղծաւորի: Վասն այսորիկ առաքեալքն նախ ինքեանց վարուքն ուսուցանէին եւ ապա բանիւք: Եթէ ոք զչարչարանս նորա գործ անուանէ, ոչ սխալէ․ այլ զամենայն ինչ կրելով արար, զմեծ եւ զքանչելի գործն, զմահ եղծ, զդժոխս քակեաց եւ զայլն ամենայն:*

7․ Զոր սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել մինչեւ յաւրն պատուիրելոյ առաքելոցն: *Է՞ր աղագաւ յիշեցուցանէ զառաջին գիրսն․ ի սկզբանէ մինչ ի կատարած աշակերտին հաւատարիմ լինել ճշմարտութեան աւետարանին․ զի զայն որ յայլոցն լուաւ հաւատարիմ եղեւ գրեալն եւ հաւատացաւ յոյժ:*

8․ Ի ձեռն Հոգւոյն սրբոյ: *Նոյնպէս ասէ Մատթէոս․ «Գնացէք աշակերտեցէք զամենայն հեթանոսս․ մկրտեցէք զնոսա յանուն*

7․ *ուրիշ աղբիւրէ:*
8․ *տ.* 34—40 = M 6: *տ․* 40—93 *ուրիշ աղ-*

Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ»։ Մեծ է առաքելոցն գովութիւն, զի ի ձեռն նոցա փրկութիւն տիեզերաց ընծայեցաւ եւ պատգամս Հոգւով լցեալ։ Եւ Տէրն ասէր. «Բանն զոր խաւսեցայ ընդ ձեզ հոգի է եւ կեանք». եւ զլսողսն ընտանեցուցանէ ուսանել զպատուիրանս Աստուծոյ, եթէ զգործս Հոգւոյն հանդերձեալ են առնել եւ զպատուէրսն Քրիստոսի ըստ այնմ, թէ «Յովհաննէս մկրտեաց ի ջուր, բայց դուք մկրտեսջիք ի Հոգի սուրբ»։ Քանզի յոյժ ընդ ստուերաւ էարկ զՅովհաննուն եւ ցուցանէ մեծագոյն զառաքեալսն քան զՅովհաննէս. քանզի հանդերձեալ էին Հոգւովն սրբով մկրտել. եւ այս ի վկայութենէն Յովհաննու յայտնի էր. զի ոչ Քրիստոս էր որ մկրտէր, այլ առաքեալքն։ Տեսանե՞ս, որքան խոնարհագոյնս բարբառի Հոգւովն, որպէս եւ Քրիստոս վասն իւր ասէր. «Եթէ ես Հոգւովն Աստուծոյ հանեմ զդեւս». քանզի եւ հոգին ներգործէր ի մարմնոյն Քրիստոսի, որպէս եւ առաքելոցն մարմնովն։ Եւ Միքիաս ասէր. «Ահա տէր կայր ի վերայ անդամանդեայ պարսպին, եւ ի ձեռին իւրում ունէր վէմ անդամանդ», պարգեւք երկնայինք զոր ետ Քրիստոս առաքելոցն, յորժամ յարեաւն ի մեռելոց։ Ամբակում ասէ. Հոգւովն նախանձու իմոյ սատակեսցի երկիր, այս է բորբոքեցաւ հուր Տեառն ի սիրտս մարդ-

րիւրէ։ տ. 58—60 ո՛չ Միքիաս, այլ Ամովս Է. 7. «Եւ ահա այր մի կայր ի վերայ ադամանդեայ պարսպի եւ ի ձեռին իւրում ադամանդ»։ տ. 62—63 իմացի՛ր Սո-

*կան եւ այրեաց զփուշ եւ զտատասկ խորհրդոց նոցա։ Հուր՝ մկրտութիւն աւազանին զոր ասաց Քրիստոս. «Հուր եկի արկանել յերկիր»։ Եւ Մաղաքիաս ասէ. «Իբրեւ զհուր պարզեսցէ». զժամանակ մկրտութեանն ասէ. «Եւ հաճոյ լինիցին պատարագք նոցա Տեառն». յորժամ իմաստնացուցանէ զնոսա. «Յուդա, որ է Քրիստոս ի զաւակէ Յուդայ, սրբեսցէ զորդիսն Ղեւեայ»։ Եւ նոքա սրբինք ժողովրդեանն, զի՞րդ կարօտանան յայլոց սրբել, քանզի լուծանելոյ էր նոցա քահանայութիւնն ի Քրիստոսի գալստեանն, վասն այնորիկ տիրացոյց զնա ի վերայ նոցա։ Եւ իբրեւ ծծումբ սպիտակացուցանէ. վասն դրօշմին աւազանին որ ասաց. զոր Յովհաննէս յառաջագոյն քարոզեաց նոցա. զի յետ մկրտութեանն եկեսցեն հասցեն ի մեծ պարգեւսն Աստուծոյ։*

*Արդ պատուիրեալ* համբարձաւ։ *Ոչ ասաց վերացաւ. տակաւին յաղագս մարդոյ խաւսի. ուրեմն յետ յարութեանն ուսուցանէր զաշակերտսն։ Այլ զժամանակս զայս ոչ մի ոք ասաց ստուգութեամբ զամենայն. այլ Յովհաննէս յերկարէ նմա քան զայլսն, եւ որ հաւաստեաւ պատմեաց զլխո̃ն։ Այլ մեք ուսաք զայս յառաքելոցն. քանզի զոր ինչ լուան ասացին. «Որոց զինքն յանդիման կացոյց կենդանի յետ չարչարանաց իւրոց»։*

փոնիա Գ. 8. «Զի հրով նախանձու իմոյ մաշեսցի ամենայն երկիր»։ տ. 68—79 հմմտ. Մաղաքիա Գ. 2—4. ուրիշ բնագիր կ՚ենթադրէ։

9. *Քանզի լուար եթէ* համբարձաւ, *մի կարծեր յայլոց համբարձեալ զնա: Ասէ. «Որոց կացոյց զանձն իւր կենդանի. քանզի եթէ առ մեծագունին զանձն իւր յարոյց, յայժ մանաւանդ առ նուազագոյնսն: Տեսանե՞ս, թէ որպէս զանխլաբար սերմանէ զմեծամեծ աւանդութիւնս զայս. զի մարգարէքն զայլս յարուցին եւ ոչ զինքեանս. այլ Քրիստոս ինքն՝ զինքն յարոյց իշխանութեամբ եւ զայլս բազումս:*

Ի բազում արուեստս: *Արդ վասն այնորիկ նշանաւք անյերկուանալի ետ զյարութեանն աւրինակ, ոչ միայն վասն նոցա տեսութեան, այլ եւ վասն ամենեցուն, որ յետ նոցա յայտնի լինիլ զյարութիւնն Քրիստոսի: Վասն այսորիկ զառաքեալսն ականատես անուանեմք. քանզի թէ ոչ էր յարուցեալն, զիա՞րդ նոքա յանուն նորա նշանս առնէին: Եւ եթէ ասիցեն ոչ լինել նշանացն, մեծապէս զանձինս խոցոտեն, զի այս մեծ նշան է, զոր առանց նշանաց տիեզերք ամենայն հաւատացին ի ձեռն աղքատ եւ առանց դպրութեան մարդկան որսացն: Քանզի ոչ փարթամութիւն ընչից, ոչ իմաստութիւն բանից, ոչ զաւրութիւն մարմնոյ եւ ոչ այլով իւիք յաղթեցին ձկնորսքն: Զի թէպէտ ոչ կամեցեալ խոստովանին աստուածային զաւրութիւն գոլ ի նոսա: Քանզի մարդկային*

9. տ. 94—126 = M. 6—7: տ. 94—103 նաեւ Գէորգ Լամբրոնացի, խմբ. Մեկն. էջ 20:

*զաւրութիւն ոչ կարէ այնչափ յաղթական լինել. զի նշան նորա իրս անուանի, որ անտես է, որպէս ծովուն բաժանելն եւ մանանայն: Եւ որ յաւուրս Սամուէլի մարգարէին առանց ամպոյ եւ որոտալոյ հեղեղատք լցան ջրով:*

10. Երեւեալ նոցա յաւուրս Քառասունն:

*Զի՞նչ է խորհուրդ քառասնեակ աւուրն որ ի հնումն վարէին: Զի Մովսէս եւ Եղիա եւ Տէր մեր պահեցին աւուրս քառասուն. զի ի քառասուն աւուր կենդանանայ մանուկ յորովայնի հոգւով, այսինքն շնչով: Եւ հեթանոսք կատարեալ թիւ կոչեն զնա եւ պատուեն: Եւ Տէր մեր երիս քառասունս կատարեաց իւրով գալստեամբն յաշխարհս. առաջին քառասնովն ընծայեցոյց զմեզ Հաւր իւրում, զինքն տալով Հաւր փոխանակ մեր ըստ Առաքելոյն, թէ «Ամենայն առն գլուխ Քրիստոս է. իսկ երկրորդ քառասնովն՝ յորժամ վարեցաւ Հոգւովն յանապատ պահելով զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր, եւ ապա փորձողին յաղթէր զկնի մկրտութեանն եւ աւազանաւն զաւրացոյց զմեզ, ձայն տալով առ ազգս մարդկան. Քաջալերացարուք զի ես յաղթեցի աշխարհի. եւ ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս՝ զսատանայ, զկարիճս՝ զդեւս. իսկ երրորդ քառասնովն որ յետ յարութեանն, յորժամ մերով բնութեամբս վերացաւ յերկինս երկնից ընդ ա–*

10—11. *տ.* 1—80 *որիչ ապրիլէ: տ.* 37. Զ. *զոր* փոխ. *զամն:*

*բեւեռս: Զի զԱդամ յորժամ ստեղծ երկնից արար բնակող. եւ զի դրախտն երկինք կոչի ըստ Պաւղոսի որ ասէ, թէ «Յափշտակեցայ մինչեւ յերրորդ յերկինս եւ ի դրախտն»: Իսկ Մովսէս երկու երկինք ասաց. եւ Դաւիթ՝ «Որ նստի յերկինս երկնից ընդ արեւելս». եւ Քրիստոս ասէր. Ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ որ էջն յերկնից: Այլ եթէ զքառասուն աւրն յետ յարութեանն ո՞ւր եկաց: Հոգեկիր վարդապետք ասեն, թէ յաւդս. եւ ճշմարիտ է, զի պարտ էր սրբել զաւդոյ բնութիւնս, որ պղծեալ են ի ճենճերս կռոցն. զի ոմանք զաւդդ աստուածացուցին, ոմանք զարեգակն, ոմանք զաստեղս. զոմն ճակատագիր եւ իշխող մարդկան ախտից. եւ զոմն երկնից աստուած եւ զոմն երկրի. եւ զոմն աւդոց եւ զոմն ծովու: Եւ ոմանք զնախախնամութիւնն Աստուծոյ աստեղաց համարէին թէ նոքա են տէր մարդկան բարւոյ եւ չարեաց. եւ զԱստուծոյ նախախնամութիւնն բարձին ի մարդկանէ աստեղացն տալով. յայն սակս զքառասուն աւր յաւդս կալով:*

11. Երեւեալ նոցա: *Զի ոչ որպէս յառաջ քան զյարութիւնն միշտ ընդ նոսա գոլով. այսպէս եւ յետ յարութեանն կարծիցես: Եւ երեւէր ի մէջ նոցա եւ դարձեալ ի բաց թաւցեալ՝ հաստատելով ի ճշմարիտ յարութիւն նոցա եւ ոչ տակաւին թողացուցանէր, որպէս զառաջինն նմանապէս յինքն մերձաւորութեամբ հաստատել. այլ զիւրաքանչիւրն ստուգութեամբ պահէր, զերեւելն եւ զհամ-*

*բանսայն. հաւատարիմ առնել եւ զյարութիւնն եւ մեծագոյն այնուհետեւ համարել զնա քան զմարդ, մանաւանդ հաւատարիմ առնելոյ զյարութիւն բազում ինչ արժան էր լինել մարդկային: Իսկ յաղագս համբառնալոյն նորին ներհակն. բայց սակայն իւրաքանչիւրքն եղեն ըստ պատշաճ ժամանակի:*

*Այլ է՞ր վասն առաքելոցն միայն երեւեցաւ եւ ոչ ամենեցուն: Զի տեսիլ ինչ Թուէր բազմացն որ ոչ գիտէին զանձառելի խորհուրդս զայսոսիկ. զի թէ աշակերտքն ի սկզբանէ թերահաւատէին եւ խռովեալ լինէին եւ շաւշափման ձեռաց կարաւտացան եւ սեղանոյ, զի՞նչ ինչ այլոցն պարտ էր կրել: Յայն սակս աւուրս քառասուն նա յաւելս կալով երեւէր աշակերտացն յամենայն մուտս շաբաթուցն: Յայն միտս զայլանան ասեն շարական. եւ որպէս Պաւղոս ասէ. Երեւեցաւ մետասանիցն եւ Կեփայի, եւ երկուցն որ երթային յԵմաւուս, եւ Թովմայի եւ ՀԲ առաքելոցն եւ հինգհարիւրիցն. եւ մետասանիցն առաջի եկեր եւ արբ. եւ զմնացորդն եւս որպէս ինքն ասէր նոր արքայութիւն հաւր զաւուրս յարութեանն եթէ արբից զդա. եւ այն ամենայն զկնի յարութեանն. եւ ծանոյց զինքն Աստուած ամենայնի:*

12. *Երեւելով ձաւէր* վասն արքայութեանն Աստուծոյ: *Քանզի աշխատեալք էին եւ խռովեալք եղելովք անդէն. եւ հանգեր-*

12. տ. 81—93 = M. 7:

*ձեալք էին առ մեծամեծ վաստակս եղանել: Յաղագս այնորիկ արծարծէր զնոսա բանիւք նախ ի Գալիլեա հանելով, զի զարհուրեալք էին. վասն զի կարասցեն յապահովս լինել զասացեալսն. եւ յերկար ժամանակս իւրոյ տեսութեանն եւ յերկրի երեւմանն մի տեսիլ կարծիցեն, այլ ստուգապէս յարութիւն:*

13. Հաղորդել ընդ նոսա հացիւ: *Սեղանակիցս լինելով նոցա. եւ զայս առաքեալքն միշտ նշան տային յարութեանն ասելով թէ «ընդ նմա կերաք եւ արբաք» ըստ ասելոյն Ղուկայ. «Մանկունք մի թէ ունիք ինչ ուտելոյ. եւ ետուն նմա ձկան խորովելոյ մասն եւ խորիսխ մեղու»: Կերակուր խնդրէր ի նոցանէ. եւ դնէին առաջի նորա սեղան, որպէս եւ նախ քան զչարչարանսն: Առ եկեր առաջի նոցա. եկեր յետ յարութեանն, ոչ վասն պիտոյից, այլ զի հաստատ ամենայնիւ ցուցցէ զյարութիւնն: Արդարեւ մարմինն այն, որ կրեաց զանարգանս եւ համբեր մահու խաչի, նոյնն է որ յարեաւն իշխանութեամբ: Յաղագս որոյ ըստ առաջին սովորութեանն եկեր առաջի նոցա, զի ամենայն կարծիք որ վասն մարմնոյն ի մտաց մաքրեալ իցէ: Այսպէս եւ ամենայն ուտելք յայտնապէս լիցի յարութիւնն:*

14. Պատուէր ետ նոցա յԵրուսաղէմէ մի մեկնել: *Զի մի յետ համբարձման նորա փա-*

13. *տ.* 94—109 *ուրիշ աղբիւրէ:*
14—16 = M. 7—9: *տ.* 11. Զ. *էր լինէր:*

*խուցեալ իցեն, այլ որպէս կապանաւք ինչ Հոգւոյն պահէ զնոսա յԵրուսաղէմ իբրեւ զզինուորս իշխանաց, որ հանդերձեալ իցեն ի պատերազմ մտանել, սպառնազինութեամբ կազմին եւ ապա ի գունդն խառնին: Զի եւ ոչ երիվարն վազէ ի կառամարտն մինչեւ զկառավարն առցէ: Այսպէս եւ ոչ առաքեալքն երեւեցան նախ քան զիջանել Հոգւոյն սրբոյ. եւ զի մի լիցին դիւրաւ ի բազմաց ըմբռնեալ: Քանզի պարտ էր որ աւրինացն էր տեղի եւ քաղաք անուանն Աստուծոյ կոչեցեալ, զի ամենայն ինչ անդ կատարեսցի. որպէս զի բնակիչք քաղաքին տեսողք լիցին յորժամ իջանէ Հոգին սուրբ յառաքեալսն: Եւ Գալիլեացիքն խաւսէին զՊարթեւաց լեզուն եւ զայլ ազգաց, յորում Հրեայքն ծնեալք էին ի գերութեան իւրեանց. եւ աշակերտքն խաւսէին զբանս աստուածայինս, քանզի բազումք հաւատա[ցե]լոց էին անդ ի Քրիստոս: Եւ մի պատճառեսցեն Հրեայքն, եթէ զազգակիցս թողին եւ առ աւտարսն եկին վասն պարծանաց. վասն այնորիկ սպանողացն տային զնշանս եւ զյարութիւնն Տեառն առ խաչողսն յայսմ յԵրուսաղէմ, յորում յաւծեալ Տեառն յանդգնեցան: Զի որք արտաքոյ են՝ պապանձեսցին ամենեքեան: Զի յորժամ խաչողքն հաւատան, քաջայայտ է զի ապաշաւեսցեն եւ զարհուրեսցին անաւրէնութեան գործողքն, եւ խաչն եւ յարութիւնն յոյժ լինի օրինակ բարեաց:*

15. Այլ սպանել աւետեացն հաւր, զոր

յուարու f յինէն: *Եւ ե՞րբ լուան. յորժամ ասէր «Լաւ է ձեզ զի ես երթամ, զի եթէ ոչ երթայց՝ մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ. եւ Հայր այլ մխիթարիչ տացէ ձեզ, զի ընդ ձեզ բնակեսցէ յաւիտեան»: Արդ նախ պարտ էր մերոյ բնութեանս յերկինս ելանել եւ հաշտութեանց բան աւարտել, եւ ապա գալ Հոգւոյն եւ կնքել զպարգեւսն: Զի մինչ մերձ էր Քրիստոս եւ Հոգին սուրբ եկեալ էր. եւ ապա Քրիստոս գնացեալ էր, ոչ այնչափ լինէր մխիթարութեան իրքն փափագելի, վասն զի յոյժ զժուարաւ մեկնէին ի Քրիստոսէ. վասն որոյ ասէր. «Լաւ է ձեզ եթէ ես երթամ»: Զայս ասելով մխիթարէր զնոսա եւ աւուրս ընդ մէջ անցուցանէր, զի փոքր ինչ խրատեսցին պէտս ունելով, եւ մաքրեալք չահեսցին զուրախութեանն հեշտութիւնսն: Ապա թէ նուազ էր Հոգին եւ չէր բաւական ի մխիթարութիւն, ինքն ընդէ՞ր ասէր. «Լաւ է ձեզ եթէ ես երթամ»: Քանզի լաւ է, ասէ, մեծամեծ իրք վարդապետութեամբ Հոգւոյն որ պատահէր աշակերտացն. զի ամենակալ է բնութեամբ որպէս Հայր, որպէս ասաց Քրիստոս, եթէ «Եկեալ յանդիմանեսցէ զաշխարհս իշխանութեամբ», զոր կանխաւն ասաց. «Յորժամ առաջի թագաւորաց մատնիցէք, մի՛ հոգայք թէ զինչ խօսիցիք, զի հոգի հաւր ձերոյ խօսեսցի ի ձեզ, որում ոչ կարասցեն կալ հակառակ կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդքն ձեր»: «Զի Հոգին սուրբ յորժամ գայ, ուսուսցէ ձեզ զա-*

*մենայն եւ յիշեցուցէ ձեզ զամենայն զոր խաւսեցայ ընդ ձեզ»: Ընդէ՞ր ոչ առաջի նորա կամ յետ գնալոյն փափագակի եկեալ լինէր. զի ինքն ի քառասուն աւուրն վերացաւ եւ Հոգին յաւուր պէնտէկոստէին եկն: Զի՞ մինչդեռ ոչ էր եկեալ ասաց. Առէք Հոգի սուրբ: Զի ընդելակս արասցէ գնալ առ ի ընդունելութիւն Հոգւոյն սրբոյ: Զի հրեշտակն յերեւելն հանդերձեալ էր կործան յերկիր առնել զԴանիէլ, յոյժ մանաւանդ սոքա: Եւ մինչդեռ ոչ էր եկեալ ասէր, զի ցանկասցին իրին վայելչութեան. զի պարտ էր սիրով ակն ունել եւ ապա ընդունել զհրաշափառ շնորհս: Վասն այսորիկ ինքն ի բաց գնայ եւ ապա գայ Հոգին սուրբ, զի թէ նա մերձ էր, ոչ այնչափ ակն ունէին: Վասն այսորիկ յետին աւուր առ Աստուած յայնժամ պաղատիմք, յորժամ ի կարիս հասանեմք: Եւ Յովհաննէս յորժամ առաքեաց զաշակերտսն իւր առ Յիսուս, յորժամ առաւել պէտս ունէին Քրիստոսի, ի բանդին զոլով Մկրտչին, զի լցցի մարգարէութիւնն Յովհէլեայ, թէ «Ո՞ շինէ յերկինս զվերանալ իւր, եւ զաւետիս իւր յերկիր հաստատեաց»:*

16. Ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ: *Ոչ յայտնեաց թէ երբ, զի մի յանհոգս լիցեն, այլ թէ հուպ է, զի մի լքանիցին: Զօրն ոչ յաւել, զի հանապազ արթնիցին: Քանզի ոչ այժմ ասացի ձեզ տալ, այլ խոստացեալ եմ եւ առնեմ ստուգապէս: Զիա՞րդ. սքանչանա՞ս զի զաւուրն կատարածի ոչ ասաց,*

*որ այսպէս հուպ գոլով ոչ կամեցաւ յայտնել: Եւ յիրաւի, զի միշտ քննեսցեն ակնկալութեամբ եւ ի հոգս մտցեն. քանզի ոչ է շնորհաց հանդիպել առանց հոկելոյ: Քանզի թէ յիշխանութիւն կենցաղոյս հանդերձեալ է ումն հասանել, նախ պատրաստէ զանձն իւր, զի հանդիպեսցի շնորհին, ինչս վատնէ, ժամանակս ծախէ եւ բազում աշխատութեան համբերէ: Ո՞չ տեսանես զինչ ասէ Եղիա ցաշակերտն իւր. «Եթէ տեսանիցես զիս վերացեալ, եղիցի քեզ զոր ինչ հայցես»: Այլ եւ Քրիստոս առ ամենեսեան որ գային առ նա ասէր, եթէ «Հաւատա՞յք զի կարող եմ առնել ձեզ զայդ»: Զի թէ ոչ ընտանեսցուք տուելոյ շնորհին, ոչ զգամք զերախտիսն: Այսպէս եւ առ Պաւղոսիւ ոչ վաղվաղակի եկն շնորհն, այլ աւուրս երիս ընդ մէջ եղեւ կուրութեան նորա. եւ երկիւղիւ մաշէր եւ նախ պատրաստեալ լինէր: Քանզի որպէս (որք) զծիրանիսն ներկեն՝ այլովք ոմամբք զընդունակսն ներկուածոյն պատրաստեն, զի արտաքս թքցէ զերփնազոյն ծաղկերանգսն: Այսպէս եւ աստ յառաջագոյն հոգւովք լցոյց զնոսա. եւ պատրաստէ զանձն առ Աստուած եւ ապա շնորհն հեղու ի նմա: Վասն այսորիկ եւ ոչ զՀոգին վաղվաղակի առաքէ, այլ ի պէնտէկոստն:*

17· Իսկ նոքա մատուցեալ հարցանէին զնա եւ ասէին· Տէր, եթէ ի ժամանակի յայս–

17—18 = M. 15:

մի՞թէ հասուցանելոյ իցես զարքայութիւնն Իսրայէլի: *Զի աշակերտքն յորժամ հանդերձեալ լինէին հարցանել ինչ, միաբան մատչէին, զի բազմութեամբն թախանձեցուսցեն զնա: Թէպէտ եւ գիտէին զկանխատեսացեալն ի նմանէ, թէ «Ոչ ոք գիտէ զաւրն եւ զժամն եւ ոչ որդի» եւ ի բաց մերժեցան ի գիտելոյն, նոքա սաստուստ դարձեալ մատչին եւ զկնի յարութեանն հարցանեն: Քանզի թէ ճշմարտապէս հաւանեալք էին, թերեւս դարձեալ ոչ թախանձէին զնա: Քանզի լուեալ էին եթէ Հոգի հանդերձեալ էին առնուլ եւ իբրեւ արժանի գոլ այնուհետեւ, կամէին ուսանել զաւրն եւ զժամն եւ պատրաստ լինել: Ոչ ասացին թէ յո՞րժամ, այլ թէ ա՞յժմ. այսպէս ցանկային աւուրն: Բայց ինձ ոչ թուի, թէ յայտնի էր նոցա այն, թէ զի՛նչ էր թագաւորութիւն նորա. զի ոչ երբեք Հոգին ուսուցեալ էր զնոսա, որպէս եւ ասաց Քրիստոս, եթէ «Յիշեցուսցէ ձեզ զամենայն», այլ կարծէին, եթէ մարմնապէս թագաւորէ, եւ որպէս Եզեկիա եւ Ոզիա մարմնապէս եւ արդարութեամբ տիրէ եւ ուղղութեամբ ազատէ ի ծառայութենէ մեղացն հեթանոսաց: Զի թէպէտ հաւատացեալ էին ի նա վասն աստուածագործ նշանացն, սակայն ոչ գիտէին թէ մահուամբ լուծանէ զմահ եւ անարգանաւքն ածէ ի փառս: Եւ արեամբ ուխտին զոր ասաց Զաքարիա, արձակէ զկապեալսն յանջրդի գբոյ եւ աղքատութեամբն մեծացուցանէ եւ զհոգիս մարդկան արձակէ ի չար*

*ծառայութենէ մեղաց եւ մահու: Իսկ աշակերտքն ոչ ախորժէին զանձինս մխել ի տանջանս, այլ ներումն առնուլ. զի ոչ վասն ինքեանց փութային պահել, այլ յաղագս յետնոյն տագնապէին եւ ոչինչ յաղագս Հոգւոյն հարցանէին:*

18. Ասէ ցնոսա. Ոչ է ձեզ գիտել զժամս եւ զժամանակս: *Եւ Յիսուս խաւսի յայտնապէս ընդ նոսա. զի ոչ տակաւին ասէ, մանաւանդ զատուել մեծագոյն յոյժ. ահաւասիկ ուսեալ էք զայն ինչ որ քան զբազումս է մեծագոյն: Տես թէ ո՞ր մեծ թուի ուսանել, զա՞յն որ լինելոցն է, թէ այն որ յառաջագոյն ուսեալն էին: Արդ ուսեալ էին թէ որդի Աստուծոյ է, էակից եւ պատուակից, յառնելոց է ի մեռելոց, եթէ վերացեալ նստի ընդ աջմէ Հաւր: Եւ ահա զի՞նչ քան զայս սարսափելի, եթէ մարմին յաթոռ փառաց նստի ընդ Հաւր եւ ի հրեշտակաց երկրպագութիւն առնու: Ուսան որ ինչ ի հանդերձեալ դատաստանին լինելոց է. եւ նոքա հանդերձեալ էին նստիլ յայնժամ եւ դատել զերկոտասան ազգն Իսրայէլի: Զի՞նչ է դժուարագոյն, ուսանե՞լ զսկիզբն, եթէ զկատարածն. յայտ է թէ զսկիզբն: Ուսեալ էին եթէ Հրեայք արտաքս ելցեն եւ հեթանոսք մտցեն ի ներքս: Ե՞րբ ուսաւ Պաւղոս, թէ «զոր ոչ է պարտ մարդկան խաւսել»: Նոքա ոչ եթէ յաղագս ընդհանուր կատարածին հարցանէին զնա, այլ թէ հաստատեն զթագաւորութիւնն Իսրայէլի: Ապա զի մի դարձեալ հարցանիցեն զնա՝ վաղ-*

վաղակի համբարձաւ: Արդ յայտնեաց զաւր զալստեան Հոգւոյն, զի պիտոյ էր առ ի մխիթարութիւն եւ ի քաջալերութիւն նոցա. ծածկեաց ի ձեռն առաքելոցն յամենայն դարուց զաւր զալստեանն իւրոյ, զի մի փասեսցի յայտնութիւն նորա յամենայն դարուց:

19. Ոչ է ձեզ գիտել զժամս, յորում վերանամ, եւ ոչ զժամանակ միւսանգամ գալստեանն, զոր Մատթէոս ասէ թէ «եւ ոչ որդի»: Արգել զնոսա զի մի հարցանիցեն վասն միւսանգամ գալստեանն, այլ ծածկեաց զնա, զի արթունք լինիցիմք եւ իւրաքանչիւր ոք ի մէնջ կարծեսցէ, թէ ի ժամանակի իւր(ում) ծագեսցէ: Եւ եթէ յայտնեալ էր նա, թէ երբ գայ Քրիստոս, անհամ լինէր գալուստ նորա եւ ոչ ցանկալի: Ի վերայ ազգաց եւ դարուցն ասաց բայ՝ գայ. եւ ոչ եդ սահման թէ երբ: Ահա ամենայն ազգք եւ արդարք ծարաւեալ ցանկան նմա. զի թէպէտ են նշան, սակայն աւրն ոչ ցուցաւ. զի բազում ազգք փոփոխելով եկին եւ անցին: Նմանեալ է յետին գալուստ նորա առաջնումն, զի ցանկացեալ էին նմա արդարք եւ մարգարէք. զի կարծէին եթէ յաւուրս նոցա լինելոց էր. այնպէս եւ այսաւր ցանկացեալ են հաւատացեալք ընդունել զնա: Որպէս ասաց ընդ ձախակողմանն, թէ «Երթայք յինէն, ոչ գիտեմ զձեզ, որ գործէք զանաւրէ-

19—20 = M. 16. բազմօք փոփոխուած: տ. 46 Ձ. ազգ: տ. 63 Ձ. այն: տ. 65 Ձ. ազգ: տ. 65 Ձ. զխազարոս:

նութիւն»· եւ այս ոչ է անծանաւթութեան, այլ ատելութեան եւ ի բաց դառնալոյ· զի եւ ոչ պարգեւաւքն լաւագոյն եղաք, որ այնքան վայելեցիք ի պարգեւս առաջին գալատեանն եւ ի չարիս մնացիք· «երթայք յինէն»: Զոր աւրինակ, իբրու գիտէ նա զնոսա մեղաւորս եւ վասն այնր ասէ, թէ «Ոչ գիտեմ զձեզ», այսպէս իբրու (ոչ) գիտէ նա զաւրն· զի մի հարցանիցեն զնա վասն նորա՝ ասաց բայ ոչ գիտեմ: Զի՞րդ ոչ գիտէ որդի զաւրն զայն, որ գիտէ հայրն: Ոմանք ասացին թէ որպէս ասաց «ուր եդիք զՂազարոս», զի ցուցցէ զինքն ճշմարիտ մարդ: Իսկ ոմանք ասացին որպէս Պաւղոս ասաց· «Յայնժամ որդի հնազանդեսցի հաւր»· եւ ե՞րբ էր անհնազանդ հաւր: Քրիստոս գլուխ եկեղեցւոյ եւ մեք մարմին եմք նորա· եւ զի ոչ եմք հնազանդեալ անդամքս նմա զմեր անհնազանդութիւնս, Քրիստոս գլուխ մեր իւրն համարեցաւ: Նոյնպէս եւ զանգիտութիւնս մեր յաղագս վերջին աւուրն իւրն համարեցաւ ըստ այնմ թէ «Որ ոչ գիտէր զմեղս, վասն մեր մեղս արար»· ոչ եթէ «մեղս արար», քաւ լիցի, այլ զմերն իւր համարեցաւ: Այսպէս եւ վասն մեր «անէծս» կոչեցաւ, զի գրեալ է թէ «անիծեալ ամենայն որ կախեալ կայցէ զփայտէ»· Նոյնպէս եւ զանէծս մեր իւրեան համարեցաւ, նովին աւրինակաւ իմա: Ահագին ցուցանէր զիրսն եւ զհարցուածսն· խաղաղէ բանիւք, թէ «եւ ոչ որդի գիտէ», որ զհայրն ճարտար գիտէ, որպէս եւ հայրն

*գնա, ըստ այնմ «Որպէս գիտէ զիս Հայր, գիտեմ և ես զՀայր»։ Եւ զիարդ զաւրն ոչ գիտիցէ, որ նախ քան զաւրն զամենայն գիտէ և ի կատարածին անգիտանայ։ Սոսկի նման են իրքս. որպէս ոք որ նախ քան զպարիսպն իցէ ինչ գիտէ հաւաստեաւ և նոյն ինքն զպարիսպն անգիտանայ։ Կամ զաւուրն կատարածն գիտիցէ և զսկիզբն գիշերոյն ոչ ճանաչիցէ։ Ամենեցուն քաջայայտ է զի ճանաչէ իբրև զԱստուած և անգիտանայ իբրև զմարդ։*

20. Զոր հայր եդ յիւրում իշխանութեանն։ *Քանզի բազում ցանկութիւն ունէին իւրին և ոչ ի բաց կացեալ լինէին, ապա դարձեալ ասեն թէ ընդէ՞ր վերացուցանես ի մէնջ զիրսն։ Ասէ. «զոր Հայր եդ յիւրում իշխանութեանն»։ Քանզի յոյժ պատուէր զնոսա և ոչ կամէր թաքուցանել ի նոցանէ, զայս հաւր իւրում դնէ։ Եւ ինքն մի իշխանութիւն ասաց զոյ ըստ այնմ. «Որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ, նոյնպէս և որդի զորս կամի կենդանի առնէ. և Հայր իմ մինչև ցայժմ գործէ և ես գործեմ». և ուր գիտելն պարտ է ոչ նոյն իշխանութեամբն գիտեմ և ուսուցանելն զաւրն ոչ է մեծ քան յարուցանել զմեռեալս։ Արդ եթէ մեծն ընդ իւր(ով) իշխանութեամբ է, ապա և նուազն։ Այլ որպէս մեք տեսանեմք, մանուկ ապայ, որ*

20—23 = M. 16—17, *ա.* 105։

*խնդրէ ի մէնջ առէպ առնուլ ինս, որ ոչ իւր օգուտ է, թագուցանեմք բազում անգամ ցուցանելով զձեռս զատարկս, ասելով թէ աՀաւասիկ ոչ ունիմք․ այսպէս եւ Քրիստոս արար առաքելոցն։ Այլ որպէս մանուկն կականէ եւ լայ, գիտելով թէ խաբեցաւ ի մէնջ․ ապա մեք թողեալ գնամք ի տեղւոջէն ասելով, այս անուն կոչէ զմեզ, եւ այլ ինչ փոխանակ այնմիկ որ խնդրէ՝ տամք, կամելով Հեռացուցանել զնա յիւրմէ յաւժարութենէն․ եւ զովեմք զայս ինչ քան զայն, եւ տուեալ զմանուկն ի բաց փախչիմք․ այսպէս եւ Քրիստոս արար։ Խնդրեցին զթագաւորութիւնն Իսրայէլի, թէ նորոգես, զի կարծէին թէ Հանդերձեալն նոյնպէս իցէ․ տալոց ոչ ունել․ եւ զնէ զիւրագոյ պատճառ, թէ «Հայր եդ յիւրում իշխանութեան»։ Այլ զՀայր գիտես եւ զիս նորա ո՞չ գիտես․ եւ դու ասացեր․ «Ոչ ոք գիտէ զՀայր բայց որդի․ եւ Հոգին քննէ զամենայն եւ զխորս Աստուծոյ»․ եւ դու զայս ինչ ո՞չ գիտես։ Այլ նոքա զարՀուրեցան դարձեալ Հարցանել որպէս զառաջինն, զի մի լուիցեն տակաւին թէ «դուք անմիտք էք»։ Յետ յարութեանն ոչ երկայն տարածանէր զբանն առ նոսա եւ նոքա զարՀուրեալք էին եւ ոչ իշխէին Հարցանել զնա, թէ զինչ նշան է քոյոյ գալստեանն եւ վախճանի աշխարհիս․ եւ ոչ յայտնեաց նոցա․ զի ոչ էր պիտանացու ոչ նոցա եւ ոչ այլոց։*

21․ Այլ առջիւ զաւրութիւն ի հասանել Հոգւոյն սրբոյ ի վերայ ձեր։ *Մի երկնչիք*

*յորժամ եկեսցէ Հոգին սուրբ ի վերայ ձեր յետ պէնտէկոստէին, այլ ընկալջիք ի նմանէ զաւրութիւն եւ քաջալերութիւն. եւ ելջիք ի վերնատանէն ուր իցէք: Ետ նոցա վաղվաղակի որով խնդային եւ ոչ ետ նոցա պատասխանի առոյգ զոր հարցինն: Քանզի այս իսկ է գործ վարդապետի, ոչ տալ ըստ որումախորժէ աշակերտն ուսանել, այլ զոր պատշաճ է ուսուցանէ: Այսպէս եւ սա զոր ինչ պատշաճ էր ուսուցանել, զայն ասաց յառաջ քան զխաչն: Ուրեմն տկարք էին առ ի համարձակութիւն քարոզութեանն, համբառնայր այսու բանիւք զանձինս նոցա. եւ զդժուարագոյնսն թաքուցանէր, զի մի խռովիցին: Քանզի հանդերձեալ գնոսա փոքր ինչ յետոյ թողուլ, վասն այսորիկ ասէ մխիթարական բանս. եւ զովութեամբ դնէ զխրատականս, եւ խոստանայ ոչ մարմնոյ պնդութեամբ, որպէս Սամփսոնին որ զաւրացաւ, այլ զՀոգւոյն քարոզութիւն անվանելի լինել իբրեւ զերկաթ եւ զանդամանդ, որպէս ցԵրեմիա ասէր. «Եդից զքեզ իբրեւ զսիւն երկաթի եւ որպէս զպատուար պղնձի», որով զաւրացեալ կային հակառակ թագաւորաց եւ դատաւորաց եւ ոչ բնաւ զանգիտէին ի հնարիցն նոցա, եւ ի տանջանաց՝ ունելով բանս պիտանիս եւ զաւրաւորս հաստատուն մտաւք, որով զիմամարտքն լուծանէին եւ հաւանեալքն հաստա-*

21. *տ.* 67—85 *հմմտ. Իգն. էջ* 482—483, *ուր իր կարգին օգտուած է Ոսկեբերանէն:*

*տէին ի հաւատս. եւ որ առաւել զարմանալին է, զի տկարութեամբ մարմնոյ զաւրացան ի Քրիստոս, եւ չարչարանաւք անպարտելի մնացին եւ իմաստութեամբ Հոգւոյն զաւրացան եւ զխափանելի իմացուածս բանից լուծին եւ յաղթեցին հեթանոսաց կրթութեանց եւ ընկալան զաւրութիւն նշանաց, որով ըմբռնին միտք ամենայն մարդկան:*

22· Եւ եղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ· *ըստ աւետարանին որ ասաց. «Դուք էք վկայք այսոցիկ», զանաւրինականսն ամենայն ասաց, որոց ականատեսք եղեն:*

23· Յամենայն Հրէաստանի եւ ի Սամարիա, մինչեւ ի ծագս երկրի: *Ոչ աստ միայն յԵրուսաղէմ ի քաղաքս խաչահանուաց, ուստի զարհուրեալ էք, այլ եւ ընդ ամենայն Հրէաստան եւ ի Սամարիա եւ շրջեսջիք ընդ ամենայն երկիր հեթանոսաց: Քանզի ասաց յառաջագոյն «ի ճանապարհս հեթանոսաց մի երթայցէք եւ ի քաղաքս Սամարացւոց մի մտանիցէք». եւ աստ թողացուցանէ երթալ մինչեւ ի ծագս երկրի: Տեսանես, զի ոսքա քարոզեցին եւ լցին զտիեզերս աւետարանաւն:*

*Մեծամեծս շնորհեաց նոցա լինել կատարիչս մարգարէութեանն Մաղաքիայ. Եղի–*

23· *տ.* 105—143 *ուրիշ աղբիւրէ, հաւանօրէն Սարգիս Կունդի խմբագիր Ղուկայ Մեկնութենէն. ապահով ասկէ տ.* 137—142, *տես ՆՀԲ. ը. բ. ծշմարտացուցանեմ: տ.* 107· *Մաղաք. Գ.* 5· *«Եւ հասից ի վերայ ձեր դատաստանաւ, եւ եղէց վկայ արագ ի վերայ կախարդաց»: տ.* 112 *հմմտ. Մատթ. ԺԵ·* 24:

Ջիք վկայք հաւատարիմք եւ երազք. զի յաւուրսն յայնոսիկ յայտնելոց է վրէժ-խնդրութիւնն. բարեաց բարիս եւ չարեաց եւ անհաւատից պատիժս: Տէր մեր ասէր, թէ «Ոչ ուրեք առաքեցայ, բայց առ Իսրայէլ»: Զնոսա մանկունս ասէր եւ զհեթանոսսն շունս: Արդ Աստուած իմաստութեամբն իւրով խորհեցաւ տալ աւրէնս հեթանոսաց որպէս եւ Հրէից: Հրամայեաց Յեսուայ գրել ի վէմ անդր յեզրն Յորդանանու զտասն պատգամացն զգիրսն. եւ կամեցաւ նա զՀրեայսն ոչ տրտմեցուցանել, զի մի գիտասցեն, թէ վասն որո՞յ պատճառի գրեցան աւրէնքն ի վէմսն անդր: Գրեցաւ զի ուսցին հեթանոսք ի քարանց անտի. վասն զի զրկեալ էին յորդէգրութենէ իբրեւ զխորթս ոչ իբրեւ զարարածս Աստուծոյ եւ որդի: Ուսցին հեթանոսք ի քարանց անտի, որպէս եւ Հրեայքն ի քարեղէն տախտակացն. զի Բաբելացիք եւ Եգիպտացիք եւ Փղշտացիք եւ Ծուրացիք եւ Հնդիկք ընդ այն ուղեւորեալ՝ ամենայն ազգք ուսցին եւ գրեալ տարցեն յազգս եւ յերկիր իւրեանց: Ուսցին եւ հեթանոսք յանարգ վիմէ անտի զոր ուսան Հրեայքն ի պատուեալ տախտակաց անտի: Եւ վասն է՞ր զայս այսպէս հնարեցաւ Աստուած. զի յորժամ եկեսցէ Տէր մեր, ոչ տանջեսցին հեթանոսք առանց աւրինաց գոլով, այլ եղիցին վկայք եւ տեղեակք եւ հմուտք զալստեանն Քրիստոսի, որպէս Հրէիցն ազգ: Որպէս նշանքն որ եղեւ ի ձեռն Եղիսէի հաւատարիմ եղեւ վերանալ

*վարդապետին իւրոյ, նոյնպէս եղեն նշանքն ի ձեռս առաքելոցն. որ ճշմարտեցուցանէ զվերանալ Տեառն մերոյ, զոր առաքեալքն քարոզեն տիեզերաց ըստ իւրում աւետարանութեանն:*

24. Եւ նոցա երկրպագեալ նմա: *Իբրեւ տեսին զնա վերացեալ յիւր սեփհական հայրենի փառսն, զոր ունէր յառաջ քան զլինել աշխարհի ըստ իւրում ճշմարիտ բանին, որ գոյացոյց զերկինս եւ զերկիր:* Յայնժամ. *Ե՞րբ: Յորժամ լուան ի հրեշտակէն թէ միւսանգամ գալոց է: Թերեւս ոչ ունէին ժոյժ, թէ ոչ էր խոստացեալ երկրորդ գալուստ:*

25. Դարձան յԵրուսաղէմ *ուրախութեամբ մեծաւ: Եղիշէ ի համբառնալն Եղիայի արտմութեամբ մեծաւ պատառեաց զպատմուճանն եւ դարձաւ յԵրիքով. իսկ առաքեալքն տեսին զՅիսուս վերացեալ յերկինս եւ խնդութեամբ մեծաւ լցան:*

24. *տ.* 144—151 *ուրիշ աղբիւրէ:*
25 = *M.* 21:

## Ա Զ Դ

ՀԵԹՈՒՄ Ա.Ի ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԻ՛Ն ՃՇԴԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԵՐԿՈՒ ՈՒՐՈՅ՛Ն ՅՕԴՈՒԱԾ՛ՆԵՐ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ՛Ն ԱՅՍՏԵՂ. ԼԱ. ԵՒ ԼԲ. ԵՐԿՐՈՐԴԸ Կ'ՈՒՂՂԷ ԱՌԱՋԻ՛ՆԸ :

ՀԵՂԻ՛ՆԱԿԸ

# Ա.

## ՀԵԹՈՒՄ Ա. ԹԱԳԱՒՈՐԻ ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԻՆ

(1269, ՀՈԿՏ. 29)

*Ճշդուելու կը կարօտի Հեթում Ա. Մեծ թագաւորի մահուան տարին, զոր Հ. Ղ. Ալիշան կը նշանակէ* 28 *հոկտ.* 1270 [1]: *Քննելու համար այս հարցը նկատի պիտի առնեմ* 1266—1271 *տարիներու ժամանակագրութիւնը, վկայութեան կոչելով ժամանակակից աղբիւրները:*

1. *«Զժն. Սմլմօթն* [2] *զօրօք անօրինաց կոտորեաց զզօրս Հայոց ի Մառի եւ կալաւ զորդին թագաւորին զԼեւոն եւ եսպան զԹորոսն զմիւս որդին. եւ գերեաց եւ այրեաց զՀայք մինչեւ ի Բարձրբերդն եւ յԱտանա. զՍիս այրեցին եւ զաւագ եկեղեցին. եւ բացին թագաւորաց եւ զիշխանաց զոսկերսն*

---

[1] *Սիսուան, էջ* 154, 555: *Այսպէս ալ ընդունուած է նորագոյններէն. Հմմտ.* Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris *էջ* 214:

[2] *Կ'ակնարկէ* 'Izz-eddin Igan *ամիրան, մականուանուած* Semm-el-maut, *«Թոյն մահացու».* Makrizi, Histoire des sultans mamlouks, trad. Ét. Quatremère, t. I, 2e part., p. 2 *եւ* 146: *Հմմտ. Սիսուան,* 400—402:

հանեալ այրեցին հրով եւ հոսեցին, հող–մով[3]»։

2. «Յայսմ ամի... որ Թվ. ՉՃԺԵ էր, երեկ Մոցլն ի Հայոց երկիրն ու տարաւ զայս գիրքս ծառայ. եւ Վարդան յԵրուսա–ղէմ կու երթայի. հանդիպեցաւ այս գիրքս ինձ ի յԱքայ. եւ գնեցի ինձ յիշատակ եւ ծնաւղաց իմոց. եւ որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոս. ամէն[4]»։

3. «Գրեցաւ սուրբ Աւետարանս... ի թուականութեանս Հայոց ՉԺՉ. յայս նշանա–ւոր եւ ի վշտալից ամիս, յորում եկին ա–նօրէն զօրքն Իսմայելացոց եւ մտին յաշ–խարհս Կիլիկեցւոց. իսկ եկեալ զօրաց մե–րոց ընդդէմ նոցա՝ ոչ կարացեալ ընդդէմ կալ վասն սակաւութեանն՝ ի պարտութիւն մատնեցան. եւ զերկուս որդիս թագաւորին՝ զմինն սրախողխող արարին եւ զմիւն գերի վա–րեցին յԵգիպտոս. եւ մտեալ նոցա այնու–հետեւ (ի) բազում գաւառս եւ քաղաքս եւ գեօղս եւ վանորայս եւ եկեղեցիս հրձիգ ա–րարին. եւ անթիւ քրիստոնեայս սրոյ եւ հրոյ

---

[3] Հեթում պատմիչ Թաթարաց, Վենետիկ 1842, էջ 84 եւ Վիեննա, Թ. 844, թղ. 205բ։ Հնագոյն օրի–նակն՝ Արտաւազդ Արքեպ., Նկարագիր Օշին թագա–ւորի ձեռագիր ժամագրքին (1319էն) Անթիլիաս, 1933, էջ 99, ուր. «Սրմբլմաւթն զաւրաւք անաւրէ–նաց կոտորեաց զզաւրս Հայոց ի Մառի եւ կալաւ զթա–գաւորի որդին Հայոց զպարոն Լեւոն եւ էսպան զմիւս որդին զպարոն Թորոս. եւ եմուտ յերկիրն Հայոց. գերեաց եւ այրեաց մինչեւ ի Բարձրբերդ եւ յԱտանա»։

[4] Վիեննա, Թ. 833, թղ. 208ա (Աւետարան յամէ 1235)։

մատնեցին եւ երիս բիւրս եւ վեց հազար գերիս տարան յաշխարհն իւրեանց. իսկ զաւանաց եւ զընչից ո՞ կարասցէ պատմել: Զորս յանմխիթար սուգ կանք եկեղեցիք քրիստոնէից եւ ողբամք զողբս Երեմիա մարգարէի որ ի վերայ Սիովնի...[5]»:

4. Դէպքս մանր կը պատմէ Գրիգոր Ակներցի[6]. «Թագաւորն Հայոց իբրեւ գիտաց զգալ Թուրքին ի վերայ երկրի իւրոյ, յայնժամ ժողովեաց զզօրս իւր եւ ետ ի ձեռս թագաժառանգ որդւոց իւրոց պարոն Լեւոնի եւ Թորոսին. եւ ինքն գնաց սակաւ մի զօրօք առ Տաթարն, որ կայր իջեալ ի մէջ Աբլաստանին եւ Կոկսոնոյ. եւ անդ յամեալ աւուրս ինչ՝ ոչ գիտելով զերկպառակութիւն զօրաց իւրոց. եւ մինչ հոգաց առ գլխաւորս Տաթարին գալ եւ օգնել զօրաց նորա եւ ինքն Երեկ երկու աւուրբ յառաջ. ապա լսեաց զգալն Թուրքին եւ զբեկումն զօրացն երկմտից, որ ետուն զթագաժառանգ որդին իւր ի ձեռս անօրէն գայլոցն եւ ինքեանք փախեան յամուրս իւրեանց. զի զգեղեցիկ որդի թագաւորին զպարոն Թորոս ի պատերազմին սրախողխող արարին յիւրում երեւարին եւ

---

[5] Նոր-Ջուղայ, Թ. 51 Ամենափրկչի (Տէր-Աւետիսեան, Ցուցակ):

[6] Մագաքիայ աբեղայի Պատմութիւն վասն ազգին Նետողաց, Պետերբուրգ 1870, էջ 39—40: Նոյնը՝ Պատմութիւն Թաթարաց Վարդանայ պատմչի. Երուսաղէմ 1870: Գրուածքիս հեղինակն է Գրիգոր Ակներցի. այս մասին տես վերագոյն էջ 199 եւ շար.:

*զպարոն Լեւոն ըմբռնեալ բազում զօրօք Թուրքացն եւ տարան ծառայ ի Մսըր»:*

*Կիլիկիոյ Պատմիչը*[7] *դէպքս պատահած կը նշանակէ* 1266 *օգոստոս* 23, *երկուշաբթի. արտաքին պատմիչները*[8] *որը կը դնեն* 24 *օգոստոս:*

5. *Թշնամին ասպատակեց Կիլիկիա* 20 *օր*[9], *ուստի օգ.* 23—*սեպտեմբեր* 12: *Հեթում երբ լսեց հայ բանակին պարտութիւնը, Թորոսի նահատակութիւնն եւ Լեւոնի գերութիւնը, «բեկաւ սիրտն ի կարի եւ յանհնարին տրտմութենէ... մինչ եկն ի սուրբ եւ ի գերահռչակ ուխտն միանձանց ի յԱկանց անապատս. եւ աստ մխիթարեալ սակաւ մի ի միեղէն եղբարց սուրբ ուխտին՝ կեցեալ աւուրս ինչ մինչ ելաւ Թուրքն յերկրէս*[10]»: *Թագաւորը կ՚ընդունի իր իշխաններէն ցաւակցական թղթեր. որոնց կը պատասխանէ: «Եւ այս գործեցաւ յաւուրս ամառնային յեղանակին յետին ամսեանն*[11], *ի տօնի սրբոյ Աստուածածնին: Եւ թագաւորն Հեթում համբեր տուեալ կրակով լցեալ սրտին՝ եկաց մինչեւ ի տօն սրբոց Առաքելոցն... եւ ապա հրամայեաց կոչել զամենայն իշխանսն... վասն պատճառի ջուր օրհնելոյ, ի քաղաքն Մսիս»*

---

[7] *Սիսուան, էջ* 401:

[8] *Հմմտ.* Tournebize, *անդ*, 213, *ծան.* 2 *եւ* R. Grousset, Histoire des Croisades, III, p. 634—635:

[9] Grousset, *անդ*:

[10] *Գր. Ակներցի, անդ, էջ* 40:

[11] *Կ՚ակնարկէ սեպտեմբեր ամիսը, որ ամառնային եղանակին վերջին ամիսն է:*

(էջ 42)։ «Տօն Ս. Աստուածածնի» է հոս առանց տարակուսի «Ծնունդ Աստուածածնին», որ կը տօնուէր սեպտեմբեր 8ին։ Իսկ «տօն սրբոց Առաքելոցն» է «տօն Պետրոսի եւ Պօղոսի գլխաւոր առաքելոցն», որ կ՚իյնայ դեկտեմբեր 28ին։ Ուստի իշխանաց ժողովը տեղի ունեցած է 1267 յունուար 6ին։

6. Այս 1267 տարւոյն (ՉԺԶ. սահմի 26) ապրիլ 9ին, շաբաթ օր (Յարութիւն Ղազարու) վախճանեցաւ Կոստանդին կաթողիկոս[12]։ Աթոռը թափուր մնաց տարի մը։ Յաջորդ ընտրուեցաւ Յակոբ կաթողիկոս որ օծուեցաւ ի Տարսոն 12 փետրուար 1268 (ՉԺԷ)։ Պետրոս գրիչ այս տարւոյն գրած է էջմ. 297 (Մասունք հին կտակարանի). «Արդ գրեցաւ սա ի թվիս Հայոց Չ(Ժ)Է. ի թագաւորութեանն Հեթմոյ բարեպաշտի, ի գլտապետութեանն (Յակոբայ) որ յայսմ ամի կարգեցաւ առաջնորդ սուրբ եկեղեցւոյ Հայկազեան քրիստոնէիցս եւ յաջորդ աթոռոյ սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի. յամսեանն փետրվար, որ աւր ԺԲ էր։ Եւ վասն թշուառութեան ժամանակիս զի՞նչ պիտոյ է մեզ գրել. որ Երեմիայի մարգարէին ողբոցն կարաւտանամք, զի աշխարհեսցուք զգերիսն մեր յանաւրէն զաւրացն Փարաւոնի՝ նմանեալք գերութեանն Երուսաղէմի։ Եւս առաւել աւաղեմք զթագաժառանգն թագաւորութեանս մերոյ զխողխողեալն սրով անաւրի–

[12] Վարդան Արեւելցի, Պատմութիւն, էջ 163։

նացն՝ զքաջ զաւրավարն Քրիստոսի զպարոն Թորոս, եւ զգերեալն յԵգիպտացւոցն զպարոն (Լեւոն)։ Վասն որոյ հայցեմք յԱստուծոյ միայն հանգիստ յարքայութեանն երկնից եւ պսակ մարտիրոսական արեամբ նահատակին եւ ազատութիւն ազատացելոյն Քրիստոսի, պայազատին (Լեւոնի) պարոնին մերոյ. զի ազատութեամբ նորին վերստին ուրախացուք մեք»։ Փակագծի մէջ առնուած բառերը ջնջուած են եւ միւսանգամ գրուած[13]։

7. ՉԺԷ (1268) թուին Գրիգոր գրիչ կը յիշատակագրէ. «Յայսմ ամի ազատեցաւ ի ծառայութենէ Լեւոն որդի Թագաւորի[14]»։ Կիլիկիոյ պատմիչը[15] յիշելով Յակոբ կաթողիկոսի օծումին կը գրէ աւելի բացայայտ. «Բայց Պարոն Հայոց Լեւոն դեռ եւս ի ծառայութեան Եգիպտացւոցն էր (այս միջոցին, այս ինքն 12 փետրուար 1268) եւ ի սոյն ամի ազատեցաւ՝ յամսեանն յունիս»։ Վահրամ[16] Րաբունի առանց տարին յիշելու կը պատմէ, թէ Լեւոն՝

Ամ մի եւ տասն ամիս կացեալ
Ի յԵգիպտոս պանդխտացեալ...
Որ իբրեւ առ հայրն եղեւ եկեալ
Լինէր աշխարհիս նորոգեալ։

---

13 Հմմտ. Յովսէփեան, Քարտէզ հայ հնագրութեան, էջ 36—37 եւ Սիսուան, էջ 249։

14 Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 89—90։

15 Ունիմ աչքի առաջ հատուած մը օրինակութեամբ։

16 Պատմութիւն Ռուբինեանց, էջ 226։

Պատմութիւնն ազգին Ռուբինեանց այս դէպքը կը յիշէ. «Զոր յետ երկուց ամաց գնեաց զնա հայր նորա ի ծառայութենէն Մսրայ[17]»: Լեւոն Եգիպտոսէն Դամասկոս հասաւ 1268 մայիս 21ին. նոյն ամսոյն վերջերը (ուստի մօտաւորապէս «յամսեանն Յունիս») Սիս գնաց[18]: Այսպէս գերութեան օրերը կ'իյնան 1266 օգոստ. 24—30 մայիս 1268, ճշդիւ մէկ տարի, ինն ամիս եւ 6 օր: Մանրամասնութիւնք Գր. Ակներցի, էջ 46—47:

8. «Իսկ յորժամ եկն պարոն Լեւոն ազատեալ ի ծառայութենէ, առժամայն ընդդէմ գնաց բարեպաշտ եւ օրհնեալ թագաւորն Հեթում. եւ զամենայն թագաւորութեան իւրոյ զպարոնութիւն ետ ի ձեռս որդւոյն պարոն Լեւոնի» (Գր. Ակներցի, 48): Համառօտ պատմութիւնն Ռուբինեան իշխանաց, գրուած 1284ին[19], կը գրէ. «Եւ իսկոյն հայր նորա եւ ամենայն աշխարհն եդին զնա (զԼեւոն) յաթոռ պարոնութեան. քանզի ոչ ա՛ռ յանձն լինել թագաւոր յաւուրս կենաց հօր իւրոյ»: Այսպէս նաեւ Վահրամ (էջ 227).

«Եւ ըզԼեւոն յոյժ թախանձեալ
Յիւր նախնական յաթոռն եդեալ,
Եւ զտէրութիւնն ի նա տուեալ:

[17] Սամուէլ Անեցի, Յաւելուածք, էջ 211:
[18] Recueil des historiens des Croisades. Documents arméniens, t. II, Paris 1906, p. 14, n. 2.
[19] Սամ. Անեցի, էջ 222:

*Ապա կրկին զորդին ստիպեալ,*
*Զի թագաւոր լիցի օծեալ,*
*Զոր նա բնաւին յանձն չառեալ,*
*Թէեւ բազում անգամ հարկեալ:*

Այս 1268 օգոստ.—1269 օգոստ. շրջանին կ՚օրինակուին յետագայ ձեռագիրները. Աւետարան Թ. 111 Վենետիկի, գրուած ՉԺԸ թուականին, մայիս ամսոյն, ի Մաշկեւոր «ի թագաւորութեան բարեպաշտ արքային Հեթմոյ եւ յիշխանութեան որդւոյ իւրոյ Լեւոնի այն ինչ նորընծայ ի պարոնութիւն[20]» Ստեփաննոս գրիչ կ՚օրինակէ Աւետարան մ՚ի Վահկայ «ի թագաւորութեան Հեթմոյ եւ յիշխանութեանն անդրանիկ որդւոյ նորա Լեւոնի աստուածասիրի[21]»: Նոյն ՉԺԸ տարւոյն Կիրակոս Արեւելցի ի Սիս կ՚աւարտէ իր Յայսմաւուրքը «ի թագաւորութեանն Հեթմոյ եւ յառաջին ամի իշխանութեան որդւոյ նորա Լեւոնի[22]»:

9. Կիլիկիոյ Պատմիչը[23] կը գրէ. «ՉԺԸ. ի սոյն ամի, յամսեանն հոկտեմբերի, որ աւր ԻԹ էր, յԳշաբթի, ի մտանել արեգականն, թագաւորն Հայոց Հեթում փոխեցաւ ի կենցաղոյս եւ յաւելաւ առ հարս իւր առ ստո-

---

[20] Հայապատում, Բ., էջ 476. Սարգիսեան, Ցուցակ, Ա. 495—496:

[21] Ե. Լալայեանց, Ցուցակ Վասպուրականի, էջ 94—96:

[22] Հայապատում, Բ., էջ 472:

[23] Ունիմ աչքի առաջ հատուած մը օրինակութեամբ: Բայց «ՉԺԸ». կարդա՛ ՉԺԹ. տես վարը Բ. մաս:

ւառով Բարձրբերդոյ, ի գեաւղն որ կոչի Ակներ. եւ բարձեալ տարան զնա ի սուրբ ուխտն Թրազարկն եւ անդ թաղեցին առ գամբարան հայրապետին Գրիգորի (Տղայ կոչեցելոյ). որ եւ ի ժամ վախճանին բարիոք խոստովանութեամբ կրաւնաւորեցաւ եւ անուանեցաւ Մակար»։

Գրիգոր Ակներցւոյ համաձայն Հեթում պետութեան վարչութիւնը յանձնելով Լեւոնի «ինքն միայնաւորեալ սիրէր զվանք եւ զանապատ. եւ յետ աւուրց ինչ յանկարծակի դիպեցաւ վէրք ինչ ի մարմին նորա եւ յոյժ նեղէր զնա. եւ էր նա ի պահս եւ յաղօթս հանապազ. մինչ զի առնել երետ զինքն կրօնաւոր եւ Մակար անուանեցաւ. եւ յետ սակաւ աւուրց փոխեցաւ ի Քրիստոս... եւ թաղեցաւ... ի հռչակաւոր մենաստանին որ կոչի Դրազարկ...։ Իսկ զկնի մահուան բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ մեռաւ եւ Վրաց թագաւորն Դաւիթ, որ եւ կարծեմ թէ ի միում ամսեան դիպեցաւ մահ նոցա» (էջ 49),

Վահրամ կը գրէ (էջ 227).
Արդ մինչ արքայն էր զուարճացեալ,
Զորդին պարոն Հայոց տեսեալ,
Յայնժամ եւ վէր[24] ի նա ելեալ
Յորմէ վախճան կենացն եկեալ...
Զմիանձանց կարգ ընկալեալ,

---

24 Տպ. «ի վեր»։

Անուն Մակար վերաձայնեալ…
Զոր օրհնութեամբ երգով բարձեալ,
Եւ ի Դրազարկըն հանգուցեալ:

Համառօտ պատմութիւն Ռուբինեան իշխանաց գրուածքին մէջ կ'ըսուի. «Յետ այսորիկ հիւանդացաւ թագաւորն Հեթում. որ եւ մեռաւ իսկ, լեալ կրօնաւոր. թաղեցաւ ի սուրբ ուխտն Դրազարկ[25]»: Իսկ Պատմութիւնն ազգին Ռուբինեանց[26] կը գրէ. «Եւ ի հասանել վախճանի թագաւորին Հեթմոյ առ եզր Պարատխս գետոյ, որ կոչի Ակներ, նախ կրօնաւորեցաւ եւ կոչեցաւ անուն նորա Մակար. եւ ապա հանգեաւ եւ թաղեցաւ ի Թրազարկն»: Ուրիշ մանր ժամանակագիրներ կը նշանակեն յամի ՉԺԹ (1270/71). «վախճանեցաւ թագաւորն Հայոց Հեթում եւ տիրեաց որդի նորա Լեւոն[27]»: Այսպէս նաեւ Հեթում Նղրեցի[28]: Իսկ Ստեփաննոս Օրբէլեան կը գրէ իր ժամանակագրութեան մէջ[29]. «ՉԺԹ. ի սոյն ամի վճարեցան երկու թագաւորքն՝ Հեթում Հայոց եւ Դաւիթ Վրաց: Եւ յաջորդէ զթագաւորութիւնն Լեւոն որդի Հեթմոյ ի ՉԻ թուին»: «Ի թուին ՉԺԹ. հանգեաւ ի Քրիստոս Հեթում թագաւոր եւ ի

---

[25] Սամ. Անեցի, էջ 222:

[26] Անդ, 211:

[27] Հեթում Կոռիկոսցի, Ժամանակագրութիւն, անդ, էջ 99:

[28] British Museum, Or. 5458, f. 120v.

[29] Երեւան, Թ. 670: Ի մասին Դաւիթ թագաւորի. մահուան հմմտ. նաեւ նոյն հեղինակին Պատմութիւնն տանն Սիւնեաց, էջ 311 (հրտ. Էմինի):

*թուին ՉԻ օծեցին թագաւոր զորդին նորա Լեւոն*[30]»։

*Ուրիշ մը կ'աւարտէ ձեռագրի մը օրինակութիւնը ի «ՉԺԹ. ի թագաւորութեան Կիլիկեցւոց նահանգիս Հեթմոյ բարեպաշտի եւ ի պարոնութեանն Հայոց Լեւոնի որդւոյ Հեթմոյ արքայի*[31]»։

*Աւելի կարեւոր է անանուն յիշատակագրի մը տողերը, գրուած ի Սիս «ի թուականութեան Հայոց ի ՉԺԹ* (1270) *ի հայրապետութեան Հայոց տեառն Յակոբայ եւ ի պարոնութեան Լեւոնի բարեպաշտի։ Արդ ի յայսմ ամի ի հոկտեմբեր ամսոյ, որ օր էր ԻԵ. հանգեաւ ի Քրիստոս բարեպաշտ արքայն Հայոց Հեթում. որում ողորմեսցի նմա տէր Յիսուս եւ յիշատակ օրհնութեան նորա մնասցէ յաւիտեան։ Եւ տէր Յիսուս ետ շնորհս ցանկալի եւ աստուածատէր պարոնին Հայոց Լեւոնի որդւոյ իւրոյ եւ նա թագաւորեաց փոխան հօր իւրոյ եւ նստաւ յաթոռն իւր կարողութեամբն Աստուծոյ։ Եւ օր հանդիսի օրհնութեան նորա եղեւ ի սուրբ Յայտնութեանն Քրիստոսի ի մայրաքաղաքն Տարսոնի Կիլիկիոյ ի մեծ եկեղեցին Ս. Սոփի...»* (*Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., էջ* 381—382)։

*Վենետիկի Թ.* 212 *ճառընտիրի մէջ,*

---

[30] *Սմբատ, Տարեգիրք, էջ* 125 *եւ ի վերջ Անսիզից Սմբատայ, Վիեննա, Թ.* 439 (*Ցուցակ, էջ* 906) *եւ Սամուէլ Անեցւոյ շարունակութիւնն, էջ* 151—152։

[31] *Բանասէր*, 1899, *էջ* 129—130։

թղ. 189 բ լուսանցքի վրայ կայ մանր բոլորգրով յիշատակագրութիւնս. «Յամի ՉԻ. յայսմ աւուր, որ է Դշի, բարեպաշտ արքայն Հեթում փոխեցաւ առ Քրիստոս կրաւնաւորական վարուք, զոր հանգուսցէ Քրիստոս զհոգի նորա ընդ Մակարայ ճգնաւորի եւ ընդ այլ սրբոցն. ամէն[32]»:

Էջմիածնի Թ. 199, թղ. 433բ. «Ի թվ. ՉԻ. ի հայրապետութեանն տեառն Յակոբայ Հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեանն Հեթմոյ Հայոց թագաւորի... գրեալ աւարտեցի... ի Դրազարկ»:

Այս տեղեկութիւններէն ամէնէն աւելի ուշագրաւն է առաջինը, որ արքունի ժամանակագրի գրչէն է: Հոս բացայայտ կ՚ըսուի, թէ Հեթումի մահը պատահած է ՉԺԸ. տարւոյ հոկտեմբեր ԻԹ., երեքշաբթի օր մը: Այս տարին ըստ Սարկաւագի անշարժ տոմարին կը սկսէր 1269, օգոստոս 11ին. իսկ շարժական տոմարի համաձայն նոյն տարւոյ յունուար 13ին: Հոկտեմբեր 29 այս տարւոյն կ՚իյնար ճշգիւ երեքշաբթի: Դժբախտաբար Գրիգոր Ակներցի եւ Վահրամ եւ Ռուբինեան պատմագիրք թուական չունին, այնպէս որ Կիլիկիոյ պատմիչի վկայութեան ստուգութիւնը կը հաստատէ միայն օրուան պատկերը: «Համառօտ Պատմութիւն Ռուբինեան իշխանաց» գրուածքին հրատարա-

[32] Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 235:

կիչն (Արարատ, 1870, էջ 355 եւ չար.) փակագծի մէջ նշանակած է Հեթումի մահուան տարին 1269 եւ Հայ. ՁԺԸ» (Սամ. Անեցի, էջ 222): Ինձ անծանօթ է իր պատճառաբանութիւնը, բայց ճիշդ կը գտնեմ եզրակացութիւնը: Այսպէս նաեւ R. Grousset, Hist. des Croisades, III, p. 635 կը գրէ, թէ Հեթում «en 1269 il laissa le trône à Léon, devenu le roi Léon III, et abdiqua pour se faire moine»:

ՁԺԹ. տարւոյն համար ձեռագրական յիշատակարան երկու հատ միայն ունինք, որոնցմէ մին կ՚ենթադրէ լոկ թէ այս տարւոյն դեռ կենդանի էր Հեթում: Իսկ երկրորդը, որ աւարտած է իր Աւետարանին օրինակութիւնը ՁԺԹ տարւոյն «ի պարոնութեան Լեւոնի», կ՚երեւայ թէ յետոյ կցած է Յիշատակարանիս Լեւոնի օծութեան յիշատակութիւնը: Ան գրէ թէ Հեթում վախճանեցաւ «այամ ամի» ի հոկտ. ամսոյ ԻԵ: Ամսաթիւը սխալ է յամենայն դէպս. իսկ «յայամ ամի» կ՚ենթադրէ 1269 օգոստ. 11—1270 օգ. 10: Լեւոնի օծութեան տարին չէ նշանակած, բայց գրէ, թէ Յունուար 6ին տեղի ունեցած է այն, ուստի ՁԻ (1270 օգ.—1271 օգ). տարւոյն մէջ: Միւս մանր ժամանակագիրները «ՁԺԹ» տարին ապահովաբար «ՁԻ» տարւոյն ազդեցութեան տակ է, երբ Լեւոն թագաւոր օծուեցաւ: Անոնք չեն ուզեր Հեթումի մահուան եւ Լեւոնի օծման մէջ մէկ տարուան դատարկ միջոց ենթադրել:

Վենետիկի Թ. 212 ճառընտիրի յիշատակագրութիւնը անլուծանելի կնճիռ մը կը ներկայացնէ. ան կը նշանակէ «ՉԻ» տարին եւ օրուան պատկերը Դչ. առանց յիշելու ամիսը: Պէտք է ըսել թէ ՉԻ (1271) տարւոյն հոկտեմբեր 29 հինգշաբթի կ՚իյնայ:

Գրիգոր Ականեցի կը կարծէ, թէ Հայոց Հեթում եւ Դաւիթ Վրաց թագաւորները միեւնոյն տարւոյն եւ ամսոյն վախճանած ըլլան: Այսպէս գիտէ նաեւ Ստեփանոս Օրպէլեան, որ երկուքին ալ մահը ՉԺԹ տարւոյն կը նշանակէ: Այլուստ անծանօթ է ինձ Վրաց Դաւիթ թագաւորի մահուան ճիշդ թուականը:

Հ. Ղ. Ալիշան, որ ունեցած է իր աչքի առաջ Կիլիկիոյ պատմիչի տողերը, թէեւ յուած է յիշատակել, կը հետեւի մանր ժամանակագիրներու տուած ժամանակագրութեան՝ ՉԺԹ. տարւոյն. եւ որովհետեւ այս տարւոյն հոկտ. 29 Դչ. կ՚իյնայ, համաձայնեցնելու համար օրուան պատկերը երեքշաբթիի, կը վերածէ զայն 28ի, ուստի «1270, հոկտեմբեր 28». իսկ Հեթումի գործերէ քաշուիլն կը նշանակէ նոյն տարւոյն հոկտեմբեր 20, որուն համար այլուստ վկայ կը պակսի:

10. Ռուբինեան իշխանաց համառօտ պատմութիւնը կը հաղորդէ թէ Հեթումի մահէն ետքը «Մեծն Լեւոն սուգ պահեալ գերիս ամիսս ցաւագին անձամբ եւ ապա մեծարեալ ի Ղանէն եւ յամենայն մերձակայից եւ հե-

սաւորաց. միաբանութեամբ աշխարհին օծաւ թագաւոր ի վերայ Հայոց. եթող ի սրտէ գյանցանս ամենեցուն, որք սխալեալ էին նմա. շնորհեաց պարգեւս ամենեցուն» (Սամ. Անեցի, էջ 222): Ասէ Վահրամ (էջ 228).

Բայց պարոնն այնքան սուգ առեալ,
Մինչ մահու չափ հիւանդացեալ.
Որ յամենից աղաչեցեալ,
Փութով լինել թագաւորեալ:
Սա առ ժամայն ոչ հաւանեալ,
Եւ յումեքէ ոչ սփոփեալ.
Զերկու ամիսս սուգ տարեալ
Տկար անձամբ եւ վշտացեալ:
Ապա նոքա որ բռնացեալ
Եւ աշխարհի էին տիրեալ.
Որ յԵգիպտոս սուլտան կացեալ,
Եւ այն որ Խանն էր անուանեալ.
Եւ այլ գրացիք որ մերձ եղեալ,
Եւ ի յազգաց գլուխ նրստեալ.
Սիրոյ պատգամ առ նա յղեալ,
Զի եղիցի թագաւորեալ:
Յորոց հարկեալ եւ հաւանեալ
Եւ զբովանդակ Հայք ժողովեալ...
Որք ի Տարսոն միաբանեալ
Եւ անդանօր զնա օծեալ:

Իսկ Պատմութիւնն ազգին Ռուբինեանց կը գրէ. «Յետ որոյ եկաց յաթոռ նորա անդրանիկ որդին նորա Լեւոն... եւ օծաւ ի քաղաքն Տարսուս յաւուր Յայտնութեան Տեառն» (անդ, էջ 211—212):

Գրիգոր Ակներցի կը գրէ· «Իսկ պարոն Լեւոն որդի Հայոց Թագաւորին գնաց առաջի Աբաղայ ղանին եւ պատմեաց զմահ Թագաւորին· եւ յոյժ սիրեցեալ եւ պատուեալ եղեւ ի ղանէն· եւ առեալ հրաման վասն Թագաւորելոյ իւր ի տեղի հօր իւրոյ, ապա դարձաւ եւ եկն յերկիրս իւր։ Եւ արար ժողով մեծ իշխանաց… ի հռչակաւոր քաղաքն Տարսուս… օրհնեցին եւ օծին իւղովն սրբութեան զԹագաւորորդին Լեւոն Թագաւոր ի վերայ ամենայն Հայոց» (էջ 51—52)։

Ժամանակի մասին կը հաղորդէ Կիլիկիոյ պատմիչը[33]. «Իսկ ի Թիւ ՉԻ, յամսեանն յունուարի վեցն աւուրն Թագաւոր Հայոց զԼեւոն որդին Թագաւորին Հեթմոյ ի մայրաքաղաքն Տարսոն, ի սուրբն Սոփի· եւ յամենայն ազգաց քրիստոնէից անդ հաւաքեալ կային առ ի տեսանել զարժանի տեսանելոյ ուրախութիւնն· որ եւ բազմաց մեծութիւն շնորհեցաւ յաւուրն յայն· եւ բազումք ի կապանաց բանտից ազատեցան»։

Թագադրութեան տարւոյն մասին միաբան են ժամանակագիրք։ Կը վկայէ նաեւ Յովհաննէս Արքայեղբայր, որ Դիոնեսիոս Արիոպագացւոյ գրութիւններ օրինակել կուտայ «ի Թուականիս Հայոց ՉԻ (1271) … ի Թագաւորութեանս քրիստոսապսակ արքային Լեւոնի տեառն իմոյ եւ եղբօրորդւոյ» (Հայապատում, Բ., 486)։

33 Սիսուան, էջ 270։

Լեւոն իր հօր մահը կը սգայ 3 ամիս․ ուստի նոյեմբերէն ցվերջ յունուարի: Ծանր կը հիւանդանայ: Կազդուրուելէ ետքը կ՚երթայ Ապաղայ ղանին․ կը մեծարուի անկէ եւ կը վերադառնայ: Այս ամէնը տեղի կ՚ունենայ 1269 հոկտ. 29էն ետքը եւ 1271 յունուար 6էն յառաջ․ ուստի հարկ է ենթադրել, թէ գահը տարի մը դատարկ մնացած է:

Հայոց ՉԻ տարին ըստ Սարկաւագադիրին կը հաշուի 1271 օգոստոսէն 1272 օգոստոս․ իսկ շարժական տոմարի համաձայն 1271 յունուար 8—7 յունուար 1272: Հոս Սարկաւագադիրը նկատի առնուած է:

Կը ստանանք հետեւեալ ժամանակագրութիւնը.

1. Եգիպտացիք կ՚արշաւեն Կիլիկեան Հայաստանի վրայ 1266, օգոստոս 23ին. Լեւոն գերի կ՚իյնայ: Թշնամին 20 օր կը գերփէ աշխարհը:

2. Կոստանդին կաթողիկոս կը վախճանի 9 ապրիլ 1267: Աթոռը դատարկ կը մնայ իբր տարի մը:

3. Յակոբ Ա. կաթողիկոս կ՚օծուի 12 փետրուար 1268:

4. Լեւոն կ՚ազատի գերութենէն 30° մայիս 1268:

5. Լեւոն իշխան Հայկական Կիլիկիոյ․ յունիս 1268:

6. Հեթում կ՚առանձնանայ Ակներ. կ՚ընդունի կրօնաւորական սքեմ եւ Մակար անունը (1269, հոկտ. 20°):

7. Հեթում կը վախճանի 1269, հոկտ. 29 Գշ.:

8. Լեւոն երեք ամիս սուգ կը բռնէ. 1269 նոյ.—1270 յունուարի վերջը:

9. Լեւոն կը հիւանդանայ. կը կազդուրուի. կ՚այցելէ Աբաղայ խանին եւ կը վերադառնայ 1270 փետր.—դեկտ.:

10. Կ՚օծուի ի Տարսոն թագաւոր Հայոց. 1271 յունուար 6:

## ԼԲ.

# ԳԱՐՁԵԱԼ ՀԵԹՈՒՄ Ա. Ի ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԻՆ

(28. ՀՈԿՏ. 1270)

---

# Բ.

# ԳԵՐԶԵԱԼ ՀԵԹՈՒՄ Ա. Ի ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԻՆ

## (28. ՀՈԿՏ. 1270)

*Փորձած էի ապացուցանել, թէ Հեթում Ա. վախճանած է 1269, Հոկտ. 29 երեքշաբթի*[1]*։ Առ այս ինձի կռուան ունէի Կիլիկիոյ անանուն Պատմիչի վկայութիւնը, որուն համաձայն «ՉԺԸ. ի սոյն ամի յամսեանն հոկտեմբերի որ աւր ԻԹ էր, յ. Գ.շաբթի ի մտանել արեգականն թագաւորն Հայոց Հեթում փոխեցաւ ի կենցաղոյս եւ յաւելաւ առ հարս իւր առ ստորոտով Բարձրբերդոյ ի գեաւղ որ կոչի Ակներ. եւ բարձեալ տարան զնա ի սուրբ ուխտն Թրազակն. եւ անդ թաղեցին առ դամբարան հայրապետին Գրիգորի      որ եւ ի ժամ վախճանին բարիոք խոստովանութեամբ կրաւնաւորեցաւ եւ անուանեցաւ Մակար»։*

*Այս հատուածը աչքի առաջ ունէի օրինակութեամբ մը Վենետիկի Մխիթարեանց քով պահուած ձեռագրէն։ Որովհետեւ ՉԺԸ տարւոյն հոկտեմբեր 29ի պատկերը ճշդիւ երեքշաբթի կ՚իյնար, հետեւցուցած էի թէ*

---

[1] *Հանդ. Ամս.* 1948, *էջ* 269–279։

վստահելի է այս վկայութիւնը: Այս տարի պատահմունքով մը ձեռքս ինկաւ նոյն հատուածին երկրորդ օրինակութիւն մը, որուն ընթերցուածը կարեւոր տարբերակներ կը պարունակէր. յառաջ կը բերեմ նաեւ անոր ընթերցուածը. «ՉԺԹ (719) ի սոյն ամի. յամսեանն հոկտեմբերի որ օր ԻԹ էր յ. Գ.շաբթի ի մտանել արեգականն թագաւորն Հայոց Հեթում փոխեցաւ ի կենցաղոյս եւ յաւելաւ առ հարս իւր առ ստորոտով Բարձրբերդոյ (ա՛յսպէս) ի գեօղն որ կոչի Ակներ, եւ բարձեալ տարան ի սուրբ ուխտն Թրագարկին (ա՛յսպէս) եւ անդ թաղեցին առ գամբարան սուրբ Հայրապետին Գրիգորի որ եւ ի ժամ վախճանին բարիոք խոստովանութեամբ կրաւնաւորեցաւ եւ անուանեցաւ Մակար»:

Այս տեղ կարեւոր տարբերակ մ՚ունինք, տարին «ՉԺԹ» է, մինչ միւս օրինակն ունէր «ՉԺԼ»: Թէպէտ 1270 տարւոյն հոկտ. 29 չորեքշաբթի է, ուստի ոչ շատ վստահելի ընթերցուած մը, բայց եւ այնպէս ՉԺԹ տարին իր ստուգութեան համար ունի այլուստ վկայութիւններ: Կը հարցնեմ, ուսկի՞ց յառաջացած են այս երկու իրարու անհամաձայն ընթերցուածները. ընդօրինակողներէն մէկուն կամ միւսին անուշադրութենէ՞ն. թէ ձեռագրին մէջ, ինչպէս այլուր, նաեւ հոս կրկնութիւններ եղած են, մէկուն մէջ ՉԺԼ եւ միւսին մէջ ՉԺԹ ընթերցուածներով: Այս

*կէտը պէտք է ստուգել ձեռագրին վերաքննութեամբ:*

*Ի նպաստ ՉԺԹ տարւոյն եւ օրուան երեքշաբթի ըլլալուն կը վկայէ Յովհաննէս արքայեղբայր եպիսկոպոսը իր մէկ յիշատակարանին մէջ, զետեղուած Էջմիածնի Թ. 345 Աստուածաշունչին մէջ, որ վրիպած էր իմ տեսութենէս, երբ աչքի կ՚անցնէի զայն 1926ին: Արքայեղբայրը գրած է զայն Ելից գրքի ԺԳ. 31 համարէն ետքը: Բարեբախտաբար զայս զայն ապա յառաջ բերուած Մ. Բրոսէէ գաղղիերէն թարգմանութեամբ այսպէս.*

„Cette année, qui est de l'ère arménienne 719—1270, Héthoum, le grand roi de tous les chrétiens, est passé vers Dieu, laissant à tous les Arméniens un grand dueil et affiction. Que Dieu place son âme dans son royaume. Amen. Le mois est celui d'octobre, 28; le jour est un mardi" (M. Brosset, Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, 1re livraison, 3me rapport. St. Pétersbourg 1849, p. 27):

*Տօմարագիտական հաշուով ուղիղ է «1270, հոկտ. 28 երեքշաբթի»: Կը համարիմ թէ Հ. Ղ. Ալիշան, որ չէ մատնանշած իր գործածած աղբիւրը, Բրոսէի այս յառաջբերութենէն առած է Հեթում Ա.ի մահուան տարին «1270 հոկտ. 28» (Յուշիկք Հայրենեաց Հայոց, Ա., էջ 181, Սիսուան, 154,*

555)։ Չեմ կասկածիր որ Արքայեղբայրը յիշատակագրութիւնս արձանագրած է իր Աստուածաշունչին մէջ այն օրը, երբ լսած է իր արքայ եղբօր մահը, եւ երբ հասած էր ձեռագրին օրինակութիւնը Ելից գրքի ԺԴ. 31 համարը։ Նոյն ձեռագրին մէջ միւսանգամ անդրադարձած է իր եղբօր յիշատակին. «Յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս Թագաւորն Հեթում...» (թղ. 144ա)։

Յեցած այս վկայութեան վրայ պէտք է ուղղել Կիլիկիոյ անանուն պատմիչին «ՉԺԸ»՝ կարդալով ՉԺԹ. եւ հոկտեմբեր «29» սրբագրելով «28»։ Այսպէս նաեւ Արդնիի Ս. Սարգիս եկեղեցւոյ Աւետարանին Յիշատակարանը. «Ի ՉԺԹ.... արդ ի յայսմ ամի ի հոկտեմբեր ամսոյ, որ էր ԻԵ (կարդա՛ ԻԸ) հանգեաւ ի Քրիստոս բարեպաշտ արքայն Հեթում» (Թորոս Աղբար, Բ., էջ 381—382) եւ Վենետիկի Թ. 212 Ճառընտիրի լուսանցագրութիւնը. «Յամի Չի. յայսմ աւուր, որ է Դշի (կարդա՛ Գշի) բարեպաշտ արքայն Հեթում փոխեցաւ առ Քրիստոս»։ Հոս տարին «Չի» պէտք է իմանալ այսպէս. գրիչը գրած է յիշատակարանս 1271 տարւոյն հոկտեմբերէն յառաջ, երբ 1270ի հոկտեմբերը Սարկաւագադիր անշարժ տոմարի հաշուով ընթացիկ տարւոյն մէջ կ՚ըմբռնուէր։ Իսկ Օշին Թագաւորի Յայսմաւուրքին մէջ Հեթումի յիշատակը նշանակուած է հոկտեմբեր ԻԵին. «Թագաւորն Հայոց Հեթում, Լեւոն Թագաւորին հայրն» (Հայապատում, Բ., էջ 545)։

Գրիգոր Ակներցւոյ (Պատմ. Թաթարաց, էջ 49) եւ Ստեփաննոս Օրբելեանի համաձայն Հեթումի մահը զուգադիպած է Վրաց Դաւիթ թագաւորի մահուան: Կ'ակնարկուի Դաւիթ Ե., Գորգի Դ. Լաշայի որդին, որ թագաւորեց 1243—1272, ըստ վրական արքայացանկին: Այս դէպքին հարկ է թագաւորին մահուան տարին ճշդել՝ 1270 հոկտեմբեր (հմմտ. Brosset, Histoire de la Géorgie, St.-Pétersbourg 1858, էջ 584, ծ. 3., նոյն. Additions et éclaircissements à l'Hist de la Géorgie, անդ, 1851, էջ 465, ծ. 2):

Կիլիկիոյ անանուն Պատմիչը Հեթում Ա.ի յաջորդին համար կը գրէ.

«ՉԻ. իսկ ի թուին ՉԻ, յամսեանն յունվարի. Զ.ն աւուրն թագաւոր Հայոց գլեւոն որդի թագաւորին Հեթմոյ ի մայրաքաղաքն Տարսոն ի սուրբն Սոփի. եւ յամենայն ազգաց քրիստոնէից անդ հաւաքեալ կային եւ է տեսանել զարժանի տեսանելոյ ուրախութիւնն որ եւ բազմաց մեծութիւն շնորհեցաւ յաւուրն յայն. եւ բազումք ի կապանաց բանտից ազատեցան: Եւ յետ աւուրց ինչ յորժամ արձակեցաւ ժողովն՝ ինքն նորընծայ թագաւորն գնայր ի Սաւրիա առ ի տեսութիւն գաւառին եւ դարձեալ գայր ի տուն իւր»:

Ի՞նչպէս իմանալու է այս «ՉԻ, 6 յունուար»: Հայոց շարժական տոմարի համաձայն ՈԽԶ—ՉԿԹ (1197—1320) տարիներուն

նաւասարդ 1 կ'իյնար 31—1 յունուարին. իսկ սարկաւագագիր անշարժ տոմարը կ'ենթադրէր ագոստոս 11ին: Եթէ այստեղ նկատի առնենք միայն ՉԺԸ—ՉԻ տարիները, կը ստանանք պատկերս համեմատութեամբ յուլեան անշարժ տոմարին (Հ = շարժական, Ս = Սարկաւագագիր անշարժական տոմար).

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՉԺԸ. | Հ. | 13 յունվ. | 1269—1270 | յունվ. 12 |
| | Ս. | 11 աւգ. | 1269—1270 | աւգ. 10 |
| ՉԺԹ. | Հ. | 13 յունվ. | 1270—1271 | յունվ. 12 |
| | Ս. | 11 աւգ. | 1270—1271 | աւգ. 10 |
| ՉԻ. | Հ. | 13 յունվ. | 1271—1272 | յունվ. 12 |
| | Ս. | 11 աւգ. | 1271—1272 | աւգ. 10 |

Եթէ Լեւոն Բ.ի թագաւոր օծումը տեղի ունեցաւ 1271 յունուար 6ին, Հայկական շարժական տոմարի համաձայն այն կատարուած է ՉԺԹ. տարւոյն վերջերը. այս պարագային հարկ կ'ըլլայ հաստատել թէ «ՉԻ» տարին կը նկատուէր համազօր յուլեան 1271 տարւոյ, յունուարէն–դեկտեմբեր, այլապէս պիտի ըսենք, որ օծումը կատարուած է 1272ին, յունուար 6ին: Զայս կարելի չէ սակայն հաստատել: Որովհետեւ Արքայեղբայր Յովհաննէս եպիսկոպոս ՉԺԹ տարւոյ հոկտեմբեր 28 երեքշաբթի գիտէ, որ կը համապատասխանէ ճշդիւ յուլեան 1270 հոկտեմբեր 28ին, ուստի նկատի առնուած է ՉԺԹ = 1270: Եւ արդէն այն պարագան որ Կիլիկիայի

մէջ յուլեան տոմարի ամսանունները կը գործածուէին, կը հարկադրէ ընդունիլ թէ հոն յուլեան տոմարը նախապատուութիւն գտած էր, իբրեւ միակ միջազգային տոմար թէ արեւմտեանց եւ թէ արեւելեայց համար:

---

## ԼԳ.

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԱՍՐԵԴԻՆԵԱՆ ԱՐՔԵՊ. ՀԱՅՈՑ ԼՎՈՎԻ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԹՈՒՄԱՑ ԵՒ ՎԼԱԽԱՑ ԱՇԽԱՐՀԻ

(1380—1415)

---

## ԼԳ.

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԱՍՐԵԴԻՆԵԱՆ ԱՐՔԵՊ. ՀԱՅՈՑ ԼՎՈՎԻ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՌՈՒՍԱՑ ԵՒ ՎԼԱԽԱՑ ԱՇԽԱՐՀԻ

**(1380—1415)**

1. *ԺԳ. դարու վերջերը մեծ թուով գաղթականներ եկան հայկական գաւառներէն եւ Փոքր Ասիոյ հայարնակ քաղաքներէն։ Անոնցմէ մեծ մաս մը ապաստանարան գտնուեց Ղրիմ, որ Գենուացւոց տիրապետութեան տակ էր։ Միւս մասը անցաւ Բալկան եւ տարածուեցաւ Մոլտաւիա, Բեսարաբիա եւ Գալիցիա. ուրիշ խօսքով «Վլախաց եւ Ռուսաց» աշխարհներու մէջ։ Ղրիմի հայ գաղութը, որ թուով աւելի մեծ էր, կազմակերպուած էր արդէն ԺԴ. դարու սկիզբը եկեղեցական վարչութեամբ։ Միւս մասը, հաստատուած գլխաւորաբար Կամենիցի եւ Լվովի շրջակայքը, թէպէտ իբրեւ գաղութ ունեցաւ իր կեդրոնները Կամենից* (1344) *եւ Լվով* (1356), *թագաւորական առանձնաշնորհումներով ճոխացած եւ սեպհական դատարաններով ինքնավար*[1], *բայց*

---

[1] *Հ. Մ. Բժշկեան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, Վենետիկ* 1830, *էջ* 86, 116։

իբրեւ կրօնական համայնք չէր կազմակերպուած օրինաւոր առաջնորդով. կը կառավարուէր ինքնագլուխ աւագերէցներով:

1363ին Կաֆացի Յակոբ եւ Ղազալցի Փանոս վաճառականները Լվովի փայտակերտ հին եկեղեցին յանուն Ս. Աստուածածնի ի հիմանց կը կառուցանեն քարաշէն: Հիմնարկողներու մագաղաթեայ կտակագիրը[2], գրուած նոյն տարւոյն Օգոստոս 30ին, կը սկսէր այսպէս. «Այս մեր կամաց եւ հաւատոյ գիր է Յակոբիս որդւոյ Շահընշահին՝ բնական Կաֆացի, եւ Փանոսի որդւոյ Ավրանի՝ բնական Ղազալցի, որ տուաք զայս հաւատոյ գիրս, որ ուխտեցաք վասն սուրբ Աստուածածնին եւ շինեցաք ի Լով քաղաքս. հայադաւան սուրբ Լուսաւորչին աւրինաւքն, հնազանդ կաթուղիկէին եւ հայ եպիսկոպոսի եւ հայ տանուտրանցն..: Գրեցաւ գիրս ի Թվ. Հայոց ՊԺԲ. յաւգոստոսի Լ. աւրն:

Ես Աբրահամ ավագերէցս վկ.
Ես Ըրստակէս կրաւնաւորս վկ.
Ես Յոհաննէս աբեղաս վկ.
Ես Քրիստոսատուր քահանայս վկ.
Ես պր. Իզատենի որդի Սարայս վկ. ...
Ես պր. Յակոբի որդի Նասրադինս վկ. ...
Ես պր. Թադվորի որդի Ոսուզպէս վկ.»:

---

² Անդ, էջ 104—105:

Այս վկայողներու ցանկէն կը տեսնուի, որ Լվովի համայնքի գլուխն էր Աբրահամ աւագերէց. չունէր եպիսկոպոս: Եկեղեցւոյն շինութիւնը գլուխ ելլելէն ետքը կ'երեւայ թէ Համայնքը կարեւոր զգացած է ունենալ իր եպիսկոպոսն եւ թեմական կազմակերպութիւնը:

Ինչպէս Մեսրոպ կաթողիկոսի 1364ին այս Գաղութին գրած Կոնդակէն[3] կը տեսնուի, Սիսի կաթողիկոսարանն ալ իր կարգին լուրջ խորհրդածութեան առարկայ ըրած էր այս թեմական կազմակերպութեան հարցը: Կաթողիկոսը կը գրէր. «Ես մեծաւ պաղատանօք օր ըստ օրէ հայցէի յԱստուծոյ գտանել այր իմաստուն եւ հանճարեղ... կացուցանել ձեզ եպիսկոպոս եւ հոգեւոր առաջնորդ»:

2. Անակնկալ մը էր, երբ 1364ին Սսոյ կաթողիկոսարանը ներկայացաւ Գրիգոր անուն անձ մը, իբրեւ թեկնածու Լվովի աթոռին, ուղարկուած անշուշտ նոյն քաղաքի հայ Տանուտէրներէ կարեւոր թղթերով: Անոր գալուստը սիրով կ'ողջունուի կաթողիկոսէն: «Գտաք, կը գրէ Կաթողիկոսը, զովելի եւ իմաստուն զարժանապատուեալ եւ զառաքելաշնորհ եպիսկոպոս զտէր Գրիգոր եկեալ առ մեզ. եւ օրհնեցաք ձեզ եպիս-

---

[3] Հ. Ղ. Ալիշան, Կամենից. Տարեգիրք Հայոց Լեհաստանի եւ Ռումանիոյ հաւաքեալ յաւելուածովք, Վենետիկ 1896, էջ 4—8:

կոպոս եւ եղաք զինք ձեզ հովիւ եւ հոգեւոր առաջնորդ[4]»:

Նորընտիր առաջնորդին Թեմը կը կազմէին Լվով, Վոլոդիմիր («Ալատեմիր») եւ Լուցկա «իւր սահմանեալ վիճակաւ»:

Ընտրութիւնը, ինչպէս յետոյ զգացուեցաւ, յաջող չէր: Գրիգորի ընթացքէն դժգոհ մնացին նախ ինքն Մեսրոպ, ապա Կոստանդին եւ Թէոդորոս կաթողիկոսները, «զի առանց իր ձեռնադրողին հրամանաց յայլոց վիճակ կու ձեռնարկէր եւ ամբարտաւանութեամբ կու գնայր[5]»: Ազդարարութիւններ ըրին իրեն Մեսրոպ եւ Կոստանդին կաթողիկոսները: Զքմեղելու համար ինքզինքը՝ 1374 յունուարին երեւցաւ Կոստանդին կաթողիկոսի Դուռը: Իր ինքնաջատագովութիւնը կ'երեւայ թէ հաճեց կաթողիկոսին միտքը. վասն զի Կոստանդին իր Նախորդին տուած շրջաբերականը վերստին հաստատելով (1374, յունուար 15) կը գրէր. «Երեկ առ մեզ պատուելի արքեպիսկոպոս ձեր եւ մեր ըստ հոգոյ պարծանաց որդիս Տէր Գրիգորիս ի հնազանդութիւն մերոյ սուրբ Աթոռոյս. զոր եւ մեք յոյժ սիրով եւ մեծաւ պատուով ընկալաք զինք որպէս զմեր քաջ սիրեցեալ որդի[6]»: Գրիգոր իր վերադարձի վրայ էր արդէն, երբ Կոստանդին զղջացաւ իր տուած հաստատագրին վրայ: Կ'երեւայ

[4] Անդ, էջ 6:
[5] Անդ, էջ 10:
[6] Անդ, էջ 215:

*այս միջոցին հասան իրեն Լեհաստանէն Գրիգոր եպիսկոպոսի մասին գանգատի նոր թղթեր: Սուրհանդակ մը կը հետապնդէ Գրիգորը. կը հանդիպի իրեն ի Վահկայ եւ կ'առնէ ձեռքէն Մեսրոպ եւ Կոստանդին կաթողիկոսներու հաստատագիրները: Եպիսկոպոսը կը գրգռէ հայ իշխանները կաթողիկոսին դէմ: Սա կը ստիպուի վերադարձնել թղթերը*[7]*: Բայց Գրիգոր հազիւ հասած Լվով, կ'ընդունի կաթողիկոսէն բանադրանքի գիր:*

3. *Մինչ կը խորհէր Կոստանդին, «թէ ո'րպէս բնաջինջ արասցէ զնա այտի», կը գրէ Թէոդորոս կաթողիկոս, ահա «եկն տէր Յովհաննէս Պր. Նասրատնին որդին վասն եպիսկոպոսութեան* այլոյ վիճակի: *Զոր իբրեւ ետես զսա (Կոստանդին կաթողիկոս) յոյժ ուրախացաւ. եւ ձեռնադրեաց զտէր Յովհաննէսդ Լովիդ եւ ամենայն վերոյիշեալ թեմիդ եպիսկոպոս. եւ առաքեաց գալ առ մեզ: Սակայն յետ աւուրց ինչ եհաս վաղջան մեր նախնոյն*[8]*» Կոստանդին կաթողիկոսի* († 15 *օգոստոս* 1380): *Ձեռնադրութիւնը տեղի ունեցած ըլլալու է* 1380, *մարտին:*

---

[7] *Անդ էջ* 10. *«Իսկ յետ սակաւ աւուրց իմացաւ Տէր Կոստանդին զնորա անուղղեալ գործերն... յղեաց մարդ զհետ նորա մինչեւ ի Վահկայն եւ ետ առնուլ ի նմանէ զշրջաբերականն եւ զամենայն գրերսն եւ զնա հերքեցին... զնաց յարեցաւ յիշխանսն եւ կաչառս ետ նոցա, որ եկին իշխանութեամբ զկաթողիկոս ի կամաց հանին եւ առին զմա շրջաբերականն»:*

[8] *Անդ, էջ* 11:

Կոստանդին կաթողիկոսի շնորհած հաստատագիր կոնդակը չէ հասած մեզի: Էջմիածնի Թ. 1527 ձեռագրէն կ'իմանանք թէ նա նուէր ըրած է այս առթիւ նորընծային՝ Ներսէս Լամբրոնացւոյ Մեկնութիւնն Սաղմոսաց, գրուած 1301ին. «մեծաւ աշխատութեամբ եւ ծանր ծախիւք երեր, կ'ըսէ Յիշատակագիրը, զայս գիրքս որ է Սաղմոսին Մեկնիչ՝ մեծ ընծայ եւ լուսաւորիչ այսմ աշխարհի»:

4. Յիշեալ ձեռագիրը ունի իր ծոցը երկու կարեւոր յիշատակագրութիւն, որոնք ոչ միայն կը հաստատեն Թէոդորոս կաթողիկոսի տողերու ճշդութիւնը, այլ եւ կը հաղորդեն Յովհաննէս արքեպիսկոպոսի անձին մասին կարեւոր տեղեկութիւններ. ասոնք են.

Թղ. 7ա. «Փառք...: Ի Թվականիս Հայոց ՊԻԸ... գնաց երջանիկն ի հայրս տէր Յոհաննէս ի մեծ դիտապետն Հայոց ի տէր Կոստընդին. եւ ձեռնադրեցաւ արքեպիսկոպոս ամենայն Ռուսաց եւ Աւլախաց աշխարհին: Եւ մեծաւ աշխատութեամբ եւ ծանր ծախիւք երեր զայս գիրքս որ է Սաղմոսին Մեկնիչ մեծ ընծայ եւ լուսաւորիչ այսմ աշխարհի: Որպէս սուրբն Գրիգոր որ երեր զնշ(խ)արք սուրբ Կարապետին եւ զԱթանագինեայ, սոյնպէս եւ տէրս մեր աստուածարեալ տէր Յոհաննէս արքեպիսկոպոս երեր զմեծ գանձս զայս ի յիշատակ

*հոգոյ իւրոյ եւ ի լուսաւորութիւն մանկանց Սիոնի: Արդ ողորմածն Աստուած յիշեսցէ զպարոն Նասրատինն եւ զհեզահոգի տիկինն իւր զնուրչայ խաթունն եւ հանգուցէ ընդ արդարս իւր զհոգիս նոցա, որ է ծնաւղք տէր Յոհաննիսին. նա եւ զհարազատ եղբայրսն իւր զսրբասէր կրօնաւորն զտէր Սվաք եւ զհեզահոգի քահանայն զԱւետիսն եւ զպարոն Ուլուպէյն հանդերձ ընտան(ե)օքն իւր...:*

*Թղ. 667բ. Փառք...: Ի թվականիս Հայոց ՊԻԸ. կոչեցաւ ի մեծ դիտապետէն Հայոց* (դատարկ. *ի Կոստընդնայ) տէր Յովհաննէս սրբասէր կրօնաւոր քահանայն. եւ սուրբ Յակոբայ պահոցն նաւեցաւ ու գնաց ի մայրաքաղաքն ի Սիս: Եւ ձեռնադրեցաւ ի մեծ դիտապետէն տէր Կոստընդնայ արքեպիսկոպոս (Ըոս)աց աշխարհի եւ Վլախաց: Եւ ի (դալն) իւրում յաշխարհն տէր Յոհաննէս (արքե)պիսկոպոսն եբեր զգիրքս զայս որ է Սաղմոսին Մեկնիչ մեծ նվէրք աշխարհիս Ըուսաց...» (մասամբ պատռուած եւ մասամբ թղթով ծածկուած կազմելու ժամանակ):*

*Ուրիշ ժամանակակից մը Մարկոս Յովանեց գրած է Պարիսի Ազգ. Մատ. Թ. 80 Գանձարանի մէջ (աւարտած 1380 մարտ 20ին) տողերս. «Խաչերեան Քրիստանին որդին եւ Նասրատինին որդին գնացին վասն*

եպիսկոպոս լինելոյ· եւ Ջնուէզն ու Վէնէտն յաղի՛ էին[9]»:

5· Յովհաննէս արքեպիսկոպոսի առհմայրութեան համար նկատի պէտք է առնել նախ Ստեփանոս Ռօշքայի տողերը, որ իր ժամանակագրութեան մէջ յամին 1398 կ՚արձանագրէ· «Տէր Յովհաննէս առաջին արքեպիսկոպոսն Լէօպօլսի Հայոց· քանզի յառաջ քան զսա զայլ ոք արքեպիսկոպոս ոչ ուրեք կարացաք գտանել· զոր ումանք ի թագաւորական ազգէ եղեալ ասեն: Սա ոչ միայն Լեհաց, այլ եւ Պուղտանաց երկրի Հայոց առաջնորդ էր[10]»: Կը գրէ նաեւ Հ· Մ· Բժըշկեան· «Յովհաննէս արքեպիսկոպոս Իլվովի եւ Վալաքիայի, որ էր ի թագաւորական զարմէ Հայոց, նստաւ յամի Տեառն 1365··· բայց փութով վախճանեցաւ[11]»: Թէ որո՞նք են այն «ումանք», որոնք «ի թագաւորական ազգէ» կը համբաւեն Յովհաննէսի ծագումը, մեզի անծանօթ կը մնան: Վերագոյն յիշեցինք Կաֆացի Յակոբ, որդին Շահնշահի, որ պր· Փանոսի հետ հիմնադիրն էր Լվովի Ս· Աստուածածին եկեղեցւոյ: Այն

[9] F. Macler, Arménie et Crimée. Note d'histoire, notice de manuscrits: L'Art byzantin chez les Slaves, les Balkans. Premier recueil. Paris 1930, p. 365: «Յաղի» Մակլէր կը կարդայ «ժաչի» եւ կը թարգմանէ „d'accord". Միտքն է· Գենուացիք եւ Վենետացիք իրենց նաւերով ծովու վրայ էին ելուզակաբար:

[10] Կամենից, էջ 131:

[11] Ճանապարհորդութիւն, էջ 106:

կտակագրին տակ տեսանք նաեւ ստորագրութիւնս. «Ես պր. Յակոբի որդի Նասրադինս վկ(այեմ)»: Այս Յակոբ հաւանօրէն նոյն է Կաֆացի Յակոբ Ճահնչահեանի հետ: Իսկ պր. Նասրատին հայրն է Յովհաննէս արքեպիսկոպոսի: Եթէ այս ազգակցական գիծը ուղիղ է, կարող էր Յովհաննէս իբր Ճահնչահեան Յակոբի թոռնիկն նկատուիլ. եւ որովհետեւ «չահնչահ» թագաւորական տիտղոս մըն է, ազգակցական այս գծին ծանօթները արդար կամ անարդար «թագաւորական ազգէ» հռչակած են զՅովհաննէս, որ կ'երեւցնէր իր վրայ ալ ազնուական գիծ մը, զովուած եւ յարգուած երեք կաթողիկոսներէ իր բարեվայելուչ կենցաղին համար:

Պր. Նասրետին եւ իր հեղահօղի տիկինը Նուրչայ խաթուն, որոնք 1380ին հանգուցեալ էին արդէն, թողուցած էին ժառանգ չորս արու զաւակ, 1. Յովհաննէս, որ արքեպիսկոպոս եղաւ, 2. «սրբասէր կրօնաւորն տէր Աւագ». 3. «հեղահօղի քահանայն» Աւետիս եւ 4. պր. Ուլուպէյ: Յովհաննէս թերեւս նոյն ըլլայ այն «Յովհաննէս աբեղայի» հետ, որ 1363ին ստորագրած էր Ս. Աստուածածին եկեղեցւոյ կտակագրին տակ իբրեւ վկայ: Յակոբ կաթողիկոս 1409ին, յունիս 26ին գրած կոնդակին մէջ յիշելով Յովհաննէս արքեպիսկոպոսի այցելութիւնն ի Սիս, կը յայտնէ թէ անոր հետ էր նաեւ

*եղբայրն Գրիգոր աբեղայ*[12]*: Այս Գրիգորը առանց տարակոյսի նոյն է տէր Աւագ կրօնաւորին հետ: Հ. Ղ. Ալիշան Լվովի արքեպիսկոպոսներու ցանկին մէջ*[13] *կը նշանակէ. «1379 Յովհաննէս: 1409. Գրիգոր Բ. եղբայր Յովհաննու: 1415. Աւետիք, եղբօրորդի Գրիգորի եւ Յովհաննու»: Ալիշան «Գրիգոր եղբայր Յովհաննու» 1409ին՝ հանած է հաւանօրէն Յակոբ կաթողիկոսի կոնդակէն. բայց հոն որ եւ է խօսք չկայ, թէ Գրիգոր եպիսկոպոսացած ըլլայ: Իսկ Աւետիքի համար Ստեփանոս Ռօշքա կը վկայէ (յամին 1445). «Տէր Աւետիք* Երրորդ *եպիսկոպոսն մեր Լէօպօլսի*[14]*»: Ինքն Աւետիք իր կարգին նոյնը կը հաստատէ, երբ կը գրէ. (1 օգոստ. 1446). «գտաք հաստատած ի մեր նախնեաց՝ ի տէր Յօհաննէս եւ ի տէր Գրիգոր արհիեպիսկոպոսացն*[15]*». ուստի 3. Աւետիք. 2. Յովհաննէս. 1. Գրիգոր: Իսկ թէ Աւետիք Յովհաննէսի եղբօրորդին եղած ըլլայ, չգտայ որ եւ է վկայութիւն. էջմիածնի Թ. 1527ի համաձայն «Աւետիք քահանայ» եղբայրն էր Յովհաննէսի. բայց թէ նա իբրեւ քահանայ արժանացա՞ծ է եպիսկոպոսական աստիճանի, չէ յիշատա-*

---

[12] *Կամենից, էջ* 222:

[13] *Անդ, էջ Է:*

[14] *Անդ, էջ* 134:

[15] *Անդ, էջ* 134: *Աւետիք ձեռնադրուած էր Սիս, հաւանօրէն Յակոբ Գ. կաթողիկոսէն.* 1445, *օգոստոս* 17*ին ներկայացաւ էջմիածնի Գրիգոր Մակուեցի կաթողիկոսին եւ ստացաւ անկէ այլ հաստատագիր:*

կուած ո եւ է տեղ. բայց թերեւս ի շնորհս իր արժանաւոր եղբօր եւ իր իսկ արժանիքին հաճած ըլլայ Յակոբ կաթողիկոս այս առանձնաշնորհութիւնն ընել: Յովհաննէս արքեպիսկոպոսի մահուան տարին ծանօթ չէ. ուստի նաեւ իր յաջորդին գահակալութեան առաջին տարին անյայտ:

6. Յովհաննէս, ինչպէս կը գրէ Յիշատակագիրը «կոչեցաւ ի մեծ դիտապետէն Հայոց», Կոստանդին Ե. Լամբրոնացի կաթողիկոսէն Սիս, եպիսկոպոս ձեռնադրուելու «այլոյ թեմի[16]»: ՊԻԸ տարւոյ «Սուրբ Յակոբայ պահոցն նաւեցաւ» երթալու ի Սիս: Հայոց ՊԻԸ. տարին կը սկսի 1378 դեկտ. 17ին. իսկ 1377ին Ս. Յակոբայ պահքը կը բացուէր դեկտ. 11ին եւ կ'աւարտէր 16ին, ուստի «ՊԻԸ»ով պէտք է իմանալ 1379, դեկտ. 12—17: Նաւ նստաւ հաւանօրէն Կաֆա, ընկերակցութեամբ Քրիստանի որդւոյն Խաչերեսի, որ նոյնպէս եպիսկոպոսութեան թեկնածու էր: Այն օրերուն «Ջնուէզն ու Վէնէտն յաղի էին»: Թէ քանի ամիս տեւեց ճանապարհորդութիւնն ընդ ծով եւ ընդ ցամաք, դժուար է ճշդել: Հաւանօրէն Մեծ Պահքի օրերուն հասան անոնք Սիս եւ օծումը տեղի ունեցաւ զատկին (25 մարտ 1380):

Յովհաննէս ժամանեց Սիս իբրեւ ընտրեալ եպիսկոպոս «այլոյ թեմի», այս ինքն

---

16 Ինչպէս կը գրէր Թէոդորոս կաթողիկոս:

ոչ Լվովի, Վոլոդիմիրի եւ Լուցքայի․ այս վիճակին եպիսկոպոսն էր Գրիգոր։ Բայց որովհետեւ Գրիգոր հեռաց կաթողիկոսին հրամաններուն եւ բանադրուեցաւ, որոշեց կաթողիկոսը զրկել զինքը աթոռէն եւ թեմը ենթարկել Յովհաննէսի իշխանութեան, որ օծուած էր Վլախաց եւ Ռուսաց աշխարհներու արքեպիսկոպոս հովիւ։ Թէոդորոս կաթողիկոս կը գրէ․ Կոստանդին կաթողիկոս «ձեռնադրեաց զՏէր Յոհաննէս Լովից եւ ամենայն վերոյիշեալ թեմից եպիսկոպոս»։ «Վերոյիշեալ թեմդ» կ՚ընդգրկէր «ականաւոր թագաւորանիստ քրիստոսական մայրաքաղաքն Լովն եւ ամենայն վիճակն իւր բոլորովին, Սերաթն, Զիչովն, Կամենիցն, Լուցկայն, Աւլատէմիւրն, Մանքրման, Վլախաց երկիրն եւ Պոլինն եւ Ընկիսալայն եւ այլ ամենայն թիմն իւր առ հասարակ[17]»։ Այսպէս նաեւ Յակոբ կաթողիկոս 1409ի Կոնդակին մէջ[18]։ Էջմիածնի Թ․ 1527ի Յիշատակագիրը այս 8 քաղաքներու վիճակը կ՚ամփոփէ այսպէս․ «եւ ձեռնադրեցաւ արքեպիսկոպոս ամենայն Ըռսաց եւ Աւլախաց աշխարհին» կամ «Ըռսաց աշխարհին եւ Վլախաց»։ Այսպէս «Տէր Յովհաննէս արքեպիսկոպոս ամենայն Ուռուսաց եւ Վլախաց աշխարհի» գիտէ նաեւ 1389ին Ղալաթիոյ Ս․ Լուսաւորիչ եկեղեցւոյ» շինութեան առթիւ հանուած օր-

[17] Կամենից, էջ 17։
[18] Անդ, էջ 221։

հնութեան գրին հեղինակը[19]։ Նոյնպէս պր․ Խութլուպէյ իր կտակագրին մէջ, զոր գրեց Կամենիցի Ս․ Նիկողայոս եկեղեցւոյ շինութեան առթիւ 1398ին․ «Տէր Յոհաննէս արքեպիսկոպոս ամենայն Ռուսաց եւ Ալլախաց աշխարհի եւ ներկայ ժամանակս հոգեւոր առաջնորդ նահանկիս եւ մեզ[20]»։ Ռուսաց աշխարհն է Գալիցիա, որ եւ Կարմիր Ռուսիա կ՚անուանուի․ իսկ Վլախաց աշխարհ՝ այժմեան Մոլդաւիա եւ Բուկովինա Բեսարաբիայով միասին։ Գլխաւոր քաղաքներ կը յիշուին 1․ Լով (նաեւ Իլով, Իլվով, Լէոպոլիս, Լեմբերգ, այժմ Լվով), 2․ Սերաթ (Սերեթ), 3․ Ձեչով այժմ Սուչաւա[21], 4․ Կամենից (Kamieniec Podolski). 5․ Լուցկա (Luck). 6․ Ալլատէմիր (Ալլատէմուր։ Սիմ․ Լեհացի՝ Վօլօ—

---

[19] Հանդէս Ամսօրեայ, 1946, էջ 116։

[20] Անդ, 1897, էջ 20 (նոյնը Կամենից, էջ 133)։

[21] «Մոլտաւիոյ իշխանն Պետրոս Մուշատ (1375—1391), որ Լեհաց բարեկամ էր եւ անոնց Վլադիսլաւ թագաւորին հետ խնամացած, 1384ին Մոլդաւիոյ եւ Սուչավայի վաճառական Հայերն ի հաւատոյս Լեմբերգի արեւելեան հայ եպիսկոպոսին իրաւաբանութեանն ենթարկեց» (Դան, Արեւելեան Հայք ի Բուկովինա. Վիեննա, 1891, էջ 6)։ Սուչաւա (Ձեչով, Սեչով) 1380էն ի վեր կը պատկանէր Յովհ. Արքեպիսկոպոսի թեմին։ Զարմանալի է այս պատճառաւ, թէ ինչպէս Գրիգոր Մակուեցի կաթողիկոս 15 օգոստ. 1445ին իր Կոնդակին մէջ կը գրէ ի մասին Աւետիք արքեպիսկոպոսի. «Եւ մեք զՏէր Աւետիքդ, որ ձեզ եպիսկոպոս էր բնական, այլ կրկին եւ վերստին հաստատեցաք. եւ զՍէչով քաղաքն իւր գեղանովն շնորհեցաք իւրն սեպհական թեմ եւ վիճակ» (Կամենից, էջ 134)։

տիմիր), այն է Volodimir 7. Մանքերման, այժմ Ակքերման. 8. Պտին (անծանօթ). 9. Ընկիսալա (Ենկի-սարա՞, տեղը անծանօթ[22]): Սիմէոն Լեհացի կը գրէ[23]. Բացի Լովէն «կան եւ այլ քաղաքնին սակաւ հայեր, որպէս Կամէնից, Եազլովցա, Զամոսցա, Լուցքա, Մանքէրման: Առաջն Լուցքան 800 տուն էր. գեղեր, ագարակնի ունէր եւ շատ վախրֆք. եւ անդ էր յառաջն աթոռն... եւ մեծն Մանքէրման ասին թէ յորժամ սէֆէր լինէր 500 հոգի կ'ելլէր Հայոց ի պատերազմ...: Են եւ այլ հին քաղաքնի, յորս կային Հայք. որպէս Պէլզա, Վիլնա, Վօլօտիմիր եւ այլ գեղօրայքն»:

7. Կոստանդին կաթողիկոս կը վախճանի 1380 օգոստոս 15ին. յաջորդ կը բազմի գահին վրայ Թէոդորոս նոյն տարւոյն նոյեմբեր 1ին: Այս միջոցին Յովհաննէս հաստած էր արդէն Լվով իբրեւ արքեպիսկոպոս Ամենայն Ռուսաց եւ Վլախաց աշխարհին: Կենդանի էր դեռ Գրիգոր եպիսկոպոս, թէպէտ բանադրանաց տակ, բայց եւ այնպէս իր երկպառակիչ դերին մէջ: Նորընծայ արքեպիսկոպոսը անշուշտ բախեցաւ

[22] Արիստակէս կաթողիկոս (1460) իր Կոնդակին մէջ կը յիշէ. Լով, Սեչով, Կամենէց, Սերաթ, Պօթիշան, Մանքերման եւ Պէլզա քաղաքները (Կամենից, էջ 225): Ի Պոթուշան հայկական եկեղեցի գոյութիւն ունէր 1350էն: Ջի յիշուիր Եաշը յանուանէ, ուր եկեղեցի մը կանգնուեցաւ 1395ին (Դան, անդ, էջ 7):

[23] Սիմէոն դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն. Վիեննա, 1936, էջ 347—348:

գժուարութեանց: «Ընդ աւուրսն ընդ այնոսիկ» Սիս կը հանդիպին երկու Լմոյցի տանուտէրներ՝ Ումէտ եւ Անպէտ: Թէոդորոսանունց ձեռքով թուղթ մը կ՚ուղարկէ Գրիգոր եպիսկոպոսին, խնդրելով որ Սիս գայ: Ան չլսելու կը զարնէ: Իր առաջարկը միւսանգամ կը կրկնէ կաթողիկոսը իր նուիրակին միջոցով. Գրիգոր եւ ոչ իսկ կ՚ընդունի նուիրակը:

Այս նուիրակն էր հաւանօրէն Ներսէս տաւղ սարկաւագ, որ կը տանէր իր հետ կաթողիկոսին 1383, ապրիլ 2ին գրած Կոնդակը: Այս Կոնդակը ուղղուած էր «ի մայրաքաղաքն Լոռի եւ յամենայն վիճակն իւր՝ ի Լուցկայն, ի Մանքրմանն եւ ի բնակիչքն իւր»: Հաստատագիր մըն էր ան Յովհաննէս արքեպիսկոպոսի վերահաստատութեան: «Իմացաք, կը գրէ կաթողիկոսը, զի մեր նախնին ի Քրիստոս հանգուցեալն Տէր Կոստանդին ձեռնադրեալ էր զպարոն Նասրադինին որդին զՏէր Յոհաննէսն՝ եպիսկոպոս Լոռւոյ, Լուցկային եւ Մանքրմնոյ, եւ պարգեւեալ էր ձեզ զամենեսեան Տէր Յոհաննէսով ժողովուրդ սեփական եւ չուրջաբերականաւ հաստատեալ: Իսկ մեք իբրեւ ստուգիւ իմացաք որ այնպէս յոյժ սիրով էր ընկալ(եալ) մեր Նախնին զՏէր Յոհաննէսն, նա եւ մեք կարի յոյժ պատուեցաք զհրամանս մեր նախնոյն Տէր Կոստանդնոյ իբրեւ զառաջին սուրբ հարցն, եւ ծանեաք զի արժան էր Տէր Յոհաննէս, որոյ զշնորհս զոյս առնէաք նմա...:

Եւ մեք իսկ մերով հոգեւորական բարձր հրամանովս վերստին հաստատեցաք զսիրելի եւ զհաւատարիմ որդիս զՏէր Յոհանէս ձեզ եպիսկոպոս եւ հոգեւոր առաջնորդ. եւ որպէս էր յայնժամ, սոյնպէս եւ այժմն եղիցի: Եւ մերով հայրապետական բարձր հրամանովս դա Տէր Յոհանէսս է ձեզ դատիմի եպիսկոպոս սեփհական, եւ ոչ այլ ոք: Վասն որոյ դուք ամենեքեան զպարծանաց եւ զսիրեցեալ որդիս մեր զՏէր Յոհանէսս այնպէս կալջիք, որպէս թէ եկեալ առ մեզ եւ աւգնականութեամբն Աստուծոյ նոր եկեալ առ ձեզ... զաստուածապատիւ եւ զառաքելաշնորհ արքեպիսկոպոսդ ձեր զՏէր Յոհանէսդ մեծաւ պատուով եւ յոյժ սիրով ընկալարուք... եւ մի ոք իշխեսցէ հակառակիլ սմա կամ հրամանիս մեր, եւ արգելցէ յիրաւանց տալոյ կամ խոբեսցէ կամ յայլազգիք անկանի եւ ոժ հասուցանէ Տէր Յոհանէսիդ..: Վասն որոյ ի մտանել դորա եւ գրաւորական օրհնութեան հրամանիս մերոյ առ ձեզ եւ սուրբ մեռոնիս ի ձեռն Ներսէս աւագ սարկաւագիդ եւ նուիրակիդ մերոյ, իջցէ եւ շնորհ ողորմութեանն Աստուծոյ» (Կամենից, 217—220):

Գրիգոր եպիսկոպոսի անունը չի յիշուիր, բայց կան տողեր, որոնք անոր կը հային:

Կաթողիկոսին երկրորդ նուիրակը ուղարկուած Գրիգորին, կը սպանուի, ինչպէս

կը համբուրէ, եպիսկոպոսին սադրանքով: Կ'ուղարկուի այս անգամ Վարդան երէց իբրեւ նուիրակ, «եւ կոչեցանք զինքն առ մեզ»: «Եւ մինչ մեր նուիրակն ի յառ ձեզ էր, կը գրէ Թէոդորոս կաթողիկոս, նա եկն Տէր Յոհանէս (ի Սիս) եւ կու գնայր յԵրուսաղէմ. եւ մեք հրամայեցաք, թէ Յորժամ դարձցիս յԵրուսաղէմայ, նա առ մեզ եկ, զի գրել եմք որ այն ասացեալ Գրիգորն գայցէ, որ ձեզ դատաստան առնեմք: Իսկ Տէր Յոհանէս դարձաւ յԵրուսաղէմայ եւ եկն առ մեզ. եւ յամեցաւ բազում ժամանակ ի մեր Դուռս. մինչեւ եհաս առ մեզ մեր նուիրակին գիրն, թէ ... ինքն (Գրիգոր) չէ ի գալ»: Ասոր վրայ, կը գրէ կաթողիկոսը, «ըստ արժանեաց խրոց պատժեցաք զինքն եւ վերստին հաստատեցաք զՏէր Յոհանէսդ ձեզ եպիսկոպոս... եւ պարգեւեցաք զԼովն իւր վիճակովն եւ զԼուցկայն եւ զայլ ամենայն թեմն զոր ի վերոյ յիշեալ եմք, Տէր Յոհանէսիդ թեմ եւ վիճակ, աթոռ եւ հանգստեան տեղի. եւ տուաքեցաք (զգա) գրաւորական օրհնութեամբս մերով»: Այս կոնդակը ստորագրուած է 18 օգոստոս 1388 (Կամենից, էջ 9—13):

Յովհաննէս արքեպիսկոպոսի այս ուխտազնացութեան մասին այլուստ յիշատակութիւն չունինք: Տեղի ունեցած է 1388ի առաջին կէսին:

Կ'երեւայ թէ Յովհաննէս կարգուած է կաթողիկոսին կողմէ «երեսփոխան» արեւմըտեան կողման, ոչ միայն Ռուսաց եւ Վլախաց աշխարհներու, այլ եւ Բիւզանդիոնի հայ գաղթականութեանց: Վասն զի 1389ին Ղալաթիայի Ս. Լուսաւորիչ Եկեղեցւոյ օրհնութեան Գրին մէջ կ'ըսուի. «ի հայրապետութեան Տեառն Թէոդորոսի եւ երեսփոխանութեան Տէր Յովհաննէսի արքեպիսկոպոսի ամենայն Ռուսաց եւ Վլախաց աշխարհի եղեւ սկիզբն շինութեան Ս. Լուսաւորչին ի Ղալաթիա[24]»: Յովհաննէս վերադարձին հանդիպած ըլլալու է Եկեղեցւոյ հիմնարկէքին կամ նաւակատեաց: Թերեւս իրմէ իսկ շարադրուած ըլլայ նոյն Օրհնութեան գիրը:

8. Յովհաննէս արքեպիսկոպոս երրորդ անգամ կ'այցելէ Սիս 1409ին ընկերակցութեամբ իր եղբօր (Աւագ-) Գրիգոր աբեղայի: Եկած էր դարձեալ իբրեւ ուխտաւոր Երուսաղէմի: Այս առիթով գրեց Յակոբ Գ. կաթողիկոս իր Կոնդակն առ ազգայինս Ռուսաց եւ Վլախաց աշխարհներու, ստորագրուած 26 յունիս 1409: Այս շրջաբերականս ալ հաստատագիր է, որով կը յանձնարարէ հաւատացեալները հպատակ մնալ իրենց առաջնորդին: Կը գրէ ի մէջ այլոց. «Եւ այլ ծանիք, մեր ըստ հոգւոյ Որդիք, զոր երեկ առ մեզ մեր սիրեցեալ եւ պարծանաց որդիս պատուելի եպիսկոպոս ձեր Տէր Յոհաննէս Լո-

---

[24] Հանդ. Ամս. 1946, էջ 116:

վիղ ի յողջոյն եւ ի համբոյր սուրբ Աթոռոյս եւ ի շնորհաւորել զմեր նստիլս ի սուրբ աթոռս: Եւ մեք սիրով ընկալաք եւ հարկեւորեցաք: Եւ եկաց բազում աւուրս մի առ մեզ: Եւ ուղարկեցաք զՏէր Յոհաննէս արքեպիսկոպոս ձեր եւ զիւր եղբայրն զԳրիգոր աբեղայն, որ գնացին Աստուծոյ առաջնորդութեամբն զերկայնաձիգ ճանապարհն բազում աշխատանօք ի յաստուածաբնակ մայրաքաղաքն ի յԵրուսաղէմ, ի տեսութիւն սուրբ Յարութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. եւ կատարեցին զիւրեանց ուխտն: Եւ դարձեալ Տէր Յոհաննէս արքեպիսկոպոս յԵրուսաղէմայ եւ իւր եղբայրն Գրիգոր աբեղայն եւ եկին առ մեզ: Նա եւս առաւել զինք եւ զիւր եղբայրն սիրով ընկալաք եւ հարկեւորեցաք. զի վայել էր Տէր Յոհաննէսի պատուելի արքեպիսկոպոսիդ ձեր եւ իւր եղբօրն զինչ որ սէր առնէաք զոցա: Զի մեր նախնեացն սիրած է եւ հարկեւորած, եւ բարեկամ սուրբ Աթոռոյս եւ հրամանակատար որդի է: Աստուծով եւ մեք հաճոյացաք ի բարիոք վարս եւ իմաստութիւնս սորա, որ է սուրբ եւ աղօթարար, կարգապահ եւ առաքինի եպիսկոպոս է եւ առատաձեռն: Նա որպէս մեր նախնիք՝ Տէր Թէոդորոս եւ Տէր Կարապետ (կարդա՝ Կոստանդին) կաթողիկոսն պարգեւել էին զձեզ իւր թեմ եւ վիճակ, ըստ նմին օրինակի նոյնպէս եւ մեք պարգեւեցաք

մեր բարձր հրամանովս՝ եւ օրհնութեամբ գրովս՝ զկոչն իւր բոլորովին երկրով՝ Տէր Յոհաննէսի զաւխմի սեփական թեմ եւ վիճակ, աթոռ եւ հանգստեան տեղի, ի վերայ ան սահմանին զոր առաջին սուրբ եւ երջանիկ կաթողիկոսքն են հաստատել. որ ոչ ոք կարէ խոբել ի Լոռին երկրին թեմէն» (Կամենից, էջ 222):

Թէոդորոս կաթողիկոս սպանուեցաւ 1392ին. յաջորդեց Կարապետ կաթողիկոս (1392—1406 սեպտ.°), ապա Յակոբ Գ. (1406 նոյեմբ. 1—1414°):

Այս տեղ կը կորսնցնենք Յովհաննէս արքեպիսկոպոսի հետքը պատմութեան մէջ:

Պատմական տուեալներու վրայ յեցած այս կենսագրականը կը հերքէ.

1. Յովհաննէս արքեպիսկոպոսի մը գոյութիւնը 1365ին:

2. Սխալ է, թէ 1383ին Թէոդորոս կաթողիկոս «ձեռնադրէ եւ խաւրէ նոր եպիսկոպոս՝ զՏէր Յովհաննէս որդի Պր. Նաւրադնի» (Կամենից, էջ 4):

3. Յովհաննէս ձեռնադրուած է ոչ 1379ին (Կամենից, էջ Է) այլ 1380ին:

4. Գրիգոր Բ. եղբայր Յովհաննու արքեպիսկոպոս 1409ին (Կամենից էջ Է) գոյութիւն չունի:

5. Աւետիք երրորդ արքեպիսկոպոսն է Լվովի աթոռին վրայ: Հ. Ալիշան անոր ա-

ռաջին տարին կը նշանակէ 1415[25]: Պատմական յիշատակարաններու մէջ ան կը յիշուի 1445ին եւ 1459ին (Կամենից, էջ 116, 134): Եթէ հաւանականութիւն կայ, թէ Աւետիք ձեռնադրուած է 1415ին, այս թուականը կարելի է համարել միաժամանակ Յովհաննու մահուան տարին:

6. Անճիշդ են ինչ որ կը գրէ Յովհաննէս արքեպիսկոպոս մասին Մկրտիչ եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի. Երուսաղէմ 1929, էջ 353:

---

25 Թէպէտ Հ. Ալիշան ըստ սովորութեան չի յիշեր աղբիւրը, բայց նա այս թուականը առած ըլլալու է Դ. Դանի «Արեւելեան Հայք ի Բուկովինա» գործէն, զոր թարգմանած է Հ. Գ. Գալէմքեարեան, Վիեննա 1891, էջ 6. կը գրէ. «Աւետիք անուամբ եպիսկոպոս մը Պոդոլսկի–Կամենեցի եւ Մոլդաւիոյ Հայոց կ'առաջնորդէր 1415—1445»: Հոս Դ. Դանի աղբիւրն է Sadok-Barącz, Zywoty sławnych Ormian w Polsce, Lwów, 1856, էջ 55. Հմմտ. նաեւ նոյն հեղինակի Rys dziejów Ormiańskich, Tarnopol, 1869, էջ 107—108:

## ԼԴ.

# ԳԻՐ ՕՐՀՆՈՒԹԵԱՆ

### ԱՌԹԻՒ ՂԱԼԱԹԻԱՑԻ Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ

(1389)

# ԼԴ.

## ԳԻՐ ՕՐՀՆՈՒԹԵԱՆ

### ԱՌԹԻՒ ՂԱԼԱԹԻԱՅԻ Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ

### (1389)

*Այս Օրհնութեան գիրը երեւան հանեցի Նիկոսիայի Հայոց Եկեղեցւոյ Առաջնորդարանին մէջ պահուած Թ. 55 ժողովածոյ ձեռագրին մէջ, թղ. 198ա—200ա, իբր ԺԴ. դարէ: Գրուածքս ձեռագրին մէջ խորագիր չունէր:*

*Տրուած է Օրհնութեան գիրս 1389ին, Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյն շինութենէն ետքը, յայտնելու համար շնորհակալութիւն մասնաւորապէս այն ամէն մեծ եւ փոքր վաճառականներու եւ ընդհանրապէս ժողովուրդին, որոնք նպաստամատոյց եղած են նուէրներով Եկեղեցւոյ շինութեան: Դժբախտաբար գիրս գրողին ստորագրութիւնը չէ պահած, Եկեղեցւոյ այն առաջնորդին, որ հանած է շրջաբերականս:*

*Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ շինութեան շուրջը կային հրապարակի վրայ անապանակոյն ժամանակներէ այլ եւ այլ իրար հակասող յիշատակագրութիւններ: Պիտի ներ—*

կայացնեմ զանոնք հոս, անոնց արժէքը միանգամ ընդ միշտ գնահատելու համար.

1. Բաբգէն Վ. Կիւլէսէրեան[1] հրատարակեց Արմաշի ձեռագրէ մը Եկեղեցւոյս շինութեան Հայոց յիշատակարանս, գրուած կամ օրինակուած 1769ին.

«Ի թուին Փրկչին 1391. ի հայրապետութեան Տեառն Թէոդորոսի, ոմն վաճառական Կոմ(ա)ս անուն Կաֆայէ եկեալ ի Կոստանդնուպոլիս, որ էր ընդ իշխանութեամբ Յունաց, հրաման առեալ շինելոյ եկեղեցւոյ մի ի Ղալաթիա, կոչելով զանունն Սուրբ Լուսաւորիչ: Եւ զմատուռ Ս. Խաչին Աւետ ոմն դարբին շինեաց»: Այս տողերը կը գտնուին նաեւ Անտոնեան Հայոց Մատենադարանի Թ. 229 ձեռագրին մէջ (այժմ ի Զմմառ): Ընթերցուածի տարբերութիւնք են. «Թիոդորոսի». «Կոմս» (փոխ. Կոմասի). աւեր (փոխ. Աւետ):

2. Ս. Լուսաւորիչ Եկեղեցւոյն ճակատին քանդակուած է Արձանագրութիւնս[2].

«Տաճար Աստուծոյ: Ի սկզբան կառուցաւ սուրբ տաճարս յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչի մերոյ ի հայրապետութեան Հայոց Տ. Թէոդորոսի սրբազան կաթուղիկոսի եւ ի պատրիարքութեան սրբոյ Երուսաղէմի Տ. Եսայեայ արքեպիսկոպոսի առաջնոյ,

---

[1] Կոլոտ Յովհաննէս պատրիարք. Վիեննա 1904, էջ 110:

[2] Կիւլէսէրեան, անդ, 124—125: Դկտ. Վ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպի, Բ. էջ 480:

գնեալ տեղիս սրբոյ տաճարիս ի ճենովաց-ւոց Կոմս անուն բարեպաշտ վաճառականի ուրումն Քէֆի քաղաքին Ղըրիմու, յամի Տեառն 1436»:

3. Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան († 1695) կը գրէ իր Ստամպօլոյ պատմութեան մէջ[3], Զ. տող 195—198.

Զեկեղեցի Լուսաւորչին ուխտեցուք զՀայոց
ափոփարան.
Զոր շինեն Կաֆայեցի պաղիրկանքն յա-
նուն[4] նախնական.
Որոց մասն ի լեհ անկեալ 'ւ ի Ստամպօլ
տեղացիք կոչման.
Թւին ութն հարիւր ութսուն հինգ, ըստ
Յունաց տիրապետութեան:

4. Հ. Ղ. Ինճիճեան[5], յայտնի չէ ինչ աղբիւրէ, կը հաղորդէ.

Ի Ղալաթիա «մի եկեղեցի է Հայոց, զոր նախ առաջին շինեաց Կոմս անուն վաճառական ոմն. որոյ եկեալ ի Քեֆէ քաղաքէն Գըրըմու ի Ստամպօլ ի 1391, ի կաթողիկոսութեան տեառն Թէոդորոսի, էառ տեղի ի ճէնովացւոց ի Ղալաթա քաղաքի, եւ անդ ի թուականին (1436) կառոյց զայս եկեղեցի

[3] Հրտ. Դկտ. Վ. Թորգոմեան, Վիեննա 1913, էջ 74: Հմմտ. նոյն, հատոր Բ. անդ, 1932, էջ 475—477:

[4] Թորգոմեան, Բ. 476 կ'ուղղէ «յանուն»ը «յԱնւոյ», ինչպէս ունին Երուսաղէմի եւ էջմիածնի օրինակները:

[5] Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, Հատոր Ե. Վենետիկ 1802, էջ 183:

յանուն սրբոյ Լուսաւորչի: Իսկ դարբին ումն Աւետ անուն կառոյց զեղզան սրբոյ Խաչին որ առ նովաւ»:

5. Սարգիս դպիր Սարաֆ Յովհաննէսեան այսպէս կ'ամփոփէ իր ձեռք բերած տեղեկութիւնները[6].

«Եւ առ Նմին է Եկեղեցին Հայոց յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին. զոր ստացեալ է ազգ մեր ի Թուականին Հայոց ՊՁԵ եւ յամի Տեառն 1436: Եւ շինեալ է զսա Կոմս անուն իշխան ումն եկեալ ի Կաֆա քաղաքէ ցամաքակղզւոյն Գրըմու, յորժամ էր քաղաքն Ղալաթա ընդ իշխանութեամբ Ճէնովացւոց: Զորոյ զմատուռն, որ յանուն Ս. Խաչին, շինեալ է դարբին ումն Աւետ: Եւ այս պատահեաց յայն ժամանակի մինչդեռ Կ. Պոլիս էր ի ձեռն Յունաց ԺԸ ամօք յառաջ քան զառումն նորին ի Տաճկաց»:

Կարեւոր յիշատակարան մ'է Արմաշի ձեռագրին աւանդածը, անկախ միւսներէն: Յիշատակագիրը քաղած ըլլալու է իր ծանօթութիւնները Եկեղեցւոյն ճակատը գտնուած արձանագրութենէ մը, եւ այս 1436էն յառաջ: Այն տեղ կարդացած ըլլալու է Կոզմս (Կոմս) անունը եւ «ի Թուին Փրկչին 1391», ինչպէս նաեւ դարբին Աւետի յիշատակութիւնը: Արձանագրութեան մէջ պէտք է եղած ըլլայ նաեւ Հայ տոմարին Թուա-

6 Դիտ. Վ. Թորգոմեան, Ստամպօլոյ Պատմութիւն, Բ. էջ 479:

կանը, զոր զանց առած է յիշատակել: Իր ձեռք բերած տեղեկութիւնները հարազատ աղբիւրէ են:

Արձանագրութիւնը չարագրողը ունեցած է աչքի առաջ հնագոյն արձանագրութիւնը, արդէն դժուարընթեռնլի. «Կոզմասը» ու արձանագրութեան մէջ հաւանօրէն փակագիր էր, ճշդիւ կարդացած է «Կոմս»: Թուականը կամ անընթեռնլի եղած է եւ կամ դիտմամբ դուրս ձգուած: Կը սպասուէր, որ «եւ ի պատրիարգութեան...» բառերէն յառաջ արձանագրուած ըլլար «եւ այժմ նորոգեցաւ». այսպէս միայն կրնար արդարանալ Եսայի արքեպիսկոպոսի յիշատակութիւնը 1436ին տեղի ունեցած նորոգութեան արձանագրութեան մէջ: Ճշդիւ Եսայի Ա. 1436 Կ. Պոլիս կը գտնուէր[7]:

Երեմիա Չէլէպի ծանօթ է 1436ի արձանագրութեան: Իսկ Ինճիճեան կ'երեւայ թէ ունէր ձեռքին թէ՛ Արմաշի ձեռագրին վերոյիշեալ հատուածն եւ թէ՛ 1436ի Արձանագրութեան պատճէնը. փորձած է այս երկուքէն խառնուրդ մը կազմել: Սարաֆ Յովհաննէսեան հիմնուած է Արձանագրութեան

---

[7] Եսայի Ա. պատրիարք աթոռակիցն էր Մարտիրոս պատրիարքին: Իրմէ յառաջ ուրիշ Եսայի պատրիարք չէ եղած Երուսաղէմ, գոնէ յանուանէ չէ յիշուած պատմութեան մէջ: Հմմտ. Հ. Ա. Պալճեան, Պատմութիւն կաթ. վարդապետութեան ի Հայս. Վիեննա 1878, էջ 80—90. Մկրտիչ եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի. Երուսաղէմ 1929, էջ 127—130:

վրայ. իր ծանօթութիւնը Աւետ դարբինի շինած մատուռի մասին քաղած է վերոյիշեալ յիշատակարանէն:

Ս. Լուսաւորիչ Եկեղեցւոյ շինութեան ճիշդ թուականը պահած է մեզի Օրհնութեան գիրը. «Ի ծննդենէ կենարարին մարմնոյն՝ Քրիստոսի Աստուծոյ մերոյ 1391 ամին եւ ի Հայոց մեծաց թվին ՊԼԸ. ամի եւ ի հայրապետութեան տեառն Թէոդորոսի եւ երեսփոխանութեան տէր Յովհաննէսի ամենայն Ռուսաց եւ Վլախաց աշխարհի եղեւ սկիզբն շինութեան սրբոյ Լուսաւորչին ի Ղալաթիա, որ յանուն սուրբ Գրիգոր Հայոց մեծաց հայրապետի, ձեռնտու եւ աւժանդակ լինելով մերային սեռիս Հայոց վաճառականք: Որք եկեալ ի աստուածապահ քաղաքս ի Ղալաթիայս եւ տեսեալ զսուրբ աստուածաբնակ տաճարս որ յանուն սուրբ Լուսաւորչին շինեալ եւ շինելոց եւս է կաթուղիկէ եկեղեցի, նա մեծաւ փափագմամբ եւ քաջայորդոր յուսով եւ սիրով ձեռնտու աւգնական եղեն»:

Փրկչական թուականը 1391 Եւսեբիոս կեսարացւոյ ժամանակագրութեան համաձայն դրուած է, որ չեղելով ընկալեալ թուականէն (մուծուած Դիոնեսիոս Փոքրէն) Քրիստոսի ծնունդը ըստ ուղիղ հաշուին կը դնէ 2 տարի յառաջ[8]. ուստի 1391 նուազ 2

[8] Մարկոս գրիչ 1388ին գրած է իր յիշատակարանը «ի թուաբերութեանն ի ծննդենէն Քրիստոսի ըստ Հայոց հաշուի 1390 եւ ըստ Յունաց 1396. եւ

*կը ստանանք 1389, համապատասխան Հայոց ՊԼԸ տարւոյն, որ է 1389: Այս 1391 տարին պահած է անփոփոխ Արմաշի ձեռագիրը: Թէոդորոս Բ. կաթողիկոս գահակալած է 1381 Յունուար 1էն մինչեւ 1393: Իսկ Յովհաննէս կաթողիկոսական երեսփոխան կարգուեցաւ նոյն 1389 թուին: Օրհնութեան գիրս, որ ուղղուած է բոլոր բարերար հաւատացեալներու, զգուշացած է, ինչպէս կ'երեւայ, մասնաւորներն յանուանէ անուանել. այս պատճառաւ չէ յիշուած մեծ բարերար Կոմս վաճառականը: Եկեղեցին, որ ի հիմանց նոր շինուած է, կ'ենթադրէ տեղւոյն վրայ համանուն տաճար մը, որ քանդուած է:*

*Կը ներկայացնեմ ընթերցողներուս Օրհնութեան գիրս ամբողջութեամբ, ուղղելով աչքի զարնող աղաւաղումներն եւ ուղղագրական խոտորումները. բնագրին ընթերցուածները նշանակած եմ ստորին լուսանցքի վրայ:*

---

ըստ Փռանգաց 1388. *եւ ըստ Ասորւոց ՌՅՀԺԱ* (!). *եւ* աբեթական տումարիս Հայոց *ՊԼԷ»* (1388), *ի փետրուար ամսոյ ԻԹ նաւահանջի ամի»* (*Ձեռ. Երեւանի, Թ.* 59):

# ԳԻՐ ՕՐՀՆՈՒԹԵԱՆ

ԱՌԹԻՒ ՇԻՆՈՒԹԵԱՆ Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ
Ի Կ. ՊՈԼԻՍ (1389)

*Աւէ ումն յառաջին աստուածաբանիցն, եթէ «զաստուածային բանս ի յԱստուած վստահանալ պարտ է եւ զմարդկայինս ի մարդիկ», մանաւանդ թէ զմարդկային բան եւ գործ ըստ այսմ աւրինակի վստահանալով յԱստուած եւ ամենայն սրբոց նորա հիմն սրբոյ տաճարին, վասն զի աստուածային է եւ յաղագս Աստուծոյ:*

*Ի ծննդենէ կենարարին մարմնոյն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ՌԳՃՂԱ* (1391) *ամին եւ ի Հայոց մեծաց թվին ՊԼԸ* (1389) *ամի եւ ի հայրապետութեան Տեառն Թէոդորոսի եւ երեսփոխանութեան տէր Յովհաննէսի արքեպիսկոպոսի ամենայն Ուռուսաց եւ Վլախաց աշխարհի, եղեւ սկիզբն շինութեան սրբոյ Լուսաւորչին ի Ղալաթիա, որ յանուն սուրբ Գրիգոր Հայոց մեծաց հայրապետի, ձեռնատու եւ աւժանդակ լինելով մերային սեռիս Հայոց վաճառականաց աստուածապահ քաղաքին Կաֆային եւ այլոց աշխարհականաց եւ քաղաքաց եւս վաճառականք: Որք եկեալ ի յաստուածա-*

ՁԵՌԱԳՐԻՆ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՆԵՐԸ

1 *տո. աստուածայբանիցն*: — 2 *աստուած*: — 6 *աստուած*: — 8 *աղագս*: — 12 *հայրայապետութեան*: — 13 *իրեցփոխանութեան*: *Յովանէսի*: — 16 *ղալաթիայ*: — 17 *անուն*: — 18 *ձեռնայտու*: — 19 *վաճառայկանաց*: — 20 *աստուածայպահ*: — 21 *աշխարհայկանաց*: — 22 *ի աստուածապահ*: — 24 *աստուածայրնակ. ա-*

պահ քաղաքս ի Ղալաթիայս եւ տեսեալ զսուրբ աստուածարնակ տաճարս որ յանուն սուրբ Լուսաւորչին շինեալ եւ շինելոց ես է կաթողիկէ եկեղեցի. նա մեծաւ փափաքմամբ եւ քաջայորդոր յուսով եւ սիրով ձեռնտու աւգնական եղեն:

Նա արարիչն Աստուած Հայրն ամենակալ, Որդին միածին եւ սուրբ Հոգին ճշմարիտ աւրհնեսցէ զնոսա, հաստատեսցէ նոցա փոխարէն իւր միւսանգամ գալստեան բիւրապատիկ եւ հազարապատիկ եւ հարիւրապատիկ: Այլ եւ իշխանն ամենայնի Քրիստոս եւ իշխանարարն ամենայն իշխանաց աւրհնեսցէ զբարեպաշտ Կումին[9] այս քաղաքիս բոլոր պուրքեսնով[10] եւ ամենայն զաւրաւք հնազանդեցելովք. աջն անեղին եւ բազուկն անմահ հզաւրին հովանի եւ պահապան լիցի նոցա. եւ եղիցի նոցա պարիսպ շուրջանակի հրեղինացն խմբիւ եւ ամենահայեաց աչքն Աստուծոյ հանապազ

նուն: — 26 կաթուղիկէ: նայ: — 27 քաջայ յորդոր: — 28 եղեւ: — 29 նայ: ամենայկալ: — 32 բիւրայպատիկ: — 33 հազարայպատիկ: հարիւրայպատիկ:
40 պահայպան: — 42 ամենայհայեաց: — 44 քա–

---

[9] Կ'ակնարկէ հաւանօրէն Բիւզանդիոնի կայսրը Յովհաննէս Ե. Կանտակուզենոս (1379—1391). «Կումի» ինձ անծանօթ բառ:

[10] Բառս «պուրքեսնով» կ'ենթադրէ պուրճես–ճի յոգ... ուղղականը, համազօրն է լատ. burgenses իտալ. borgese, Ֆր. bourgeois միջ. հայ. պուրճէս «քաղաքացի» (հմմտ. Աճառեան, Արմատ. Բառարան, Ե, 1137): Առաջին անգամ այստեղ գործածուած պուրճէս ձեւը:

տեսանէ զնոսա քաղցրութեամբ. այլ եւ քաղաքըն եւ գեղեանք որ ընդ ձեռամբ նոցա են, ամենայն խոովութիւնք բարձցին եւ խաղաղութիւն հաստատեսցի յայս քաղաքս. եւ ամենայն ուրախութիւն տնկեսցի ի սա: Այլ եւ ինքն որ գլուխ է եկեղեցեաց՝ Քրիստոս Աստուած եւ վասն անեզրական բարերարութեան եւ արարչական գթութեան հաստատեաց զեկեղեցի ի վերայ առաքելական եւ մարգարէական վիմի. ոչ որպէս զշինուածն հրէական զխուրաքակ եւ վաղափուլ, զոր եւ ինքն Տէրն ամբաստանէ սրբովք մարգարէիւք, այլ որպէս վայելէ աստուածարկու հիման եւ անձեռագործ տաճարի ըստ մարգարէութեան աստուածահաւր մարգարէին Դաւթի, թէ «Աստուած հիմունս արկ նմա յաւիտեան[11]». եւ թէ «Տէր ով կացցէ ի խորանի քում[12]»:

Նոյն ինքն Աստուած բանն պահեսցէ զայս եկեղեցի, որ յանուն սուրբ Լուսաւորչի շինեցաւ, եւ տացէ սմա շինութիւն եւ յանկ ելանել որպէս զսուրբ Կաթուղիկէ եկեղեցի: Երգ երգեցողաց, ձայն պաղատանաց, բուրումն խնկոյ, լուցումն լապտե-

զաքն եւ գեղեակք: ընդ չիf: — 45 բարձին: — 46 հաստատեսցին: այս: — 47 տնկեսցին: — 49 անեզրայկան: — 50 արարչայկան: — 53 զխուրայքակ: — 54 վաղայփուլ: — 56 անձեռայգործ: — 59 նմայ: — 60 կացէ: — 62 անուն: — 63 սմայ: — 64 անկ: — 65 կաթուղիկէ: — 68 վարդապետաց: —

[11] Սղմ. ԽԷ. 9:
[12] Սղմ. ԺԴ. 1:

րաց եւ ջահից, նուէրք աղաւթից եւ պատարագաց եւ քարոզութիւնք վարդապետաց ի դրանէ սորա մի պակասեսցին մինչեւ ի գալուստն կենարար Բանին Աստուծոյ։ Այլ եւ որք սպասաւորեն սմա՝ քահանայք, սարկաւագունք եւ կղերիկոսք եւ ժամահարք եւ այլ ամենայն ժողովուրդք զոր այս եկեղեցւոյ աղաւթք եւ երկրպագութիւնս մատուցանէ եւ ողորմութիւն՝ վարձս բարեաց ընկալցի նա։

Այլ սրբասէր քահանայք եւ քրիստոսասէր եւ բարեպաշտ տանուտէրք եւ վաճառականք եւ ձեռնահմուտ արուեստաւորք, արք եւ կանայք, ծերք եւ տղայք, երիտասարդք եւ կուսանք, որք եղեն պատճառ շինութեան այսմ սուրբ Եկեղեցւոյ. եւ աւգնական են լեալ եւ որ լինելոց են առաջինք, միջինք, վերջինք, որ ոք դրամով եւ որք զգեստիւ եւ այլք զրաւք. որ ոք տուեալ են եւ որ ոք տալոց են, այս կեանքս հարիւրապատիկ առցեն զվարձս հոգեւոր եւ մարմնաւոր. եւ ի հանդերձեալ աշխարհին զհազարապատիկ եւ զբիւրապատիկս առցեն ընդ սուրբս ամենայն. եւ լսեն ի Տեառնէ զերանաւէտ բարբառն որ ասէ. Եկայք

69 պակասեսցի։ — 71 ըսպասաւորեն սմայ։ — 73 ժամայհարք։ — 74 եկեղեցոյ։

75 մատուցանեմ։ — 77 սրբայսէր. քրիստոսայսէր։ — 79 ձեռնայհմուտ արուեստայորք։ — 82 յայսմ։ եկեղեցոյ։ — 87 հարիւրայպատիկ. հոգէոր եւ մարմնայոր։ — 89 զհազարայպատիկ եւ զբիւրայպատիկս։ — 91 բառբառն։ — 92 բարձէ։ — 93 տա–

աւրհնեալք Հօր իմոյ[13]. եւ բարձցէ ի նոցանէ զամենայն ցասումն եւ զտարաժամ մահն, տացէ նոցա շինութիւն անդորրութիւն եւ խաղաղութիւն եւ ամենայն բարեաց լիութիւն եւ առատութիւն. եւ ամենայն ճանապարհս ուր եւ երթայցեն, յաջողեսցէ նոցա, ի նստել ի տան, ի գնալ ի ճանապարհի, ի ննջել եւ ի յառնել, զի մի երբեք սասանեսցին, այլ եւ ննջեցեալքն՝ քահանայք եւ ժողովրդականք, որ ողորմութիւն են արարեալ սուրբ Եկեղեցւոյս, եւ ընդ հովանեաւ սորա հանգուցեալ կան, Հոգին Աստուած հանգիցէ ի հոգիս նոցա, ցաւղն ողորմութեան վերացուղեսցէ ի վերայ տառացեալ մարմինս (!) նոցա առ ի բուսուցանել յաւուրն վերջին. եւ կատարումն աղաւթից եւ վերընծայութիւն աստուածային անծախելի պատարագաց եղիցի հաշտութիւն նոցա առաջի երկնաւոր Հաւրն Աստուծոյ մերոյ եւ նմա փառք յաւիտեանս. ամէն: Եւ վերոյիշեալք ամենայն աւրհնութեանց արժանանաւորք քահանայք եւ ժողովուրդք, երխտասարդք սուրբ եկեղեցւոյս այսորիկ:

բայժամ: — 99 առնել: — 102 եկեղեցոյս: — 104 զհոգին: — 110 երկնայոր: — 112 վերոյ յիշեալք: — 113 արժանայորք:

---

[13] Մատթ. Իե. 34:

# ԼԵ.

# Կ. ՊՈԼՍՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

## ՄԱՐՏԻՐՈՍ ԵՒ ՅՈՎԱԿԻՄ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐ

*Հ. Մ. Ճամչեան, Պատմութիւն Հայոց, Գ. 500, հետեւելով մեզի անծանօթ աղբիւրի մը, կը պատմէ թէ Մուհամմետ սուլթան ի Պրուսա պատահելով Հայոց Յովակիմ եպիսկոպոսի, կը խոստանայ թէ ինքը երբ նուաճէ Կոստանդնուպոլիսը, Հայերու առաջնորդութիւնը պիտի յանձնէ անոր։ 1453ին տէր կ՚ըլլայ սուլթանը Կ. Պոլսոյ. եւ ըստ խոստման ՋԺ (1461) թուին «զՅովակիմ եպիսկոպոս արքունի նամակաւ կացուցեալ առաջնորդ՝ կոչեաց զնա փաթրիկ, այսինքն պատրիարք, տուեալ նմա իշխանութիւն տիրելոյ ի վերայ Հայոց եղելոց ի Յունաստան եւ յԱնատոլիա»։*

*Ո՞վ էր Յովակիմ եպիսկոպոս։ Իր մասին ունինք հետեւեալ Յիշատակարանները։*

ա. *Բասիլէայի Սինհոդոսին Հայրք 1433ին հրաւիրանաց թուղթ մը կ՚ուղարկեն Կ. Պոլիս գտնուող Յովհաննէս եւ Եսայի հայ արքեպիսկոպոսներու։ Թուղթին կը պատասխանէ Յովհաննէս եպիսկոպոսը։ Այս նամակը*

պահուած է մեզի միայն լատիներէն թարգմանութեամբ[1]: Հոս կ'ըսուի. «Տեսջիք Հարք, զի մեք, Յովհաննէս եպիսկոպոս՝ կարգեալ ի Կաթողիկոսէ մերմէ ամենայն Հայոց ի կողմանս Կոստանդինուպոլսի, եւ Եսայի եպիսկոպոս ի նմին քաղաքի եղեալ ի հոգաբարձութիւն եկեղեցւոյ Հայոց...»: Եւգենիոս Դ. քահանայապետը հրաւիրանաց թուղթ մը կը գրէ Սիսի կաթողիկոսին. որուն կը պատասխանէ Եսայի եպիսկոպոս 1434ին, ստորագրած «Եսայիաս Երուսաղէմի» (Պալճեան, 80—85): 1438, յուլիս 25ին Կոստանդին Վահկացի կաթողիկոս կը գրէ թուղթ մը Թէոդոսիայի Սարգիս վարդապետին եւ ժողովուրդին եւ կղերիկոսներուն, եւ կը յայտարարէ. «Ես իմով լի եւ կատարեալ ճոխութեամբ ետու իշխանութիւն Սարգիս վարդապետի, որ է եւ եղիցի փոխանակ անձին իմոյ, ընդ նմին եւ Մարկոսի եւ Թովմայի վարդապետաց եւ Յովակիմայ եպիսկոպոսի Բերիայ (լատ. Perae), զի երթիցեն ի ժողովն» (Պալճեան, 88, 89): Հայ դեսպանութիւնը գնաց Փլորենտիա, ուր փոխադրուած էր Սինհոդոսը. անոնք հոն էին դեռ 1439, նոյեմբեր 22: Թէ Յովհաննէս եպիսկոպոս անոնց թուին մէջ էր, մասնաւորապէս չի յիշուիր:

---

[1] Աղեքսանդր Վ. Պալճեան, Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս, Վիեննա 1878, էջ 31 եւ շար.: A. Bolgy, Historic doctrinae catholicae inter Armenos, Viennae 1876, p. 88 ss.

Թղթերուս հայերէն բնագիրները չեն պահուած. լատիներէնի թարգմանիչը արաբախօս հայերէնագէտ մ'եղած կ'երեւայ, որ Սարգիս Sergis, Մարկոս Marchos,, Յովակիմ Joakim եւ վարդապետ vertebet տառադարձած է: Այսպէս նաեւ Բերա[2] կամ Բերիա տառադարձուած է Pera (սեռ. Perae): Պալճեան թարգմանած է ճշգիւ «Բերիա» այն է Հալէպ: Ինչպէս Եսայի եպիսկոպոս իր անուան կից ստորագրած է «Երուսաղէմի», այսինքն եպիսկոպոս Երուսաղէմի, նոյնպէս Յովակիմ ձեռնադրուած Հալէպի թեմի վրայ՝ կը գործէր պաշտօնով Կ. Պոլիս: Ուստի սխալ է Perae անուան տակ Փերա (Կ. Պոլսոյ) թաղամասն իմանալ[3]: Ինչպէս յետագայ Յիշատակարաններէն պիտի տեսնուի, Յովակիմ իր գործունէութեան ասպարէզի վրայ կը նկատուէր (արք)եպիսկոպոս Կ. Պոլսոյ:

Փլորենտեան ժողովին ուղարկուած հայ պատգամաւորներուն հետ կային ուրիշ կցորդներ ալ, որոնք չէին յիշուած Կոստանդին կաթողիկոսի Թղթին մէջ, այսպէս «Ներսէս ի Հայոց» (Պալճ. 134): Եւգինիոս Դ.ի համ-

---

[2] Բերիա, յն. Βέροια, Ասորւոց Հալպ, Հալէպ քաղաքին անունն է յոյն մատենագիրներու քով, զոր նաեւ Հայերը սիրած են գործածել՝ Բերիա, Բերա, Իբերիա, Եվերիա, Տիբերիա ուղղագրութեամբ եւ սխալագրութեամբ (տես Սիւրմէեան, Պատմութիւն Հալէպի Հայոց, Գ., էջ 26, 158, 181 216 եւն):

[3] Ա՛յսպէս ուղղելու է ինչ որ գրած եմ Հանդ. Ամս. 1935, էջ 38, ծան. 7. ուստի համաձայն Զամչեանի, Պալճեանի եւ Գալէմքեարեանի:

*բաւաւոր Թուղթին հայերէն թարգմանութեան տակ ստորագրած են միայն Սարգիս եւ Թովմաս վարդապետները, հաւանականօրէն իբրեւ Կոստանդին կաթողիկոսի յանուանէ ներկայացուցիչ դեսպաններ։*

բ. *«Գրեցաւ Գիրքս ձեռնադրութեան թվ. ՊՁԷ* (1438) *ի վայելումն արհիեպիսկոպոսին տէր Յովակիմին Կոստանդնուպաւլսի». գրիչն է Յակոբ Տրապիզոնցի աբեղայ (Հանդ. Ամս.* 1924, *էջ* 435—436)։

գ. *Քէօթահեայի Ս. Աստուածածին եկեղեցւոյ Յիշատակաց Մատեանին մէջ կ՚ըսուի թէ «հաստատեցաւ Յիշատակարանս այս ի թվին ՊՂԴ* (1445) *ամին ի հայրապետութեան պրն. Կարապետին եւ յեպիսկոպոսութեան տեառն Ովակիմայ եւ երեսփոխանութեան Յակոբին» (Հայաստանի Կոչնակ,* 1951, *էջ* 946)։

դ. *Ամիրտովլաթ Ամասիացի իր* Օգուտ բժշկութեան *բժշկարանը նոր խմբագրութեամբ լոյս ընծայեց* 1469 *դեկտեմբեր* 25*ին «ի կաթողիկոսութեան տէր Արիստակէսին եւ յեպիսկոպոսութեան տէր Յովակիմին» ի Փիլիպէ (էջ* 8 *տպ. Մալխասեան)*։

*Տեսանք, որ* 1433*ին կային Կոստանդնուպոլիս երկու եպիսկոպոսներ Յովհաննէս եւ Եսայի։ Առաջինը պաշտօն ունէր հովուել ի կողմանս Կ. Պոլսոյ գտնուող բոլոր Հայերը, իսկ Եսայի կարգուած էր Կ. Պոլսոյ Հայոց (Ս. Ստեփանո՞ս) եկեղեցւոյն հոգաբարձու։*

Այս երկու եպիսկոպոսները կ'երեւայ թէ ետ կանչուած են 1434էն ետքը եւ անոնց տեղ ուղարկուած՝ առաջնոյն փոխարէն Յովակիմ, եւ երկրորդին տեղ Մարտիրոս: Վերջինս կը յիշուի 1459ին իբրեւ «Հայրապետ», մինչ Յովակիմ կը շարունակէ իր «եպիսկոպոսութիւնը»:

Ամիրտովլաթ Ամասիացի իր Օգուտ Բժշկութեան բժշկարանին առաջին խմբագրութիւնը ի գլուխ կը հանէ այս տարւոյն, որուն կը կցէ Յիշատակարանս.

«Գրեցաւ Թագաւորական Բժշկարանս ի թուականութեանն Հայոց ՋԸ (1459) ամին, ի նոյեմբերի ամսուն ի .Գ. օրն շաբաթ[4]. եւ ի քաղաքին Կոստանդինուպաւլի եւ ի յառ յառն վանիցն սուրբ Ստեփաննոսի, եւ ի կաթուղիկոսութեանն Հայոց տէր Գրիգորոյ եւ ի հայրապետութեանն տէր Մարտիրոսին Կոստանդինուպաւլիս վիճակին եւ պարոնութեան Մուհամադ խանին եւ ի փայելումն պարոն Շահինպէկին[5] որդոյն պր. Վարդին... յիշեցէք... զանարժան գծողն զԱմիրտովլաթ բժիշկն Ամասիու» (Ամիրտովլաթ, Օգուտ բժշկութեան, Երեւան 1940, էջ ԻԳ—ԻԴ):

Յիշատակարանիս «ի հայրապետութեան» ասութիւնը կը թուի ինձ թէ իմանալու է «հայրապետ — պատրիարք — փաթրիկ»: Կը շեշտուի «Կոստանդինուպաւլիս վիճակին»:

---

[4] Ճիշդ՝ 1459 տարւոյ համար:

[5] «Շահիպէկ» կը փրկանաւորէ յայլազգեաց Աւետարան մը 1430ին. Արարատ 1910, էջ 537:

*Մարտիրոսի անունը առաջին եւ վերջին անգամ այստեղ կը յիշուի:*

*Եթէ հիմ ունի Զամչեանի «ՋԺ» տարին* (1461), *երբ Յովակիմ եպիսկոպոսի պատրիարք–փաթրիկ ընտրութիւնը կը նշանակուի, պիտի համարինք թէ Մարտիրոս* 1460/61*ին կամ հրաժարած է իր աթոռէն եւ կամ վախճանած: Նոյն Ամիրտովլաթ գարմանալի կերպով* 1469*ին, երբ կը յիշէ Յովակիմը, պարզապէս «յեպիսկոպոսութեան» կը գրէ, ասութիւն մը, որ կիրարկուած է նոյն անձին համար արդէն* 1445*ին:*

## ԼԶ.

# ԹԵԿԱՆՈՒՆԱԿԵՐՏ ԱԾԱՆՑՆԵՐ ՀԱՅԵՐԷՆԻ ՄԷՋ

Հարցում մը, ուղղուած ինձ Հայերէնագէտի մը կողմէ, յորդորեց զիս զբաղիլ խըն-դրոյս, որուն մասին, որչափ գիտեմ, ամփոփ գրուած մը լոյս չէ տեսած տակաւին:

1. Հին ազգերու քով անհատը կը զանազանուէր իր նմանէն անունով, հայրանունով, տոհմանունով, ցեղանունով եւ տեղանունով, ցանցառ անգամ մասնաւոր յորջորջումով: Այսպէս Վարդան էր հայ յազգէ, Մամիկոնեան ի տոհմէ, որդի Համազասպայ. Մաշտոց որդի Վարդանայ, Հացեկացի եւ այլն:

2. Հայրանունը յաճախ կը յիշուի սեռականով, զեղչմամբ «որդի» կամ «դուստր» բառին. այսպէս մասնաւորապէս Թարգմանական գրականութեան մէջ. օրինակներ. Դարեհ Վշտասպեայ, Աղեքսանդրոս Փիլիպպեայ, Լիանդրա Պողոմէի, Թեսաղոնիկէ Փիլիպպեայ, Յակոբոս Զեբեդեայ, Փաւստոս Բիւզանդեայ, Աղեքսանդր Մամեայ, եւ այլն, ուր յոյն բնագիրներու մէջ անուան կից կը տեսնուի ὁ τοῦ կամ պարզապէս τοῦ յօդը, որ կը յարաբերէ զեղչուած ὁ υἱός «որդի» բառը, որ պիտի տար հայերէնի մէջ

*Ա. Ա. որ (է որդի), ինչպէս կը գտնենք Ղուկ. Գ.* 23—38 *«որ Յակոբայն, որ Հեղեայն...»: Դասական հեղինակները սովոր են յունական յատուկ անուններու* –ոս, –իոս, –էոս, –էս, –է *վերջաւորութիւններու սեռականը հայացնելու* –եայ, *իսկ* –անտոս, –ոնտոս *սեռականաձեւերը*, –անդեայ, –ոնդեայ. *այսպէս Բիւզաս, Բիւզանտոս = Բիւզանդեայ, որ ուշադրութեան արժանի է հայրանուններու համար: Հայկական յատուկ անունները սովորաբար սեռականին մէջ ունին* –(ե)*այ, քիչ անգամ* –ի *եւ* –ու: *Այսպէս նաեւ հին պարսկերէնի մէջ* -iya, *աւեստ.* -i̯a *եւ նոր պարսկ.* -i, *վերջինը նաեւ ածականներու ածանց կը ծառայէր, ինչպէս նաեւ հայերէնի մէջ արծաթ–ի, երկաթ–ի, մեկուս–ի, բիւրասպ–ի, բայց նաեւ արծաթեայ, երկաթեայ, եւն:*

3. *Հայրանունական* ի –ան (–եան) *ածանցը, որ տեղ տեղ կիրարկուած է հայ մատենագրութեան մէջ յատկապէս իշխանական հայրանուններու կից, նոր պարսկերէնէ փոխառութիւն կ'երեւայ, որուն աւեստականն է* -ana, *եւ նոր պարսկ.* i-an. *այսպէս Արտաշիր ի Փափակ–ան, Խոսրով ի Կաւատ–ան. Վին ի Խոռ–եան, Ատրվշնասպ ի Տապ–եան, Ատրվշնասպ (ի) Յոդմանդ–եան (Փարպ.* 128, 118). Admet-i Mazatian (Justi, Iranisches Namenbuch, 201), *Ոստան ի Մարզպան–ան (Աշխարհացոյց,* 606): 554*ին Դուին գումարուած ժողովին մասնակից հայ իշխան–*

ները ստորագրած են իրենց հայրանունները (Գիրք Թղթոց, էջ 73—74).

Արտաւազդ ի Սահական,
Զաւրակ ի Գդաւնեան,
Սամուել ի Մամական,
Վարազ-Յոհան ի Յոհանեան,
Վրեւ յԱրտաշրան եւ այլն.

ուրիշներ՝

Դատոյ ի Գարջուղեան,
Վարդան ի Մուշեղեան,
Սահակ ի Հմայակեան (նաեւ՝ ի Հմայա-
կան) եւ այլն:

Աղուանից իշխանները 700ին առ Աբդլ-մելիք ամիրա թղթին տակ դրած են իրենց անունները (Պատմ. Աղուանից, Գ. 10).

Պատրիկ ի Բարդեան,
Պապ ի Հրահատեան,
Վահան ի Վարազ-Յոհանեան, եւ այլն:

4. Այս -ան ածանցը կը տեսնենք -ան-ք յոգնակի ձեւով նաեւ Մարեմանք (Յովհ. ԺԱ. 15. «որ եկեալ էին առ Մարեմանս», այսինքն առ Մարիամ եւ Մարթա), Վարդանանք, եւ այլ կազմութեանց մէջ, որ կը յիշեցնէ պարսկական յոգնակի կազմող -an ածանցը, զոր կը տեսնենք պարսկերէնէ փոխ առնուած պատուանուններու մէջ. Մովպետան Մովպետ

(Սերխոս, 27, այն է Մովպետաց Մովպետ), շահան շահ (արքայից արքայ) եւ այլն:

5. Հայրանունական -եան եւ -եանց ածանցները հայերէնի մէջ յատկապէս մականունակերտ ածանցներ կը նկատուին, գործածական այսօր ալ. ունինք հնութենէն Մամիկոնեան, Դիմաքսեան, Արեղեան, Ռոփսեան, Յովսեփեան տոհմանունները, եւ թարգմանական գրականութեան մէջ «ազգ, տոհմ, զաւակ Յակոբեան (Սաղմ., Մակաբ). Մատաթի Շմաւոնեան (Ա. Մակաբ. Բ. 1), Պաւղոսեան, Ապողոսեան, Կեփայեան, Քրիստոսեան (Ա. Կոր. Ա. 12, ուր յոյնն սեռական է), ազգ Փիղիպպեան (Եւս. Քրոն. Ա. 326) են: Ասկէ զարգացած է յոգնակի ձեւը. Յեսու Յովսեղեկեանց, Զորաբաբէլ Սաղաթիէլեանց, Ա. Յովսեփեանց (Ա. Եզր.): Այսպէս նաեւ Գրիգոր, Թորոս Սուքիասեանց (նաեւ -անց). գործածական նաեւ ԺԹ. դարուն, այժմ ցանցառ կիրարկուած:

6. -անց հաւանօրէն -ան-ք ածանցին յոգնակի սեռականն է, նմանութեամբ -եանցի. իսկ ծանօթ են. Աստուածատուր եպիսկոպոս Ովսանանց (ԺԴ. դար), Աւշին Աւգորմկանց (1312), Լեւոն Ապլհասանանց (1260), Հեթում Զօթկանց (1274), Սարգիս Սամուիլանց երէց (1252): Մարգար Փշրկանց (ԺԸ.): Այսպէս նաեւ Ստեփանոս Գոյներիցանց եւ Գ. Տուրքերիցանց (ԺԴ. դար) այժմ -երիցեան:

7. -ենց *կ'ենթադրէ* -եանց *ածանցին ու ձայնաւորին կորուստը. գործածական ստորին հայերէնի եւ ժողովրդական լեզուի մէջ. կը յիշեմ Ստեփաննոս* Երկաթենց (1321), *Ներսէս* Պալիենց, *Յովհ.* Քերովբենց, *Գր.* Ծերենց, *Յակոբ* Նետրարենց, *այսպէս նաեւ* Հոնենց, Բրգութենց, *նորագոյններէն՝* Չարենց:

8. -ոնց. *կ'ենթադրէ* -ենց *ածանցի ողումը* օ *ձայնաւորէն ետքը. օրինակներ. Հեթում «որ մականուն* Քաջկոնց *կոչի»* (1310), *Սարգիս* Մոզոնց (1369), *Թորոս* Թափրոնց († 1342), *Օշին* Պայլոնց († 1299), Պլծոնց *ածուք* (*Միսուան*, 541), *նորագոյններէն՝* Խաչկոնց, Ագոնց (°), Ադոնց *եւն:*

9. -ունց. *ինձ ծանօթ են այս ածանցով* Խունունց, Բակունց *մականունները:*

10. -եցի. *ածանցս նկատուած է առ հասարակ տեղանունական ածանց, ինչպէս* Կողբացի, Պաղնացի *եւն: Բայց երբեմն կու գայ ան նաեւ իբրեւ մականունակերտ ածանց. այսպէս Ստեփաննոս Վ.* Յակոբցի (*ԺԲ. դար*), *Կոստանդին քահանայ* Հեթումցի (1311), *Մատթէոս եպ.* Յովանիսցի (*Միսական*, 372): *Աւգոստինոս* Բաջենց *կոչուած նաեւ* Բաջեցի: *Յովհ. կաթողիկոս «էր ազգաւ* Հեթումցի» (*Սմբատ*, 115), *այս ինքն Հեթումեաններէ. Թորոս «մականուն* Գորգացի *կոչեցեալ»* (1217). *Կոստանդին* Հռէփսիմեցի

(1269) : Գրեցաւ (Տարակնոցս) ի ստոյգ օրինակէ որ կոչի Կոստընկցի» (1289), այս ինքն Կոստանդինեան : Գրիգոր Խուլ, որ ԺԴ. դարուն ծաղկած անուանի գրիչ մըն է, յետիններէն անուանուած է Խլկցի, այսինքն իր օրինակած Տարակնոցը կոչուած է Խլկցի=Խուլեան օրինակ) : Այսպէս նաեւ Յովհաննէս Մանահնեցի 1411ին օրինակած է Մանրուսմունք մը «յընտիր օրինակէ Կարապետցւոյ», այսինքն Կարապետ գրչի օրինակէն : Այս տեսակէտով ուշագրաւ են երեք տեղիք Աղեքսանդր Մեծի Պատմութեան մէջ, խմբագրութեամբ Խաչատուր Կեչառեցւոյ (1300ին). «Աղեքսանդրացիք, Դարեհացիք (էջ 58 եւ 103), ուր Վիեննայի ընտրելագոյն օրինակը, Թ. 947, որ հնագոյն բնագիրը կ'ընծայէ, կը կարդայ «Աղեքսանդրեանք» եւ «Դարեհեանք»

10. -ենց. այս ածանցը կ'ենթադրէ -ոնց ածանցը հետեւեալ տեղանուններու մէջ. Կոտնոց գիւղ (Սիսուան 208), Կոստանդնոց գիւղ (անդ 146) եւ Մոխսնոց վանք (անդ, 541). վերջինս յայտնապէս «Մովսիսեանց», «Մովսէսի հիմնած վանք» ձեւէն յառաջացած է, ինչպէս նաեւ «յԹոմանոսնոցս գրեցի» (1255) :

12. -ունի ածանցը յատուկ է նախարարական ինչ ինչ տուներու կամ տոհմերու, որոնք հնագոյն ծագում կ'ենթադրեն. կը յի-

*չեմ. Ամատունի, Արծրունի, Մանդակունի, Ռշտունի, Սիւնի են: Այս անունները կիրարկուեցան նորագոյներէ իբրեւ մականուն: Ուրիշներ այս* –ունի *ածանցը գործածեցին — զեղծումով — իբրեւ մականունակերտ ածանց: Այս համաճարակը սկիզբ առաւ մանաւանդ* 1857*էն ետքը, երբ լոյս տեսան Հ. Ղ. Ալիշանի Նուագները նորանշան խորագիրներով. Մանկունի, Մաղթունի, Հայրունի եւ Տիրունի:*

*Այս սկզբունքով ծնունդ առին այնուհետեւ Ակնունի, Արունի, Հայկունի, Հայունի, Մանկունի, Մարտունի, Զիթունի, Բաջունի եւ այլն եւ այլն կեղծանունները:*

13. –որդի, –ձագ: *Բնական հայրանուններ կարելի է համարել այն բարդութիւնները, որոնք կազմուած են այս բառերով. այսպէս Սահակ քահանայ* Դարբնորդի (949*ին. այժմ՝ Դարբինեան). Ստեփ.* Երիցորդի (1274) = *Երիցեան, Սամուէլ* Կոմսաձագ (*Ստ. Ասողիկ*, 244), *Յովհաննէս եպիսկոպոս «որ մականուն* Դանիէլձագ» (1314). *Ստեփաննոս* Տէր–Յուսկան–որդի (*ԺԳ. դար*), *այժմ Տէր–Յուսիկեան: Ուշ շրջանին երեւան եկան նաեւ* Սէփէր–օղլու, Համբարձում–օղլու *են:*

14. *Եկամուտ են* –եվ, –օֆ (–ով), –ովսկի, –ովիչ *եւն ածանցները, որոնք ռուսերէնէ եւ լեհերէնէ փոխառութիւններ են:*

15. *Տեղւոյս չեն հայիր այն փաստաքչական եւ նոյն կարգի յատկացուցիչները, որոնք տրուած են անձնանուններու, այսպէս Սա-հակ* Ձայնող, *Պետրոս* Երկաթի, *Յովսէփ* Կարին, *Ստեփանոս* Ասողնիկ, *Ստեփ.* Երկայն, *Յովհ.* Արջուկ, *Թորոս* Ռօսլին (1262), *Սա.* Նատեր *եւ նմաններ* :

# ԱՆՈՒԱՆԱՑԱՆԿ

# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼԼԻՔ

էջ 164, *վարէն տ.* 1· կարդա՛ «*էջ* 342—343, *Թ.* 3»։

„ 224, *տ.* 16· 865 կարդա՛ 1865։

„ 251, *տ.* 15· իմացի՛ր Migne *Գործք Առաքելոց արտատպութիւնը կատարած է Պարիսի* 1834—1839 *տարւոյ տպագրութենէն*։

„ 251, *տ.* 20 աւելցուր՝ E. R. Smothers *նախապէս տուած էր գեղեցիկ ուսումնասիրութիւն մը այս մասին խորագրիս տակ*· Le texte des Homélies de St. Jean Chrysostome sur les Actes des Apôtres: Recherches de science réligieuse, t. 27, 1937, p. 513–548.

